# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 14

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ДРЕВНЕГРЕЧЕСКИЕ ИСТОЧНИКИ

II

# ДИОДОР СИЦИЛИЙСКИЙ

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
С. М. КРКЯШАРЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1985

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԻՆ ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Բ

# ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ.
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
Ս. Մ. ԿՐԿՅԱՇԱՐՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1985

ԳՄԴ 63.3 (2Հ)
Դ 501

Տպագրվում է ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ



Պատասխանատու խմբագիր՝ Հ. Մ. ԲԱՐԹԻԿՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել գրախոսներ՝
պատմական գիտությունների դոկտոր Մ. Կ. ԶՈՒԼԱԼՅԱՆԸ և պատմական գիտությունների
թեկնածու Հ. Դ. ՄԵԼՔՈՆՅԱՆԸ

Դիոդորոս Սիկիլիացի

Դ 501 *Բնագրեր /Թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագր. Ս. Մ. Կրկյաշարյանի. խմբ.՝ Հ. Մ. Բարթիկյան —Եր.: ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1985. —203 էջ.—(Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին; 14. Հին հունական աղբյուրներ, 2/ ՀՍՍՀ ԳԱ, Պատմ. ին-տ):*

*Գրքում տրված է մ. թ. ա. I դարի խոշորագույն անտիկ մատենագիր Դիոդորոս Սիկիլիացու «Պատմական գրադարան» երկի այն բոլոր հատվածների թարգմանությունը, որոնք վերաբերում են Հայաստանին ու հարևան երկրներին: Գիրքն ունի առաջաբան, որի մեջ տրված է Դիոդորոսի ամբողջ աշխատության ընդհանուր բնութագիրը: Հատորն ունի նաև ընդարձակ ծանոթագրություններ:*

*Գիրքը նախատեսված է հայ ժողովրդի հին շրջանի պատմությամբ զբաղվող գիտնականների համար:*

0505040000
Դ———————28—85 ԳՄԴ 63.3 (2Հ)
703 (02)—85

# ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

## (Կյանքն ու գործը)

*Այն բանից հետո, երբ Միջերկրական ծովի արևմտյան ավազանում գերիշխանություն հաստատելու համար Հաննիբալի հայրենիք Կարթագենի և օրըստօրե բարձրացող Հռոմի միջև մղված դաժան ու երկարատև ռազմաքաղաքական պայքարն ավարտվեց հռոմայեցիների հաղթանակով, Հռոմեական հանրապետությունն արդեն իր հայացքն ուղղեց դեպի Արևելք, Միջերկրականի արևելյան ավազանում ևս իր քաղաքական տիրապետությունը հաստատելու և ամբողջ Միջերկրականը սեփական ներքին ծով դարձնելու մտադրությամբ։ Այս վերջին նպատակը ևս ամբողջությամբ կենսագործվեց մ. թ. ա. I դարում, և Հռոմը դարձավ Միջերկրական ծովի ամբողջ ավազանը եզերող ափերի միահեծան տերը։*

*Ռազմաքաղաքական իրադարձություններով հարուստ այս ժամանակաշրջանում էլ, բնականաբար, պետք է որ երևան գային և, իսկապես, երևան եկան այնպիսի երկեր, որոնց հեղինակները շարադրում էին ոչ միայն Հռոմի պատմությունը, այլև այս կամ այն կերպ շոշափում էին Հռոմի նվաճողական քաղաքականության ճանապարհին ընկած և այդ քաղաքականության զոհ դարձած երկրների պատմությունը։*

*Այս երևույթը առաջին անգամ լավագույնս բնորոշել է անտիկ շրջանի խոշորագույն պատմիչ Պոլիբիոսը (210—120 թթ.) իր 40 գրքից բաղկացած «Պատմության» առաջաբանում, գրելով. «Նախկինում դեպքերը երկրի վրա տեղի էին ունենում կարծես իրարից անջատ, քանի որ նրանցից ամեն մեկն ուներ իր առանձին տեղը, առանձին նպատակները և վախճանը։ Մինչդեռ, սկսած այս ժամանակից (այն է՝ Պունիկյան պատերազմներից— Ս. Կ.) պատմությունն, ասես, դառնում է մի ամբողջություն, Իտալիայի և Լիբիայի իրադարձությունները միահյուսվում են ասիական և հելլենական դեպքերին, և բոլորը հանգում են մեկ վախճանի»[1]։*

*Քանի որ այդ շրջանում հռոմեական գրականությունն ու պատմա-*

[1] Polybii Historiae, I.

գրությունը դեռևս հազիվ իրենց առաջին քայլերն էին անում, ապա բնական է, որ ժամանակաշրջանը արտացոլող երկերը պետք է գրվեին ոչ թե Հռոմի պաշտոնական լեզվով, այն է՝ լատիներեն, այլ դարձյալ հունարեն, որը ժամանակի lingua franca-ն էր։

Իրենց երկերը հունարեն շարադրած առավել հայտնի հեղինակներից է նաև հելլեն պատմիչ Դիոդորոս Սիկիլիացին (շուրջ 90—20 թթ. մ. թ. ա.)։ Նրա կենսագրության մանրամասները մեզ քիչ են հայտնի, այն էլ միայն նրա հեղինակած երկի առանձին հատվածներից։ Դիոդորոսը ապրել է մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ հռոմեական հանրապետության քաղաքական և տնտեսական աճող էքսպանսիայի պայմաններում հոգեվարք ապրող հելլենիստական աշխարհը բոլորում էր իր գոյության վերջին տարիները։ Դիոդորոսը ականատես վկան է եղել հելլենիստական վերջին խոշոր պետության, Պտղոմեոսյան Եգիպտոսի, վերջնական անկմանը (մ. թ. ա. 31 թ.)։ Եվրոպական Հունաստանն արդեն մ. թ. ա. 146 թ.-ից վեր գտնվում էր Հռոմի բացարձակ տիրապետության տակ, իսկ Սելևկյանների երբեմնի հզոր տերությունը, երկարատև հոգեվարքից հետո, վերջնականապես նվաճվել էր Հռոմի կողմից մ. թ. ա. 64 թ., այն է՝ Դիոդորոսի երիտասարդության ժամանակ։

Հռոմի անկասելի վերելքի պայմաններում, հելլեն մտավորականությունը վերջնականապես համոզվեց, որ նոր՝ հռոմեական տիրապետությունը լրջորեն և երկար ժամանակով հաստատվեց նվաճված երկրներում։ Ուստի և հելլեն փիլիսոփաները, գրողները, պատմիչները (Պոլիբիոս, Պոսիդոնիոս, Դիոդորոս, Ստրաբոն, Պլուտարքոս և ուրիշներ) սկսեցին հարմարվել նվաճողների ճաշակին և պահանջներին։

Դասական Հելլադայի ապրած ընդհանուր ճգնաժամից հետո (մ. թ. ա. IV—III դդ.) հելլենական աշխարհի քաղաքական ու տնտեսական կյանքի զարկերակը աստիճանաբար տեղափոխվում է Արևելք, որով և Արևելքի առավել կենսունակ երկրները դառնում են մշակութային կյանքի զարգացող կենտրոններ, հետին պլան մղելով անցյալի ծաղկյալ կենտրոնները։ Ուստի պատահական չէ, որ այնուհետև բոլոր հույն խոշոր պատմիչները (բացառությամբ Պլուտարքոսի) ծնվել ու աճել են բուն Հունաստանից դուրս։

Դիոդորոս Սիկիլիացին նույնպես ծնվել է բուն Հունաստանից դուրս, Սիկիլիա կղզու ոչ մեծ Արգիրիոն քաղաքում։ Նա ականատես է եղել հռոմեական հզոր տերությունը հիմնովին ցնցած ստրուկների ապստամբությանը՝ Սպարտակի գլխավորությամբ, և միակ պատմիչն է, որը արժեքավոր տեղեկություններ է հաղորդում խոշորագույն այդ ապստամբության մասին։

Դիոդորոսի հեղինակած աշխատությունը բաղկացած է եղել 40

գրքից։ Այն քաղագրական (կոմպիլյատիվ) բնույթի համաշխարհային պատմություն է, որն ինքը՝ հեղինակը, անվանել է «Βιβλιοθήκη ἱστορική»— Պատմական գրադարան։ Նրա բովանդակությունը կազմում է Միջերկրածովյան աշխարհի և Մերձավոր արևելքի ժողովուրդների ամբողջ պատմությունը, սկսած հնագույն, նախապատմական ժամանակներից, մինչև Հուլիոս Կեսարի Գալլական պատերազմները (մ. թ. ա. 59 թ.)։

«Պատմական գրադարանի» 40 գրքերն, իրենց բովանդակության համեմատ, կարելի է պայմանականորեն բաժանել երեք մասի։ Առաջին մասը (1—6 գրքեր) ընդգրկում է անտիկ ժամանակաշրջանին հայտնի աշխարհի՝ օյկումենեի ( οἰκουμένη ) առասպելական շրջանի պատմությունը, ընդ որում՝ առաջին երեք գիրքը՝ բարբարոսների, այսինքն՝ ոչ հելլենների, մնացյալ երեքը՝ հելլենների։ Երկրորդ մասում (7—17 գրքեր) շարադրված է Տրոյական պատերազմից մինչև Ալեքսանդր Մակեդոնացին ընկած ժամանակամիջոցում կատարված անցքերի պատմությունը։ Այս մասում հաճախ առասպելականն ու հավաստի պատմականը խառնված են իրար և շփոթված։ Երրորդ մասը (18—40 գրքեր) Մակեդոնացուց մինչև Հուլիոս Կեսարի մղած Գալլական պատերազմներն ընկած իրադարձությունների պատմությունն է։ Պատմական դեպքերը շարադրանքն ընդգրկող այս վերջին մասը, անկասկած, Դիոդորոսի երկի առավել հավաստի հատվածն է։

Դիոդորոսի «Պատմական գրադարանը», դժբախտաբար, ամբողջությամբ չի հասել մեզ։ Լրիվ պահպանվել են առաջին հինգ և 11-20 գրքերը, իսկ առավել կամ պակաս ծավալուն հատվածներ՝ 6 և 21—40 գրքերից։ Մնացած՝ 7—10-րդ գրքերը ամբողջապես կորել են։ Մեծարժեք են առաջին երկու գրքերը, որոնցում կան Շամիրամի, ինչպես նաև Տրոյական պատերազմի մասին այլ հեղինակների մոտ չհանդիպող տեղեկություններ և պատումներ։ Դիոդորոսից մեզ հասած հատվածներում հանդիպում են նույժ հետաքրքիր և անկրկնելի տվյալներ Ալեքսանդր Մակեդոնացու ժառանգների միջև մղված պատերազմների, այդ պատերազմներին Հայաստանի սատրապի ունեցած մասնակցության մասին, այդ ժամանակի Հայաստանի մասին, ինչպես նաև կարևոր տեղեկություններ Սելևկյան պետության հատկապես ուշ շրջանի պատմության և այլ հարցերի մասին։

Համաշխարհային պատմություն գրելու իր մտահղացումն իրագործելու նպատակով Դիոդորոսը ևս շատ երկրներ է շրջել. նա բազմիցս եղել է Հռոմում, երեք տարի ապրել է Եգիպտոսում, որտեղ, իր մեծ նախորդի՝ Հերոդոտոսի նման, եղել է տաճարներում, ծանոթացել է քրմերի հետ և գրի է առել նրանցից լսած բազմաթիվ զրույցներ ու ավանդություններ (Diodor., III, 11)։ Նա ամբողջ 30 տարի անցել է երկրից երկիր և մեծ դժվարություններ ու վտանգներ դիմագրավելով, շրջել է Ասիայի ու Եվրո-

պայի մեծ մասը (Diodor., I, 4), իր ապագա երկի շարադրման համար նյութեր հավաքելու նպատակով։

Պատմական տարբեր շրջանների և տարբեր երկրների պատմությունը շարադրելիս, Դիոդորոսը դիմել է իրեն նախորդած տարբեր հեղինակների. այսպես՝ աշխարհագրական տվյալների հիմնական աղբյուրներն են Ագաթարքիդեսը և Արտեմիդորոսը (II դ. մ. թ. ա.)։ Հռոմի հնագույն պատմությունը շարադրելիս նա օգտվել է Հռոմի ավագ տարեգիրների թողած ժամանակագրություններից, աննալներից, որոնք գրված են եղել հունարեն լեզվով. Եգիպտոսի պատմության համար օգտվել է Հեկատեոսից (VI—V դդ. մ. թ. ա.), Ասորեստանի և Պարսկաստանի պատմության համար՝ Հերոդոտոսից, Կտեսիասից (V դ.) և Թեոպոմպոսից (IV դ.), Ալեքսանդր Մակեդոնացու և նրա հետնորդների պատմությունը գրելիս օգտվել է Կլեյտարքոսի (IV դ.), Հիերոնիմոս Կարդիացու (IV—III դդ.) և Դուրիս Սամոսացու (III դ.) երկերից։

Բնականաբար, դեռևս այդ ժամանակ համաշխարհային ընդհանուր պատմություն հեղինակելը արտակարգ ծանր գործ էր, կապված բազմաթիվ և բազմապիսի դժվարությունների հետ, անչափ դժվար էր անհրաժեշտ նյութեր հավաքելը, դժվար՝ դրանք մշակելը, զտելը, դասակարգելը և այլն։ Նյութեր հավաքելու հետ կապված բոլոր դժվարությունները Դիոդորոսը կարողացավ հաջողությամբ հաղթահարել իր ուժեղ կամքի, անընկճելի համառության և նախանձելի աշխատասիրության շնորհիվ։

Շրջելով բազում երկրներ և ուսումնասիրելով բազմաթիվ գրադարաններում և դիվաններում ցրված նյութերը, ինչպես նաև ծանոթանալով իրեն նախորդած պատմիչների և աշխարհագիրների մեծ մասի գործերին և հռոմեական տարեգիրների ժամանակագրություններին, նա անչափ առատ և բազմաբնույթ պիտանի նյութ է հավաքել, որը վերաբերում էր ոչ միայն օյկումենեի ռազմաքաղաքական անցքերին և տեղի ունեցած իրադարձություններին, այլև աշխարհագրական բնույթի հարցերին և տարբեր երկրներում բնակվող զանազան ժողովուրդների վարքուբարքին, նրանց սովորույթներին, արհեստներին և դրականությանը։

Դիոդորոսը, սակայն, չկարողացավ հաղթահարել մյուս կարգի դժվարությունները՝ կապված այդ բազմաբնույթ նյութի զտման և ընտրության հետ։ Այդ անհաջողությունը պետք է բացատրել նրանով, որ Դիոդորոսը, չտիրապետելով ռազմաքաղաքական խորը դիտելիքների, անկարող եղավ դեպքերն ու դեմքերը ճշտորեն և ըստ արժանվույն գնահատել։ Նա օժտված չէր մտքի անհրաժեշտ սրությամբ՝ ճշմարիտը անիրականից և պատմականը առասպելականից դատորոշելու համար։ Դրան, հավանաբար, խանգարել էր և այն, որ համաշխարհային ընդհանուր

պատմություն հեղինակելիս, նա, կանգնած լինելով հռոմեասեր դիրքերում, չկարողացավ մնալ պահանջվող ստույգ աստիճանի անաչառ։

Առավել մեծ անհաջողության պետք է մատնվեր Դիոդորոսը այդ ահռելի քանակությամբ նյութը դասակարգելիս։ Իր աշխատության մեծագույն մասը շարադրելով ժամանակագրական մեթոդով, ըստ առանձին տարիների, ինչպես հռոմեական տարեգրություններն էին՝ աննալները, Դիոդորոսը այն տարաբաժանել է առանձին մանր հատվածների, որոնցից յուրաքանչյուրում նախապես հայտնում է ընթացիկ տարին՝ ըստ օլիմպիադաների, հիշատակելով Աթենքի արքոնտ-էպոնիմոսին և Հռոմի կոնսուլներին, որոնց պաշտոնավարության ժամանակ տեղի էին ունեցել այդ հատվածում նկարագրվող իրադարձությունները։

Ժամանակագրական այս սկզբունքը, սակայն, անբավարար է և լիովին սխալ, քանի որ ոչ միայն չէին համընկնում Աթենքի արքոնտ-էպոնիմոսների և Հռոմի կոնսուլների պաշտոնավարության տարիները, այլև մեկ տարվա ժամանակահատվածը շատ սահմանափակ էր համաշխարհային պատմության դեպքերը տեղագրելու համար։ Այդ իսկ պատճառով հեղինակը, հինգ-վեց գլուխ շարադրելուց հետո, ամեն անգամ ստիպված է լինում ընթերցողին փոխադրելու Հունաստանից՝ Սիկիլիա, այստեղից՝ Մակեդոնիա, վերջինից՝ Հռոմ, այստեղից էլ Ասիա և այլն։ Բնական է, որ այսպիսի խոցելի սկզբունքով կատարված նյութի դասակարգումից մեծապես պետք է տուժեր ամբողջ աշխատության կառուցվածքը, իսկ երկի ծավալը պետք է աճեր բազմաթիվ անտեղի կատարված կրկնությունների հաշվին։

Նկատի ունենալով այս ամենը, դժվար կլինի Դիոդորոսի մոտ փնտրել քննադատական վերաբերմունք օգտագործված աղբյուրների և նյութի վերաբերյալ։ Նա, առանց ընտրության և վերլուծության, հաղորդում է այն, ինչ քաղել է իր աղբյուրներից։

Դիոդորոսը իր երկը շարադրել է ատտիկյան բարբառով, հետևելով Քսենոփոնին, Պոլիբիոսին և այլ պատմիչներին։ «Պատմական գրադարանի» լեզուն թեպետև շատ է պարզ և հստակ, այդուհանդերձ անգույն է, անհրապույր, դերազանցապես ծանրաբեռնված լինելով վերացական հասկացություններով, այն գրեթե բացարձակապես զուրկ է ճարտասանական ճկուն դարձվածքներից։ Այս բոլորով հանդերձ, բյուզանդական ժամանակաշրջանի պատմիչներին դերազանցապես հաճելի էր այդպիսի լեզուն, և նրանք իրենց ժամանակագրությունները շարադրել են այդօրինակ ոճով։ Դիոդորոսի լեզուն և ոճը հատկապես բարձր է գնահատել բյուզանդական հայազգի մատենագիր, Կոստանդնուպոլսի պատրիարք Փոտը (IX դ.), որը նույնիսկ իր հեղինակած մատյանը, հետևելով Դիոդորոսին, անվանել է «Գրադարան»։

Նորագույն պատմաբաններից Դիոդորոսին խստորեն քննադատեցին գերմանացի գիտնականներ Niebuhr-ը և Ալեքսանդր Մակեդոնացու ու նրա հետնորդների պատմությանը նվիրված եռահատոր դարակազմիկ ուսումնասիրության հեղինակ Droysen-ը. մինչդեռ Հռոմի պատմության խոշորագույն հետազոտող Th. Mommsen-ը համաձայն չէր նրանց քննադատության հետ, հատկապես Հռոմի պատմությանը վերաբերող Դիոդորոսի հաղորդումների առնչությամբ, նկատելով, որ Հռոմի հնագույն շրջանի պատմությանը վերաբերող Դիոդորոսի վերագրումները ամենահինն են և բոլորից արժանահավատը։

Անկասկած, իր արժանահավատության աստիճանով Դիոդորոսի «Պատմական գրադարանը» մեծապես զիջում է Թուկիդիդեսի, Քսենոփոնի, Պոլիբիոսի, Ստրաբոնի երկերին։ Սակայն, իր բոլոր թերություններով հանդերձ, այն մեծարժեք երկասիրություն է հին աշխարհի պատմությունն ուսումնասիրող պատմաբանի համար, քանի որ փոխարինում է հնագույն ժամանակներին վերաբերող պատմական կորած աշխատություններին, որոնց մասին մենք իմանում ենք և գաղափար կազմում միայն ու միայն Դիոդորոսի մոտ պահպանված հատվածների ու վկայակոչումների միջոցով։

Դիոդորոսի երկի ուսումնասիրությունը առանձնապես կարևոր է հայագիտության, հատկապես խորենացիագիտության համար, քանի որ Մովսես Խորենացու գլխավոր աղբյուրներից մեկը, անկասկած, Դիոդորոսն է։ Ինքը՝ պատմահայրը, իր անմահ երկի երրորդ գիրքն սկսում է այսպիսի խոստովանությամբ. «Ոչ հին տարիների պատմություն է ունեցել մեր աշխարհը, ոչ էլ ժամանակի կարճության պատճառով կարողացանք անցնել բոլոր հունական (աղբյուրները), ոչ նույնիսկ Դիոդորոսի գրվածքները մեր ձեռքի տակ են, որ աչքերս նրա վրա պահելով՝ բոլորն անմռռաց անցնեինք, որպեսզի բաց չթողնեինք որևէ գլխավոր և պիտանի բան, որ արժան է մեր շարադրության մեջ հիշատակվելու» (Մ. Խորենացի, գ. ա.)։

Մեր կարծիքով, Խորենացին Տրոյական պատերազմի մասին գիտե ոչ թե ուղղակի Հոմերոսից, այլ Դիոդորոսի միջոցով, քանի որ «Հայոց պատմության» համապատասխան հատվածները առավելապես համերաշխ են ոչ թե Հոմերոսի «Իլիականին», այլ Դիոդորոսի պատմածներին։ Բացի այդ, Շամիրամի մասին Խորենացու պատմածների հիմքում ընկած են ոչ միայն ժողովրդական բանահյուսությունից պատմահոր քաղած տեղեկությունները, այլև շատ վկայություններ՝ վերցրած Շամիրամի մասին Դիոդորոսի ընդարձակ պատումից։ Մեզ թվում է, թե դեռևս Խորենացու ժամանակ արդեն կորել էին Դիոդորոսի երկի շատ հատվածներ։ Այսպիսի ենթադրության մեզ մղում է այն հանգամանքը, որ Դիոդորոսի երկը խո-

րենացու կողմից օգտագործվել է շատ հատվածաբար, թեև, ինչպես տեսանք, պատմահայրը նրան համարում է ճշմարտապատում հեղինակ։

Անհրաժեշտ է նշել նաև, որ իր Եվհեմերյան փիլիսոփայությամբ, որի համաձայն հեթանոսական աստվածներն սկզբնապես եղել են նշանավոր մարդիկ, որոնք հետագայում, ժողովրդական ավանդությունների և զրույցների մեջ, աստվածացվել են, Դիոդորոսը նույնպես որոշակիորեն ազդել է Խորենացու աշխարհայացքի վրա։

Մեզ համար Դիոդորոսի երկը արժեքավոր է նաև այն տեսակետից, որ զրանում կա մի ընդարձակ հատված, որտեղ համառոտակի պատմվում են նույն դեպքերը, ինչ մանրամասն շարադրված են Քսենոփոնի «Անաբասիսում»։ Մանրակրկիտ դիտողությունը մեզ համոզում է, որ այս հատվածում Դիոդորոսի աղբյուրը եղել է ոչ միայն, գուցե և ոչ այնքան, Քսենոփոնի մեզ հայտնի երկը, այլ մեկ ուրիշ հեղինակ, նույնպես հելլենների արշավանքի մասնակից։

Ներկա թարգմանությունը կատարել ենք «Loed Classical Library» շարքով հրապարակված Դիոդորոսի երկի բնագրից, ընտրելով նրա աշխատությունից այն հատվածները միայն, որոնք վերաբերում են պատմական Հայաստանին և հարևան երկրներին, որոնց հետ հայերը հնագույն ժամանակներից ունեցել են քաղաքական, տնտեսական և մշակութային առնչություններ։ Մեր թարգմանության մեջ կոր փակագծերում առնված բառերը ավելացված են մեր կողմից, ընթերցվածը առավել հասկանալի դարձնելու նպատակով։

# ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

## “ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ„

(Հատվածներ)

## Գիրք 1

55,2 *Սեսոովսիսը[1] այնուհետև չորս հարյուր նավից տորմիղ ուղար-*
*կեց Կարմիր ծով[2]. նա առաջինն էր եգիպտացիներից, որը պատ-*
*րաստեց երկար ռազմանավեր, և ոչ միայն այդ վայրերում գտնվող*
*կղզիներին տիրեց, այլև հպատակեցրեց առափնյա երկրները,*
3 *մինչև Հնդկաստան, իսկ ինքը զորքով հետիոտն ուղևորվելով, հպա-*
*տակեցրեց ամբողջ Ասիան։ Փաստորեն նա անցավ ոչ միայն հե-*
*տագայում Ալեքսանդր Մակեդոնացու կողմից նվաճված (ամբողջ)*
4 *երկիրը, այլև մի քանի ժողովուրդների երկրները, որտեղով նա*
*(Ալեքսանդրը— Ս. Կ.) չէր անցել։ Քանզի նա (Սեսոովսիսը— Ս. Կ.)*
*անցավ Գանգես գետը ու կտրեց ամբողջ Հնդկաստանը, մինչև օվ-*
*կիանոս, և սկյութական ցեղերի երկիրը, մինչև Տանայիս[3], որը բա-*
5 *ժանում է Եվրոպան Ասիայից։ Այդ ժամանակ էլ, ինչպես պատմում*
6 *են[4], եգիպտացիներից ոմանք թողնվեցին Մայոտիս լճի[5] շուրջը և*
*կազմեցին կոլխերի ցեղը։ Այս ցեղի եգիպտական լինելու ապացույ-*
*ցը այն է, որ այր մարդիկ եգիպտացիների նման թլփատվում են...*

## Գիրք 2

1,3 *Իսկ այս գրքում մենք կներկայացնենք հին ժամանակներում*
*Ասիայում կատարված դեպքերը, սկսելով Ասորեստանցիների տի-*
*րապետության շրջանից։*
4 *Այսպես, հնագույն ժամանակներս Ասիայում եղել են տեղա-*
*բնիկ թագավորներ, որոնց ոչ նշանակալից որևէ մի գործն է հիշա-*
*տակվում, ոչ էլ անունը։ Առաջինը, որի պատմությունը և հիշատա-*
*կումը ավանդվել է մեզ, մեծ գործեր կատարած Նինոսն[6] է՝ Ասորես-*
*տանցիների թագավորը։ Նրա մասին էլ մենք կփորձենք պատմել*
*մանրամասնությամբ։ Քանզի նա բնականից լինելով ռազմասեր և*
*նախանձախնդիր՝ առաքինության նկատմամբ, զինեց երիտասարդ-*
*ներից ուժեղագույններին և երկար ժամանակ մարզելով նրանց,*

5 վարժեցրեց դիմանալու ամեն տեսակ դժվարության և ռազմական
վտանգների։ Ու երբ արդեն նա նշանակալից զորք էր հավաքել,
դաշնակցեց Արաբիայի թագավոր Արիայոսի հետ. այդ ժամանակ-
ներում այն համարվում էր բազմաթիվ քաջարի մարտիկներ ունե-
ցող երկիր։ Այս ազգը, ընդհանրապես, ազատասեր է և ոչ մի կերպ
չի հանդուրժում օտար տիրակալի։ Այս պատճառով էլ ո՛չ Պարսից
թագավորները[7], ո՛չ էլ հետագայում Մակեդոնացիների (թագավոր-
6 ները)[8], թեպետև առավելագույնս հզորացել էին, չկարողացան
ստրկացնել այս ազգին։ Քանզի Արաբիան անհաղթահարելի է օտար
զորքերի համար, մասամբ անապատ, մասամբ էլ ջրազուրկ լինելու
7 և միայն տեղ-տեղ թաքնված, այն էլ սոսկ տեղացիներին հայտնի
ջրհորեր ունենալու պատճառով։ Այնուհանդերձ, Ասորեստանի թա-
գավոր Նինոսը արաբների տիրակալին վերցնելով իր հետ,՝ մեծ զոր-
քով արշավեց բաբելոնացիների վրա, որոնք բնակվում էին իրեն
սահմանակից երկրում։ Իսկ այդ ժամանակ այժմյան Բաբելոնը
դեռևս չէր կառուցվել, բայց (այնտեղ) կային նշանակալից այլ քա-
ղաքներ։ Նա հեշտությամբ հպատակեցրեց տեղաբնիկներին, որով-
հետև նրանք անփորձ էին պատերազմական վտանգներում, և նրանց
պարտավորեցրեց ամենամյա որոշակի հարկ վճարել, իսկ պարտ-
8 վածների թագավորին, նրա որդիների հետ միասին, գերի վերց-
նելով, սպանեց։ Այնուհետև, նա մեծ զորքով ներխուժելով Արմե-
նիա[9] և մի շարք քաղաքներ ավերելուց հետո կոտորեց տեղի բնա-
կիչներին, ուստի և նրանց թագավոր Բարզանեսը, տեսնելով, որ
ինքն ի վիճակի չէ նրա դեմ կռվելու, առատ նվերներով դիմավորեց
9 նրան և ասաց, որ ինքը կկատարի նրա բոլոր հրամանները։ Իսկ
Նինոսը նրան վերաբերվեց մեծահոգաբար և համաձայնվեց, որ նա
տիրի Արմենիային, և մնալով որպես իր բարեկամը, զորք ուղարկի
10 և միջոցներ իր բանակի համար։ Եվ նա առավել ևս հզորանալով,
արշավեց Մեդիայի դեմ։ Եվ այս (երկրի) թագավոր Փառնոսը նշա-
նակալից զորքով դուրս եկավ նրա դեմ, բայց պարտվելով, իր զին-
վորների մեծ մասին կորցրեց, իսկ ինքը ևս իր յոթը որդիների և
կնոջ հետ գերի վերցվելով, խաչը բարձրացվեց։
2,1 Ու քանի որ Նինոսի գործերը հաջող էին, նա խստորեն փա-
փագեց նվաճել ամբողջ Ասիան, որը գտնվում է Տանայիսի և Նեղոսի
միջև։ Որովհետև, սովորաբար, երբ մարդիկ բարեբախտության մեջ
են լինում, հաջողությունների արագ ընթացքը նրանց մեջ առաջաց-
նում է էլ առավելի փափագը։ Ուստի և նա իր մերձավոր ընկերնե-
րից մեկին կարգեց Մեդիայի սատրապ[10], մինչդեռ ինքը ձեռնա-
մուխ եղավ Ասիայում ապրող ազգերին նվաճելու .գործին, և

տասնյոթամյա ժամանակամիջոց վատնելով, նա հնդիկներից ու
2 բակտրիացիներից[11] բացի, դարձավ մյուս բոլոր ազդերի տերը·
Արդ՝ հեղինակներից ոչ մեկը չի նկարագրել այդ ազգերից յուրա-
քանչյուրի մղած կռիվները, կամ թեկուզ և նվաճված այդ ազգերի
ընդհանուր թիվը, իսկ այդ ազգերից ամենանշանակալիցների մա-
սին մենք համառոտ կպատմենք, հետևելով Կտեսիաս Կնիդացուն[12]։
3 Ծովափին գտնվող և դրան հարող երկրներից նա նվաճեց
Եգիպտոսը և Փյունիկիան, ինչպես նաև Կոյլե Սիրիան և Կիլիկիան և
Պամփյուլիան և Լյուկիան, դրանցից բացի և Կարիան ու Փռյուգիան և
Լյուդիան, իր նվաճումներին նա միացրեց նաև Տրովադան և Հելլես-
պոնտոսյան Փռյուգիան և Պրոպոնտիսը և Բիթյունիան և Կապպա-
դովկիան[13], և Պոնտոսի ափին ապրող բոլոր ազգերին, մինչև Տա-
նայիս։ Նա տիրացավ նաև Կադուսների երկրին, և տապյուրների,
նաև հյուրկանների և դրանգների, ինչպես և դերբիկների ու կար-
մանների և քորոմնաների, և բորկանների ու պարթևների (երկըր-
ներին)[14], մտավ նաև Պերսիս և Սուսիանե[15] և այսպես կոչված Կաս-
պիանե (երկիրը), որտեղ մուտքը բոլորովին նեղ է, որի պատճա-
4 ռով էլ կոչվում է Կասպյան դռներ։ Նա հպատակեցրեց նաև բա-
զում այլ փոքր ազգերի, որոնց մասին խոսելը երկար կլիներ։ Իսկ
Բակտրիանե (երկիրը), քանի որ դժվարամատույց էր և ուներ մար-
տունակ բազում այրեր, նրան շատ տանջեց, ուստի և նա առանց
հաջողության ետ վերադարձավ, բակտրիացոց դեմ պատերազմելը
հետաձգելով մի այլ ժամանակի, իր զորքերը ետ բերելով Ասորես-
տան, գեղադիր մի վայր ընտրեց խոշոր քաղաքի կառուցման հա-
մար։
3,1 Իր բոլոր նախորդներից առավել երևելի գործեր կատարած
լինելով, նա եռանդագին ձգտում էր իր մեծությամբ այնպիսի քա-
ղաք կառուցել, որը ոչ միայն այդ ժամանակ համայն օյկումե-
նեում[16] հայտնի քաղաքներից խոշորագույնը լիներ, այլ հետագա-
2 յում ևս թագավորներից որևէ մեկը չկարողանար հեշտությամբ
գերազանցել այն։ Այսպես, արաբների թագավորին, մեծարժեք
նվերներով և ավարներով պատվելուց հետո, բաց թողեց իր զոր-
քով վերադառնալու իր երկիրը, իսկ ինքը բոլոր կողմերից իր ուժե-
րը և անհրաժեշտ միջոցները հավաքելով, Եփրատ գետի վրա կա-
ռուցեց քաղաք[17], հզոր պարիսպներով, տալով նրան ուղղանկյան
ձև. քաղաքի երկար կողերն ունեին հարյուր հիսուն ասպարեզ[18],
3 իսկ կարճերը՝ իննսուն ասպարեզ երկարություն։ Այսպիսով, շրջա-
պարսպի ընդհանուր երկարությունը չորս հարյուր ութսուն ասպա-
րեզ լինելով, նրա հույսերն արդարացան. քանզի նման քաղաք հե-



2—913

տագայում ոչ ոք չկառուցեց այդքան երկար և հզոր պարիսպներով։
Պարիսպների բարձրությունը հարյուր ոտք էր, իսկ լայնքը հերիք
կաներ երեք մարտակառք վարելու։ Աշտարակների ընդհանուր
4 թիվը հազար հինգ հարյուր էր, իսկ բարձրությունը՝ երկու հարյուր
ոտք։ Նա այնտեղ բնակեցրեց մեծ մասամբ ասորեստանցիներին,
որոնք և հզորագույններն էին, իսկ մյուս ազգերից՝ ցանկացողնե-
րին։ Եվ քաղաքն անվանեց իր անունով՝ Նինոս, իսկ այնտեղ բնակ-
վողներին նա հատկացրեց սահմանակից երկրի մեծ մասը։
4,1 Եվ քանի որ այս (քաղաքը) կառուցելուց հետո Նինոսը արշա-
վեց Բակտրիանե (երկրի) վրա, որտեղ նա ամուսնացավ Սեմիրա-
միսի[19], մեղ հայտնի կանանցից ամենահայտնիի հետ, ուստի ան-
հրաժեշտ է սկզբնապես պատմել, թե ինչպես համեստ վիճակից նա
հասավ այդքան մեծ փառքի։
2 Այժմ Սիրիայում կա մի քաղաք՝ Ասկալոն, և նրանից ոչ հեռու
գտնվում է մեծ և խորունկ մի լիճ, առատ ձկներով. դրա ափին
կա աճար երևելի դիցուհու, որին սիրիացիներն անվանում են
Դերկետո. այս (դիցուհին) ունի կանացի դեմք, մինչդեռ ամբողջ
3 մարմինը ձկնային է, հետևյալ մի շարք պատճառներով։ Տեղա-
բնիկներից իմաստնագույնները պատմում են, թե Ափրոդիտեն
զայրացած լինելով վերոհիշյալ աստվածուհու վրա, նրա հոգում
ուժեղ սեր ներշնչեց իրեն զոհ մատուցող գեղանի մի երիտասարդի
հանդեպ. և Դերկետոն, կենակցելով այս սիրիացու հետ, ծնեց մի
աղջիկ, բայց ամաչելով իր մեղապարտ արարքից, ոչնչացրեց երի-
տասարդին, իսկ երեխային լքեց ամայի և քարքարոտ ինչ-որ վայ-
րում. ինքն էլ, ամոթից ու վշտից դրդված իրեն նետելով լիճը,
մարմնապես կերպարանափոխվեց ձկան. այդ պատճառով էլ սի-
րիացիները մինչև հիմա էլ ձեռնպահ են մնում այդ կենդանիներից
4 և ձկներին պաշտում են իբրև աստվածների[20]։ Իսկ այն վայրի շուր-
ջը, որտեղ երեխան դրվել էր, մեծ թվով աղավնիներ բույն էին դրել,
և նրանց կողմից զարմանալի և հրաշալի ձևով սնվեց ու պահվեց.
քանզի նրանց մի մասը մանկանը տաքացրեց թևերով՝ պատելով
նրան բոլոր կողմերից, մինչդեռ մյուսները նկատելով, որ մոտակա
փարախներից հովիվներն ու մյուս հոտաղները բացակայում են,
5 իրենց կտուցների վրա կաթ բերելով, այն կաթեցնում էին նրա
շրթների միջև։ Ու երբ երեխան բոլորեց մեկ տարին և կարիք ուներ
առավել ուժեղ սննդի, աղավնիները պանիրներից կտցահարելով
նրան բավարար սնունդ էին հայթայթում։ Հովիվները վերադառնա-
լով, երբ տեսան, որ պանիրները կտցահարված էին, զարմացան

տարօրինակ պատահարի վրա. ուստի և ուշադիր հսկելով, իմացան
6 պատճառը և գտան երեխային, որը արտակարգ գեղեցիկ էր։ Նրան
բերելով իրենց փարախը, նվիրեցին արքունի հոտերի վերակա-
ցուին, Սիմմաս անունով. սա էլ, քանի որ անզավակ էր, երեխային
ամենայն հոգատարությամբ խնամեց իբրև իր աղջնակը և անունը
դրեց Սեմիրամիս, որը սիրիացիների լեզվով անվանումն է աղավնի-
ների, որոնց այդ ժամանակից ի վեր Սիրիայում բոլոր բնակիչնե-
րը շարունակում են պատվել իբրև աստվածների։
5,1 Համարյա այսպիսիք են ահա Սեմիրամիսի ծննդյան առթիվ
պատմվող առասպելները։ Ու երբ արդեն նա թևակոխել էր ամուս-
նության տարիքը և գեղեցկությամբ շատ էր գերազանցել մյուս կույ-
սերին, թագավորի կողմից մի պաշտոնյա ուղարկվեց արքունի
հոտերն այցելելու։ Այս պաշտոնյայի անունն էր Օննես. նա ար-
քունի խորհրդի անդամների մեջ առաջինն էր և նշանակվել էր ամ-
2 բողջ Սիրիայի կառավարիչ[21]։ Նա իջևանեց Սիմմասի մոտ և տեսնե-
լով Սեմիրամիսին, գերվեց նրա գեղեցկությամբ. ուստի և նա Սիմ-
մասից խնդրեց իրեն հանձնել կույսին, օրինական ամուսնության
համար. Նրան առաջնորդեց Նինոսի մոտ և ամուսնանալով նրա
հետ, ծնեց երկու որդի՝ Հյուապատեսին և Հյուդասպեսին[22]։ Ու քանի
որ Սեմիրամիսի մյուս հատկությունները ևս համապատասխան
էին իր տեսքի գեղեցկության, այնպես եղավ, որ ամուսինը վերջ-
նականապես դարձավ նրա ստրուկը, և քանի որ ոչինչ չէր անում
առանց նրա կարծիքը հարցնելու, ուստի և ամեն ինչում հաջողու-
թյուն էր ունենում։
3 Ճիշտ այդ ժամանակ էլ, քանի որ թագավորն ավարտել էր իր
անունը կրող քաղաքի կառուցումը, ձեռնարկեց բակտրիացիների
դեմ արշավանքը։ Նա ծանոթ լինելով այդ մարդկանց բազմությանը
և քաջությանը, ինչպես և (իմանալով), որ այդ երկիրն ունի ամրու-
թյան տեսակետից բազմաթիվ անմատչելի վայրեր, իր տիրապե-
տության տակ գտնվող բոլոր ազգերից զինվորների մեծ բազմու-
թյուն հավաքեց. քանի որ իր նախորդ արշավանքը ձախողվել էր,
նա շտապում էր բազմապատիկ ուժերով հայտնվել Բակտրիանե
4 երկրում։ Երբ ամեն կողմից զորքը հավաքվել էր, այն համարեցին
և (դուրս եկավ), ինչպես Կտեսիասն է իր պատմության մեջ գրում,
հետևակներ՝ հարյուր յոթանասուն բյուր, հեծյալներ՝ քսանմեկ
բյուր, իսկ մանգաղակիր մարտակառքեր[23] տասհազար վեցհարյու-
րից քիչ պակաս։
5 Զորքի այդպիսի բազմության մասին լսողները միանգամից
չեն կարող հավատալ, բայց այդ բոլորովին էլ անհնար չի թվա

նրանց համար, ովքեր հաշվի կառնեն Ասիայի մեծությունը և այն-
տեղ բնակվող ազգերի բազմությունը։ Քանզի եթե մարդ նույնիսկ
անտեսի Դարեհի[24] արշավանքը սկյութների դեմ ութսուն բյուր
զորքով[25] և Քսերքսեսի[26] անցումը Հելլադա անհամար բազմու-
թյամբ, այլ մտածի հենց Եվրոպայում երեկ կամ փոքր ինչ առաջ
տեղի ունեցած դեպքերի մասին, ապա շուտով կհամոզվի ասվածի
6 ճշմարտությանը։ Այսպես, Սիկիլիայում Դիոնիսիոսը[27] արշավանքի
ժամանակ միայն Միրակուսա քաղաքից դուրս բերեց տասներկու
բյուր հետևակ, տասներկու հազար հեծյալ և միայն մեկ նավա-
հանգստից՝ չորս հարյուր ռազմանավ, որոնց մի մասը քառաշար
7 թիերով էր, մյուս մասը՝ հնգաշար[28]. Հռոմայեցիներն էլ, Հաննի-
բալյան ժամանակներից քիչ առաջ[29] կանխատեսելով պատերազմի
ամբողջ ծավալը, ցուցակագրեցին Իտալիայում բնակվող ռազմու-
նակ բոլոր քաղաքացիներին և դաշնակիցներին, և նրանց ընդհա-
նուր թիվը քիչ էր պակաս հարյուր բյուրից. թեպետև մարդկանց
բազմությամբ հիրավի ամբողջ Իտալիան չի կարելի համեմատել
Ասիայում բնակվող թեկուզ և մեկ ազգի հետ։ Ահա այս փաստերը
թող մեր պատասխանը լինեն նրանց, ովքեր քաղաքների այժմյան
ամայացած վիճակից փորձում են հետևություններ անել հնում
ազգաբնակչության մասին։
6,1 Արդ, Նինոսը այսքան մեծաթիվ զորքով Բակտրիանե արշա-
վելիս, քանի որ երկիրը դժվարանցանելի էր և նեղ կիրճեր ուներ,
2 ստիպված էր իր ուժերը տանել մաս առ մաս։ Քանզի Բակտրիանե
երկիրը, թեպետև բնակեցված բազմաթիվ քաղաքներ ուներ, սա-
կայն դրանցից մեկն էր միայն շատ հայտնի, որտեղ և գտնվում էր
արքունիքը. այն կոչվում էր Բակտրա և մեծությամբ և միջնաբերդի
ամրությամբ շատ էր գերազանցում մյուս բոլորից։ Այնտեղ թա-
գավորող Օքսյուարտեսը ցուցակագրեց բոլոր նրանց, ովքեր զին-
վորական տարիք ունեին և նրանց թիվը գումարվեց մինչև քառա-
3 սուն բյուր։ Արդ, վերցնելով իր զորքը և թշնամուն հանդիպելով
անցումների մոտ, թույլ տվեց Նինոսի բանակի մի մասին ներխու-
ժել (երկիր). երբ նրան թվաց, թե արդեն թշնամու բավականաչափ
բազմություն մտել է դաշտ, իր զորքը դասավորեց։ Ու երբ բուռն
ճակատամարտ տեղի ունեցավ, բակտրիացիները ասորեստան-
ցիներին փախուստի մատնեցին և հալածելով նրանց մինչև հան-
4 դիպակաց լեռները, կոտորեցին շուրջ տասը բյուր թշնամու։
Բայց դրանից հետո, երբ ամբողջ զորքը մտավ (նրանց երկիրը),
նրանք պարտվելով (թշնամու) բազմությունից, հեռացան դեպի
քաղաքները, յուրաքանչյուրն իր հայրենին պաշտպանելու համար։

Այսպիսով, Նինոսը հեշտությամբ տիրացավ բոլոր մյուս քաղաք-
ներին, մինչդեռ անկարող եղավ Բակտրան գրոհով վերցնել, (այդ
քաղաքի) անառիկության և ռազմական անհրաժեշտ պատրաստու-
թյան պատճառով։
5 Քանի որ պաշարումը երկար էր տևում, Սեմիրամիսի ամու-
սինը, որը սիրահարված էր իր կնոջ վրա և արշավել էր թագավորի
հետ միասին, մարդ ուղարկեց կնոջը բերելու։ Իսկ սա, օժտված
լինելով խելամտությամբ և համարձակությամբ և այլ առաքինու-
թյուններով, որոնք նպաստում են աչքի ընկնելու, հնարավորու-
6 թյուն ստացավ իր կարողությունները ցուցադրելու։ Արդ, նախ և
առաջ, քանի որ նա պետք է բազմօրյա ճանապարհ անցներ, ուստի
և այնպիսի զգեստ պատրաստեց, որով հնարավոր չէր լինում որո-
շել, թե հագնողը այր մարդ է, թե՞ կին։ Այն լավ էր հարմարեց-
րած նրա կարիքներին, թե՛ ճանապարհի տապից նրա մարմնի
մաշկը պահպանելու, և թե՛ իր կամեցած ամեն գործողություն կա-
տարելու համար, քանի որ այն շատ ճկուն էր և երիտասարդական
և, ընդհանրապես, (այդ զգեստը) այնքան շնորհալի էր, որ հետա-
գայում մեդացիները, որոնք տիրում էին Ասիայում, հանգում էին
Սեմիրամիսի հագուստը, նույնն արեցին նրանցից հետո նաև պար-
7 սիկները[30]։ Արդ, երբ Սեմիրամիսը ժամանեց Բակտրիանե (երկիրը)
և ծանոթացավ պաշարման ընթացքին, նկատեց, որ գրոհները կա-
տարում էին դաշտային մասերում և առավել մատչելի հատվածնե-
րում, ոչ մեկը չէր գրոհում միջնաբերդը, դրա ամրության պատճա-
ռով, և ներսում եղողները թողնելով այնտեղ իրենց պաշտպանած
8 դիրքերը, օգնում էին ներքևի պարիսպների վրա վտանգվածներին
Ուստի և (Սեմիրամիսը) վերցնելով իր հետ ժայռեր մագլցելու սո-
վոր զինվորներին, և նրանց հետ միասին առաջ գնալով դժվարան-
ցանելի մի կիրճի միջով, գրավեց միջնաբերդի մի մասը և ազդանշան
տվեց դաշտում պարիսպները պաշարողներին։ Այնժամ քաղաքի
պաշտպանները, ահաբեկվելով ամրացված բարձունքի գրավումից,
լքեցին պարիսպները և կորցրին փրկության հույսը։
9 Երբ այս եղանակով քաղաքը գրավվեց, թագավորը, հիանա-
լով կնոջ ընդունակության վրա, սկզբում մեծ պարգևներով պատ-
վեց նրան, իսկ հետագայում, նրա գեղեցկության պատճառով սի-
րահարվելով նրա վրա, փորձեց համոզել նրա ամուսնուն կամավոր
զիջել (կնոջն) իրեն, այդ շնորհքի փոխարեն խոստանալով նրան
10 կնության տալ իր իսկ դստեր՝ Սոսանեին, ու քանի որ այդ մարդը
դժկամություն ցուցաբերեց, (Նինոսը) սպառնաց հանել նրա աչ-
քերը, եթե իսկույն չկատարի իր հրամանները։ Եվ Օննեսը, մասամբ

վախենալով թագավորի սպառնալիքներից, մասամբ էլ կրքոտ սիրո
պատճառով, համակվեց ինչ-որ կատաղությամբ ու մոլեգնությամբ,
և (վզին) օղակ անցկացնելով, ինքզինքը կախեց։ Սեմիրամիսը,
ահա, այս պայմաններում հասավ արքունի աստիճանի։
7,1 Եվ Նինոսը ձեռք բերեց Բակտրիայում եղած գանձերը, որոնց
թվում շատ արծաթ և ոսկի ու Բակտրիանե (երկրի) հարցերը վճռե-
լուց հետո արձակեց իր զորքերին։ Այնուհետև Սեմիրամիսից
նա ունեցավ Նինվաս[31] որդուն և վախճանվեց, կնոջը թողնելով իբ-
րև թագուհի։ Սեմիրամիսը Նինոսին թաղեց արքունի պալատներում
և նրա (գերեզմանի) վրա բարձրացրեց շատ խոշոր մի հողաթումբ,
2 որի բարձրությունը, ինչպես Կտեսիասն է պատմում, ինն ասպա-
րեզ էր, իսկ լայնքը՝ տասը։ Այդ իսկ պատճառով, քանի որ քաղաքը
գտնվում էր Եփրատի մոտ՝ դաշտավայրում, հողաթումբը երևում
էր շատ ասպարեզներ հեռվից, միջնաբերդի նման։ Եվ այն, ինչպես
ասում են, մինչև այժմ էլ կանգուն է, թեպետև Նինոս (քաղաքը)
կործանվել էր մեդացիների կողմից, երբ սրանք նվաճեցին Ասորես-
տանի թագավորությունը։
Իսկ Սեմիրամիսը, բնավորությամբ լինելով մեծագործություն-
ների ծարավ և ձգտելով իր փառքով գերազանցել իրեն նախորդած
գահակալին, մտադրվեց Բաբելոնիայում կառուցել քաղաք. և բո-
լոր վայրերից հավաքելով ճարտարապետներին և արհեստավորնե-
րին և այլ անհրաժեշտ պատրաստությունները տեսնելուց հետո, նա
3 ամբողջ թագավորությունից ի մի հավաքեց երկու հարյուր բյուր
մարդկանց՝ աշխատանքները կատարելու համար։ Եփրատ գետը
առնելով մեջտեղ, նա քաղաքը շրջափակեց բազմախիտ և խոշոր
աշտարակներ ունեցող երեք հարյուր ասպարեզ (երկարությամբ)
պարսպով, ինչպես պատմում է Կտեսիաս Կնիդացին, իսկ Կլեյտար-
քոսը[32] և հետագայում Ալեքսանդրի հետ Ասիա անցածներից ոմանք
գրում են, թե (պարսպի երկարությունը) եղել է երեք հարյուր վաթ-
սունհինգ ասպարեզ[33], և ավելացնում են, թե նա ձգտեց ասպարեզ-
ների թիվը համապատասխան և հավասար դարձնել տարվա օրե-
4 րին։ Թրծած աղյուսները կուպրով ծեփելով պարիսպ կառուցեց, որի
բարձրությունը, ինչպես Կտեսիասն է ասում, հիսուն գրկաչափ[34]
բարձրությամբ, իսկ ինչպես հետագա (հեղինակներից) ոմանք են
գրում, հիսուն կանգուն[35], իսկ լայնքը ավելի քան պետք էր երկու
ռազմակառքի ընթացքի համար, աշտարակների թիվը երկու հար-
յուր հիսուն էր, իսկ դրանց բարձրությունը և լայնքը համապա-
տասխանում էր պարիսպների հաստահեղույս կառուցվածքին։ Պետք

*չէ զարմանալ, որ պարսպի այսքան երկարության համեմատ փոք-
րաթիվ աշտարակներ կառուցեց, քանի որ երկար տարածության
վրա քաղաքը շրջափակված էր ճահիճներով, ուստի այդ վայրերում
նա որոշեց աշտարակներ չկառուցել, համարելով, որ ճահիճները
անհրաժեշտ բնական ամրություն են ընձեռում, իսկ բնակարան-
ների միջև շուրջանակի ճանապարհ թողեց, երկու պլեթրոն[36] լայ-
նությամբ[37]։*

8,1 *Այս ամենի շինարարությունն արագ ավարտելու նպատակով,
իր բարեկամներից[38] յուրաքանչյուրին չափանշեց մեկ ասպարեզ
(տարածություն), մատակարարելով դրա համար բավական միջոց-
2 ներ և հրամայելով գործերն ավարտել մեկ տարվա ընթացքում։ Ու
քանի որ նրանք իրենց հանձնարարված գործը կատարեցին մեծ ջա-
նասիրությամբ, նա շնորհակալությամբ ընդունեց նրանց նախան-
ձախնդրությունը, իսկ ինքը գետի ամենանեղ հատվածում կառուցեց
կամուրջ[39] հինգ ասպարեզ երկարությամբ, վարպետորեն հատակին
ամրացնելով սյուները, որոնք իրարից տասներկու ոտնաչափ[40] հե-
ռու էին, իսկ իրար հարած քարերը երկաթե կապերով ամրացրեց և
դրանց միացումները լցրեց հալած կապարով։ Եվ սյուների այն կող-
մերի առաջ, որոնք պետք է ընդունեին ջրի հոսանքը, նա անկյուն-
ներ կառուցեց կորագիծ կողերով, որոնք աստիճանաբար լայնա-
նում էին, հավասարվելով սյան լայնքին, որպեսզի անկյունների
սրությունը երկատեր հոսանքի թափը, իսկ կորագիծ կողերը են-
3 թարկվելով հոսանքի ուժին, մեղմացնեին գետի սրընթացությունը։
Այս կամուրջը, ծածկված լինելով մայրու և նոճու գերաններով,
ինչպես նաև արմավենու հսկայական բներով և ունենալով երեսուն
ոտնաչափ լայնք, իր բարձրարվեստ կառուցումով Սեմիրամիսի ոչ մի
այլ գործից վատ չէր համարվում։ Եվ գետի յուրաքանչյուր կողմում
քեղ ամբարտակ կառուցեց, մոտավորապես նույն լայնքի, ինչ
պարիսպները, հարյուր վաթսուն ասպարեզ երկարության վրա։*

*Նա կառուցեց նաև երկու ապարանք, անմիջապես գետափին,
կամրջի յուրաքանչյուր ծայրին, որտեղից նա նպատակ ուներ ամ-
4 բողջ քաղաքը դիտարկելու և միաժամանակ իր ձեռքում պահելու
քաղաքի կարևորագույն հատվածները։ Եվ քանի որ Եփրատը հո-
սում էր Բաբելոնի մեջտեղով և ընթանում էր դեպի հարավ, ապա
ապարանքներից մեկն ուղղված էր դեպի արևելք, մյուսը՝ դեպի
արևմուտք, և երկուսն էլ կառուցված էին ամենայն շքեղությամբ։
Դեպի արևմուտք ուղղված ապարանքի համար նախ կառուցեց ար-
տաքին շրջապատ, վաթսուն ասպարեզ (երկարությամբ), ամրաց-
ված բարձր և մեծաշուք պարիսպներով, թրծված աղյուսներից։*

Դրանց ներսում կառուցեց մի երկրորդը՝ շրջանաձև, որի աղյուս-
ների վրա, երբ դեռ սրանք անթուրծ էին, դրոշմեց բազմապիսի գա-
զանների (պատկերներ), որոնք գույների ճարտար օգտագործմամբ
5 վերարտադրում էին իրականությունը։ Այս պարսպի երկարությու-
նը քառասուն ասպարեզ էր, լայնքը կազմված էր երեք հարյուր աղ-
յուսից, իսկ բարձրությունը, ինչպես Կտեսիասն է պատմում, հի-
6 սուն գրկաչափ էր. աշտարակների բարձրությունը յոթանասուն
գրկաչափ էր։ Ներքնագույնս նա կառուցեց մի երրորդ պարիսպ, որի
մեջ գտնվում էր միջնաբերդը. միջնաբերդի շրջագիծը քսան ասպա-
րեզ էր, իսկ կառույցի բարձրությունը և լայնքը գերազանցում էին
միջին պարսպի կառուցվածքին։ Ե՛վ աշտարակների, և՛ պարիսպ-
ների վրա ամեն տեսակ կենդանիներ էին պատկերված, որոնք
մեծ արվեստով էին պատրաստված գույների օգտագործմամբ և
տեսակների նմանեցմամբ. այդ ամբողջը ներկայացնում էր տար-
բեր գազանների որսի մի տեսարան՝ ամենայն մանրամասնու-
թյամբ, որտեղ (գազանների) մեծությունը չորս կանգունից ավելի
էր։ Դրանց մեջ պատկերված էր նաև Սեմիրամիսը, ձիու վրայից
նիզակահարելիս հովազին, իսկ կողքին նրա ամուսին Նինոսը իր
7 տեգով հարվածում էր առյուծին։ Այստեղ նա կանգնեցրեց նաև
եռակի դարբասներ, որոնցից երկուսը բրոնզից էին և բացվում էին
մեքենայի միջոցով։
Այս ապարանքը և՛ իր մեծությամբ, և՛ իր կառույցներով շատ էր
գերազանցում գետի մյուս կողմում գտնվող ապարանքին։ Որով-
հետև այս վերջինիս թրծած աղյուսներից (կառուցված) պարսպի
շրջագիծը երեսուն ասպարեզ էր, իսկ կենդանիների արվեստական
պատկերների փոխարեն այնտեղ կային Նինոսի և Սեմիրամիսի և
նրանց տեղապահների բրոնզե արձանները, ինչպես նաև Զեսի (ար-
ձանը), որին բաբելոնացիները կոչում են Բելոս[41], այնտեղ պատ-
կերված էին տեսնողներին բազմազան հաճույք պատճառող և՛ ռազ-
մական, և՛ ամեն տեսակ որսի տեսարաններ։
9,1 Այնուհետև ընտրելով Բաբելոնիայի ամենացածրադիր վայրը,
այնտեղ պատրաստեց քառակուսի ջրավազան, որի յուրաքանչյուր
կողմը երեք հարյուր ասպարեզ էր, այն կառուցված էր թրծած աղ-
2 յուսով և կուպրով, և ուներ երեսունհինգ ոտնաչափ խորություն։
Արդ, գետի (հոսանքը) շեղելով դեպի այնտեղ, երկու ապարանքը
իրար միացնող գետնուղի կառուցեց, այն պատրաստելով թրծած
աղյուսներից. և կամարակապ սենյակները յուրաքանչյուր կողմից
օծեց եռացած կուպրով այնքան, մինչև որ օծման հաստությունը
դարձավ չորս կանգուն։ Այս գետնուղու պատերի հաստությունը

կազմված էր քսան աղյուսից, իսկ բարձրությունը, առանց կամարի
3 կորության, տասներկու ոտնաչափ էր։ Եվ յոթն օրում այն կառուցելուց հետո գետը նորից բաց թողեց իր նախկին հունով, այնպես, որ թեպետև գետի ջրերը հոսում էին գետնուղու վրայով, Սեմիրամիսը կարող էր մեկ ապարանքից մյուսը գնալ, առանց գետով անցնելու։ Գետնուղու ամեն մի ծայրին նա բրոնզե դարբասներ կառուցեց, որոնք կանգուն մնացին մինչև պարսիկների տիրապետությունը։

4 Այնուհետև քաղաքի մեջտեղում նա կառուցեց տաճար Զևսին, որին, ինչպես ասացինք, բաբելոնացիները կոչում են Բելոս։ Արդ, քանի որ դրա վերաբերյալ պատմիչները տարաձայն են և կառույցն էլ ժամանակի ընթացքում փլուզման էր ենթարկվել, հնարավոր չէ դրա մասին ճշգրիտ խոսք ասել։ Բայց բոլորը վկայում են, թե այն եղել է չափազանց բարձր, և որ քաղդեացիները նրանում դիտար-
5 կում էին աստղերը, որոնց ծագելն ու մայր մտնելը ճշտորեն երևում էր կառույցի բարձրության շնորհիվ[42]։ Ամբողջ շենքը կառուցված էր վարպետորեն, մեծ քանակությամբ աղյուսի և կուպրի օգտագործմամբ, և վերելքի գագաթին (Սեմիրամիսը) կանգնեցրեց կոփածո ոսկուց երեք արձան՝ Զևսի, Հերայի և Հռեայի[43]։ Սրանցից Զևսի արձանը պատկերում էր նրան կանգնած վիճակում, քայլ արած. բարձրությունը[44] քառասուն ոտնաչափ էր և կշռում էր բաբելոնյան հազար տաղանդ[45], իսկ Հռեայի արձանը (պատկերում էր նրան) նստած ոսկե գահավորակին և ուներ նույն կշիռը, ինչ վերոհիշյալը, նրա ծնկներին կանգնած էին երկու առյուծ, իսկ կողքին կային շատ խոշոր արծաթե օձեր, որոնցից յուրաքանչյուրը երեսուն տաղանդ
6 ծանրությամբ։ Մինչդեռ Հերայի արձանը կանգնած (դիրքում) էր, իսկ կշիռը՝ ութ հարյուր տաղանդ, աջ ձեռքում բռնել էր օձը գլխից,
7 իսկ ձախ ձեռքում ուներ (թանկարժեք) քարերով ընդելուզված մական։ Այս բոլորի առաջ դրված էր ընդհանուր սեղան, կոփածո ոսկուց պատրաստած, որի երկարությունը քառասուն ոտնաչափ էր,
8 լայնքը՝ տասնհինգ, և կշռում էր հինգ հարյուր տաղանդ։ Դրա վրա կար երկու գավաթ[46], որոնց կշիռը երեսուն տաղանդ էր։ Կային նաև նույն թվով խնկամաններ, որոնցից յուրաքանչյուրը կշռում էր երեք հարյուր տաղանդ. նույնպես երեք ոսկե կրատեր[47], որոնցից Զևսին (ձոնվածը) կշռում էր բաբելոնյան հազար երկու հարյուր
9 տաղանդ, իսկ մյուսներից յուրաքանչյուրը՝ վեց հարյուր։ Բայց այս ամենը հետագայում հափշտակեցին Պարսից թագավորները[48], իսկ պալատների և մյուս կառույցների մի մասը ժամանակը բոլորովին անհետացրեց, մյուս մասը վերածեց ավերակների։ Եվ այժմ ահա

իր իսկ Բաբելոնի մի փոքր մասն է բնակեցված, իսկ պարիսպներից
ներս գտնվող տարածության մեծ մասը հերկվում է։
10,1 Միջնաբերդի մոտ կար նաև կախյալ կոչված պարտեզը, որը կա-
ռուցել էր ոչ թե Սեմիրամիսը, այլ հետագայում սիրիացի[49] թագա-
վորներից մեկը, ի սեր վարձակ կնոջ. քանզի վերջինս, ինչպես
պատմում են, ծագումով պարսկուհի[50] լինելով, և խիստ կարոտելով
իր լեռների մարգագետինները, ստիպեց թագավորին արհեստական
պարտեզ տնկելով, այն նմանեցնի պարսկական երկրի բնությա-
2 նը[51]։ Այս պարտեզի յուրաքանչյուր կողմը ձգվում էր մինչև չորս
պլեթրոն, իսկ մատույցները բլրանման էին, և կառույցները աստի-
ճանաբար բարձրանում էին մեկը մյուսի վրա, այնպես, որ ամբողջ
3 տեսարանը թատրոնի ձև էր ընդունում։ Բարձրանալու համար
պատրաստված աստիճանների տակ կառուցված էին ստորգետնյա
սրահներ, որոնք իրենց վրա էին կրում տնկարանի ամբողջ ծանրու-
թյունը և փոքր առ փոքր բարձրանում էին մեկը մյուսի վրա, մա-
տույցի երկարությամբ, և բոլորից վերև գտնվող սրահը, որի բարձ-
րությունը հիսուն կանգուն էր, իր մակերևույթով հասնում էր ամե-
4 նաբարձր տեղը, հավասարվելով պարսպի աշտարակների բարձրու-
թյանը։ Այնուհետև, շքեղ պատրաստված պատերը ունեին քսաններ-
կու ոտնաչափ հաստություն, իսկ անցումներից յուրաքանչյուրը
տասը ոտնաչափ լայնություն։ Տանիքը ծածկված էր քարե հեծան-
ներով, որոնց երկարությունը շարվածքի հետ տասնվեց ոտնա-
5 չափ էր, իսկ լայնքը՝ չորս։ Այս հեծանների վրա կտուրը ծածկված
էր եղեգներով՝ ծեփված առատ կուպրով, իսկ դրա վրա երկու շարք
թրծած աղյուս՝ կրով իրար ամրացած, մինչդեռ երրորդ շերտը
կապարե ծածկույթ էր, որպեսզի հողի խոնավությունը չթափանցեր
դեպի խորքը։ Այդ ամենի վրա էլ հող էր կիտված այնպիսի շերտով,
որ կբավականացներ նույնիսկ ամենամեծ ծառերի արմատներին,
իսկ գետինը հարթեցված էր և առատորեն ծածկված ամեն տեսակ
ծառերով, որոնք և՛ իրենց մեծությամբ և՛ իրենց գեղեցկությամբ
6 հաճոյացնում էին դիտողներին։ Եվ սրահները, որոնք լույսը ստա-
նում էին աստիճանաբար իրար վրա բարձրացող ելուստամասերից,
կազմում էին ամեն տեսակի արքունի դահլիճներ։ Դրանցից մեկն
ուներ ամենաբարձր մակարդակից արված կտրվածքներ և ջուր մա-
տակարարելու հարմարանքներ, որոնց միջոցով գետից մեծ քանա-
կությամբ ջուր էր վերցվում, թեպետև դրսից որևէ մեկը այդ կա-
տարվածից ոչինչ չէր կարող տեսնել։ Այս պարտեզը, ինչպես ասել
եմ արդեն, կառուցվել է հետագայում։

11,1 Սեմիրամիսը Եփրատ և Տիգրիս գետերի երկայնքով ուրիշ քա-
ղաքներ ևս կառուցեց, որոնցում առևտրական կետեր հաստատեց
նրանց համար, ովքեր Մեդիայից և Պարետակեններից[52], ինչպես նաև
հարևան բոլոր երկրներից բեռներ էին բերում։ Քանզի Նեղոսից և
Գանգեսից հետո Եփրատը և Տիգրիսը, կարելի է ասել, առավել
նշանակալից գետերն են Ասիայում, որոնց ակունքները Հայկական
2 լեռներում են և իրարից գտնվում են երկու հազար հինգ հարյուր
ասպարեզ հեռավորության վրա[53], այնուհետև նրանք հոսելով Մե-
դիայի և Պարետակենեի միջով, մտնում են Միջագետք, որը նե-
րառնելով իրենց միջև, պատճառ են եղել երկրի այդպիսի անվան-
3 ման։ Այնուհետև ճեղքելով Բաբելոնիան, դուրս են գալիս Կարմիր
ծով[54]։ Եվ քանի որ նրանք խոշոր գետեր են և անցնում են մի շարք
երկրների միջով, ուստի շատ առավելություններ են ընձեռում
առևտրական գործերով զբաղվողներին, այդ իսկ պատճառով նրանց
մերձափնյա շրջաններում առաջացել են բազմաթիվ բարգավաճ
վաճառատեղեր, որոնք մեծապես նպաստել են Բաբելոնիայի հայտ-
նի դառնալուն։
4 Սեմիրամիսը Հայկական լեռներից[55] մի քար կտրեց, երկարու-
թյունը հարյուր երեսուն ոտնաչափ, իսկ լայնքը և հաստությունը՝
քսան և հինգ. նա ջորիների և եզների բազմաթիվ լծերով (այդ քարը)
իջեցրեց դեպի գետը և այնտեղ բարձեց լաստի վրա ու դրանով հո-
սանքն ի վար բերելով մինչև Բաբելոնիա, այն կանգնեցրեց ամե-
նաերևելի ճանապարհի կողքին, որպես զարմանալի տեսարան այն-
տեղից անցնողներին։ Ոմանք այն, իր ձևի պատճառով, անվանում
են կոթող[56], որը և համարում են, այսպես կոչված, յոթ հրաշալիք-
ներից մեկը։
12,1 Բաբելոնիայում թեպետև կան բազմաթիվ զարմանալի տեսա-
րաններ, այսուհանդերձ պակաս հրաշալի չի թվում այնտեղ արդյու-
նահանվող կուպրի առատությունը. դա այնքան մեծաքանակ է, որ
ոչ միայն բավականացնում է այսքան շատ և այսքան խոշոր կա-
ռույցներին, այլև ժողովուրդը խմբվելով այն առատորեն հավա-
քում է տեղում[57] և չորացնելով, վառում է փայտի փոխարեն[58]։ Ու
2 թեպետ մարդկանց անթիվ բազմություն է զբաղվում այն արդյու-
նահանելով, բայց այն մնում է աննվազ, ասես դուրս է գալիս ան-
սպառ մի աղբյուրից։ Այդ աղբյուրին մոտիկ գտնվում է նաև ոչ մեծ
չափի օդ արտաշնչող անցք, որն ունի զարմանահրաշ զորություն։
Քանզի այն արտաբերում է ծծմբային ծանր գոլորշի, որին մոտե-
ցող ամեն մի կենդանի էակ մեռնում է արագ և տարօրինակ մա-
հով, քանզի որոշ ժամանակ նրա շունչը ենթարկվելով դրան, կոր-

ծանվում է, կարծես թե նրա արտաշնչումը սրգելվում է շնչառու-
թյունը ճնշող ուժի միջոցով, մարմինը իսկույն ուռչում է և այրուց
3 քից փքվում, հատկապես թոքերի շուրջ եղած հատվածներում։ Գե-
տից այն կողմը կա նաև մի լիճ, որի ափերը հաստատուն ձև ունեն.
և եթե որևէ անփորձ մարդ մտնի այդ լիճը, սկզբում փոքր-ինչ կլո-
ղա, բայց դեպի մեջտեղն առաջանալիս նա, կարծես ինչ-որ ուժի մի-
ջոցով դեպի խորքն է քաշվում ու երբ արդեն փորձում է իր ուժերով
նորից վերադառնալ դեպի ափ և համառորեն մաքառում է փրկվելու
համար, թվում է, թե ինչ-որ մեկը նրան ետ է քաշում. մահացման
են ենթարկվում նախ ոտքերը, այնուհետև սրունքները՝ մինչև ազդ-
րերը, և վերջում ամբողջ մարմինը անզգայանալով, տարվում է դե-
պի հատակը և քիչ անց վեր է նետվում մահացած։ Ահա Բաբելո-
նիայում եղած հրաշալիքների մասին ասվածը թող բավական լինի։
13,1 Երբ Սեմիրամիսն արդեն վերջացրել էր իր կառուցողական աշ-
խատանքները, մեծ զորքով արշավանքի ելավ Մեդիայի դեմ։ Եվ
երբ նա հասավ այն լեռը, որ կոչվում է Բագիստանոն[59], այնտեղ էլ
բանակ դրեց և պարտեզ կառուցեց, որի շրջագիծը տասներկու աս-
2 պարեզ էր և, գտնվելով դաշտավայրում, ուներ մի մեծ աղբյուր, որ-
տեղից տնկարանը ոռոգվում էր։ Բագիստանոն լեռը Զևսի սրբա-
վայրն է, և պարտեզի կողմը նայող հատվածում կան զառիվեր
ժայռեր, որոնց բարձրությունը հասնում է մինչև տասնյոթ ասպա-
րեզի։ Դրա ցածրագույն մասը հղկելով, վրան փորագրեց իր իսկ
պատկերը, իրեն շրջապատող հարյուր նիզակակիրներով։ Ժայռի
վրա նա թողեց նաև արձանագրություն սիրիական գրերով[60], թե
«Սեմիրամիսը իր զորքում եղած բեռնակիր գրաստների թամբերով
դաշտում թումբ բարձրացրեց ու լցրեց այս անդունդը և բարձրա-
ցավ մինչև (ժայռի) գագաթը»[61]։
3 Այստեղից նա վերսկսեց իր արշավանքը և, հասնելով Մեդիայի
Քավոն քաղաքը, նա մի բարձրադիր դաշտում ժայռ նկատեց, որն
ուներ զարմանալի բարձրություն և մեծություն։ Նա այնտեղ նույն-
պես մեկ ուրիշ խոշորագույն պարտեզ կառուցեց, ժայռը թողնելով
դրա մեջտեղում և ժայռի վրա իր հաճույքի համար շքեղ կառույց-
ներ կանգնեցրեց, որտեղից նա դիտում էր և՛ պարտեզի ծառաս-
4 տանները, և՛ դաշտում բանակած ամբողջ զորքը։ Այդ վայրում էլ
նա բավական երկար ժամանակ ապրելով և ամեն տեսակ հաճույք-
ներ վայելելով հանդերձ, չկամեցավ օրինավոր կերպով ամուսնա-
նալ, վախենալով, որ կարող է երբևիցե զրկվել իշխանությունից,
ուստի նա, ընտրելով զինվորների միջից գեղեցկությամբ աչքի ընկ-

նողներին, կենակցում էր նրանց հետ և բոլորին, ովքեր իրեն մեր-
ձենում էին, ոչնչացնում էր։
5 Այնուհետև, նա շարունակելով իր արշավանքը դեպի Եկբատա-
նա[62], հասավ Զարկայոս կոչվող լեռը[63]։ Ու քանի որ այն ձգվում էր
բազում ասպարեզների վրա և այնտեղ կային մեծ թվով գահավեժ
ժայռեր ու ձորեր, ապա նրա շրջանցումը երկար (ճանապարհ) էր։
Նա բուռն ցանկություն ունեցավ իր համար անմահ հուշարձան
թողնել, միաժամանակ և կրճատել ճանապարհը։ Ուստի և գահա-
վեժ ժայռերը կտրելով և ցածրավայրերը լցնելով, կարճ և մեծ
ծախսեր պահանջող ճանապարհ կառուցեց, որը մինչև հիմա կոչ-
6 վում է Սեմիրամիսի (ճանապարհ)։ Հասնելով Եկբատանա քա-
ղաքը, որն ընկած է դաշտավայրում, այնտեղ կառուցեց շքեղ պա-
լատ և այդ վայրին ամեն տեսակետից առավելագույն ուշադրու-
թյուն դարձրեց։ Քանի որ քաղաքը զրկված էր ջրից և մոտակա ոչ
մի վայրում աղբյուր չկար, ապա նա ամբողջ քաղաքը ջրով ապա-
7 հովեց, մեծ դժվարություններով ու ծախսերով առատ և լավագույն
ջուր բերելով։ Քանզի Եկբատանայից տասներկու ասպարեզ հեռա-
վորությամբ գտնվում է Օրոնտես կոչված լեռը, որն առանձնապես
հայտնի է իր անմատչելիությամբ և բարձրակարկառ ժայռերով,
այնպես, որ այն ուղիղ ձգվում է մինչև գագաթը քսանհինգ ասպա-
րեզ բարձրությամբ։ Ու քանի որ լեռան մյուս կողմում կար մեծ
8 լիճ, որը դետն էր թափվում, կտրեց այդ լեռը ստորոտում։ Այդ
ջրանցքը տասնհինգ ոտնաչափ լայնություն ունի և քառասուն (ոտ-
նաչափ) բարձրություն, դրա միջոցով նա գետ բերեց լճից և քաղաքը
լիացրեց ջրով։ Ահա այս գործերը նա կատարեց Մեդիայում։
14,1 Այնուհետև նա շրջեց Պերսիսը[64] և Ասիայում իր տիրապետու-
թյան տակ գտնվող բոլոր մյուս երկրները։ Եվ ամենուրեք նա լեռ-
ներն ու գահավեժ ժայռերը կտրելով, մեծ ծախսեր պահանջող
ճանապարհներ կառուցեց, իսկ դաշտերում էլ հողաբլուրներ (բարձ-
րացրեց), մերթ դամբարաններ կառուցելով մահացած առաջնորդ-
2 ների համար, մերթ էլ դրանց գագաթին քաղաքներ հաստատելով։
Նա սովորություն ուներ նաև իր բանակած վայրերում փոքր հո-
ղաթմբեր կառուցել, որոնց վրա իր վրանը դարկելով, դիտարկում
էր ամբողջ ճամբարը։ Իբրև հետևանք այդ բոլորի, մինչև հիմա էս
Ասիայում նրա կողմից կառուցվածներից շատ բան մնացել է և այդ
ամենը կոչում են Սեմիրամիսի գործեր[65]։
3 Այնուհետև նա շրջեց ամբողջ Եգիպտոսը և Լիբիայի մեծագույն
մասը ավերելուց հետո այցելեց այնտեղ գտնվող Ամմոնի[66] (տա-
ճարը), հարցնելու համար աստծուն իր վախճանի մասին։ Ասվում

է, թե նրան պատգամ տրվեց, որ պետք է աներևութանա մարդկանց
միջից և Ասիայի մի շարք ժողովուրդների մոտ արժանանա անմահ
պատվի, իսկ այդ պետք է տեղի ունենա այն ժամանակ, երբ իր որ-
դին՝ Նինվասը դավ նյութի իր դեմ։
20,1 Որոշ ժամանակ հետո նրա որդին՝ Նինվասը դավ նյութեց նրա
դեմ ինչ-որ ներքինու միջոցով. և նա, հիշելով Ամմոնի տված պատ-
գամը, դավադրություն նյութողին չպատժեց, այլ, ընդհակառակը,
թագավորությունը հանձնելով նրան և կառավարիչներին հրամա-
յելով հնազանդվել նրան, ինքը աներևույթ եղավ, ասես թե տր-
2 ված պատգամի համաձայն գնաց փոխարկվելու աստծու։ Ոմանք
առասպելաբանելով ասում են, թե նա փոխակերպվել է աղավնու և
թռել է իր տանը թառած բազմաթիվ հավքերի երամի հետ։ Այդ պատ-
ճառով էլ ասորեստանցիները իբրև աստված պաշտում են աղավ-
նուն, դրանով էլ անմահացնելով Սեմիրամիսին։ Այսպես, ուրեմն,
նա թագավորելով ամբողջ Ասիայի վրա, բացի Հնդկաստանից, վախ-
ճանվեց վերոհիշյալ կերպ, ապրելով վաթսուն երկու տարի և թա-
գավորելով քառասուներկու (տարի)[67]։
3 Ահա այսպես է պատմում Կտեսիաս Կնիդիացին Սեմիրամիսի
մասին, իսկ Աթենայոսը[68] և մի քանի այլ հեղինակներ պատմում են,
թե նա եղել է սիրադեմ հետերա[69] և իր գեղեցկության պատճառով
4 սիրվել է Ասորեստանի թագավորի կողմից։ Սկզբում նա արքունի-
քում չափավոր ընդունելության արժանացավ, բայց հետագայում,
երբ արդեն հռչակվեց (թագավորի) օրինական կինը, համոզեց ար-
5 քային հինգ օր թագավորական իշխանությունը զիջել իրեն։ Եվ Սե-
միրամիսը ստանձնելով գավազանը և արքայական տարազը, առա-
ջին իսկ օրը տոնախմբություն կազմակերպեց և հոյակապ ընթրիք
տվեց, որի ժամանակ համոզեց զորապետներին և բոլոր ականա-
վորագույն մարդկանց գործակցել իրեն։ Հաջորդ օրը, քանի դեռ
բազմությունը և ամենաերևելի մարդիկ նրան մեծարում էին իբրև
թագուհու, նա ամուսնուն կալանավորեց ու բանտարկեց. և քանի որ
նա բնավորությամբ մեծագործության էր ձգտում և համարձակ էր,
իշխանությունը զավթեց և մինչև ծերություն տիրելով իբրև թագու-
հի, շատ և մեծ գործեր կատարեց։ Ահա այսպիսի հակասություններ
են հանդիպում պատմիչների մոտ Սեմիրամիսի գործունեության
մասին։
21,1 Նրա մահից հետո Նինվասը, Նինոսի և Սեմիրամիսի որդին,
վերցնելով իշխանությունը, խաղաղությամբ կառավարեց և երբեք
2 չնախանձեց իր մոր ռազմամոլ և արկածախնդիր ոգուն։ Քանզի նա,
առաջին հերթին, իր ամբողջ ժամանակը անց էր կացնում արքունի-

քում և ոչ որ նրան չէր տեսնում, բացի իր վարձակներից և նրան
շրջապատող ներքինիներից։ Նա իրեն հանձնել էր ցոփության ու
անհոգության և ձգտում էր մշտապես հեռու մնալ դժվարություն-
ներից և մտահոգություններից, հուսալով, որ իր թագավորության
2 վախճանը կլինի ամեն տեսակ հաճույքների ըմբոշխնումը։ Այս
ամենից բացի, իր իշխանության ապահովության համար և իր
հպատակներից զգացած վախի պատճառով, նա ամեն տարի
4 յուրաքանչյուր ազգից պահանջում էր որոշակի թվով զինվոր-
ներ ու մեկ զորավար, և այդ բոլորից գումարված զորքը պա-
հում էր (մայրա) քաղաքից դուրս, յուրաքանչյուր ազգի վրա իբրև
առաջնորդ նշանակելով իր մերձավորներից հավատարմագույնին։
Տարին լրանալիս նա դարձյալ պահանջում էր ազգերից նույնքան
5 թվով զինվորներ, իսկ նախկիններին արձակում էր իրենց հայրե-
նիքը։ Նման գործելաձևի հետևանքը այն էր, որ բոլոր իր իշխանու-
թյան ենթակա եղողները համակվում էին երկյուղով, քանի որ
մշտապես տեսնում էին բացօթյա բանակած մեծ թվով զորք, որը
6 պատրաստ էր պատժելու ապստամբներին կամ անհնազանդներին։
Իսկ զինվորների ամենամյա փոփոխումը նա կիրառում էր, որպես-
զի նախքան զորավարների և մյուս բոլորի իրար լավ ճանաչելը,
ամեն մեկը բաժանվելով վերադառնար իր հայրենիքը։ Քանզի եր-
կար ժամանակ զորքում լինելը մի կողմից առաջնորդներին հըմ-
տացնում է ռազմական արվեստին և բարձրացնում նրանց ինք-
նավստահությունը, մյուս կողմից, որ ամենակարևորն է, իրենց
տերերի դեմ ապստամբելու և դավադրություն նյութելու մեծ առիթ-
7 ներ է ստեղծում։ Ու քանի որ ինքը դրսում գտնվողներից ոչ մեկին
չէր երևում, ապա բոլորը անգիտանում էին նրա ցոփության մա-
սին, և ինչպես աներևույթ աստծուց, բոլորը վախենում էին նրանից
և չէին համարձակվում նույնիսկ խոսքով հայհոյել նրան։ Այսպի-
սով, ամեն մի ազգի համար զորավարներ, սատրապներ ու կառա-
վարիչներ նշանակելուց և բոլոր դեպքերում ամեն ինչ իր օգուտի
համաձայն կարգադրելուց հետո, նա իր ամբողջ կյանքի ընթացքում
ապրեց Նինոս (քաղաքում)։
8 Նրա օրինակին հետևեցին նաև մնացյալ թագավորները և հո-
րից որդի ժառանգելով իշխանությունը, երեսուն սերունդ[70] թագա-
վորեցին մինչև Սարդանապալոս[71], քանզի նրա ժամանակ ասորես-
տանցիների տերությունը, որը, ինչպես պատմում է Կտեսիաս Կնի-
դացին իր (պատմության) երկրորդ գրքում, գոյություն էր ունեցել
ավելի քան հազար երեք հարյուր տարի, անցավ մեդացիներին։
23,1 Սարդանապալոսը հանդիսանալով երեսուներորդը տերության

հիմնադիր Նինոսից հետո և վերջինը Ասորեստանի թագավորներից,
իր բոլոր նախորդներին գերազանցեց իր ցոփությամբ ու ծուլու-
թյամբ[72]։ Քանզի նա դրսից ոչ ոքի չէր երևացել և (պալատում)
ապրել էր կնոջ կյանքով և իր օրերն անց կացնելով վարձակների
հետ, ծիրանի էր գործում և փափկագույն բուրդ մանում, հագնում
էր կանացի զգեստ, իսկ դեմքն ու ամբողջ մարմինը խնամում էր
սպիտակեցնող շպարներով և հետերաների օգտագործած այլ օծա-
2 նելիքներով, և (մաշկը) դառնում էր առավել նուրբ, քան որևէ
քնքուշ կնոջ։ Նա մեծապես ջանաց նաև իր ձայնը կանացի դարձնել
և խրախճանքների ժամանակ ոչ միայն մշտապես անձնատուր էր
լինում առավելագույն հաճույք պատճառելու հատկություն ունեցող
խմիչքների և ուտելիքի, այլև հետապնդում և՛ այրի և կնոջ պատ-
ճառած սիրային հաճույքները վայելել. քանզի նա անսանձ կերպով
կենակցում էր երկու սեռերի հետ, բոլորովին էլ չմտածելով այդ-
3 պիսի վարքի անպատվության մասին։ Նա այնքան հեռու գնաց իր
ցոփության և ստորագույն վայելքների, ինչպես նաև անսանձության
մեջ, որ ինքը իր համար դամբանական գրեց և պատվիրեց իր դահի
ժառանգներին իր մահից հետո դերեզմանի վրա փորագրեն այդ
տողերը, որ հյուսել էր բարբարոսների լեզվով, իսկ հետագայում
մի հելլեն այն թարգմանեց (հունարեն) այսպես.

«Քաջ իմանալով, որ դու ծնվել ես լոկ մահկանացու,
Անվերջ քո հոգին խրախճանքների գիրկն է նետվել.
Չէ՞ որ մեռնելը երբեք չի կարող քեզ օգուտ բերել,
Ու ես թշվառս գահակալել եմ մեծն Նինվեում,
Միայն մոխիր եմ և ուրիշ ոչինչ։
Ինձ մնաց միայն գինարբուքներում կերած-խմածս
Ու ցոփությունը անառակ սիրո, իսկ այն ամենը
Ինչ այլոց համար երջանկություն է, մնաց ետևումս»։

4 Ահա նա այսպիսի բնավորությամբ ոչ միայն ինքը ամոթալի
կերպով խորտակեց իր կյանքը, այլև վերջնականապես կործանեց
ասորեստանյան տերությունը, որը (պատմությանը) հայտնիներից
ամենաերկարատևն էր եղել։

24,1 Քանզի ոմն Արբակես[73], ծագումով մեդացի, որը հայտնի էր իր
քաջությամբ և հոգու պայծառությամբ, զորավարն էր այն մեդա-
ցիների, որոնք ամեն տարի ուղարկվում էին Նինոս (քաղաք)։ Զոր-
քում նա մտերմացավ բաբելոնացիների զորավարի հետ և նրա կող-
2 մից դրդվեց ասորեստանյան տերությունը տապալելու։ Նրա
անունն էր Բելեսյուս և նա ամենահայտնին էր քրմերից, որոնց բա-
բելոնացիները կոչում են քաղդեացիներ։ Ու քանի որ նա խորապես
հմուտ էր աստղագիտության և գուշակության, ուստի և շատերին

անսխալ կերպով կանխագուշակում էր նրանց ապագան։ Եվ որով-
հետև այդ պատճառով նա հարգված էր, իր հետ բարեկամացած
մեդացիների զորավարին գուշակեց, որ սա անպայման պետք է
3 թագավորի բոլոր այն երկրների վրա, որտեղ տիրում է Սարդանա-
պալոսը։ Իսկ Արբակեսը, գովաբանելով այդ մարդուն, խոստացավ
նրան Բաբելոնիայի սատրապությունը, երբ գործը հասնի իր ավար-
տին. մինչդեռ ինքը, ասես ինչ-որ աստծու պատգամից ոգևորված,
մյուս ազգերի առաջնորդների հետ դաշնակցում էր և բոլորին ջա-
նասիրաբար հրավիրում էր խնջույքների և հավաքույթների, յուրա-
4 քանչյուրի հետ բարեկամություն հաստատելով։ Նա որոշեց նաև
երես առ երես տեսնել թագավորին և հետևել նրա ամբողջ ապրելա-
կերպին։ Այդ նպատակով ներքինիներից մեկին նա ոսկե բաժակ
պարգևելով, առաջնորդվեց Սարդանապալոսի առաջ, ու երբ նա մո-
տիկից ականատես եղավ նրա ցոփ կյանքին և կանացի զբաղմունք-
ների նկատմամբ նրա սիրուն, արհամարհեց թագավորին, իբրև բո-
5 լորովին անարգ մարդու, առավել ևս կառչեց քաղդեացու կողմից
իրեն տրված հույսերին։ Ի վերջո նա դավադրություն նյութեց Բելե-
սյուսի հետ, այն պայմանով, որ ինքը պետք է ոտքի հաներ մեդա-
ցիներին և պարսիկներին, մինչդեռ վերջինս պետք է համոզեր բա-
բելոնացիներին հաղորդակից դառնալ այդ գործին և ստանար իր
բարեկամի՝ արաբների առաջնորդի օժանդակությունը, դրանով
իսկ ստանձնելով հսկողությունը բոլորի վրա[74]։
6 Երբ լրացավ զորքում մնալու մեկ տարվա ժամկետը և արդեն
նրանց փոխարինելու եկան նորերը, նախկինները, ընդունված կարգի
համաձայն, արձակվեցին իրենց երկրները, այնժամ Արբակեսը հա-
մոզեց մեդացիներին հարձակվել (Ասորեստանի) թագավորության
վրա, իսկ պարսիկներին՝ իրենց ազատության համար հաղորդակից
լինել դավադրությանը։ Նույն եղանակով Բելեսյուսը ևս համոզեց
բաբելոնացիներին պայքարել իրենց ազատության համար և դես-
պանություն ուղարկելով Արաբիա, իր կողմը գրավեց տեղաբնակ-
ների առաջնորդին, որն իր բարեկամն էր և կապված էր իր հետ փո-
7 խադարձ հյուրընկալությամբ, որպեսզի մասնակցի հարձակմանը։
Մեկ տարի լրանալուց հետո այս բոլոր առաջնորդները բազում զորք
հավաքեցին և լրիվ կազմով եկան Նինոս, առերևույթ, սովորության
համաձայն, փոխարինողներին բերելով, բայց իրականում ասորես-
տանցիների տիրապետությունը տապալելու համար։ Ու երբ այս
8 վերոհիշյալ ազգերը գումարվեցին միևնույն վայրում, նրանց ընդ-
հանուր թիվը հասավ քառասուն բյուր մարդու, նրանք հավաքվե-

լով մեկ զորակայանում, խորհրդակցեցին գործողության լավագույն
ծրագրին ի խնդիր։
25.1 Սարդանապալոսը, տեղեկանալով ապստամբության մասին,
իսկույն նրանց դեմ դուրս բերեց մյուս ազգերից հավաքված զոր-
քերը։ Եվ սկզբում, երբ բաց դաշտում ճակատամարտ տեղի ունե-
ցավ, ապստամբները պարտվեցին և, բազում զոհեր տալով, նահան-
2 ջեցին Նինոսից յոթանասուն ասպարեզ հեռու գտնվող մի լեռ։ Այնու-
հետև, սակայն, երբ նրանք նորից իջան դաշտ և պատրաստվեցին
ճակատամարտելու, Սարդանապալոսն իր զորքը դասավորեց նրանց
շարքերի դեմ և քարոզներ ուղարկեց թշնամու զորակայանը (հա-
զորդելու), թե «Սարդանապալոսը մեդացի Արբակեսին սպանողին
կտա երկու հարյուր ոսկե տաղանդ, իսկ նրան կենդանի հանձնողին
3 պարգև կտա կրկնակի այդչափ և միաժամանակ նրան կհաստատի
Մեդիայի կառավարիչ»։ Նույնպիսի պարգևներ խոստանում էր նաև
բաբելոնացի Բելեսյուսին սպանողին կամ կենդանի բերողին։ Բայց
քանի որ ոչ ոք ուշադրություն չդարձրեց նրա այդ հայտարարու-
թյուններին, նա ճակատամարտ տվեց և ապստամբներից շատերին
սպանեց, իսկ մնացած բազմությանը հալածեց դեպի լեռներում
գտնվող նրանց զորակայանը։
4 Եվ Արբակեսի մերձավորները, որոնք պարտության հետե-
վանքով վհատվել էին, նրա մտերիմներին հավաքեցին խորհրդի,
5 որոշելու, թե ինչ պետք է անել։ Այնժամ նրանցից շատերը ասա-
ցին, թե պետք է հեռանալ իրենց երկրները և ամրացված կետերը
վերցնելով, ինչքան հնարավոր է պատերազմի համար անհրա-
ժեշտ ամեն ինչ պատրաստել։ Բայց Բելեսյուս բաբելոնացին
պնդելով, որ աստվածները նշաններով հայտնել են, թե իրենք
ջանքերով ու դժվարություններով կկարողանան իրենց ձեռնար-
կածը հաջողությամբ ավարտել և ամէն կերպ քաջալերելով նրանց,
6 բոլորին համոզեց մնալ և դիմագրավել վտանգները։ Եվ երբ ար-
դեն տեղի ունեցավ երրորդ ճակատամարտը, դարձյալ թագավորը
հաղթեց և գրավեց ապստամբների զորակայանը և պարտվածնե-
ներին հալածեց մինչև Բաբելոնիայի սահմանները, ու պատահեց,
որ Արբակեսը ևս, որը ամենափայլուն կերպով կռվել էր և ապս-
7 տամբներից շատերին սպանել, վիրավորվեց։ Ու քանի որ
ապստամբները իրար ետևից այդքան շատ վնասներ էին կրել,
նրանց առաջնորդները, կորցնելով հաղթանակի ամեն մի հույս,
պատրաստվում էին յուրաքանչյուրը մեկնել իր հայրենի երկիրը։
8 Բայց Բելեսյուսը, որը գիշերը բացօթյա անքուն էր անցկացրել և
զբաղվել էր աստղերը դիտարկելով, դեպքերի նման ընթացքից

հուսահատվածներին ասաց, որ «եթե հինգ օր դիմանաք, ապա
օգնությունը կհասնի ինքնաբերաբար և ամբողջ իրադրության մեջ
հսկայական փոփոխություն կլինի դեպի հակառակ վիճակը, քան-
զի աստղերը դիտարկելու իմ հմտության հետևանքով ես դրան-
ցում տեսնում եմ աստվածների կողմից ձեզ տրված պատգամ-
ները»։ Եվ նա կոչ էր անում նրանց սպասել այդ օրերին և փորձել
իր հմտությունը և աստվածների բարեգործությունը։
26,1 Երբ այդպիսով բոլորը ետ կանչվեցին և սպասեցին պայմա-
նավորված ժամանակը, մի (լրաբեր) ժամանեց հաղորդելով, թե
Բակտրիանե (երկրից) թագավորին (օգնության) ուղարկված մի
2 զորամաս արդեն մոտեցել է և առաջանում է արտորալով։ Ուստի
նրանք որոշեցին, որ Արբակեսը ամենակարճ ճանապարհով գնա
հանդիպելու նրանց զորավարներին, իր հետ վերցնելով զին-
վորներից լավագույններին և առավել ճարպիկներին, որպեսզի
եթե խոսքերով չկարողանան համոզել բակտրիացիներին միանա-
լու ապստամբությանը, ապա զենքի ուժով ստիպեն նրանց հաղոր-
3 դակից լինել իրենց հույսերին։ Ի վերջո, (բակտրիացիները) ուրա-
խությամբ արձագանքեցին ազատության կոչին, նախ առաջ-
նորդները, ապա նաև ամբողջ զորքը, որից հետո նրանք բոլորը
բանակեցին միևնույն վայրում։
4 Այդ ժամանակ պատահեց, որ ասորեստանցիների թագա-
վորը, անգիտանալով բակտրիացիների ապստամբության մա-
սին, և ոգևորված իր նախորդ հաջողություններից, հանձնվեց
հանգստի, իսկ խրախճանքի համար իր զինվորներին բաժանեց
մորթելու անասուններ և մեծ քանակությամբ գինի և ամեն տե-
սակ այլ մթերքներ։ Ուստի և, մինչդեռ ամբողջ զորքը կերուխումի
մեջ էր, Արբակեսի մարդիկ ինչ-որ դասալիքներից տեղեկանալով
թշնամու զորաբանակում տիրող անհոգության և հարբեցողու-
5 թյան մասին, գիշերը անսպասելի հարձակում գործեցին։ Ու քանի
որ գրոհում էին կազմակերպված զորամասեր անկազմակերպ-
ների, պատրաստ եղողները անպատրաստ գտնվողների վրա, ապա
նրանք գրավեցին զորակայանը և զինվորներից շատերին սպանե-
6 լուց հետո, մնացածներին հալածեցին մինչև քաղաք։ Այնուհետև
թագավորը Գալայմենեսին, իր կնոջ եղբորը, զորավար կարգեց,
իսկ ինքը ուշադրությունը կենտրոնացրեց քաղաքի դրության վրա։
Բայց ապստամբները իրենց ուժերը դաշտում գումարելով քաղաքի
առաջ, երկու ճակատամարտերում հաղթեցին ասորեստանցիներին
և ոչ միայն սպանեցին Գալայմենեսին, այլև փախուստի մատնված
հակառակորդ զինվորների մի մասին կոտորեցին, իսկ մյուսնե-

րին, որոնք, զրկված լինելով քաղաք վերադառնալու հնարավորու-
7 թյունից, ստիպված էին իրենց նետել Եփրատ գետը, բացի քչերից
բոլորին սպանեցին։ Այնքան մեծ էր սպանվածների բազմությունը,
որ հոսող ջուրը արյամբ խառնվելով, բավական մեծ տարածության
վրա փոխել էր իր գույնը։ Այնուհետև, երբ արդեն թագավորը փակ-
ված էր քաղաքում և պաշարված, ազգերից շատերը ապստամբե-
ցին, ամեն մեկը ձգտելով ազատության հասնել։
8 Սարդանապալոսը տեսնելով, որ ամբողջ թագավորությունը
մեծագույն վտանգների մեջ է, իր ուստրերին, որոնք երեքն էին, և
երկու դուստրերին բազում գանձերով ուղարկեց Պաիլագոնիա[75],
եպարքոս Կոտտասի մոտ, որն իր ենթականերից ամենահավատա-
րիմն էր, իսկ ինքը սուրհանդակներ ուղարկեց բոլոր իրեն հպատակ
(կառավարիչներին), պատվիրելով զորքեր ուղարկել, իսկ ինքն
9 սկսեց պատրաստվել պաշարման։ Դեռևս նախնիներից իրեն մար-
գարեություն էր հասել, թե «ոչ ոք չի կարողանալու Նինոսը գրոհով
վերցնել, մինչև գետը չդառնա քաղաքին թշնամի»։ Ուստի ենթադ-
րելով, որ այդպիսի բան երբեք տեղի չի ունենա, նա չէր վհատվում,
այլ մտածում էր դիմանալ պաշարման և սպասել իր հպատակների
ուղարկելիք զորքերին։
27,1 Ապստամբները, ոգևորված իրենց հաջողություններից, ...ստ-
կացրին պաշարումը, բայց պարիսպների ամրության պատճա-
ռով քաղաքում գտնվողներին ոչնչով չէին կարողանում վնասել,
որովհետև պարիսպները քանդելու համար օգտագործվող քարանետ
մեքենաները կամ անկարող պաշտպանող ծածկույթները[76]
կամ էլ հարվածող խոյերը[77] դեռևս այդ ժամանակ չէին հնարված[78]։
Իսկ քաղաքում փակվածները ամեն տեսակ պարենի մեծ առատու-
թյուն ունեին, քանի որ թագավորը նախօրոք հոգացել էր այդ մա-
սին։ Այդ պատճառով էլ պաշարումը ձգձգվում էր արդեն երկու տա-
րի, և նրանք շարունակում էին իրենց հարձակումները պարիսպների
վրա, միաժամանակ խոչընդոտում քաղաքից դուրս եկողների ելքը։
Բայց երրորդ տարում, երկարատև և ուժեղ անձրևներ տեղալու
պատճառով, Եփրատը բարձրանալով ողողեց քաղաքի մի մասը և
2 քսան ասպարեզ տարածության վրա տապալեց պարիսպները։ Այն-
ժամ ահա թագավորը, կարծելով, թե պատգամը կատարվեց և գետը
բացահայտ կերպով դարձել է քաղաքին թշնամի, կորցրեց փրկու-
թյան հույսը։ Եվ որպեսզի ինքը թշնամիների ձեռքը չընկնի, պա-
լատում հսկայական մի խարույկ պատրաստեց և ամբողջ ոսկին ու
արծաթը, ինչպես նաև արքայական բոլոր հանդերձները, կիտեց
դրա վրա, իսկ հարճերին ու ներքինիներին հավաքելով փակեց խա-

րույկի մեջտեղում պատրաստված սենյակում և այդ ամենը և
3 ինքն իրեն, ինչպես նաև պալատները, հանձնեց կրակին։ Ապըս-
տամբները, իմանալով Սարդանապալոսի մահվան մասին, պարիս-
պի քանդված հատվածի կողմից գրոհելով, դրավեցին քաղաքը և
Արբակեսին հագցնելով արքայական զգեստը, նրան թագավոր
հռչակեցին և ամբողջ իշխանությունը հանձնեցին նրան[79]։
28,1 Այնժամ էլ, երբ թագավորն իր հետ միասին կռիվ մղած զո-
րավարներին պարգևներ էր բաժանում յուրաքանչյուրի արժանիքի
համաձայն և սատրապներ նշանակում ազգերի վրա, Բելեսյուս
բաբելոնացին, որը գուշակել էր, թե նա պետք է դառնա Ասիայի
թագավոր, գալով նրա մոտ, հիշեցրեց իր մատուցած ծառայու-
թյունները և պահանջեց իրեն տալ Բաբելոնի իշխանությունը,
2 ինչպես նախկինում խոստացել էր։ Նա հայտնեց նաև, որ երբ
(իրենք) վտանգների մեջ էին, ինքը ուխտել էր Բելոսին, որ եթե
Սարդանապալոսը պարտվի և նրա պալատները կրակի տրվեն,
ապա դրա մոխիրը նա պետք է բերի Բաբելոն և այն կիտելով
աստծո սրբարանի և գետի մոտ, պետք է հողաթումբ բարձրաց-
նի, որը Եփրատի հոսանքով նավողներին պետք է մշտապես հի-
շեցնի այն մարդուն, ով տապալեց ասորեստանյան տերությունը։
3 Նա այդպես էր պահանջում, քանի որ ոսկու և արծաթի մասին
իմացել էր ինչ-որ ներքինուց, որը փախչելով ապաստանել էր իր
մոտ և որին ինքը պատսպարել էր[80]։ Իսկ Արբակեսը այդ մասին
ոչինչ չիմանալով, քանզի պալատում գտնվողները բոլորը թագա-
վորի հետ միասին կիզվել էին, թույլ տվեց նրան մոխիրը փոխադ-
4 րել և Բաբելոնում տիրել առանց հարկեր վճարելու։ Եվ այսպիսով,
Բելեսյուսը նավեր պատրաստելով, մոխրի հետ միասին ոսկու և ար-
ծաթի մեծ մասը ուղարկեց Բաբելոն, իսկ թագավորը, երբ նրան հա-
ղորդեցին բացահայտված այդ գործի մասին, դատավորներ նշանա-
5 կեց իր հետ միասին կռիվ մղած զորավարներին։ Երբ մեղադրյալը
խոստովանեց իր հանցանքը, ատյանը նրան դատապարտեց մահ-
վան, իսկ թագավորը, լինելով մեծահոգի և ցանկանալով իր իշ-
խանության սկզբում երևալ գթասիրտ, Բելեսյուսին ազատեց
վտանգից և թույլ տվեց պահել իր տարած արծաթն ու ոսկին,
նույնպես նրան չզրկեց նաև նախապես նրան տրված Բաբելոնի
իշխանությունից, ասելով, որ նրա մատուցած նախորդ ծառայու-
6 թյունները առավել խոշոր են, քան հետագա հանցանքները։ Երբ
նրա այս ներողամտությունը թմբկահարվեց, նա նվաճեց ոչ միայն
ազգերի սովորական բարյացակամությունը, այլև նրանց մոտ փառ-

*քի արժանացավ, քանզի բոլորը գտնում էին, թե իր գեմ անարդա-
րություն գործողի հանդեպ այդպես վարվողը արժանի է թագա-
7 վորելու։ Այսպես էլ Արբակեսը քաղաքի բնակիչների հանդեպ
մեղմությամբ վերաբերվելով, նրանց բնակեցրեց գյուղերում, ամեն
մեկին վերադարձնելով իր տիրույթը, բայց քաղաքը հիմնահատակ
քանդեց։ Այնուհետև խարույկից մնացած արծաթն ու ոսկին, որը
բազում տաղանդ էր կազմում, իր հետ տարավ Մեդիայի Եկբատա-
նա (քաղաքը)։
8 Այսպիսով, ասորեստանյան տերությունը, որը Նինոսից հետո
հարատևել էր երեսուն սերունդ՝ ավելի քան հազար երեք հարյուր
տարի, կործանվեց մեդացիների կողմից վերոհիշյալ եղանակով։
29,1 Մենք անպատշաճ չենք համարում կարճառոտ պատմել Բաբե-
լոնի քաղդեացիների[81] և նրանց հնախոսության մասին, այնպես,
2 որ հիշատակության արժանի ոչինչ բաց չթողնենք։ Այժմ քաղդեա-
ցիները, լինելով Բաբելոնիայի հնագույն բնակիչներից, տերության
մեջ ունեն գրեթե նույն կարգը, ինչ քրմերը Եգիպտոսում։ Քանզի
նրանք, նվիրված լինելով աստվածների պաշտամունքին, իրենց
ամբողջ կյանքում իմաստասիրում են, մեծ գիտելիքներ ունենալով
աստղաբանության ասպարեզում։ Նրանք շատ զբաղվում են նաև
գուշակությամբ, պատգամներ տալով ապագայում կատարվելիքի
մասին, և աշխատում են մերթ քավության արարողություններով,
մերթ զոհեր մատուցելով, մերթ էլ այլ հմայություններով խափա-
3 նել չարիքը և նպաստել բարիքի կատարման։ Նրանք հմտություն
ունեն նաև հավքերի թռիչքի հիման վրա պատգամներ տալու և
երազներն ու հրաշքները բացատրելու։ Նրանք անարվեստ չեն նաև
ողջակեզների փորոտիքների վրա գուշակելու գործում և կարծում
են, թե այդ ասպարեզում մեծ հաջողության են հասել։
Այս ամենը նրանք սովորում են ոչ ինչպես Հունաստանում այդ
4 գործերով զբաղվողները։ Քանզի քաղդեացիների մոտ այդ ամենի
ուսումնասիրությունը սերնդից սերունդ է հաղորդվում և որդին
այն ընդունում է հորից, ազատ լինելով ամեն տեսակ այլ ծառայու-
թյունից։ Այսպիսով, քանի որ նրանց ուսուցիչները հայրերն են,
ամեն ինչ սովորում են անտրտունջ. միաժամանակ և հետևում են
(ուսուցչի) հանձնարարություններին առավել վստահ և հավատով։
Ապա, քանի որ նրանք երեխա հասակից այդպես են սովորում և
դաստիարակվում, ուստի հասնում են մեծ վարպետության, որով-
հետև այդ տարիքում հեշտ է սովորել և երկար ժամանակ են տրա-
մադրում այդ սովորելուն։*

30,1 Քաղդեացիներն ասում են, թե աշխարհն իր բնույթով հավի-
տենական է և ոչ սկզբնապես ստեղծվել է, ոչ էլ հետագայում պետք
է կործանվի, իսկ ամբողջ կարգն ու դասավորությունը կատարվել է
ինչ-որ աստվածային նախախնամությամբ, որով և այժմ երկնքում
կատարվող ամեն ինչ ոչ պատահական է տեղի ունենում, ոչ էլ ինք-
նահոս եղանակով, այլ ինչ-որ հաստատապես որոշված աստվա-
2 ծային կարգադրության համեմատ։ Նրանք երկար ժամանակ դի-
տարկելով աստղերը և նրանցից յուրաքանչյուրի շարժումն ու ազ-
դեցությունը առավել ճշտորեն իմանալով, քան մյուս մարդիկ, կան-
խագուշակում են մարդկանց համար ապագայում կատարվելիք շատ
3 դեպքեր։ Այսուհանդերձ, նրանք ասում են, թե ամենակարևորը մո-
լորակներ կոչված հինգ աստղերի դիտարկումն է և դրանց ազդեցու-
թյան ուսումնասիրությունը, որոնց նրանք պարզապես անվանում են
«Թարգմաններ», կարևոր է հատկապես (ուսումնասիրել) հելլենների
կողմից Կրոնոս[82] կոչվածը, որը ամենապայծառն է և կատարվելիք
շատ ավելի դեպքերի մասին է կանխահայտնում (և որը) կոչում են
Արևի[83] (աստղ), մյուս չորսին, մեր աստղաբանների նման, նրանք
4 անվանում են՝ Արեսի, Աֆրոդիտեի, Հերմեսի, Զևսի (աստղեր)[84]։
Նրանց «Թարգմաններ» անվանելու պատճառն այն է, որ մինչդեռ
մյուս աստղերը չեն թափառում և հաստատապես ընթանում են
միայն մեկ շրջագծով, սրանք իրենց առանձին ընթացքով շարժվե-
լիս ցույց են տալիս ապագայում կատարվելիքները, մարդկանց հա-
մար թարգմանելով աստվածների մտադրությունը։ Քանզի նրանք,
ինչպես ասում են քաղդեացիք, մերթ իրենց ծագելով, մերթ մայր
մտնելով, մերթ էլ իրենց գույներով կատարվելիք դեպքերի մասին
5 ազդարարում են դրանք ուշադիր դիտել կամեցողներին։ Որովհետև
նրանք երբեմն նշում են ուժեղ հողմերը, երբեմն սաստիկ անձրևնե-
րը կամ երաշտը, երբեմն գիսավոր աստղերի հայտնվելը, ինչպես
նաև արևի ու լուսնի խավարումները, երկրաշարժերը և, ընդհան-
րապես, այն բոլոր երևույթները, որոնց առաջացումը պայմանա-
վորված է մթնոլորտի գոյությամբ, և օգնում են կամ վնասում ոչ
միայն ազգերին կամ երկրներին, այլև թագավորներին ու մինչև
իսկ հասարակ մարդկանց։
6 Սրանց շարժման շառավիղում դասավորված են, ինչպես ասում
են (քաղդեացիները), երեսուն աստղեր, որոնց նրանք անվանում
են աստվածների խորհրդատուներ։ Սրանց կեսը վերևից հետևում
են երկրի վրա կատարվող դեպքերին, մյուս կեսը՝ երկրից ներքև
կատարվող դեպքերին, դիտելով մարդկանց գործերը միաժամա-

նակ և երկնային երևույթները, և ամեն տասը օրը մեկ վերևի աստ-
ղերից մեկը որպես սուրհանդակ ուղարկվում է ներքևի աստղե-
րի մոտ, նույնպես նաև ներքևի աստղերից մեկը ուղարկվում է
վերև, և նրանց այս շարժումը որոշակի է և հաստատված հա-
7 վիտենական ժամանակի համար։ Նրանք ասում են, թե այս աստ-
վածներից գլխավորները թվով տասներկու են և սրանցից յու-
րաքանչյուրին քաղդեացիները վերագրել են ամիսներից և այս-
պես կոչված տասներկու կենդանակերպերից[85] մեկը։ Սրանց միջով
էլ, ասում են, իրենց ընթացքը կատարում են և՛ արևը, և՛ լուսինը,
և՛ հինգ մոլորակ աստղերը, արևն իր շրջանը բոլորում է մեկ տա-
րում, իսկ լուսինը նույն շրջանը կատարում է մեկ ամսում։
31,1 Մոլորակներից յուրաքանչյուրն ունի իր ուրույն ընթացքը և
տարբեր են նրանց արագությունն ու շրջապտույտի տևողությունը։
Այս աստղերն են, որ մեծապես ազդում են մարդկանց բարի կամ
վատ ծնվելու վրա։ Առավելապես այս աստղերի բնույթից և
դրանց ուսումնասիրությունից էլ նրանք իմանում են, թե ինչ է կա-
2 տարվելու մարդկանց հետ։ Ասում են նաև, թե նրանք դուշակել են
ոչ միայն բազում այլ թագավորների, այլև Դարեհին[86] ջախջախած
Ալեքսանդրի[87] և հետագայում թագավորած Անտիգոնոսի[88] և Սե-
լևկոս Նիկատորի[89] մասին և իրենց բոլոր դուշակությունների մեջ
3 նրանք չեն վրիպել։ Այդ ամենի մասին մենք մանրամասն կխոսենք
առավել պատշաճ առիթով։ Նրանք կանխագուշակում են նաև հա-
սարակ մարդկանց ապագան և այնքան ճշգրիտ, որ իրենց փորձել
ցանկացողներին հիացնում են կատարված հրաշքով և համոզում, որ
այն գերազանցում է մարդկային հնարավորությունը։
4 Կենդանակերպի շրջանակից հետո նրանք տարորոշել են քսան-
չորս ուրիշ աստղեր ևս, որոնցից, իրենց ասելով, կեսը գտնվում է
հյուսիսային կողմերում, իսկ մյուս կեսը՝ հարավային, և դրանցից
տեսանելիներին նրանք համարում են կենդանի աշխարհին վերա-
բերող, իսկ անտեսանելիներին հատկացված են համարում մահա-
ցածներին, ուստի և նրանց անվանել են «ընդհանուրի դատավոր-
5 ներ»։ Եվ բոլոր վերոհիշյալ աստղերից ներքև, ասում են նրանք,
ընթանում է լուսինը, որն իր ծանրության պատճառով բոլորից
առավել մոտ է երկրին և իր ընթացքը կատարում է նվազագույն
ժամանակում ոչ թե իր շարժման արագության, այլ կատարած
6 շրջանի կարճության պատճառով։ Նրանք ևս, հելլենների նման,
ասում են, թե նրա լույսը այլ աղբյուրից է և նրա խավարումներն
առաջանում են երկրի ստվերից։ Ինչ վերաբերում է արեգակի խա-
վարումներին, ապա նրանք թույլ բացատրություններ են տալիս և

չեն համարձակվում ճշտությամբ նկարագրել այդ երևույթը կամ
7 կանխորոշել դրա ժամանակը։ Իսկ երկրի մասին նրանք յուրահա-
տուկ կարծիք են հայտնում, ասելով, որ այն մակույկաձև է և սնա-
մեջ, նրանք բազմաթիվ հավանական փաստարկներ են հորինում
երկրի և տիեզերքում գտնվող այլ մարմինների վերաբերյալ, որոնց
մանրամասն շարադրանքը, կարծում ենք, օտարոտի կլիներ մեր
8 ներկա պատմությանը։ Այսուհանդերձ, պատշաճը հատուցելով,
պետք է հավաստել, որ քաղդեացիները բոլոր մարդկանցից առա-
վել շատ դիտելիքներ ունեն աստղաբանության մեջ և մեծ աշխա-
տանք են կատարել այդ տեսությունն ուսումնասիրելու համար։
Ինչ վերաբերում է տարիների այն թվին, որոնց ընթացքում, ինչ-
պես նրանք պնդում են, քաղդեացիների դասը[90] ուսումնասիրել է
տիեզերքի մարմինները, մարդ դժվար թե հավատա. քանզի նրանք
հաշվում են, թե Ալեքսանդրի արշավանքներից[91] դեռևս քառասունյոթ
բյուր և երեք հազար տարի առաջ նրանք հնում սկսել են դիտար-
կել աստղերը։
10 Քաղդեացիների մասին մենք բավարարվում ենք այսքան խո-
սելով, որպեսզի ավելի չհեռանանք մեր պատմության բուն նյութից։
Այժմ, մեդացիների կողմից Ասորեստանի թագավորության կոր-
ծանման մասին վերևում պատմած լինելով, վերադառնանք մեր
շեղված կետին։
32,1 Բայց քանի որ հնագույն հեղինակները տարաձայն են մեդացի-
ների տերության հզորության մասին, մեր գործն ենք համարում,
դեպքերը ճշմարտասիրաբար պատմել ցանկացողների համար,
իրար կողքի շարադրել պատմագիրների տարբեր հաղորդումները։
2 Այսպես, Հերոդոտոսը[92], որն ապրել է Քսերքսեսի[93] ժամանակ,
պատմում է, թե հնում ասորեստանցիները հինգ հարյուր տարի[94]
տիրելով Ասիայում, նվաճվեցին մեդացիներից, որից հետո շատ
սերունդների ընթացքում ոչ մի թաղավոր հանդես չեկավ վիճարկե-
լու նրանց գերագույն իշխանությունը, բայց քաղաքները[95], որոնք
ինքնավար էին եղել, կառավարվում էին դեմոկրատական կարգերով,
ի վերջո, սակայն, շատ տարիներ անց մեդացիները իրենց թագա-
վոր ընտրեցին արդարադատությամբ աչքի ընկած մի մարդու՝
3 Կյուաքսարես անունով։ Սա առաջինն էր, որ ձեռնարկեց հարևան
երկրները նվաճելու գործին և դարձավ բոլորի վրա մեդացիների
իշխանության հաստատման հիմնադիրը[96]։ Այնուհետև նրա հետ-
նորդներն աստիճանաբար նվաճեցին հարևան երկրների մեծ մասը
և ընդարձակեցին թագավորությունը, մինչև Աստյուագեսի[97] (գա-
հակալումը), որը հաղթվեց Կյուրոսի[98] և պարսիկների կողմից։

Մենք ցարդ խոսել ենք կատարված դեպքերից միայն կարևորների
մասին, բայց հետագայում, երբ արդեն հասնենք ամեն մի դեպքի
կատարված ժամանակին, այնժամ մանրամասն կնկարագրենք
ամեն ինչ։ Այսպես, տասնյոթերորդ օլիմպիադայի երկրորդ տա-
րում, ըստ Հերոդոտոսի, Կյուաքսարեսն ընտրվեց մեդացիների թա-
գավոր[99]։
4 Իսկ Կտեսիաս Կնիդացին ապրել է Արտաքսերքսեսի[100] դեմ
սրա եղբոր՝ Կյուրոսի[101] արշավանքի ժամանակ. նա գերի էր ընկել,
բայց իր բժշկական գիտելիքների համար ընդունվեց (պարսից) թա-
գավորի մոտ և այնտեղ ապրեց տասնյոթ տարի, արժանանալով նրա
հարգանքին։ Սա, ուրեմն, իր ասելով, արքունի մատյաններից[102],
որոնցում պարսիկները, ինչ-որ օրենքի համաձայն, դրանցել էին
հնադույն իրադարձությունները, նա մանրամասն ուսումնասիրել
է յուրաքանչյուր (թագավորի) գործերը և իր պատմությունը շա-
5 րադրելով, այն մատուցել է հելլեններին։ Ահա նա պատմում է, թե
Ասորեստանի թագավորության անկումից հետո մեդացիները, ինչ-
պես արդեն ասել ենք, Սարդանապալոսին հաղթած Արբակեսի թա-
գավորության ժամանակ դարձան գլխավոր ուժը Ասիայում։ Սա
քսաննութ տարի թագավորել էր, որից հետո թագավորությունը
ժառանգեց նրա որդին՝ Մոդակեսը, որը տիրեց Ասիայում հիսուն
տարի։ Նրանից հետո երեսուն տարի թագավորեց Սոսարմոսը,
հիսուն տարի՝ Արտյուկեսը, քսաներկու տարի՝ Աբրիանոս անունով
(թագավորը) և քառասուն տարի՝ Արտայոսը[103]։
33,1 Սրա ժամանակ մեծ պատերազմ տեղի ունեցավ մեդացիների և
կադուսիների[104] միջև հետևյալ պատճառներով։ Պարսիկ Պարսոնդե-
սը, որը հայտնի էր իր քաջությամբ, ողջամտությամբ և այլ առաքի-
նություններով, թագավորի ընկերն էր և արքունի խորհրդի անդամ-
2 ներից ամենաազդեցիկը։ Սա ինչ-որ ատյանում իրեն վիրավորված
զգաց թագավորից և երեք հազար հետևակ զինվորներով ու հազար
հեծյալներով փախավ կադուսիների մոտ, որոնցից մեկին, որն այս
վայրերում ամենաազդեցիկն էր, նա կնության էր տվել իր քրոջը։
3 Եվ ահա, դառնալով ապստամբ, նա ամբողջ ժողովրդին համոզեց
պաշտպանելու ազատությունը և իր քաջության պատճառով ընտրը-
վեց զորավար։ Այնուհետև, տեղեկանալով, որ իր դեմ մեծ զորք է
գումարվում, նա համայն կադուսիներին զինեց և բանակեց դեպի եր-
կիրը բերող անցումների առաջ, իր հետ ունենալով ընդամենը քսան
4 բյուրից ոչ պակաս զորք։ Այսուհանդերձ, երբ թագավոր Արտայոսը
արշավեց իր վրա ութսուն բյուր զորքով, ճակատամարտում ինքը

հաղթեց (Թագավորին) և (նրա զորքից) ավելի քան հինգ բյուր
մարդ կոտորեց, իսկ մնացած բոլորին գուրս մղեց կադուսիների երկ-
րից։ Այդ պատճառով էլ նա հիացրեց տեղաբնիկներին և Թագավոր
ընտրվելով, նա մշտապես ավարի ենթարկեց Մեդիան, և ամբողջ
5 երկիրը ավերածության մատնեց։ Ու երբ նա մեծ փառք վաստակեց
և ծերության պատճառով արդեն մահամերձ էր, իր մոտ կանչելով
իշխանության ժառանգորդին, նրանից պահանջեց երդվել, որ կա-
դուսիների՝ թշնամանքը մեդացիների դեմ երբեք չի վերանալու և
ավելացրեց, որ եթե խաղաղություն հաստատեն, ապա վերջնա-
կանապես կբնաջնջվեն և՛ իր սերունդը, և՛ համայն կադուսիները։
6 Ահա այս պատճառներով էլ կադուսները մշտական թշնամանք են
ունեցել մեդացիների հանդեպ և երբեք չեն հպատակվել նրանց թա-
գավորներին, մինչև որ Կյուրոսը իշխանությունը չփոխանցեց պար-
սիկներին։
34,1 Արտայոսի մահից հետո մեդացիների վրա թագավորեց Արտ-
յունեսը՝ քսաներկու տարի, իսկ Աստիբարասը՝ քառասուն։ Սրա
ժամանակ պարթևներն ապստամբեցին մեդացիների դեմ և երկիրն
2 ու քաղաքը հանձնեցին սակերին[105]։ Այդ պատճառով էլ պատե-
րազմ ծագեց սակերի և մեդացիների միջև, որը տևեց շատ տարի-
ներ և ոչ քիչ ճակատամարտերից ու երկուստեք շատ զոհեր տալուց
հետո, վերջապես նրանք խաղաղություն հաստատեցին հետևյալ
պայմաններով. պարթևները պետք է հպատակվեն մեդացիներին,
բայց նրանցից յուրաքանչյուրը պետք է պահպանի իր նախկին տի-
րույթները և առհավետ նրանք պետք է մնան բարեկամներ և դաշ-
նակիցներ։
3 Այդ ժամանակ սակերի վրա թագավորում էր մի կին՝ Զարինա
անունով. սա, առավել քան որևէ մի այլ կին սակերի մեջ, աչքի էր
ընկնում իր ռազմասիրությամբ և համարձակությամբ ու գործերով։
Այս ազգի կանայք ընդհանրապես կտրիճ են և իրենց ամուսինների
հետ հաղորդակից են դառնում պատերազմական վտանգներին,
բայց այս կինը, ինչպես ասում են, ամենանկատելին էր իր գե-
ղեցկությամբ և բոլորին հիացնում իր մտածելակերպով և ձեռ-
4 նարկած գործերով։ Քանզի նա հպատակեցրեց մերձակայքում ապ-
րող բարբարոսներին, որոնք պարծենում էին իրենց անվախու-
թյամբ և փորձում էին ստրկացնել սակերի ազգը, իսկ իր երկրի մեծ
մասը նա բարեկրթեց և ոչ միայն շատ քաղաքներ հիմնեց, այլև իր
5 ամբողջ ցեղակիցների կյանքը դարձրեց ավելի երջանիկ։ Այդ պատ-
ճառով էլ իր երկրի մարդիկ, նրա մահից հետո իբրև երախտագի-
տություն նրա կատարած բարեգործությունների համար և ի հիշա-

տակ նրա առաքինության, դամբարան կառուցեցին, որն իրենց մոտ
բոլոր եղածներից գերազանց էր։ Նրանք եռանկյունի բուրգ կանգ-
նեցրին, որի յուրաքանչյուր կողմը երեք ասպարեզ երկարություն
ուներ, իսկ բարձրությունը մեկ ասպարեզ էր ու վերջանում էր սրա-
ծայր գագաթով։ Նրա դամբարանի վրա կանգնեցրին նաև հսկայա-
կան ոսկե արձան և մատուցեցին հերոսներին հատուկ հարգանք
և ամեն տեսակ ծեսեր կատարեցին ավելի մեծ շուքով, քան մինչ
այդ մատուցել էին նրա նախնիներից որևէ մեկին։
6 Երբ Աստիբարասը, մեդացիների թագավորը, ծերունի հասա-
կում մեռավ Եկբատանայում, իշխանությունը ժառանգեց նրա որ-
դին՝ Ասպանդասը՝ որին հելլենները անվանում են Աստյուագես։ Սա
կործանվեց պարսիկ Կյուրոսի կողմից, և թագավորությունն անցավ
պարսիկներին, այդ ամենի մասին մենք մանրամասն և ճշգրիտ
կպատմենք իրենց տեղում։
7 Ահա ասորեստանցիների և մեդացիների թագավորության, ինչ-
պես նաև նրանց վերաբերյալ հեղինակների տարակարծության մա-
սին, մեր կարծիքով, բավական խոսեցինք։
43,1 Այժմ կխոսենք սկյութների մասին, որոնք ապրում են (Հնդ-
կաստանին) սահմանակից երկրում։ Սրանք սկզբնապես բնակվելիս
են եղել փոքր տարածության վրա, բայց հետագայում, աստիճա-
նաբար աճելով, իրենց հզորությամբ ու քաջությամբ ընդարձակ
երկրներ նվաճեցին և իրենց ազգը բարձրացրին մեծ իշխանության
2 և փառքի։ Այսպես, Նրանք սկզբում ընդհանրապես փոքր թվով
բնակվում էին Արաքսես գետի մոտ և արհամարհված էին իրենց
աննշան լինելու պատճառով, բայց քանի որ նրանց վաղագույն թա-
գավորներից մեկը ռազմասեր էր և աչքի ընկնող ռազմավար, նրանք
կարողացան նվաճել մինչև Կովկասյան լեռնային երկիրը, ինչպես
նաև դաշտերը օվկիանոսի և Մայոտիս լճի երկայնքով և մնացած
երկիրը մինչև Տանայիս գետը[106],
3 Հետագայում, ինչպես պատմում են սկյութական առասպել-
ները, նրանց մոտ հայտնվեց հողից ծնված մի կույս, որի մարմնի
վերին մասերը մինչև գոտկատեղը կանացի էին, իսկ ստորին մա-
սերը՝ օձակերպ։ Սրա հետ Զևսի կենակցելուց ծնվեց մի տղա,
Սկյութես անունով։ Ու քանի որ սա առավել հայտնի դարձավ, քան
իր նախորդները, ապա ժողովուրդները նրա անունով կոչվեցին
սկյութներ։ Այս թագավորի հետնորդներից իրենց առաքինությամբ
առավել հռչակվեցին երկու եղբայր, մեկի անունը Պալոս, մյուսինը՝
4 Նապես[107]։ Սրանք աչքի ընկնող գործեր կատարեցին և թագավորու-
թյունը բաժանեցին իրար միջև, որից հետո ժողովրդի մի մասը

կոչվեց պալեր, մյուս մասը՝ նապեր։ Ինչ-որ ժամանակ անց այս
թագավորների հետնորդներն իրենց արտակարգ քաջության և ռազ-
մավարության շնորհիվ ընդարձակ երկիր նվաճեցին Տանաիս գե-
տից այն կողմ, մինչև Թրակիա և իրենց զորքով արշավելով նաև
մյուս կողմը[108], իրենց հզորությունը տարածեցին մինչև Նեղոս
5 գետը՝ Եգիպտոսում[109]։ Եվ ահա, (Թրակիայի և Եգիպտոսի) միջև
ընկած շատ հզոր ժողովուրդների ստրկացնելով, նրանք սկյութների
տիրապետությունը տարածեցին արևելքում մինչև օվկիանոսը[110],
իսկ մյուս կողմում՝ մինչև Կասպից ծովն ու Մայոտիս լիճը։ Քանզի
այս ազգը շատ հզորացավ և անվանի թագավորներ ունեցավ, որոնց
անունից էլ (ժողովրդի) մեկ մասը կոչվեց սակեր, մեկ մասը՝ մաս-
սագեթներ[111], մեկ մասը՝ արիմասպներ և այսպես շատ ուրիշ (ցե-
6 ղեր)։ Այս թագավորների կողմից էր, որ նվաճված ժողովուրդներից
շատերը վերաբնակեցվեցին և սրանցից երկուսը դարձան խոշոր
գաղութներ։ Մեկը կազմված էր ասորիացիներից[112], որոնք քշվել
էին Պափլագոնիայի և Պոնտոսի միջև ընկած երկիրը, իսկ մյուսը
կազմված էր Մեդիայից քշվելուց հետո Տանայիսի մոտ հաստատ-
7 վածներից, որոնք կոչվեցին սավրոմատներ։ Սրանք շատ տարիներ
անց, հզորանալով, ավերեցին Սկյութիայի մեծ մասը և բոլոր դեր-
վածներին ոչնչացնելով, երկրի մեծագույն մասը ամայացրին։

44,1 Այնուհետև Սկյութիայում անիշխանություն ծագեց ու թագավո-
րեցին իրենց արիությամբ աչքի ընկած կանայք։ Քանզի այդ ազգերի
մոտ կանայք պատերազմելու համար մարզվում են տղամարդկանց
նման և քաջությամբ չեն զիջում նրանց։ Ուստի ևականավոր կա-
նայք շատ մեծագործություններ կատարեցին ոչ միայն Սկյութիա-
2 յում, այլև սահմանակից երկրներում։ Այսպես, երբ պարսից թա-
գավոր Կյուրոսը, իր ժամանակի ամենահզոր տիրակալը, նշանա-
կալից ուժերով արշավեց Սկյութիա, սկյութների թագուհին ոչ
միայն կոտորեց պարսից զորքը, այլև Կյուրոսին գերի վերցրեց և
խաչը հանեց[113]։ Ամազոնների[114] ազգը ևս, երբ արդեն կազմավոր-
վել էր, իր արիությամբ այնքան աչքի ընկավ, որ նրանք ոչ միայն
սահմանակից շատ երկրներ արշավեցին, այլև Եվրոպայի և Ասիայի
3 մի մեծ մասը ավերեցին։ Արդ, քանի որ մենք հիշատակեցինք ամա-
զոններին, ուստի անպատշաճ չենք համարում պատմել նրանց մա-
սին, թեպետև մեր ասելիքը իր անսովորության պատճառով կարող
է թվալ առասպելանման։

45,1 Արդ, Թերմոդոնտ[115] գետի մոտ տիրում էր մի ազգ, որտեղ իշ-
խանությունը կանանց ձեռքին էր և կանայք նույնպես զբաղվում էին
ռազմական գործով, ինչպես տղամարդիկ։ Պատմում են, որ նրան-

ցից մեկը, որը թագավորական իշխանություն ուներ, առանձնապես
հռչակվեց իր արիությամբ և զորությամբ։ Նա կանանցից բանակ
կազմակերպեց և նրանց վարժեցնելով, հարևան մի շարք ժողո-
2 վուրդների նվաճեց։ Ու քանի որ նրա առաքինությունը և հռչակը
հետզհետե ավելանում էր, նա արշավեց մոտիկ երկրներում ապրող
ազգերի վրա, ու քանի դեռ բախտը նրա համար բարենպաստ էր
ընթանում, նա այնքան հպարտացավ, որ իրեն անվանեց Արեսի[116]
դուստր։ Նա տղամարդկանց հատկացրեց բուրդ մանելու և տնային
կանացի աշխատանքները։ Նա օրենքներ հաստատեց, որոնց հա-
մաձայն կանայք պետք է զբաղվեին պատերազմական գործերով,
իսկ տղամարդիկ ենթարկվում էին ստորացման և ստրկացման։
3 Ծնված երեխաներից արուների սրունքները և բազուկները այլան-
դակում էին և նրանց ոչ պիտանի դարձնում ռազմական գործերի
համար, իսկ էգերի աջ ստինքը կիզում էին, որպեսզի մարմնի զար-
գացման ժամանակ չաճի ու չխանգարի (նետ արձակելիս), այդ
4 պատճառով էլ ամազոնների ազգը ստացավ այդ անունը[117]։ Ընդ-
հանրապես այդ կինը երևելի էր իր իմաստությամբ և ռազմավարա-
կան կարողությամբ, նա մի խոշոր քաղաք հիմնեց Թերմոդոնտի գե-
տաբերանին, այն կոչեց Թեմիսկյուրա և այնտեղ կառուցեց հռչա-
կավոր պալատներ, իսկ իր արշավանքների ժամանակ մեծ ուշադ-
րություն դարձրեց ռազմական կարգապահության վրա և նվաճեց
5 սահմանակից բոլոր երկրները, մինչև Տանայիս գետը։ Եվ պատ-
մում են, որ նա այսպիսի գործերից հետո, երբ ինչ-որ պատերազմի
ժամանակ փայլուն կերպով կռվում էր, սպանվեց։
46,1 Իշխանությունը ժառանգեց սրա դուստրը, որը նախանձախնդիր
եղավ իր մոր առաքինության և իր մի շարք գործերով գերազանցեց
մորը։ Նա աղջիկներին դեռևս վաղ հասակից վարժեցնում էր որ-
սորդության և ամեն օր մարզում էր ռազմական վարժություննե-
րով, նաև մեծասքանչ տոնախմբություններ հաստատեց Արեսին և
2 Տավրոպոլոս մականվանյալ Արտեմիսին[118]։ Արդ, նա, արշավելով
Տանայիս գետից այն կողմն ընկած երկիրը, նվաճեց բոլոր ազգե-
րին, մինչև Թրակիա, վերադառնալով իր երկիրը հարուստ ավարով,
նա վերոհիշյալ աստվածների պատվին հոյակապ տաճարներ կա-
ռուցեց և իր հպատակների հանդեպ ցուցաբերած մեղմաբարո վե-
րաբերմունքի շնորհիվ արժանացավ մեծագույն հավանության։ Նա
արշավեց նաև մյուս ուղղությամբ և նվաճեց Ասիայի մեծ մասն ու
իր զորքը հասցրեց մինչև Սիրիա։

## Գիրք 3

58,1 Ավանդությունը պատմում է նաև, թե այդ աստվածուհին[119]
ծնվել է Փռյուգիայում։ Տեղաբնիկների մի զրույցի համաձայն,
հնում Մեյոնը եղել է Փռյուգիայի և Լյուդիայի թագավոր։ Սա,
ամուսնանալով Դինդյումեի հետ, ծնում է աղջիկ զավակ, բայց, չկա-
մենալով նրան պահել ու դաստիարակել, լքեց (երեխային) Կյուբե-
լոն կոչված լեռան վրա։ Այստեղ էլ, ինչ-որ աստվածային նախախը-
նամությամբ, ընձառյուծներն ու իրենց ուժով առավել հայտնի այլ
գազաններ իրենց պտուկը հրամցրին երեխային ու կերակրեցին,
2 իսկ ինչ-որ կանայք, որոնք հոտերն էին արածում այդ վայրում,
նկատեցին սեղի ունեցածը և, զարմանալով այդ տարօրինակ երե-
վույթով, վերցրին երեխային և նրան, վայրի անունով, կոչեցին
Կյուբելե։ Եվ երեխան քանի մեծանում, այնքան գերազանցում էր
գեղեցկությամբ և ողջամտությամբ, ինչպես նաև հիացնում էր
իր իմաստությամբ, քանզի նա առաջինն էր, որ ստեղծեց բազմա-
փող սրինգը և խաղերին ու պարերին նվագակցելու համար հնարեց
ծնծղաներն ու թմբուկը և, դրանից բացի, նա սովորեցրեց քավու-
թյան միջոցով բուժել հիվանդ անասուններին և փոքր երեխաներին։
3 Ու քանի որ երեխաները փրկվել էին նրան ուղղված մաղթանքների
միջոցով և, մեծ մասամբ, եղել էին նրա գրկում, ինչպես նաև նրանց
հանդեպ ցույց տված իր խնամքի և հոգատարության շնորհիվ, բո-
լորի կողմից անվանվեց լեռնային մայր։

## Գիրք 4

45,1 Քանի որ (մեր) պատմության ընթացքը թելադրում է անդրա-
դառնալ օտարասպանության[120] պատճառներին, ուստի անհրաժեշտ
ենք համարում կարճառոտ պատմել այդ մասին, առավել ևս, որ
այդպիսի շեղումը միանգամայն տեղին է Արգոնավորդների գործերի
մասին պատմելու համար։ Այսպես, պատմում են, թե Հելիոսը[121]
ունենում է երկու որդի՝ Այետես և Պերսես. սրանցից Այետեսը թա-
գավորում է Կոլխիսում[122], իսկ մյուսը՝ Տավրիկե (երկրում)[123]։
2 Երկուսն էլ հատկապես աչքի էին ընկնում իրենց դաժանությամբ։
Պերսեսին ծնվեց դուստր՝ Հեկատեն, որն իր համարձակությամբ և
անօրենությամբ գերազանցեց հորը։ Նա որսորդության սիրահար

էր և անհաջողության դեպքում գազանների փոխարեն մարդկանց
էր նետահարում։ Նա, հմուտ լինելով նաև դեղերի մահացու խառ-
նուրդներ պատրաստելու գործին, ինքն էր հնարել ակոնիտոն[124] կոչ-
ված թույնը և փորձելով յուրաքանչյուր դեղի զորությունը, դրանք
խառնում էր օտար հյուրերին մատուցվող ճաշերին։ Այս գործերում
մեծ փորձ կուտակելով, նա բոլորից առաջ թունավորեց իր հորը և
այդպիսով ժառանգեց նրա թագավորությունը, այնուհետև Արտե-
միսին տաճար հիմնեց և կարգադրեց, որ իրենց մոտ ափ ելնող
օտարներին պետք է զոհաբերել աստվածուհուն, դրանով իսկ նա
3 հռչակվեց իր դաժանության համար։ Այնուհետև ամուսնանալով
Այետեսի հետ, ծնեց դուստր՝ Կիրկե[125] և Մեդեա, ինչպես նաև մի
տղա՝ էգալևս։
Ասում են, Կիրկեն ևս իրեն նվիրելով ամեն տեսակ դեղեր հնա-
րելու գործին, ինքը նույնպես հայտնաբերել է բազմազան բնույթի
և անհավատալի զորության արմատներ. քանզի նա իր մորից՝ Հեկա-
տեից քիչ բան չէր սովորել, իսկ ինքը ևս իր ջանքերով հայտնաբե-
րեց շատ ավելին, այնպես, որ նա ոչ մի ուրիշ կնոջ համար իրեն
4 գերազանցելու հույս չթողեց դեղեր հնարելու գործում։ Նա կնու-
թյան տրվեց սարմաթների թագավորին, որոնց ոմանք անվանում
են սկյութներ։ Եվ նա սկզբում ամուսնուն թունավորելով սպանեց,
իսկ այնուհետև ժառանգելով թագավորությունը, իր հպատակների
նկատմամբ բազում դաժանություններ և բռնություններ գործադ-
5 րեց։ Այդ պատճառով էլ նա հեռացվել է իշխանությունից և, զրու-
ցագիրներից ոմանց պատմելով, փախել է օվկիանոս և անբնակ մի
կղզի[126] գտնելով, հաստատվել է այնտեղ իրեն փախստակից կա-
նանց հետ, իսկ պատմիչներից ոմանց համաձայն, նա լքել է Պոն-
տոսը և բնակվել է Իտալիայի մի հրվանդանում, որը մինչև այսօր
էլ նրա անունով կոչվում է Կիրկեոն[127]։
46,1 Իսկ Մեդեայի մասին պատմում են, թե նա իր մորից և քրոջից
սովորել էր բոլոր դեղերի հատկությունները, բայց դրանք օգտա-
գործում էր բոլորովին հակառակ նպատակներով։ Քանզի նա իրենց
մոտ ափ դուրս եկող օտարականներին ամեն կերպ աշխատում էր
փրկել վտանգներից, մերթ թախանձագին պաղատելով խնդրում էր
հորը՝ փրկելու կործանման դատապարտվածներին, մերթ էլ նրանց
ազատելով բանտից, դրանով իսկ աղետի ենթարկվածներին փրկելու
հնար ստեղծում։ Քանզի Այետեսը, մասամբ իր իսկ դաժանության
պատճառով, մասամբ էլ իր կնոջ՝ Հեկատեի դրդմամբ, համաձայն-
2 վել էր օտարասպանության սովորույթին։ Բայց քանի որ Մեդեան
ամեն անգամ ավելի ու ավելի էր դիմադրում իր ծնողների մտադ-

րությունների, Այետեսը, ինչպես պատմում են, կասկածելով իր
աղջկան դավադրության մեջ, նրան դատապարտել է ազատ բան-
տարկության։ Մեդեան, սակայն, փախչելով ապաստանում է ծո-
3 վափին գտնվող Հելիոսի մի սրբարանում։ Այդ ժամանակ էլ Արգո-
նավորդները[128], որոնք մեկնել էին Տավրիկե (Թերակղզուց), գիշե-
րով հասան Կոլխիս, ճիշտ այս վերոհիշյալ սրբարանը։ Այստեղ էլ
պատահելով Մեդեային ծովափին թափառելիս, և նրանից իմանալով
օտարասպանության սովորույթի մասին, նրանք գնահատեցին
կույսի բարեհոդությունը և նրան հայտնելով իրենց մտադրությունը,
դարձյալ նրանից իմացան օտարների հանդեպ իր ցուցաբերած հար-
4 գանքի համար հոր կողմից իրեն սպառնացող վտանգի մասին։ Ու
քանի որ նրանց թվաց, թե շահերն համընկնում են, Մեդեան խոս-
տացավ նրանց գործակցել, մինչև ի կատար ածեն իրենց առա-
ջադրված գործը, իսկ Յասոնը[129] երդվելով հավաստիացրեց նրան,
թե ամուսնանալով նրա հետ, նրան կդարձնի իր կենակիցը ամ-
5 բողջ կյանքում։ Այնուհետև Արգոնավորդները նավի մոտ պա-
հակներ թողնելով, գիշերը Մեդեայի հետ ճանապարհ ընկան՝ ձեռք
բերելու ոսկեգեղմ մորթին, որի մասին անհրաժեշտ է այժմ պատ-
մել, որպեսզի այս պատմության վերաբերող ոչինչ անհայտ չմնա։
47,1 Առասպելները պատմում են, թե Փրիկսոսը, Աթամասի[130] որ-
դին, իր խորթ մոր դավերի պատճառով, վերցնում է իր քույր Հել-
լեին և փախչում Հելլադայից։ Ու երբ սրանք, ինչ-որ աստվածային
նախախնամությամբ Եվրոպայից անցնում էին Ասիա, ոսկեգեղմ
խոյին հեծած, աղջիկն ընկնում է ծովը, որը նրա անունից կոչվել է
Հելլեսպոնտոս[131], իսկ Փրիկսոսը շարունակելով իր ճանապարհը
Պոնտոսում[132], տարվում է դեպի Կոլխիս, որտեղ էլ, նախապես իրեն
տրված ինչ-որ պատգամի հետևելով, զոհում է խոյը և նրա մորթին
2 նվիրաբերում Արեսի սրբարանին։ Այնուհետև, երբ Կոլխիսում թա-
գավորում էր Այետեսը, գուշակություն հայտնեց, որ սրա կյանքի
վախճանը կլինի այն ժամանակ, երբ օտարականներ նավից ափ
դուրս գալով, տանեն ոսկեգեղմ մորթին։ Այս պատճառով էլ, ինչ-
պես նաև իր դաժանությունից մղված, Այետեսը կարգ հաստատեց,
որի համաձայն պետք է օտարներին զոհաբերել, որպեսզի կոլխերի
դաժանության համբավը տարածվի բոլոր երկրներում և օտարնե-
րից ոչ ոք չհամարձակվի ոտք դնել այդ երկիրը։ Այնուհետև սրբա-
րանը նա պատեց պարսպով և բազմաթիվ պահակներ հաստատեց,
որոնք բերված էին Տավրիկե երկրից, քանզի նրանց մասին հելլեն-
3 ները հրեշավոր առասպելներ էին հորինել։ Այսպես, զրույց էր տա-
րածված, թե հրաշունչ ցուլեր կան սրբարանի շուրջ և թե անքուն մի

վիշապ պահպանում է մորթին, դա առաջացել է անունների նմա-
նությունից և տավրյանների անունը փոխանցվել է եզներին[133],
նրանց վորության պատճառով, իսկ դաժան օտարասպանությունը
պատճառ է դարձել առասպելաբանելու, թե ցուլերը հուր են արտա-
շնչում, նույնպես և սրբարանին հսկողի Դրակոն անունը պոետ-
ների կողմից վերագրվել է հրեշային և ահարկու դաղանին[134]։
4 Նույնպիսի առասպելներից է գալիս նաև Փրիկսոսին վերաբերող
զրույցը։ Որովհետև, ինչպես ոմանք ասում են, նա ճանապարհորդել
է նավի վրա, որի ցռուկին ամրացված է եղել խոյակերպ սրձան,
իսկ Հելլեն տառապել է ծովախտից և այդ պատճառով էլ նավակո-
5 ղից դեպի դուրս կռացած լինելով, ընկել է ծովը։ Ուրիշները դար-
ձյալ պատմում են, թե սկյութների թագավորը, որը Այետեսի փե-
սան էր, պատահաբար այդ նույն ժամտնակ, երբ Փրիկսոսը և նրան
ուղեկցող ստրուկը գերի էին վերցվել, այցելության եկած լինելով
կոլխերին, կրքով է լցվում տղայի հանդեպ, նրան իբրև պարգև ստա-
նում է Այետեսից և սիրելով հարազատ որդու նման, նրան է թող-
նում թագավորությունը։ Իսկ ուղեկցող ստրուկին, որի անունը
Կրիոս[135] էր, զոհաբերեցին աստվածներին և մարմինը մաշկազեր-
ծելուց հետո, մորթը, իրենց ինչ-որ սովորույթի համաձայն, գամե-
6 լով կախեցին տաճարում։ Երբ արդեն հետագայում Այետեսը գու-
շակություն ստացավ, թե իր կյանքի վախճանը կլինի այն ժամա-
նակ, երբ օտարականներն ափ դուրս գալով տանեն Կրիոսի մորթը,
թագավորը, ինչպես պատմում են, պարսպով պատեց սրբարանը
և պահակներ հաստատեց, ինչպես նաև ոսկով պատեց մորթը, որ-
պեսզի այն իր փայլի պատճառով զինվորների կողմից արժանա-
նա առավել ուշադիր պահպանման։ Այս բոլորի համար ընթերցող-
ներն իրենք պետք է դատողություններ անեն, յուրաքանչյուրն իր
նախընտրության համաձայն։
48,1 Պատմում են, թե Մեդեան Արգոնավորդներին առաջնորդեց դե-
պի Արեսի սրբարանը, որը գտնվում էր քաղաքից յոթանասուն աս-
պարեզ հեռավորության վրա. քաղաքն այդ կոչվում էր Սյուբարիս,
որտեղ և գտնվում էին կոլխերի (թագավորի) պալատները։ Նա մո-
տենալով դարբասներին, որոնք գիշեր ժամանակ փակվում էին,
2 տավրիկյան լեզվով ձայնեց պահակներին։ Ու երբ զինվորները հո-
ժարությամբ բաց արին դարբասները նրա առաջ որպես թագավորի
դուստր, Արգոնավորդները, ինչպես պատմում են, մերկացրած սրե-
րով ներխուժեցին և բարբարոսներից շատերին սպանեցին, իսկ
մյուսներին, որոնք ահաբեկվել էին անսպասելի դեպքից, դուրս քշե-
3 ցին սրբարանից և, վերցնելով մորթին, շտապեցին վերադառնալ

դեպի նավը։ Մեդեան ևս, որը օգնում էր նրանց, իր դեղերով սպա-
նեց վիշապին, որը, առասպելի համաձայն, անքուն հսկում էր մոր-
4 թու շուրջը, և Յասոնի հետ իջավ դեպի ծովը։ Փրկվելու համար փա-
խուստի դիմած տավրյանները կատարված հարձակման մասին հա-
ղորդում են թագավորին և Այետեսը, ինչպես գրույցն է ասում, իր
թիկնապահ զինվորների հետ դուրս եկավ հալածելու հելլեններին և
նրանց պատահեց ծովափին։ Անմիջապես կռվի բռնվելով նրանց
հետ, Արգոնավորդներից մեկին՝ Իփիթոսին, Եվրիսթևսի եղբորը,
սպանեց. Եվրիսթևսը նա էր, ով կարգադրել էր Հերակլեսին[136] կա-
տարելու իր սխրագործությունները, բայց երբ իր զինվորների բազ-
մությամբ մյուսներին շրջապատեց և առավել բուռն կռվի բռնվեց,
5 նա սպանվեց Մելեագրոսի կողմից։ Այնժամ էլ, երբ թագավորն
ընկավ, հելլեններն ավելի ևս ոգևորվեցին և կոլխերին փախուստի
մատնելով, նրանց հալածեցին ու մեծ մասին սպանեցին։

56,1 Ընդհանրապես, ողբերգակների հնարած առասպելների շնոր-
հիվ, Մեդեայի անվան շուրջ տարբեր բնույթի զանազան պատում-
ներ են առաջացել, ոմանք, օրինակ, աթենացիներին հաճոյանալու
նպատակով, ասում են, թե նա իր հետ վերցնելով Էգևսից[137] ծնած
որդուն՝ Մեդոսին, փրկություն է գտել Կոլխիսում, այդ ժամանակ
էլ Այետեսը, որն իր եղբոր՝ Պերսեսի ձեռքով գահընկեց էր արվել,
վերանվաճել է իր իշխանությունը այն բանից հետո, երբ Մեդոսը,
Մեդեայի որդին, սպանել է Պերսեսին։ Այնուհետև Մեդոսը, մեծ
զորքի գլուխ անցած, արշավել է Պոնտոսից այն կողմ ընկած Ասիա
2 և նվաճել է այն երկիրը, որն իր անունով կոչվել է Մեդիա։ Բայց
քանի որ, մեր կարծիքով, երկար կլիներ Մեդեայի մասին եղած բո-
լոր առասպելները շարադրել և ոչ իսկ այդ բանն անելու անհրա-
ժեշտությունը կա, ուստի մենք կպատմենք սոսկ այն դեպքերի մա-
սին, որոնք վերաբերում են իրենց՝ Արգոնավորդներին։

## Գիրք 9 (հատվածներ)[138]

2,1 Կրեսոսը[139], լյուդացոց[140] թագավորը, մեծ զորք ստեղծեց և
խոշոր քանակությամբ արծաթ ու ոսկի կուտակած լինելով, իր մոտ
հրավիրում էր հելլեններից իմաստնազույններին և նրանց հետ որոշ
ժամանակ անցկացնելուց հետո, հարուստ ընծաներով ճանապարհ
էր դնում նրանց, մեծապես օգտվելով նրանց առաքինություններից։
Մի անգամ էլ Սոլոնին[141] հրավիրելով իր մոտ և նրան ցույց տալով
2 իր զորքն ու հարստությունը, հարցրեց, թե արդյո՞ք նա որևէ մեկին

առավել երանելի է համարում իրենից: Իսկ Սոլոնը, իմաստասեր-
ներին բնորոշ անկեղծությամբ, պատասխանեց նրան, թե կենդանի
մարդկանցից և ոչ մեկին, քանզի նա, ով իր երջանկության պատճա-
ռով մեծամտանում է և կարծում, թե բախտը իր գործակիցն է, չգի-
տե, թե այն արդյո՞ք մինչև վերջ հավատարիմ է մնալու իրեն: Այդ
իսկ պատճառով, ասաց նա, պետք է սպասել կյանքի վախճանին
և եթե այդ ժամանակ նույնպես նա բարեբախտ լինի, ապա այդ
դեպքում միայն կարելի է նրան երանելի համարել: Եվ հետա-
3 գայում, երբ Կրեսոսը գերվել է Կյուրոսից[142] և պետք է մեծ խա-
րույկի վրա այրվեր, նա հիշեց Սոլոնի կողմից իրեն ուղղված
խոսքերը: Եվ ահա, երբ արդեն կրակը բոցավառվում էր իր շուրջ,
4 նա շարունակ տալիս էր Սոլոնի անունը: Եվ Կյուրոսը մարդ
ուղարկեց իմանալու, թե ո՞րն է Սոլոնի անունը շարունակ վկա-
յակոչելու պատճառը և երբ իմացավ իրականությունը, փոխեց իր
մտադրությունը և Սոլոնի պատասխանը ճշմարիտ համարելով,
վերջ տվեց իր արհամարհանքին ու խարույկը հանգցնելով, փրկեց
Կրեսոսին և այնուհետև նրան համարեց իր ընկերներից մեկը[143]:

22 Կյուրոսը, Կամբյուսեսի և Մանդանեի՝ մեդացիների թագավոր
Աստյուագեսի դստեր, որդին, քաջությամբ և խելամտությամբ և
այլ առաքինություններով գերազանցում էր իր ժամանակի բոլոր
մարդկանց. քանզի հայրը նրան դաստիարակում էր արքայավայել,
ներշնչելով նրա մեջ ձգտում դեպի լավագույնը: Եվ ակնհայտ դար-
ձավ, որ նա պետք է ձեռնամուխ լիներ մեծագործությունների, քա-
նի որ նա իր (երիտասարդ) տարիքի համեմատ դրսևորում էր ավե-
լի բարձր առաքինություններ:

23 Աստյուագեսը, մեդացիների թագավորը, պարտված և ամոթալի
կերպով փախած լինելով, զայրույթով էր լցված զինվորների հան-
դեպ և բոլոր նրանց, որոնք հրամանատարական պաշտոնների էին
նշանակված, հեռացնելով, փոխարենը ուրիշներին հաստատեց.
իսկ փախուստի համար պատասխանատու եղողներին բոլորին ընտ-
րեց, և սպանեց, կարծելով, թե նրանց պատժելու միջոցով նա կըս-
տիպի մյուսներին վտանգի պահին քաջություն ցուցաբերել. քանզի
նա բնավորությամբ դաժան էր և խիստ: Սակայն, բազմությունը
չահաբեկվեց նրա խստությունից, այլ, ընդհակառակը, ամեն մեկը
ատելով նրա բռնությունը և գործերի անօրենությունը, ցանկանում
էր դրության փոփոխություն: Այդ իսկ պատճառով խումբ-խումբ
դումարվում էին և խռովարար ճառեր ասում, մեծ մասամբ իրար
կոչ անելով պատժել նրան:

24 Կյուրոսը, ինչպես պատմում են, ոչ միայն քաջաբար էր պատերազմում, այլև իր հպատակների նկատմամբ հարգալից էր և մարդասեր։ Այդ իսկ պատճառով պարսիկները նրան անվանեցին հայր։

31,1 Երբ Կրեսոսը պատրաստվում էր արշավանքի պարսիկ Կյուրոսի դեմ, հարցում կատարեց պատգամատանը[144]։ Տրված պատգամն այսպիսին էր. «Կրեսոսը Ալյուսն[145] անցնելով մեծ տերություն կկործանի»։ Նա երկիմաստ պատգամը իր նախընտրած ձևով ընկալեց և դժբախտության մատնվեց։

2 Երկրորդ անգամ նա դարձյալ դիմեց հարցումով, թե արդյո՞ք երկար ժամանակ ինքը պետք է վայելի իր իշխանությունը և պատգամախոսն այսպես ասաց.

«Այն օրը, երբ ջորին դառնա թագավորը մեդացոց
Ով լյուդացի դեղասրունք, պետք է փախչես անհապաղ
Խճառատ ափը Հերմոսի[146] առանց վախ ու ամոթի»։

Նա «ջորի» ասելով նկատի ուներ Կյուրոսին, քանզի սրա մայրը մեդացի էր, իսկ հայրը՝ պարսիկ։

3 Կյուրոսը, պարսից թագավորը, իր ամբողջ զորքերով հայտնվելով Կապպադովկիայի կիրճում, քարոզներ ուղարկեց Կրեսոսին, մի կողմից նրա տերությունը լրտեսելու համար, մյուս կողմից նրան հաղորդելու, թե Կյուրոսը ներում է նրա նախկին մեղանչումները և կարգում է նրան Լյուդիայի սատրապ, եթե նա գալով Կյուրոսի դուռը, մյուսների նման խոստովանի, թե նրա ստրուկն է։ Բայց Կրեսոսը պատասխանեց նրանց, որ առավել պատշաճ կլինի, եթե Կյուրոսը և պարսիկներն իրենք ենթարկվեն և ստրկանան Կրեսոսին, քանի որ նրանք անցյալ ժամանակներում եղել են մեդացիների ստրկության տակ, մինչդեռ ինքը երբեւիցե այլոց հրամանները չի կատարել։

33,2 Ասում են, թե Կրեսոսը Կյուրոսի դեմ պատերազմելուց առաջ պատգամավորներ ուղարկեց Դելփի[147] հարցնելու, թե ինչպե՞ս իր որդին պետք է խոսել կարողանար[148]։ Եվ Պյութիան[149] պատասխանեց.

«Ով լյուդական ծնունդ. թեև լազում մարդկանց թագավոր,
Բայց դեռ մանուկ ես դու Կրեսոս. լավ է, երբեք չուզենաս
Քո պալատում լսել որդուդ բարբարելը ցանկալի։
Ավելի լավ է քեզ համար, թե նա մնա անհաղորդ.
Քանզի նա խոսքն իր առաջին դժբախտ մի օր պիտ ասի»[150]։

34,1 Կյուրոսը ենթադրելով, որ Կրեսոսը բարեպաշտ մարդ է, քանի որ տեղատարափ եղավ և մարեց (խարույկի) բոցը, ինչպես նաև մտաբերելով Սոլոնի պատասխանը, Կրեսոսին պա՜հեց իր մոտ պատվավոր դրության մեջ։ Միաժամանակ Կյուրոսը նրան տեղ հատկացրեց նաև ատյանում, համոզված, որ նա, բազմաթիվ կրրթված և իմաստուն մարդկանց հետ հարաբերություն ունեցած՝ լինելով, խելամիտ մարդ էր[151]։

## Գիրք 10 (Հատվածներ)

10,2 Պատմում են, որ Մեգաբյուզոսը, նույն ինքը՝ Զոպիրոսը, որը Դարեհ թագավորի բարեկամն էր, խարազանել էր ինքն իրեն և դեմքի վրա եղած բոլոր ցցվածքները կտրատել էր այն պատճառով, որ ինքն ապստամբ դառնալով Բաբելոնը հանձնել էր պարսիկներին։ Դարեհն այդ լսելով մեծապես տրտմել էր և ասել, որ եթե հնարավոր լիներ, ապա կցանկանար ավելի շատ Մեգաբյուզոսին դարձյալ անվնաս տեսնել, քան տասը Բաբելոն ենթարկել իր իշխանության, թեպետև իր այս ցանկությունը չէր կարող կատարվել։

5 Դարեհը համարյա ամբողջ Ասիային տիրելով, փափագեց նվաճել նաև Եվրոպան։ Ու քանի որ նա առավել խոշոր նվաճումների անսահման ցանկություն ուներ և վստահ էր պարսկական գորքերի հզորության վրա, ապա մտադրվեց նվաճել օյկումենեն[152], քանի կարծում էր, թե ամոթալի է, երբ իրեն նախորդած թագավորները, առավել քիչ հնարավորություններ ունենալով հանդերձ պատերազմով հպատակեցրել են մեծագույն ազգերի, մինչդեռ ինքը մեծ զորք ունենալով, ինչքան ոչ մի թագավոր իրենից առաջ, դեռևս արժանահիշատակ ոչ մի գործ չի կատարել։

## Գիրք 11

69,1 Այդ տարին[153] Աթենքում արքոն էր Լյուսիթեոսը, իսկ Հռոմում հյուպատոսներ ընտրվեցին Լուկիոս Վալերիոս Պոպլիկոլասը և Տիտոս Էմիլիոս Մամերկոսը։ Սրանց ժամանակ Ասիայում Արտաբանոսը, որը ծնունդով հյուրկանացի էր և թագավոր Քսերքսեսի արքունիքում մեծ հեղինակություն ուներ ու նրա թիկնապահների առաջնորդն էր, որոշել էր սպանել Քսերքսեսին և իշխանությունը

վերցնել իր ձեռքը։ Նա իր դավադրության մասին հայտնեց ներքինի Միթրիդատեսին, որը թագավորի սենեկապետն էր և վայելում էր նրա ամենաբարձր վստահությունը, միաժամանակ, սակայն, Արտաբանոսի ազգականն ու բարեկամը լինելով, համաձայնվեց
2 դավադրությանը։ Եվ Արտաբանոսը գիշեր ժամանակ սրա՛ կողմից (թագավորի) ննջարանը մտցվելով, սպանեց Քսերքսեսին ու շտապեց թագավորի որդիների դեմ։ Սրանք թվով երեքն էին, Դարեհը՝ ավագ որդին և Արտաքսերքսեսը պալատում էին ապրում, իսկ երրորդը՝ Հյուստասպեսը այդ ժամանակ սնից հեռու էր գտնվում,
3 քանզի կառավարում էր Բակտրիայի սատրապությունը։ Ուստի Արտաբանոսը, քանի դեռ գիշեր էր, գալով Արտաքսերքսեսի մոտ, հաղորդեց, թե նրա եղբայրը՝ Դարեհը, սպանել է հորը և իշխանու-
4 թյունը վերցրել է իր ձեռքը։ Ուստի և խորհուրդ տվեց նրան, նախքան եղբայրը կնստեր գահին, միջոցներ մտածի, որպեսզի իր անտարբերության պատճառով ստրուկ չդառնա, այլ պատժելով իր
5 հորը սպանողին, ինքը թագավորի. և նա խոստացավ արքայի թիկնապահներին բերել օգնության։ Արտաքսերքսեսը համոզվեց և թիկնապահների օգնությամբ անմիջապես սպանեց իր Դարեհ եղբորը։ Իսկ (Արտաբանոսը) տեսնելով, որ իր դավադրությունը հաջողվում է, իր որդիներին վերցնելով իր հետ և գոչելով, թե այժմ իր ժամանակն է թագավորությունը վերցնելու, իր սրով հարվա-
6 ծեց Արտաքսերքսեսին։ Իսկ սա, վիրավորվելով, բայց չսպանվելով հարվածից, հարձակվեց Արտաբանոսի վրա և նրան մահացու հարված հասցնելով, սպանեց։ Այսպես անսպասելի փրկվելով և իր հորը սպանողին պատժելով, Արտաքսերքսեսը[151] ստացավ պարսից թագավորությունը։ Քսերքսեսն, ահա, այս եղանակով վախճանվեց, պարսից վրա ավելի քան քսան տարի թագավորելուց հետո, իսկ Արտաքսերքսեսը ժառանգելով իշխանությունը, թագավորեց քառասուն տարի։
71,1 Այդ ժամանակ, երբ դեռ պարսից Արտաքսերքսես արքան նոր էր վերցրել թագավորությունը, նախ և առաջ պատժեց իր հոր սպանության մասնակիցներին և ապա թագավորությունը կարգավորեց իր շահերին համապատասխան։ Այսպես, նա իր հանդեպ թշնամաբար տրամադրված սատրապներին հեռացրեց և փոխարենը իր ընկերներից հարմարագույններին ընտրելով, սատրապությունները հանձնեց նրանց։ Նա զբաղվեց նաև (պետության) եկամուտների, ինչպես և զորքերի կազմակերպման հարցերով և ընդհանրապես,

ամբողջ թագավորությունը մեղմությամբ կառավարելով, պարսիկների կողմից մեծ գովեստների արժանացավ։

## Գիրք 12

64,1 Արտաքսերքսեսը, պարսից թագավորը, մահացավ քառասուն
տարի գահակալելուց հետո, իսկ իշխանությունը ժառանգած Քսեր-
քսեսը թագավորեց մեկ տարի։
71,1 · Ասիայում թագավոր Քսերքսեսը մահացավ մեկ տարի կամ,
ինչպես ոմանք գրում են, երկու ամիս թագավորելուց հետո, իշխա-
նությունը ժառանգած նրա եղբայր Սոգդիանոսը իշխեց յոթը ամիս։
Սրան սպանելով, Դարեհը[155] թագավորեց տասնինը տարի։

## Գիրք 13

108,1 Խաղաղությունից քիչ անց [156] մահացավ Դարեհը, Ասիայի թա-
գավորը, իշխելով տասնինը տարի և թագավորությունը ժառան-
գեց նրա ավագ որդին՝ Արտաքսերքսեսը[157]։

## Գիրք 14[158]

19,2 Այդ ժամանակ[159] Կյուրոսը[160], որը կառավարում էր ծովամերձ
սատրապությունները[161], վաղուց մտադիր էր արշավել իր եղբոր՝
Արտաքսերքսեսի դեմ։ Քանզի երիտասարդը տոգորված էր փառա-
սիրությամբ և բուռն, անօրինակ ձգտում ուներ դեպի ռազմական
3 ընդհարումները։ Երբ արդեն այդ նպատակով նա վարձկանների
բավականին բազմություն գումարեց և արշավանքի համար ան-
հրաժեշտ պատրաստություն տեսավ, զորքերին չհայտնեց ճշմար-
տությունը, այլ ասաց, թե նա գորքը տանում է Կիլիկիա, արքայից
4 ապստամբած իշխանավորների դեմ։ Միաժամանակ նա դեսպան-
ներ ուղարկեց լակեդեմոնացիներին, նրանց հիշեցնելու այն ծառա-
յությունները, որ ինքը մատուցել էր աթենացիների դեմ սրանց
մղած պատերազմի[162] ժամանակ և կոչ անելու նրանց դաշնակցել
իր հետ։ Եվ լակեդեմոնացիները կարծելով, որ պատերազմը իրենց

համար օգտավետ կլինի, որոշեցին օգնել Կյուրոսին և անմիջապես
դեսպաններ ուղարկեցին իրենց նավարքոսին[163], որի անունր Սա-
5 մոս էր, որպեսզի սա կատարի այն, ինչ Կյուրոսր հրամայի։ Իսկ
Սամոսն ուներ քսանհինգ տրիերա[164], որոնցով նավեց դեպի Եփե-
սոս[165], Կյուրոսի նավարքոսի մոտ, պատրաստ նրան ամեն ինչում
գործակցելու։ Ուղարկեցին նաև ութ հարյուր հետևակ զինվոր[166],
հրամանատար նշանակելով Խեյրիսոփոսին։ Բարբարոսների նա-
վատորմն առաջնորդում էր Տամոսր, որն ուներ հիսուն տրիերա,
մեծարժեք սարքավորված, ու երբ լակեդեմոնացիները ժամանե-
ցին, (երկու) նավատորմիղները մեկնեցին, նավելով դեպի Կիլի-
կիա։
6 Կյուրոսր Ասիայից հավաքած զորքը և տասներեք հազար
վարձկաններին[167] գումարելով Սարդեսում[168], Լյուդիայի և Փոյու-
գիայի կառավարիչներ նշանակեց իր ազգական պարսիկների, իսկ
Հոնիայի, Էոլիսի և մերձակա երկրների կառավարիչ՝ իր հավատա-
րիմ ընկերոջ՝ Տամոսին, որր ծնունդով Մեմփիսից[169] էր, մինչդեռ
ինքը իր զորքով շարժվեց դեպի Կիլիկիա և Պիսիդիա[170], լուր տա-
րածելով, թե այնտեղ բնակվող ցեղերից ոմանք ապստամբել են։
7 Ասիայից հավաքած նրա ամբողջ զորքը յոթր բյուր էր, որից երեք
հազարր հեծյալ, իսկ Պելոպոննեսոսից և մնացյալ Հելլադայից՝
8 տասներեք հազար վարձկան։ Պելոպոննեսոսից եկածներին, բացա-
ռելով աքայացոց, առաջնորդում էր Կլեարքոս լակեդեմոնացին,
Բեովտիայից եկածներին՝ Պրոքսենոս թեբեացին, աքայացիներին՝
Սոկրատես աքայացին, Թեսսալիայից եկածներին՝ Մենոն լարիսա-
9 ցին։ Ինչ վերաբերում է բարբարոսներին, ապա ստորաբաժանում-
ների հրամանատարներր պարսիկներ էին, իսկ բոլորին առաջնոր-
դում էր ինքր՝ Կյուրոսր, որր հրամանատարներին հայտնել էր, թե
արշավում է իր եղբոր դեմ, մինչդեռ բազմությունից թաքցնում էր
այն, երկյուղ կրելով, որ (զինվորները) իր արշավանքի մեծ նպա-
տակներն իմանալու դեպքում կհրաժարվեն իր այդ ձեռնարկումից։
Այդ պատճառով էլ ամբողջ ուղևորության ընթացքում, կանխատե-
սելով հետագայի դեպքերը, նա հաճոյանում էր զինվորներին իր
սիրալիր վերաբերմունքով և առատորեն մթերքներ տրամադրելով։
20,1 Լյուդիան և Փոյուգիան, ինչպես նաև Կապպադովկիային սահ-
մանամերձ մարզերր անցնելուց հետո, (Կյուրոսր) հասավ Կիլի-
կիայի սահմաններր և Կիլիկյան դարբասների մուտքը։ Այս կիրճը
նեղ է և գահավեժ ու ձգվում է քսան ասպարեզ երկարության վրա,
իսկ երկու կողմերից բարձրանում են հսկա և դժվարամատույց լեռ-
ներ, և յուրաքանչյուր կողմի վրա լեռներից ցած ձգվում են պարիսպ-

ներ մինչև ճանապարհի վրա, որտեղ էլ դարբասներն են կառուցված։
2 Իր զորքն անցկացնելով այդ դարբասների միջով, նա մտավ մի
դաշտավայր[171], որն իր գեղեցկությամբ չէր զիջում Ասիայի և ոչ
մեկ այլ դաշտին. այնուհետև այս դաշտի միջով առաջ գնալով, հա-
սավ Տարսոն, Կիլիկիայի խոշորագույն քաղաքը, որին և շուտով
տիրացավ։ Երբ Սյուեննեսիսը, Կիլիկիայի տիրակալը[172], լսեց թըշ-
նամու մեծաքանակ զորքի մասին, մեծապես շվարեց, քանզի ինքը
3 նրա դեմ կռվելու ուժ չուներ։ Երբ Կյուրոսը նրան հրավիրեց իր մոտ,
հավատարմության երաշխիքներ տալով, (Սյուեննեսիսը) գնաց նրա
մոտ և, պատերազմի նպատակի մասին իրականությունն իմանա-
լուց հետո, համաձայնվեց դաշնակցել (Կյուրոսին) Արտաքսերք-
սեսի դեմ և Կյուրոսի հետ միասին ուղարկեց իր որդիներից մեկին,
տրամադրելով նրան նաև կիլիկեցիներից կազմված բավական քա-
նակությամբ մի զորամաս։ Մյուս կողմից, Սյուեննեսիսը, լինելով
բնավորությամբ խորամանկ և բախտի անորոշություններին հար-
մարվող, իր մյուս որդուն գաղտնաբար ուղարկեց արքայի[173] մոտ,
հայտնելու նրա դեմ գումարված զորքերի մասին, միաժամանակ
հավաստիացնելու, թե ինքը թեպետև հարկադրված է եղել միանա-
լու Կյուրոսին, այսուհանդերձ հավատարիմ է մնում իրեն. իսկ եթե
պատեհ առիթ ներկայանա, լքելով նրան կմիանա արքայի զորքե-
րին։
4 Կյուրոսը Տարսոնում իր զորքերին քսան օր հանգիստ տվեց։
Այնուհետև, երբ վերսկսեց արշավանքը շարունակելու իր պատ-
րաստությունները, զորքերի բազմությունը արդեն կասկածեց, թե
արշավանքը կատարվում է Արտաքսերքսեսի դեմ։ Ով ամեն մեկը,
պատկերացնելով ամբողջ ճանապարհի երկարությունը և այն, որ
իրենք պետք է անհրաժեշտորեն անցնեին բազմաթիվ թշնամի
ազգերի երկրների միջով, խորապես տագնապեց։ Քանզի լուր էր
տարածվել, թե զորքի ճանապարհը մինչև Բակտրիա կտևեր չորս
ամիս, իսկ արքայի գումարած զորքը քառասուն բյուրից ավելի էր
5 Այդ պատճառով էլ նրանք առավել ահաբեկվելով դժգոհեցին ու
զայրանալով իրենց հրամանատարների վրա, փորձեցին ոչնչացնել
նրանց իբրև դավաճանների։ Բայց երբ Կյուրոսը խնդրեց բոլորին և
հավաստիացրեց, թե ինքը զորքը տանում է ոչ թե Արտաքսերքսե-
սի, այլ Սիրիայի մի սատրապի դեմ, զինվորները համոզվեցին և,
հավելյալ ռոճիկ ստանալուց հետո, նրանք դարձյալ հնազանդու-
թյուն հայտնեցին նրան։
21,1 Կյուրոսն արդեն անցնելով Կիլիկիան, հասավ Իսսոս[174] քաղա-
քը, որը ծովափին է և Կիլիկիայի վերջին քաղաքը։ Նույն այդ ժա-

մանակ այնտեղ ժամանեց նաև լակեդեմոնացիների նավատորմը
և հրամանատարները ափ դուրս գալով, հանդիպեցին Կյուրոսին և
նրան հաղորդեցին սպարտացիների բարեկամությունը իր հանդեպ
և Խեյրիսոփոսի հրամանատարության տակ գտնվող ութ հարյուր
2 հետևակներին ափ հանելով, հանձնեցին նրան։ Նրանք այնպես էին
ձևացնում, որ իբր այդ վարձկաններին առաքել են Կյուրոսի ըն-
կերները, մինչդեռ, իրականում, այդ ամենը կատարվում էր էֆո-
րոսների[175] որոշմամբ։ Լակեդեմոնացիները դեռևս բացահայտ
պատերազմի չէին դուրս գալիս, թաքցնելով իրենց մտադրությունը,
այլ սպասում էին պատերազմի ելքին։
Կյուրոսն իր զորքով ճանապարհ ընկավ և ուղղություն վերցնե-
լով դեպի Սիրիա, նավարքոսներին կարգադրեց ծովից իրեն ուղեկ-
3 ցել բոլոր նավերով հանդերձ։ Երբ նա հասավ այսպես կոչված
Պյուլայ[176] և վայրը դատարկ, մեծա-
պես ուրախացավ։ Քանզի նա խիստ տագնապում էր, որ չլինի ար-
դեն ոմանք նախապես գրաված լինեն այն։ Տեղանքի բնությունը նեղ
է ու գահավեժ, այնպես, որ սակավ մարդկանցով հեշտությամբ է
4 պահպանվում։ Որովհետև իրար մոտիկ են լեռները ձգվում, մեկը
վերծիգ և անդնդախոր, իսկ մյուսը սկիզբ է առնում հենց ճանա-
պարհից և այդ երկրում խոշորագույն լեռն է ու կոչվում է Ամանոս
և ձգվում է մինչև Փյունիկիա, իսկ լեռների միջև գտնվող վայրը,
որի լայնքը մոտ երեք ասպարեզ է, ամբողջապես պարսպապատ է
5 և վերջանում է դարբասներով, որոնք նեղ կիրճ են կազմում։ Արդ,
Կյուրոսն այդ դարբասներն անվտանգ անցնելուց հետո իր հետ
մնացած նավատորմը ետ ուղարկեց, որպեսզի այն վերադառնա
Եփեսոս, քանզի այն իրեն այլևս պետք չէր լինելու, քանի որ իր
ճանապարհը պետք է շարունակեր միջերկրայքով։ Քսան օր ճա-
նապարհ գնալուց հետո, հասավ Թափսակոս քաղաքը, որը գտնվում
6 է Եփրատ գետի վրա։ Այստեղ նա մնաց հինգ օր, որի ընթացքում
պարենի առատությամբ և անասնակեր հայթայթելով իր կողմը
գրավեց զորքը և ընդհանուր զորաժողով հրավիրելով, հայտնեց
ճշմարտությունը արշավանքի մասին։ Բայց քանի որ զինվորները
տհաճությամբ ընդունեցին նրա խոսքերը, նա խնդրեց բոլորին չլքել
իրեն, խոստանալով, այլ խոշոր պարգևներից բացի, Բաբելոն հաս-
նելուց հետո յուրաքանչյուր ռազմիկին տալ հինգ արծաթ մինա[177].
7 Եվ այսպես, զինվորները այդ հույսերով ոգևորված, համոզվեցին
շարունակել (ճանապարհը)։ Իսկ Կյուրոսը զորքի հետ անցնելով
Եփրատը, շտապեցնում էր անդադար արշավելու, մինչև որ հաս-
նելով Բաբելոնիայի սահմանները, հանգիստ տվեց զորքին։

22,1 Թագավոր Արտաքսերքսեսը (իր հերթին) դեռ նախապես Փառ-
նաբազոսի միջոցով իմացել էր, թե Կյուրոսն իր դեմ գաղտնաբար
զորք է գումարում. իսկ այժմ դարձյալ տեղեկանալով նրա արշա-
վանքի մասին, բոլոր կողմերից իր զորքերը կանչեց Սեդիա' Էկ-
2 բատանա։ Բայց քանի որ հնդիկների և մի քանի այլ ազգերի մոտիկ
երկրների հեռավորության պատճառով, զորքերն ուշանում էին,
նա արդեն գումարված զորամասերի հետ շարժվեց՝ հանդիպելու
Կյուրոսին։ Նրա զորքերի ընդհանուր թիվը, ներառյալ նաև հեծ-
յալներին, ոչ պակաս քան քառասուն բյուր էր, ինչպես պատմում է
3 Եփորոսը[178]։ Երբ նա հասավ Բաբելոնիայի դաշտը, բանակեց Եփ-
րատի մոտ, մտածելով այնտեղ թողնել իր գումակը. քանզի նա
իմացել էր, որ թշնամին հեռու չէր և վախենում էր նրանց համար-
4 ձակ խիզախությունից։ Ուստի և նա վաթսուն ոտնաչափ լայնու-
թյամբ և տասը ոտնաչափ խորությամբ խրամատ փորեց և իրեն
ուղեկցող ռազմակառքերը դասավորեց շուրջանակի, պարսպի նման։
Գումակը և անռազմունակ ամբոխին թողնելով ճամբարում, այն
պաշտպանելու համար բավական պահակազոր կարգեց, իսկ ինքը
անձամբ առաջնորդեց ռազմական պատրաստության մեջ գտնվող
զորքը և հանդիպեց մոտիկում գտնվող թշնամուն։
5 Կյուրոսը, երբ տեսավ արքայի մոտեցող ուժերը, իսկույն իր զոր-
քը դիրքավորեց մարտական դասավորությամբ։ Աջ թևը, որն սկսում
էր Եփրատի ափից, բաղկացած էր լակեդեմոնացի հետևակներից և
վարձկանների մի մասից, որոնց առաջնորդում էր Կլեարքոս լակե-
դեմոնացին, կռվի ժամանակ նրանց օգնում էին Պափլագոնիայից
հավաքված հեծյալները, որոնք հազարից ավելի էին, ձախ թևը
պահում էին Փռյուգիայից և Լյուդիայից հավաքված զորքերը և շուրջ
6 հազար հեծյալներ, որոնց առաջնորդում էր Արիդայոսը[179]։ Ինքը՝
Կյուրոսը ռազմաճակատի մեջտեղն էր կանգնած, իր հետ ունենա-
լով պարսիկներից լավագույններին և մոտ մեկ բյուր այլ բարբա-
րոսների, իսկ նրանից առաջ շարժվում էին լավագույնս զինավառ-
ված հազար ձիավոր, որոնք զինված էին հելլենական զրահներով ու
դաշույններով։ Իսկ Արտաքսերքսեսը ամբողջ զորաւյան առաջ դա-
սավորեց ոչ քիչ թվով մանգաղակիր[180] ոազմակառքեր, թևերի
առաջնորդներ նա կարգեց պարսիկների, մինչդեռ կենտրոնն ինքը
վերցրեց, ունենալով ոչ պակաս քան հինգ բյուր զինվոր[181]։
23,1 Երբ (հակառակորդ) զորքերն իրարից շուրջ երեք ասպարեզ հե-
ռավորության վրա էին, հելլենները սլեան[182] երգելուց հետո, նախ
սկսեցին հանգիստ առաջ շարժվել, բայց երբ արդեն հասան նետա-

հարման տարածության վրա, սկսեցին մեծ արագությամբ վազել։
Այդպես անել նրանց պատվիրել էր Կլեարքոս լակեդեմոնացին,
քանզի նա մտածում էր, թե ոչ հեռու տարածությունից ,վազելով
ռազմիկները մարմնապես չէին հոգնի և իրենց ուժերը կխնայեին
կռվի համար, միաժամանակ, եթե նրանք ընդհուպ մոտենալուց հե-
տո վազքով սուրաց գնան, ապա աղեղներից և այլ միջոցներից ար-
2 ձակված նետերը կթռչին նրանց գլխավերևով։ Երբ Կյուրոսի հետ
եղող գործերը մոտեցան արքայի բանակին, այնքան մեծ քանակու-
թյամբ սլաքներ թափվեցին նրանց վրա, ինչքան կարելի էր սպասել
քառասուն բյուր զինվորներից բաղկացած զորքի նետահարումից։
Այսուհանդերձ, կարճ ժամանակ ամբողջապես ամեգերով կռվելուց
հետո, նրանք մնացած ժամանակ ձեռնամարտ մղեցին։
3 Լակեդեմոնացիները և մյուս վարձկանները առաջին իսկ ընդ-
հարման ընթացքում իսկույն անհաբեկեցին իրենց դեմ կանգնած
բարբարոսներին իրենց զենքերի փայլատակումով և (ռազմական)
4 վարպետությամբ։ Քանզի բարբարոսները պաշտպանվում էին փոքր
վահաններով և նրանց զորագնդերի մեծ մասը թեթևազեն էր և միև-
նույն ատեն անփորձ ռազմական դժվարություններին. մինչդեռ
հելլենները երկարատև Պելոպոնեսյան պատերազմի ընթացքում
մշտական կռիվների մեջ գտնվելով, մեծապես գերազանցում էին
իրենց փորձով։ Ուստի և նրանք իրենց հակառակորդներին փա-
խուստի մատնելով հալածեցին և բարբարոսներից շատերին սպա-
5 նեցին։ Ռազմաշարքերի դասավորության մեջտեղում պատահմամբ
երկուստեք կանգնած էին թագավորության համար պայքարողները։
Սրանք էլ ըմբռնելով կատարվածի ամբողջ իմաստը, նետվեցին
իրար վրա, իրենց իսկ ձեռքերով պատերազմի ելքը վճռելու բուռն
ցանկությամբ։ Ինչպես երևում է, հանուն իշխանության իրար միջև
կռիվ մղող եղբայրներին բախտը հանեց մենամարտի, ասես նման
Էտեոկլեսի և Պոլինիկեսի հանդուգն կռվին, որը հնում ծրգվել է ող-
6 բերգության մեջ[183]։ Այսպես, Կյուրոսը (նետման) տարածության
հասնելով, իր նիզակը նետեց ու հարվածելով արքային, նրան գե-
տին տապալեց։ Թագավորի մոտ կանգնածները նրան իսկույն վերց-
նելով մարտից դուրս բերեցին։ Իբրև հրամանատար թագավորին
փոխարինեց Տիսսափեռնեսը, պարսիկ մի այր, որը ոչ միայն ոգե-
վորում էր բազմության, այլև ինքը նույնպես փայլուն կռվում էր։
Սա թագավորի վիրավորվելուց առաջացած չփոթը վերացնելուց
հետո, իր ընտրյալ զինվորների հետ հայտնվում էր ամենուրեք և հա-
կառակորդներից շատերին սպանում, այնպես, որ նրա հայտնվելը
7 դեռևս հեռվից նկատելի էր դառնում։ Իսկ Կյուրոսը, իր զորամասի

հաջողություններով ոգևորված. Թափով մխրճվեց թշնամու շարքե-
րի մեջ և սկզբում, չխնայելով իր համարձակությունը, շատերին
սպանեց, բայց վերջում, երբ նա առավել անզգույշ էր կռվում, պա-
տահաբար հարված ստացավ ինչ-որ պարսիկի կողմից և ընկավ
մահացու վիրավորված։ Սրա սպանությամբ արքայի զինվորները
ղոտեպնդվեցին ու, վերջին հաշվով, իրենց բազմությամբ և հա-
մարձակությամբ ջլատեցին հակառակորդներին։
24,1 Մյուս թևում Արիգայոսը, որը Կյուրոսի կողմից զորքերի վրա
սատրապ էր կարգվել, սկզբում քաջաբար դիմագրում էր հարձակ-
վող բարբարոսներին, բայց հետո, երբ թշնամու շատ առավել ձգդ-
ված զորասյան կողմից շրջապատվեց և իմացավ Կյուրոսի մահը,
իր զինվորներով փախուստի դիմեց դեպի իր կայաններից մեկը,
2 որը հարմարավետ ապաստան էր։ Իսկ Կլեարքոսը տեսնելով, որ
իր դաշնակիցների կենտրոնը, ինչպես նաև մյուս հատվածները ետ
էին շպրտվել, դադարեցրեց իր հետապնդումը և զինվորներին ետ
կանչելով, նրանց կարգի բերեց, քանզի նա վախենում էր, որ եթե
ամբողջ զորքը շրջվեր հելլենների դեմ, ապա իրենք կշրջապատ-
3 վեն ու բոլորով կկորչեն։ Արքայի զորքերը, երբ արդեն իրենց հա-
կառակորդին մատնել էին փախուստի, նախ հափշտակեցին Կյու-
րոսի իրերը, այնուհետև, երբ արդեն գիշերն իջել էր, հավաքվելով
հարձակվեցին հելլենների վրա, բայց երբ նրանք հարձակումն ըն-
դունեցին քաջաբար, բարբարոսները միայն կարճ ժամանակով կա-
րողացան դիմանալ ու քիչ անց, պարտվելով (հելլենների) խիզա-
խությունից և (ռազմական) վարպետությունից, փախուստի դի-
4 մեցին։ Իսկ Կլեարքոսի զորքերը բարբարոսներից շատերին սպա-
նելուց հետո, երբ արդեն գիշեր էր, վերադարձան (իրենց դիրքերը)
և հաղթության նշան կանգնեցրին, որից հետո պահակության երկ-
5 րորդ պահին[184] հասան իրենց զորակայանը։ Այսպես վերջացավ այդ
ճակատամարտը. արքայի զորքից սպանվեցին ավելի քան մեկ բյուր
և հինգ հազար մարդ, որոնցից մեծագույն մասին սպանեցին
Կլեարքոսի հրամանատարության տակ գտնվող լակեդեմոնացի-
6 ներն ու վարձկանները։ Իսկ մյուս կողմից, Կյուրոսի բանակից
(մարտում) ընկան շուրջ երեք հազար, մինչդեռ հույներից, ինչպես
գրում են, ոչ մեկը չի սպանվել, այլ քչերը վիրավորվել են։
7 Երբ գիշերն անցավ, Արիդայոսը, որը փախել էր իր կայանը,
ոմանց ուղարկեց Կլեարքոսի մոտ, խնդրելով նրան իր զինվորներին
ևս բերել իր մոտ, որպեսզի միասին կարողանան ապահով վերա-
դառնալ ծովափնյա վայրերը. քանզի երբ արդեն Կյուրոսը սպան-
վել էր և արքայի զորքերը գերակշռում էին, Արտաքսերքսեսին Թա-

գավորությունից զրկելու համար արշավանքին մասնակցել համարձակվածներին մեծ տագնապ էր համակել։
25,1 Կլեարքոսն իր մոտ հրավիրելով զորավարներին և մյուս հրամանատարներին, խորհուրդ գումարեց ստեղծված իրադրության մասին։ Խորհրդակցության ժամանակ իսկ իրենց մոտ ժամանեցին արքայի կողմից ուղարկված պատգամավորները, որոնց գլխավորում էր հելլեն մի այր, անունը Փալինոս, ծնունդով Զաքինթոսից[185]։ Սրանք առաջնորդվելով ժողովականների մոտ, հաղորդեցին, թե Արտաքսերքսես արքան այսպես է ասում. «Քանի որ ես արդեն հաղթել եմ և սպանել Կյուրոսին, դուք կհանձնեք ձեր զենքերը և գալով իմ դռները, կփորձեք, թե ինչպե՞ս ինձ ծառայելով արժա-
2 նանաք իմ ողորմածության»։ Ասված այս խոսքերին զորավարներից յուրաքանչյուրը այնպիսի պատասխան տվեց, ինչպիսին Լեոնիդեսը, երբ սա պաշտպանում էր Թերմոպիլեի կիրճը[186] և Քսերքսեսը նրա մոտ պատգամավորներ ուղարկելով, հրամայել էր
3 հանձնել զենքերը։ Քանզի Լեոնիդեսն այդ ժամանակ պատվիրել էր պատգամավորներին արքային հագորդել այսպես. «Մենք համոզված ենք, որ եթե Քսերքսեսի բարեկամները դառնանք, մենք առավել լավ դաշնակիցներ կլինենք մեր զենքերը պահելու դեպքում, իսկ եթե ստիպվենք նրա դեմ պատերազմել, ապա առավել լավ
4 կկռվենք այդ զենքերով»։ Երբ Կլեարքոսը նման պատասխան տվեց դեսպաններին, Պրոքսենոս Թեբեացին ասաց, որ այժմ արդեն, երբ համարյա ամեն մի այլ հնարավորությունից հրաժարվել ենք, մեզ մնում են միայն մեր քաջությունն ու զենքերը։ Իմ կարծիքով, եթե զենքերը պահենք, ապա մեր քաջությունը ևս մեզ պիտանի կլինի, իսկ եթե դրանք հանձնենք, ապա նույնիսկ մեր քաջությունը չի կարող մեզ օգնել։ Ուստի և նա պատվիրեց ասել արքային, որ եթե նա մեր դեմ որևէ չարիք է նյութում, մենք մեր զենքերով կկռվենք նրա
5 դեմ, նրա ունեցած բարիքների համար։ Պատմում են, որ Սոփիլոսը[187] ևս, որը նույնպես զորահրամանատար էր, ասել է, թե զարմանում է արքայի խոսքերի վրա, քանզի եթե նա կարծում է, թե հելլեններից առավել հզոր է, ապա իր զորքերով թող գա և վերցնի մեր զենքերը։ Իսկ եթե ցանկանում է մեզ համոզել, ապա թող հայտնի. թե այդ ամենի փոխարեն նա ի՞նչ համարժեք շնորհք պետք է մեզ
6 պարգևի։ Սրանցից հետո Սոկրատես աքայացին ասաց, որ արքան մեզ հանդեպ շատ զարմանալի կերպով է վարվում, քանզի նա այն ամենը, ինչ ցանկանում է ստանալ մեզնից, պահանջում է անհապաղ, իսկ դրա փոխարեն մեզ տրվելիքի մասին նա պատվիրում է հետագայում խնդրել։ Ընդհանրապես, եթե նա չգիտի թե ովքեր են

հաղթել և մեղ պարտված համարելով կարգադրում է իր հրաման-
ները կատարել, ապա նա իր մնծաթիվ զորքերով թող գա և իմանա,
թե հաղթանակը ու՞մ կողմն է։ Բայց եթե հաստատ իմանալով հան-
դերձ, որ մենք ենք հաղթել ու դարձյալ ստում է, ապա ինչպե՞ս մենք
հավատանք նրա հետագայի խոստումներին։
7 Այսպիսի պատասխաններ ստանալով, հրեշտակները մեկնեցին,
իսկ Կլեարքոսը իր զորամասով ճանապարհ ընկավ դեպի կայան,
ուր արդեն մեկնել էին ճակատամարտից փրկված զորքերը։ Երբ
ամբողջ զորաբանակը ի մի հավաքվեց, բոլորը համատեղ խորհուրդ
գումարեցին, թե ինչպե՞ս և ի՞նչ երթուղիով իրենք վերադառնան
8 դեպի ծով։ Արդ, որոշեցին չվերադառնալ այն նույն ճանապարհով,
ինչ եկել էին, քանզի այդ երկրի մեծ մասն ամայի էր, որտեղ նրանք
չէին կարող պարեն հայթայթել թշնամի զորքերի հետապնդման
պայմաններում։ Ուստի նրանք որոշեցին անցնել Պափլագոնիայի
վրայով և մեկնեցին ամբողջ զորքով դեպի Պափլագոնիա. նրանք
դանդաղ էին առաջ շարժվում, քանզի ճանապարհին հոգ էին տա-
նում պարեն հայթայթելու մասին։
26,1 Արքան արդեն ապաքինվում էր վերքից և երբ իմացավ թշնա-
միների նահանջի մասին, կարծեց, թե նրանք փախչում են, իր զոր-
2 քով շտապ ընկավ նրանց ետևից։ Ու նա, հասնելով նրանց, որոնք
դանդաղ էին ճանապարհ գնում, քանի որ արդեն գիշեր էր, նրանց
մոտ ճամբար դրեց, իսկ երբ օրը բացվեց և հելլենները իրենց դա-
սավորեցին ի մարտ, հրեշտակներ ուղարկեց նրանց մոտ և առայժմ
3 երեք օրվա համար զինադադար կնքեց։ Այդ ընթացքում նրանք
համաձայնվեցին, որ արքան պետք է հոգ տանի, որ (իր) երկիրը
բարեկամաբար վերաբերվի նրանց, միաժամանակ դեպի ծով ճա-
նապարհը ցույց տվող առաջնորդներ հատկացնի և ուղևորության
ընթացքում պարենամթերք տրամադրի, իսկ Կլեարքոսի հետ եղող
վարձկաններն ու Արիդայոսի հրամանատարության տակ գտնվող
բոլոր զորամասերը պետք է երկրի միջով ընթանան առանց որևէ
4 վնաս պատճառելու։ Այնուհետև նրանք սկսեցին իրենց ուղևորու-
թյունը, իսկ արքան իր զորքը տարավ Բաբելոն։ Այստեղ նա պա-
տերազմում քաջագործություն ցուցաբերած յուրաքանչյուր ռազ-
միկին ըստ արժանվույն պատվեց և բոլորից գերազանց գնահատեց
Տիսսափեռնեսին։ Այդ պատճառով էլ նրան հարուստ ընծաներով
պատվեց և իր դուստր տվեց նրան կնության և այնուհետև նրա հետ
վարվում էր իբրև իր հավատարմագույն բարեկամի. նրան շնորհեց
նաև ծովամերձ այն սատրապությունների իշխանությունը, որտեղ
տիրել էր Կյուրոսը։

5 Տիսսափեռնեսը տեսնելով, որ արքան զայրացած է հելլենների
վրա, խոստացավ նրանց բոլորին կործանել, եթե արքան իրեն զոր-
քեր տա և համաձայնության գա Արիդայոսի հետ, քանզի սա ուղե-
վորության ընթացքում կարող էր հելլեններին մատնել (իր ձեռքը)։
Արքան այդ խոսքերն ուրախությամբ ընդունեց և թույլատրեց նրան
ամբողջ զորքից ընտրելու լավագույններին, ինչքան ինքը ցանկա-
6 նար։ [Երբ Տիսսափեռնեսը հասավ հելլեններին, պատգամ ուղար-
կեց Կլեարքոսին և][188] մյուս առաջնորդներին, գալ իր մոտ և ան-
ձամբ լսել իր խոսքերը։ Ուստի և գրեթե բոլոր զորավարները Կլեար-
քոսի և մոտ քսան վաշտապետների հետ եկան Տիսսափեռնեսի
մոտ, նրանց ուղեկցեցին նաև շուրջ երկու հարյուր զինվոր, որոնք
7 ցանկացել էին շուկա[189] գնալ։ Տիսսափեռնեսը զորավարներին
հրավիրեց իր վրանը, իսկ վաշտապետները սպասում էին մուտքի
մոտ։ Եվ քիչ անց, երբ Տիսսափեռնեսի վրանից ծիրանագույն դրոշ
թափահարվեց, սա ձերբակալեց ներսում գտնվող զորավարներին,
իսկ հատուկ պատրաստված խմբեր հարձակվելով սպանեցին վաշ-
տապետներին, մինչդեռ ուրիշներ սպանեցին շուկա եկած զինվոր-
ներին։ Սրանցից լոկ մեկը փախչելով հասավ իր ճամբարը և հայտ-
նեց աղետի մասին։
27,1 Զինվորներն իմանալով կատարվածը, նույն պահին ահաբեկ-
վեցին և բոլորը, մեծ անկարգությամբ, վազեցին դեպի զենքերը,
որովհետև ոչ մի հրամանատար չկար։ Այնուհետև, սակայն, քանի
որ ոչ ոք նրանց չէր անհանգստացնում, նրանք մի խումբ զորա-
վարներ ընտրեցին, իսկ նրանցից մեկին՝ Խեյրիսոփոս լակեդեմո-
2 նացուն, հանձնեցին ընդհանուր հրամանատարությունը։ Այս զորա-
վարները զորքը արշավի համար կարգի բերելուց հետո, իրենց իսկ
ընտրած ճանապարհով առաջ շարժվեցին դեպի Պափլագոնիա։
Մինչդեռ Տիսսափեռնեսը (ձերբակալված) զորավարներին շղթա-
յելով ուղարկեց Արտաքսերքսեսին. սա բոլորին սպանեց, խնայելով
միայն Մենոնին. քանզի (արքան) կարծում էր, որ միայն սա, իր
զինակիցների հետ ունեցած անհամաձայնությունների պատճառով,
3 կդավաճանի հելլեններին։ Տիսսափեռնեսը իր զորքերով հետևելով
հելլեններին, ընդհուպ մոտեցավ նրանց, բայց չհամարձակվեց
դեմառդեմ մարտի բռնվել, վախենալով հուսահատության մատնը-
ված մարդկանց խիզախությունից և անմտածված քայլերից, ուստի
և նա հարմար վայրերում անհանգստացնելով նրանց, անկարող
եղավ որևէ մեծ վնաս հասցնել. բայց ոչ մեծ դժվարություններ հա-
րուցելով, հետապնդեց նրանց մինչև կարդուխներ[190] կոչված ժո-
ղովրդի (երկիրը)։

4 Արդ, Տիսսափեռնեսն այլևս ոչինչ անել չկարողանալով, իր
զենքերով մեկնեց Հոնիա[191]։ Իսկ հելլենները յոթ օրվա ընթացքում
անցան կարդուխների լեռները բազում չարիքների ենթարկվելով
տեղաբնիկների կողմից, որոնք ռազմասեր էին և վայրերին քաջա-
5 ծանոթ։ Սրանք (պարսից) արքայի թշնամի էին ու ազատ և զբաղ-
վում էին ռազմական արվեստով. նրանք առանձնապես մարզվում
էին պարսատիկներով խոշորագույն քարեր արձակելու և հույժ խո-
շոր նետեր օգտագործելու մեջ, որոնցով էլ նրանք հարմարավետ
դիրքերից հելլեններին հարվածներ հասցնելով, շատերին սպանե-
6 ցին և ոչ քչերին էլ յուրջ վնասներ պատճառեցին։ Քանզի նրանց
նետերը երկու կանգունից ավելի երկար էին ու ծակում էին թե
վահանները և թե լանջապանները, այնպես, որ ոչ մի զրահ չէր դի-
մանում դրանց ուժգնությանը։ Պատմում են, որ նրանք այնպիսի
խոշոր նետեր էին օգտագործում, որ հելլենները նրանց արձակած
նետերին կաշվե բռնակ ամրացնելով, դրանք իբրև սեգ էին օգտա-
7 գործում և շպրտում։ Արդ, մեծ դժվարությամբ ճեղքել-անցնելով
վերոհիշյալ երկիրը, նրանք հասան Կենտրիտես[192] գետը և այն
անցնելով մտան Արմենիա։ Այս երկրի սատրապն էր Տիրիբա-
զոսը[193], որի հետ դաշինք կնքեցին և երկրի միջով անցան իբրև բա-
րեկամներ։
28,1 Արմենիայի լեռների միջով ուղևորվելիս, նրանք առատ ձյան
հանդիպեցին և բոլորը կործանման վտանգի տակ գտնվեցին։ Քան-
զի սկզբում, երբ քամի բարձրացավ, երկնքից սկսեց բարակ ձյուն
տեղալ այնպես, որ ճանապարհով գնացողներին չէր արգելում առաջ
ընթանալիս. բայց հետո, երբ քամին աստիճանաբար ուժեղացավ,
այնպես ձյուն էր տեղում և երկիրը ծածկում, որ ոչ ճանապարհն էր
2 երևում, ոչ էլ հնարավոր էր տեղանքի բնույթը տեսնել։ Այդ իսկ
պատճառով հուսահատությունը և սարսափը համակեց զինվորնե-
րին, քանզի կործանումից վախենալով, չէին կամենում ետ վերա-
դառնալ, մինչդեռ ձյան առատության պատճառով չէին կարողա-
նում առաջ շարժվել։ Քանի դեռ փոթորիկը հետզհետե սաստկանում
էր, ուժեղ բուք բարձրացավ ու շատ կարկուտ տեղաց, որը թափով
խփում էր նրանց դեմքին. ուստի ամբողջ զորքը ստիպված եղավ
կանգ առնել։ Քանզի նրանցից յուրաքանչյուրը, անկարող լինելով
դիմանալու ուղևորության այդ տանջանքներին, ստիպված էր լի-
3 նում մնալ այնտեղ, ուր պատահեց։ Չունենալով որևէ անհրաժեշտ
պիտույք, նրանք այդ օրը և ամբողջ գիշերը մնացին բաց երկնքի
տակ, շատ վրկանքներ կրելով. շարունակաբար տեղացող առատ
ձյան պատճառով նրանց բոլոր զենքերը ծածկվեցին (ձյունով),

իսկ մարմինները ամբողջովին սառեցին ցուրտ եղանակից։ Այս
ծանր դժվարությունների պատճառով նրանք ամբողջ գիշերը մնա-
ցին անքուն, և ոմանք կրակ վառելով, սկսեցին դրանից օգտվել,
իսկ ոմանք էլ, որոնց մարմիններն ամբողջապես ցրտահարված էին.
կորցրել էին օգնություն ստանալու որևէ հույս, քանի որ նրանց
համարյա բոլոր վերջավորությունները մահացման էին ենթարկ-
4 վում։ Այսպիսով, երբ գիշերն անցավ, պարզ դարձավ, որ բեռնա-
տար անասունների մեծ մասը արդեն սատակել է և շատ մարդիկ
մահացել են, իսկ ոչ քչերն էլ, թեպետև գիտակցությունը չէին կորց-
րել, բայց սառած լինելու պատճառով անկարող էին իրենց մար-
մինը շարժել, ոմանց էլ աչքերը կուրացել էին ցրտից և ձյան ար-
5 տացոլքից։ Եվ բոլորն էլ կատարելապես կոչնչանային, եթե կարճ
(ճանապարհ) անցնելուց հետո չպատահեին պարենաշատ գյու-
ղերի։ Այս գյուղերում բեռնատար անասունների մուտքը գետնափոր
էր, իսկ մարդիկ իջնում էին աստիճաններով...[194] և բնակարաննե-
րում անասունները սնվում էին խոտով, իսկ մարդիկ վայելում էին
կյանքի համար անհրաժեշտ բարիքների առատություն։
29,1 Այս գյուղերում ութ օր մնալուց հետո, (հելլեններն) ուղևորվե-
ցին դեպի Փասիս գետը[195]։ Այստեղ չորս օր անցկացնելուց հետո
իրենց ճանապարհը շարունակեցին խայոյների[196] և փասիանների[197]
երկրի միջով։ Երբ տեղաբնիկները հարձակվեցին հելլենների վրա,
սրանք կռվում հաղթելով, նրանցից շատերին սպանեցին և, գրա-
վելով տեղաբնիկների տները, որոնք լեցուն էին բարիքներով, այն-
2 տեղ մնացին տասնհինգ օր։ Այստեղից դուրս գալով, յոթ օրվա ըն-
թացքում անցան խալդայներ[198] կոչված (ցեղերի) երկրով և հասան
Հարպագոս[199] գետը, որի լայնությունը չորս պլեթրոն էր։ Այստեղից
էլ սկյուտինների[200] երկրի միջով առաջանալիս նրանց ճանապարհն
անցնում էր դաշտով, որտեղ նրանք երեք օր հանգստացան ամեն
տեսակ բարիքների առատության մեջ։ Այնուհետև ճանապարհ
ընկնելով, չորրորդ օրը հասան մի խոշոր քաղաք, որը կոչվում էր
3 Գյումնասիա[201]։ Այստեղ, այս վայրերի կառավարիչը դաշն կնքեց
նրանց հետ և ուղեցույցներ տրամադրեց, որոնք պետք է (հելլեննե-
րին) ծով առաջնորդեին։ Տասնհինգ օրում հասնելով Քենիոն[202] լեռը,
երբ առջևից ընթացողները տեսան ծովը, մեծապես հրճվեցին և
այնպիսի աղաղակ բարձրացրին, որ շարասյան վերջում գտնվող-
ները կարծելով, թե թշնամիներ են հարձակվել, զենքի դիմեցին։
4 Բայց երբ բոլորը բարձրացան այն վայրը, որտեղից կարելի էր ծովը
տեսնել, թևերը պարզելով աստվածներին, շնորհակալություն էին

հայտնում, հավատալով, թե արդեն փրկված են, ուստի բազմաշատ
քարեր կուտակելով մի վայրում, դրանցով խոշոր քարաթմբեր
ստեղծեցին և դրանց վրա, որպես նվիրաբերում, դրեցին բարբա-
րոսներից խլած ավարներ, դրանով իսկ ցանկանալով իրենց ար-
շավանքը անմահացնող հուշարձան թողնել։ Իրենց առաջնորդած
ուղեցույցին նրանք պարգևեցին արծաթե բաժակ և պարսկական
համազգեստ. սա, ցույց տալով նրանց դեպի մակրոնները տանող
5 ճանապարհը, ետ վերադարձավ։ Արդ, հելլենները մտնելով մակ-
րոնների[203] երկիրը, նրանց հետ դաշն կնքեցին և իբրև երաշխիք
նրանցից ստացան բարբարոսական մի նիզակ, իսկ փոխարենը
տվեցին հելլենական (նիզակ), քանզի բարբարոսներն ասացին, թե
իրենց նախնիների ավանդության համաձայն, այսպիսի փոխանա-
6 կումը հավատարմության ամենահաստատուն երաշխիքն է։ Երբ
հելլեններն անցան սրանց սահմաններից, հասան կոլխերի երկիրը։
Այստեղ, երբ տեղաբնիկները դումարվեցին իրենց դեմ, հելլենները
կռվում հաղթելով նրանց, շատերին սպանեցին, որից հետո գրավելով
ամրացիր մի բլուր, ավերում էին երկիրը և կողոպուտը այնտեղ
հավաքելով, առատորեն վայելում էին դրանք։
30,1 Այդ վայրերում նրանք գտան նաև մեծ քանակությամբ մեղվա-
փեթակներ, որոնցից ստացվում էր թանկարժեք խորիսխ։ Բայց
դրանից ճաշակողները բռնվում էին ինչ-որ տարօրինակ ախտով.
քանզի այդ մեղրից ուտողները կորցնում էին իրենց բանականու-
2 թյունը և ընկնելով գետին, նմանվում էին մեռյալների։ Ու քանի որ
դրա քաղցր բավականության պատճառով շատերն էին դրանից կե-
րել, ապա այնքան մեծ բազմություն էր գետին ընկել, ասես պա-
տերազմում ջախջախվել էին։ Ուստի այդ օրը զորքը վհատվել էր,
ահաբեկված տարօրինակ պատահարից և դժբախտության մեջ ըն-
կածների բազմությունից։ Սակայն հաջորդ օրը, գրեթե նույն ժա-
մին, բոլորն ուշքի էին գալիս և աստիճանաբար վերագտնելով
իրենց դատողությունը, վեր կացան. նրանց մարմնական վիճակն
այնպիսին էր, ասես թունավորումից էին փրկվել-04։
3 Նրանք երեք օր կազդուրվելուց հետո ուղևորվեցին դեպի հել-
լենական Տրապեզունտ քաղաքը[205], որը սինոպեցիների գաղութն էր
և գտնվում էր կոլխերի երկրում։ Այստեղ նրանք երեսուն օր անց-
կացնելով, տեղացիների կողմից փայլուն կերպով հյուրասիրվեցին.
այստեղ էլ զոհեր մատուցեցին Հերակլեսին և Զևս-փրկչին ու կազ-
մակերպեցին մարզական մրցումներ նույն այն վայրում, որտեղ,
ինչպես պատմում են, խարիսխ է նետել Արգո[206] նավը և Յասոնն
4 իր մարդկանցով ափ է դուրս եկել։ Այստեղից էլ Խեյրիսոփոսին,

որն իրենց առաջնորդն էր, ուղարկեցին Բյուզանդիոն, նավեր ու
սրիհերաներ ձեռք բերելու համար. քանզի նա ասում էր, թե բյու-
զանդացիների նավարքոս Անաքսիբիոսի բարեկամն էր։ Հելլենները
նրան ուղարկեցին արագրնթաց նավով, իսկ իրենք տրապեզունտ-
ցիներից երկու փոքր թիանավ ստանալով, կողոպտում էին հարևան
5 բարբարոսներին թե՛ ծովում և թե՛ ցամաքի վրա։ Արդ, նրանք երե-
սուն օր սպասում էին Խեյրիսոփոսին, բայց քանի որ նա ուշանում
էր և զորքերը պարենի պակաս էին զգում, նրանք մեկնեցին Տրա-
պեզունտից և երրորդ օրը հասան հելլենական Կերասունտ քաղա-
քը[207], որը սինոպեցիների գաղութն էր։ Այստեղ մի քանի օր մնալուց
6 հետո, նրանք հասան մոսինոյկների[208] ազգին։ Երբ բարբարոսները
հավաքվելով հարձակվեցին իրենց վրա, (հելլենները) հաղթեցին
մարտում և շատերին սպանեցին։ Երբ թշնամիները փախան ապաս-
տանելու ինչ-որ ամրացված վայրում, որտեղ նրանք ապրում էին,
պատելով այն յոթնահարկ փայտե աշտարակներով, հելլենները
անընդհատ հարձակվելուց հետո գրոհով այն վերցրին։ Այս ամ-
րավայրը բոլոր մյուս ամրությունների գլխավոր կենտրոնն էր, որի
7 ամենաբարձր տեղում ապրում էր նրանց բասիլևսը։ Նրանց հայ-
րենի սովորությունն է, որ նա ամբողջ կյանքում մնա այդ վայրում
և այնտեղից արձակի ամբոխին ուղղված իր հրամանները։ Զինվոր-
ները պատմում են, թե սրանք ամենաբարբարոս ազգն են այն բո-
լորից, ում երկրների միջով իրենք անցել են, տղամարդիկ կանանց
հետ մոտ են լինում ի տես բոլորի, ամենաունևորների երեխաները
սնվում են խաշած շագանակներով[209] և բոլորը գեռ մանկուց իրենց
թիկունքն ու կուրծքը դաջելով նկարազարդել են։ Ահա այս երկիրը
նրանք անցան ութ օրում, իսկ հաջորդ երկիրը, որը կոչում էին
Տիբարենե[210] երեք օրում։
31,1 Այստեղից էլ նրանք հասան հելլենական Կոտյուորա[211] քաղաքը,
որը սինոպեցիների գաղութն էր։ Այստեղ նրանք անցկացրին հիսուն
օր, կողոպտելով Պափլագոնիայի հարևանությամբ բնակվող ժողո-
վուրդներին և այլ բարբարոսների։ Հերակլեացիները և սինոպեցինե-
րը[212] նրանց նավեր ուղարկեցին, որոնցով իրենք և բեռնատար անա-
2 սունները փոխադրվեցին (Սինոպե)։ Սինոպեն միլետացիների գա-
ղութն էր և գտնվելով Պափլագոնիայում, մեծ հեղինակություն ուներ
շրջակա երկրների վրա։ Եվ այս քաղաքում էին գտնվում մեր ժա-
մանակ հռոմեացիների դեմ պատերազմած Միթրիդատեսի[213] խո-
3 շորագույն արքայանիստ պալատները։ Այստեղ էլ, առանց որևէ
հաջողության հասնելու, եկավ Խեյրիսոփոսը, որն ուղարկված էր

*տրիերաներ ձեռք բերելու։ Այսուհանդերձ սինոպեցիները նրանց սիրալիր հյուրասիրելով, ծովով ճանապարհեցին Հերակլեա, որը մեգարացիների գաղութն էր. ամբողջ նավատորմը խարիսխ նետեց Աքերուսիաս թերակղզու մոտ, որտեղ, ինչպես պատմում են, Հե-*
4 *րակլեսը Հադեսից Կերբերոսին վեր բերեց[214]։ Այստեղից Բիթյունիայի միջով հետիոտն ուղևորվելիս վտանգների մեջ ընկան, քանի որ տեղաբնիկները ճանապարհին հարձակվում էին նրանց վրա։ Արդ, երբ նրանք հազիվ փրկվելով, հասան Քաղկեդոնիայի Քրյուսոպոլիսը[215], բյուրից մնացել էր ընդամենը ութ հազար երեք հարյուր այր.*
5 *Այստեղից, արդեն առանց դժվարության, ոմանք ապահով վերադարձան իրենց հայրենիք, իսկ մնացյալը, հավաքվելով Քերսոնեսում, ավարի էին ենթարկում թրակիացիներին հարևան երկրները։ Ահա այսպիսի վախճան ունեցավ Կյուրոսի արշավանքը Արտաքսերքսեսի դեմ։*

80,6 *Արտաքսերքսեսը, Ասիայի արքան, իմանալով պարտությունների մասին[216] և ահաբեկվելով հելլենների դեմ մղված պատերազմից, զայրացել էր Տիսսափեռնեսի վրա, քանզի սրան էր համարում պատերազմի պատասխանատու. Նրան մայրը ևս, Պարիսատիսը, խնդրում էր պատժել Տիսսափեռնեսին, քանզի Պարիսատիսը ատում էր Տիսսափեռնեսին այն պատճառով, որ սա մեղադրել էր իր որ-*
7 *դուն, Կյուրոսին, երբ վերջինս արշավում էր եղբոր դեմ։ Եվ ահա Տիթրաուստեսին կառավարիչ նշանակելով, (Արտաքսերքսեսը) պատվիրեց նրան ձերբակալել Տիսսափեռնեսին, իսկ քաղաքներին ու սատրապներին թղթեր ուղարկեց, որպեսզի բոլորը կատարեն*
8 *նրա հրամանները։ Արդ, Տիթրաուստեսը հասնելով Փռյուգիայի Կոլոսսոս (քաղաքը), ոմն սատրապ Արիայոսի միջոցով ձերբակալեց Տիսսափեռնեսին, մինչ սա բաղնիքում էր, և նրա գլուխը կտրելով, ուղարկեց արքային։ Իսկ ինքը Աղեսիլաոսին[217] համոզեց բանակցություններ վարել և վեց ամսով հաշտություն կնքեց։*

## Գիրք 15

2.1 *...Այդ տարին[218] Արտաքսերքսեսը, պարսից արքան, պատերազմ սկսեց Կիպրոսի թագավորի՝ Եվագորասի դեմ. Նա երկար ժամանակ զբաղվելով ռազմական պատրաստություններ էր տեսել ու հավաքել էր մեծ ռազմական ուժ՝ ծովային և ցամաքային։ Ցամաքային զորքը երեսուն բյուր էր՝ հեծյալների հետ միասին, իսկ նրա*

պատրաստած տրիերաները՝ երեք հարյուրից ավելի։ Նա զորահրա-
մանատարներ կարգեց ցամաքային ուժերի վրա՝ իր փեսա Օրոնտե-
սին[219], իսկ ծովային ուժերի վրա՝ Տիրիբազոսին[220], մի մարդու, որը
պարսիկների մոտ մեծ հեղինակություն էր վայելում։ Սրանք զորքե-
րի հրամանատարությունը ստանձնելով Փոկայայում և Կյումեում[221],
եկան Կիլիկիա և, անցնելով Կիպրոս, եռանդուն կերպով պատերազմ
վարեցին։
3 Եվագորասը դաշինք կնքեց Եգիպտոսի թագավոր Ակորիսի
հետ, որը պարսիկներին թշնամի էր և նրանից ստացավ նշանա-
կալից քանակությամբ զորք, իսկ Հեկատոմնոսից, Կարիայի[222]
տիրակալից, որը գաղտնաբար գործակցում էր իր հետ, ստացավ
մեծ քանակությամբ դրամ՝ վարձկան զորքերին պահելու համար։
Նույնպես նաև բոլոր մյուսներին, որոնք թշնամանք ունեին պար-
սիկների հանդեպ, ոմանց գաղտնաբար, այլոց՝ բացահայտ, համո-
4 զեց մասնակցել պարսիկների դեմ պատերազմի։ Նա տիրում էր
Կիպրոսի համարյա բոլոր քաղաքներին, ինչպես նաև Փյունիկիա-
յում Տյուրոսին և մի շարք այլ քաղաքների։ Նա ուներ նաև իննսուն
տրիերա, որից քսանը՝ տյուրոսյան, իսկ յոթանասունը՝ կիպրա-
կան, նրա զինվորները վեց հազար էին, իսկ դաշնակից զորքերը՝
դրանից շատ ավելի։ Այս ամենից բացի նա դրսից վարձկաններ
հավաքագրեց, քանի որ առատ դրամ ուներ։ Նրան ոչ քիչ զորք
ուղարկեցին արաբների թագավորը, ինչպես և ուրիշներ, որոնք
տարակարծիք էին պարսից արքային։
3,1 Արդ, սա այսքան միջոցներ ունենալուց հետո, համարձա-
կությամբ ձեռնամուխ եղավ պատերազմին։ Սկզբում նա, ծովահե-
նության համար ոչ քիչ թվով նավեր ունենալով, դարանակալում էր
թշնամու պարենի փոխադրումները և դրանց մի մասը ոչնչացնում
էր ծովում, մյուս մասի փոխադրումն էր խոչընդոտում, իսկ մի
մասն էլ կարողանում էր ձեռք գցել։ Այդ պատճառով էլ վաճառա-
կանները չէին համարձակվում ցորեն բերել Կիպրոս, և քանի որ
կղզում մեծ քանակությամբ զորք էր հավաքվել, ապա շուտով
պարսկական զորքերում հացի պակաս զգացվեց, որը և հանգեց-
2 րեց ապստամբության. պարսիկների վարձկանները, հարձակվելով
հրամանատարների վրա, սպանեցին նրանցից ոմանց և զորաբա-
նակում առաջացրին խռովություն և ապստամբություն։ Պարսից
զորավարները և նավատորմի հրամանատարը, որի անունը Գլոս
3 էր, դժվարությամբ վերջ տվին խռովությանը։ Նրանք իրենց ամբողջ
նավատորմով նավեցին և Կիլիկիայից մեծ քանակությամբ ցորեն
բերելով պարենի խիստ առատություն ստեղծեցին։ Իսկ Եվագո-

րասին թագավոր Ակորիսը Եգիպտոսից առատ ցորեն ուղարկեց և
4 մեծ քանակությամբ դրամ և այլ հանդերձանք տրամադրեց։ Եվա-
գորասը տեսնելով, որ իր նավատորմը շատ ավելի թույլ է, այն
համալրեց ևս վաթսուն այլ նավերով, հիսուն նավ էլ Եգիպտոսի
թագավոր Ակորիսից խնդրեց, այնպես, որ ընդամենը կունենար
երկու հարյուր տրիերա։ Այս նավատորմը մարտականորեն հան-
դերձավորելով, նա անհաբեկման և մշտական փորձերի և մարզում-
ների միջոցով պատրաստվում էր նավամարտի...։
4,1 Պարսիկները նավամարտում հաղթելուց հետո, իրենց ցամա-
քային ու ծովային ուժերը գումարեցին Կիտիոն[223] քաղաքում։ Այս-
տեղից էլ նրանք շարժվեցին դեպի Սալամիս[224] և քաղաքը պաշար-
2 ման ենթարկեցին ցամաքից ու ծովից։ Մինչ այդ, Տիրիբազոսը նա-
վամարտից հետո անցել էր Կիլիկիա և այնտեղից մեկնելով ար-
քայի մոտ, նրան ավետել էր հաղթանակը և երկու հազար տաղանդ
բերել պատերազմը շարունակելու համար։ Եվագորասը նավամար-
տից առաջ ծովափին ցամաքային զորքերով հարձակվել էր (թշնա-
մու) զորքերի մի մասի վրա և հաղթելով նրան, հուսադրվել էր
ապագայի նկատմամբ, բայց նավամարտում պարտվելուց և պա-
3 շարման ենթարկվելուց հետո արդեն անտրամադիր էր։ Այսուհան-
դերձ, որոշելով շարունակել պատերազմը, իր որդուն, Պնիտագո-
րասին, թողեց Կիպրոսում իբրև բոլորի հրամանատար, իսկ ինքը
տասը տրիերա վերցրեց ու գիշերով, թշնամուց գաղտնի, փախավ
Սալամիսից։ Ժամանելով Եգիպտոս, նա հանդիպեց թագավորին և
խնդրեց նրան պատերազմը շարունակել վճռականորեն և պարսից
դեմ այս պատերազմը համարել ընդհանուր գործ։
8,2 Տիրիբազոսը ընդհանուր հրամանատարությունը վերցնելուց
հետո հայտարարեց, թե ինքը կհամաձայնվի հաշտություն կնքել,
եթե Եվագորասը հրաժարվի Կիպրոսի բոլոր քաղաքներից և, թա-
գավորելով միայն Սալամիսում, ամենամյա որոշակի հարկ վճարի
պարսից արքային և կատարի նրա բոլոր հրամանները, ինչպես
3 ծառան՝ տիրոջ։ Եվագորասը, թեպետև պայմանները շատ ծանր
էին, սակայն բոլորն ընդունեց, բացի այն, որ իբրև ծառա պար-
տավոր է կատարել տիրոջ բոլոր հրամանները, հակաճառելով, թե
ինքը կհպատակվի իբրև թագավորը թագավորին։ Բայց քանի որ
Տիրիբազոսը չէր համաձայնվում, Օրոնտեսը, մյուս զորավարը, նա-
խանձելով Տիրիբազոսի փառքին, գաղտնաբար նամակ ուղարկեց
4 Արտաքսերքսեսին Տիրիբազոսի դեմ։ Սրան մեղադրում էր, որ նախ՝
ի վիճակի լինելով գրավել Սալամիսը, այդ չի կատարում, այլ ընդու-
նելով Եվագորասի դեսպաններին, բանակցություններ է վարում

նրանց հետ գործակցելու համար. այնուհետև՝ որ նա առանձին դա-
շինք է կնքում լակեդեմոնացիների հետ, քանի որ նրանց հետ բարե-
կամ է. որ նա մարդ է ուղարկել Պյութոյի[225] մոտ, հարցնելու դիցու-
հուն իր ծրագրած ապստամբության մասին, իսկ ամենագլխավորը,
որ նա զորահրամանատարների բարեհաճությունն է շահում պա-
5 տիվներով և ընծաներով, ինչպես նաև այլ խոստումներով։ Արքան,
կարդալով նամակը և հավատալով զրպարտանքին, Օրոնտեսին
կարգադրեց ձերբակալել Տիրիբազոսին և ուղարկել իր մոտ։ Երբ
Օրոնտեսը կատարեց հրամանը, Տիրիբազոսը բերվելով արքայի
առաջ, խնդրեց քննություն կատարել և առայժմ պահվեց կալանքի
տակ։ Սակայն, այնուհետև, քանի որ արքան զբաղված էր կադու-
սիների դեմ պատերազմելով, քննությունը հետաձգվում էր և վճիռը
ձգձգվում։
9,1 Արդ՝ Օրոնտեսը ստանձնեց Կիպրոսում զորքերի հրամանա-
տարությունը. սակայն, երբ տեսավ, որ Եվագորասը դարձյալ սըր-
ասպնդվելով շարունակում է դիմադրությունը, մյուս կողմից էլ
զինվորները զայրացել էին Տիրիբազոսի ձերբակալության համար և
այդ պատճառով անհնազանդ դարձել ու հրաժարվել էին պաշարու-
մից, Օրոնտեսը տագնապեց իրադրության այդպիսի փոփոխու-
թյամբ և մարդկանց ուղարկեց Եվագորասի մոտ, որպեսզի բանակ-
ցություններ վարեն հաշտություն կնքելու այն պայմաններով, ինչ
2 (Եվագորասը) առաջարկել էր Տիրիբազոսին։ Եվագորասը զարմա-
նալի կերպով կարող էր արդեն ապահով լինել գերվելու վտանգից և
դաշինք կնքեց այն պայմանով, որ ինքը Սալամիսում թագավորի և
վճարի տարեկան որոշակի հարկ և իբրև թագավոր՝ հպատակվի
թագավորի հրամաններին։ Կիպրոսի պատերազմն ահա այսպես
վերջացավ. այն տևեց մոտավորապես տաս տարի։ Այդ ժամանակի
մեծագույն մասը, սակայն, անցավ նախապատրաստություններով
և միայն երկու տարին անցավ տևական պատերազմների մեջ։
10,1 Արտաքսերքսեսը կադուսիների դեմ պատերազմը վերջացնելուց
հետո, նշանակեց Տիրիբազոսի դատը և պարսից ամենաանվանի
մարդկանցից երեքին դատավոր կարգեց։ Այդ ժամանակներում էր,
որ այլ դատավորներ, մեղադրվելով վատ դատելու մեջ, կենդանի
մաշկազերծ արվեցին և նրանց մորթերը փռված լինելով դատավո-
րական աթոռներին, դատավորները դատում էին դրանց վրա նըս-
տած, աչքի առաջ ունենալով վատ դատելու դեպքում սպառնացող
2 պատժի օրինակը։ Արդ՝ մեղադրողները ընթերցելով Օրոնտեսի կող-
մից ուղարկված նամակը, այն բավական համարեցին մեղադրանքի
համար։ Իսկ Տիրիբազոսը, պատասխանելով Եվագորասի հետ ունե-

ցած հարաբերությունների հարցին. ասաց, թե Օրոնտեսր հաշտու-
թյուն է կնքել Եվագորասի հետ պայմանով, որ սա պետք է հպա-
տակվի արքային իբրև թագավոր, մինչդեռ ինքը հաշտության հա-
մար պայման էր դրել, որ Եվագորասը պետք է հպատակվի արքա-
յին ինչպես ստրուկը տիրոջ։ Ինչ վերաբերում է պատգամախոսի
մոտ իր գնալուն, ապա նա պատասխանեց, թե աստված երբեք
մահվան պատգամ չի տալիս[226]. իր այս խոսքերի ճշմարտությունը
հաստատելու համար նա վկայակոչեց բոլոր ներկա գտնվող հելլեն-
ներին, իսկ լակեդեմոնացիների հետ իր բարեկամության մասին
արդարացավ, ասելով, թե իր օգտի համար չի հաստատել այդ բա-
րեկամությունը, այլ արքայի շահերի։ Իր պաշտպանականի վերջում
նա դատավորներին հիշեցրեց այն ծառայությունները, որ ինքը
նախկինում մատուցել էր արքային։
3 Պատմում են, թե Տիրիբազոսը այլ բազում ծառայություններ
ևս մատուցել է արքային, բայց մեկը մեծագույնն էր, որի համար էլ
նա հիացմունք էր պատճառել և դարձել արքայի մերձավորագույն
ընկերը։ Քանզի մեկ անգամ, որսորդության ժամանակ, երբ արքան
արշավում էր կառքի վրա, երկու առյուծ հայտնվում են նրա առաջ
և քառաձի կառքին լծած ձիերից երկուսին բզկտելուց հետո, հար-
ձակվում են իր իսկ արքայի վրա. այդ պահին էլ Տիրիբազոսը հայտ-
4 նըվելով սպանում է առյուծներին և արքային փրկում վտանգից։
Պատմում են, թե պատերազմներում նույնպես նա աչքի է ընկել իր
արիությամբ և ատյաններում այնպիսի հարմար խորհուրդներ է
տվել, որ արքան, դրանց հետևելով, երբեք չի սխալվել։ Այսպիսի
պաշտպանականից հետո Տիրիբազոսը, բոլոր դատավորների հա-
մաձայնությամբ, մեղադրանքներից անպարտ համարվեց։
11,1 Արքան իր մոտ կանչելով դատավորներին, յուրաքանչյուրին
առանձին հարցրեց, թե արդարության ի՞նչ սկզբունքներ ընդունե-
լով նրանցից ամեն մեկն անպարտ ճանաչեց մեղադրյալին։ Արդ,
առաջինն ասաց, թե ինքը այդ մեղադրանքները համարում է կաս-
կածելի, մինչդեռ (Տիրիբազոսի) ծառայությունները վկայված են
բոլորի կողմից. իսկ երկրորդն ասաց, որ եթե նույնիսկ ճիշտ լինեն
մեղադրանքները, այսուհանդերձ նրա մատուցած ծառայություններն
առավել են, քան մեղանչումները։ Երրորդն ասաց, թե ինքը հաշվի չի
առնում նրա մատուցած ծառայությունները, քանզի Տիրիբազոսը
փոխարենը արքայից ստացել է բազմապատիկ շնորհներ և պա-
տիվներ։ Բայց երբ մեղադրանքները առանձին է դիտում, ապա
թվում է, թե մեղադրյալը ոչ մի մասնակցություն չունի այդ ամե-
2 նին։ Արքան գովեց դատավորներին նրանց արդար վճռի համար և

Տիրիբազոսին շնորհեց բարձրագույն պարգևներ, ինչպես ընդունված
կարգն էր։ Մինչդեռ Օրոնտեսին համարելով ստահոդ մեղադրանք-
ներ հորինող, վտարեց իր բարեկամների շարքերից և ենթարկեց
ծայրահեղ ստորացումների։
90,1 Այդ ժամանակ[227] պարսիկների (իշխանության) դեմ ապստամ-
բեցին ասիական ծովափի բնակիչները և սատրապներից ու զորա-
վարներից ոմանք նույնպես խռովություն բարձրացնելով պատե-
2 րազմ սկսեցին Արտաքսերքսեսի դեմ։ Նույն ժամանակ Տաքոսը ևս,
Եգիպտոսի թագավորը, որոշելով պատերազմ սկսել պարսիկների
դեմ, նավեր կառուցեց և հետևակ զորք գումարեց։ Նա հելլենական
քաղաքներից վարձկաններ հավաքագրեց ու համոզեց լակեդեմո-
նացիներին ևս մասնակցել պատերազմին։ ...Երբ այսպիսի միաց-
յալ արշավանք սկսվեց պարսիկների դեմ, արքան ևս սկսեց պատե-
3 րազմի պատրաստություն տեսնել։ Քանզի միաժամանակ պետք էր
պատերազմել թե՛ եգիպտական թագավորի դեմ, թե՛ Ասիայի հել-
լենական քաղաքների և թե՛ լակեդեմոնացիների ու սրանց զինա-
կիցների՝ սատրապների ու զորավարների դեմ, որոնք տիրում էին
ծովափնյա վայրերին ու պայմանավորվել էին համագործակցելու։
Սրանցից ամենահայտնիներն էին Արիոբարզանեսը, Փռյուգիայի
սատրապը, որը Միթրիդատեսի մահից հետո տիրացել էր սրա իշ-
խանությանը, Մավսոլոսը[228], Կարիայի իշխանավորը, որը տիրում
էր բազում ամրությունների և կարևոր քաղաքների, որոնց կենտ-
րոնն ու քաղաքամայրը Հալիկառնասսոսն էր իր հայտնի միջնա-
բերդով ու կարիական արքունիքով։ Սրանց միացան նաև Օրոն-
տեսը[229], Մյուսիայի սատրապը և Ավտոփրադատեսը, Լյուդիայի
սատրապը։ Բացի հոնիացիներից (ապստամբության) հարել էին
նաև լյուկիացիները և պիսիդիացիները և պամփյուլիացիները և կի-
լիկեցիները, ինչպես նաև սիրիացիները և փյունիկեցիները և գրե-
4 թե բոլոր մերձափնյա բնակիչները։ Այսպիսի խոշոր ապստամբու-
թյան պատճառով արքայի եկամուտների կեսը կրճատվել էր և մնա-
ցածը բավական չէր ապահովելու պատերազմի կարիքները։
91,1 Արքայի դեմ ապստամբություն բարձրացրածները ընդհանուր
հրամանատարության համար զորավար ընտրեցին Օրոնտեսին։ Սա,
ստանձնելով հրամանատարությունը, ինչպես նաև օտար վարձ-
կաններ հավաքագրելու համար դրամ՝ քսան հազար մարդու մեկ
տարի ռոճիկ տալու քանակությամբ, դավաճանեց այդ վստահությանը։
Քանզի նա ենթադրելով, որ արքայից կստանա ոչ միայն մեծ պար-
գևներ, այլև առափնյա բոլոր վայրերի սատրապությունը, եթե ինքը

պարսիկների ձեռքը հանձնի ապստամբներին, նախ ձերբակալեց
դրամը բերողներին և նրանց ուղարկեց Արտաքսերքսեսին, այնու-
հետև նա քաղաքների մեծ մասը և վարձկան զինվորներից շատերին
հանձնեց արքայի կողմից ուղարկված հրամանատարների ձեռքը։
2 Նույն եղանակով Կապպադովկիայում ևս դավաճանություն տեղի
ունեցավ, որտեղ զարմանալի և անսպասելի մի բան պատահեց։
Քանզի Արտաբազոսը[230], արքայի զորավարը, մեծ զորքով ներ-
խուժել էր Կապպադովկիա, իսկ այդ երկրի սատրապ Դատամեսը
դուրս եկավ նրա դեմ, քանի որ նա հավաքել էր մեծաքանակ հեծե-
լազոր և իր ծառայության տակ ուներ երկու բյուր վարձկան հե-
3 տևակազոր։ Բայց Դատամեսի աները, որն առաջնորդում էր հեծելա-
զորը, շնորհքի արժանանալու ցանկությամբ, ինչպես նաև մտածելով
իր անձնական ապահովության մասին, գիշերով հեռացավ ու փա-
խավ իր զինվորների հետ դեպի թշնամին, քանի որ դեռևս նախորդ
օրը նա Արտաբազոսի հետ պայմանավորվել էր դավաճանության
4 մասին։ Այնժամ Դատամեսը, կանչելով իր վարձկաններին և նրանց
պարգևներ խոստանալով, արշավեց իր մոտից դասալիք եղածների
դեմ։ Նրանց պատահելով արդեն թշնամու հետ միանալու պահին,
ինքը հարձակվեց Արտաբազոսի զորամասի և հեծյալների վրա,
5 սպանեց բոլոր ձեռնամարտի բռնվածներին։ Իսկ Արտաբազոսը,
սկզբում անգիտանալով իրականությունը և կասկածելով, թե Դա-
տամեսից հեռացած դասալիքները նորից դավաճանում են, պատ-
վիրեց իր զինվորներին սպանել մոտեցող բոլոր ձիավորներին։ Եվ
Միթրոբարզանեսը[231] փակված գտնվելով երկու կողմերի միջև, քանի
որ մի կողմը կռվում էր նրա դեմ որպես դավաճանի, իսկ մյուս
կողմն ուզում էր նրան պատժել իբրև կրկնադավաճանի, դժվարին
կացության մատնվեց։ Ու քանի որ դրությունը մտածելու ժամանակ
չէր թողնում, նա ապավինեց իր արիության և երկու կողմերի դեմ
կռվելով, մեծ կոտորած պատճառեց։ Երբ, վերջապես, ավելի քան
տասը հազար մարդ էր կոտորվել, Դատամեսը Միթրոբարզանեսի
մնացած զորքը փախուստի մատնելուց և շատերին սպանելուց հե-
6 տո, շեփորով ետ կանչեց իր հալածող զինվորներին։ Կենդանի մնա-
ցած հեծյալներից ոմանք վերադառնալով Դատամեսի մոտ, խնդրե-
ցին նրա ներողամտությունը, մյուսները ոչինչ չարեցին և փախչելու
ոչ մի տեղ չունենալով, վերջապես մոտ հինգ հարյուր մարդ շրջա-
7 պատվեցին Դատամեսի զորքերի կողմից ու կոտորվեցին։ Այսպիսով,
Դատամեսը, որը դեռ նախապես հիացրել էր զորավարման իր հմ-
տությամբ, այժմ առավել ևս հռչակվեց իր արիությամբ և ռազմա-
վարությամբ։ Բայց Արտաքսերքսես արքան իմանալով Դատամեսի

ռազմական հաջողության մասին, շտապեց ազատվել նրանից ու դավադրաբար սպանեց։

93,1 Քիչ անց պարսից արքան մահացավ, քառասուներեք տարի տիրելուց հետո, և թագավորությունը ժառանգեց Օքոսը, որը վերանվանվեց Արտաքսերքսես. սա ևս թագավորեց քսաներեք տարի։ Քանի որ (նախորդ) Արտաքսերքսեսը լավ էր թագավորել և եղել էր շատ խաղաղասեր և բարեբախտ, պարսիկները նրանից հետո թագավոր դարձողներին վերանվանում էին և սահմանում, որպեսզի կոչվեն նրա անունով։

## Գիրք 16

34,1 Այս ընթացքում[232] Արտաբազոսը, որն ապստամբել էր արքայի դեմ, շարունակում էր պատերազմել արքայի կողմից այդ պատճառով ուղարկված սատրապների դեմ։ Սկզբում, երբ աթենացիների զորավար Քարեսը նրա հետ դաշնակցել էր, նա ուժգին դիմադրում էր սատրապներին. բայց երբ Քարեսը հեռացավ և ինքը մենակ մնաց, համոզեց թեբեացիներին, որպեսզի օժանդակ զորք ուղարկեն իրեն։ Սրանք Պամմենեսին զորավար ընտրելով, նրան հանձնեցին հինգ հազար զինվոր և ուղարկեցին Ասիա։ Արդ, Պամմենեսը, օգնելով Արտաբազոսին և երկու խոշոր ճակատամարտերում հաղթելով սատրապներին, մեծ փառք ձեռք բերեց թե՛ իր և թե՛ բեովտիացիների համար։

90,2 Այդ տարին էլ[233] Արիոբարզանեսը մահացավ քսանվեց տարի թագավորելուց հետո, այնուհետև թագավորությունն անցավ Միթրիդատեսին, որը գահակալեց երեսունհինգ տարի։

91,2 Այդ ժամանակ էլ[234] Փիլիպպոս թագավորը[235], հելլենների կողմից առաջնորդ հռչակվելով, պատերազմ ձեռնարկեց պարսիկների դեմ. նա Ասիա ուղարկեց Ատտալոսին և Պարմենիոնին[236], նրանց տալով իր զորքերի մի մասը և հրամայելով ազատագրել (Ասիայի) հելլենական քաղաքները[237], մինչդեռ ինքը, ցանկանալով պատերազմն սկսել աստվածների կարծիքն իմանալուց հետո, հարցում արեց Պյութիային, թե արդյո՞ք ինքը կհաղթի պարսից արքային։ Գուշակը նրան տվեց հետևյալ պատգամը. «Պսակված է ցուլը[238], արդեն վախճանն է. առկա է նաև ողջակիզողը»։

5,3 Քանի որ մենք այժմ պետք է նորից՝ գրենք պարսից թագավո-
րության մասին, ապա անհրաժեշտ է փոքր-ինչ վերադառնալ նա-
խորդ դեպքերի պատմությանը։ Երբ դեռևս Փիլիպպոսը թագավոր էր,
Պարսկաստանում տիրում էր Օքոսը, որն իր հպատակների նկատ-
մամբ վերաբերվում էր դաժանաբար ու բռնությամբ։ Քանի որ նա
իր խիստ վարվեցողությամբ ատելի էր դարձել, հազարապետ[239]
Բագոասը, որը թեպետև իր հատկություններով ներքինի էր, բայց
իր էությամբ խորամանկ ու ռազմասեր, ինչ-որ բժշկի օգնությամբ
թունավորելու միջոցով սպանեց Օքոսին և թագավորությունը հանձ-
4 նեց արքայի ամենակրտսեր որդուն՝ Արսեսին։ Նա միաժամանակ
ոչնչացրեց նաև (նոր) թագավորի եղբայրներին, որոնք բոլորովին
երիտասարդ էին, որպեսզի պատանի (թագավորը) մեկուսացված
լինելով, իրեն առավել ևս հպատակվի։ Բայց պատանին իր բացա-
հայտ դժգոհությունը հայտնեց կատարված անօրենությունների
մասին և արդեն ակնհայտ էր, որ պատրաստվում է պատժել ոճիր-
ների հեղինակին. ուստի և Բագոասը, լսելով նրա մտադրությունը,
սպանեց Արսեսին և նրա որդիներին, երբ արդեն թագավորել էր
5 երեք տարի։ Այսպիսով, քանի որ արքունի տոհմը ոչնչացվել էր և
ուղիղ գծով ոչ ոք չէր մնացել իշխանությունը ժառանգելու համար,
Բագոասը նախընտրեց արքունիքին մոտիկ մարդկանցից մեկին,
Դարեհ անունով և նրան դարձրեց թագավոր[240]։ Սա որդին էր Ար-
սանեսի և թոռը Օստանեսի, որը պարսից Արտաքսերքսես ար-
6 քայի [241] եղբայրն էր։ Իսկ Բագոասի հետ կատարվեց այսպիսի հի-
շարժան դեպք։ Նա իր ոճրագործ սովորության համաձայն փորձեց
թունավորելով վերացնել Դարեհին։ Բայց արքան տեղեկանալով
դավադրության մասին, Բագոասին հրավիրեց իր մոտ և ուրախու-
թյան պահին բաժակը նրան տալով, ստիպեց խմել թույնը։
6,1 Դարեհը դահին արժանացավ այն պատճառով, որ նրան իր
քաջությամբ մյուս պարսիկներից առավել գերազանց էին համա-
րում։ Քանզի մի անգամ, երբ Արտաքսերքսես արքան[242] պատե-
րազմ էր մղում կադուսիների դեմ, սրանց միջից մեկը, որը մե-
ծապես հռչակված էր իր ուժով և արիությամբ, մարտակոչ նետեց
պարսիկներից ցանկացած մարդուն, որպեսզի մենամարտի նրա
հետ. այնժամ ոչ ոք չհամարձակվեց (մարտահրավերը) ընդունել,
այլ միայն Դարեհը վտանգին ընդառաջ գնալով, սպանեց կռվի
հրավիրողին և արքայից մեծ պարգևներ ստացավ, իսկ պարսիկ-
2 ները նրան տվեցին քաջության առաջնությունը։ Ահա այս սխրա-

գործության համար էր, որ նրան արժանի համարեցին գահն ստա-
նալու նույն այն տարին, երբ Փիլիպպոսը վախճանված լինելով,
թագավորությունը ժառանգեց Ալեքսանդրը։
3 Բախտն այսպիսի այրին ընտրեց իբրև հակառակորդ Ալեք-
սանդրի հզորության, ուստի և նրանք առաջնության շուրջ իրար
միջև շատ։ և մեծ մարտեր մղեցին։ Սակայն բոլոր գործերի մասին
մենք ամեն ինչ իր տեղում կպատմենք։ Այժմ դարձյալ կվերադառ-
նանք մեր պատմության շարունակությանը։
7,1 Արդ, Դարեհը ստանձնելով թագավորությունը նախքան Փիլիպ-
պոսի վախճանվելը, մտահոգված էր Մակեդոնիայի հետ վերահաս
պատերազմը կանխելու, բայց երբ սա վախճանվեց, (Դարեհը) ար-
2 համարհելով Ալեքսանդրի երիտասարդ տարիքը, ազատվեց տագ-
նապից։ Եվ երբ Ալեքսանդրի գործունեության հզորությունը և շեշ-
տակիությունը պարտադրեց համայն հելլեններին նրան առաջնորդ
ճանաչել, այնժամ Դարեհը նորից տագնապեց և մեծ ջանասիրու-
թյամբ սկսեց իր ուժերը նախապատրաստել։ Նա կառուցեց բազմա-
թիվ տրիերաներ և կազմակերպեց մեծ քանակությամբ զորքեր։ Իսկ
հրամանատարներ նշանակեց իր լավագույն զորականներին, որոնց
3 թվում էր նաև Մեմնոն Հռոդոսցին, որն առանձնապես աչքի էր ընկ-
նում իր արիությամբ և ռազմական գործի իմացությամբ։ Ահա սրան
արքան, հինգ հազար վարձկան տալով, հրամայեց քայլել Կյուզիկոս
քաղաքի[243] վրա և փորձել գրավել այն։ Ուստի և սա այդ զորքերով
8 առաջ շարժվեց Իդա լեռան[244] վրայով։ ...Արդ, Մեմնոնը անցնելով
այս լեռը, հանկարծակի հարձակվեց կիզիկեցիների քաղաքի վրա և
քիչ էր մնացել գրավեր այն։ Բայց ձախողվելով իր մտադրության
մեջ, ավերեց նրանց երկիրը և ձեռք բերեց մեծ ավար։
18,2 Այնժամ էլ պարսկական սատրապները և զորավարները դան-
դաղեցին խանգարելու մակեդոնացիների անցումը, բայց ի մի
գումարվելով խորհրդակցեցին, թե ինչպե՞ս դիմադրեն Ալեքսանդ-
րին։ Այսպես, Մեմնոն Հռոդոսցին, որը հռչակված էր իր ռազմա-
կան գիտելիքներով, խորհուրդ էր տալիս չկռվել դեմառդեմ, այլ
երկիրը ավերել և, պարենի պակասություն պատճառելով, խոչընդո-
տել մակեդոնացիների[245] առաջխաղացումը, մյուս կողմից էլ ծո-
3 վային ու ցամաքային ուժեր ուղարկել Մակեդոնիա և ամբողջ պա-
տերազմը փոխադրել Եվրոպա։ Այս մարդր, ինչպես ակնհայտ դար-
ձավ հետևանքներից, տվել էր լավագույն խորհուրդը, բայց չկարո-
ղացավ համոզել մյուս առաջնորդներին, որոնց թվում էր, թե այդ
4 խորհուրդները արժանի չեն պարսիկների մեծագործության։ Այս-
պիսով, քանի որ հաղթանակեց ճակատամարտելու տեսակետը,

նրանք բոլոր կողմերից զորքերը կանչեցին և մակեդոնացիների
զորքերից բազմապատիկ դառնալով, արշավեցին դեպի Հելլես-
պոնտյան Փռյուգիա։ Այստեղ էլ նրանք բանակեցին Գրանիկոս գե-
տի ափին, իրենց համար պաշտպանական գիծ դարձնելով այդ գե-
տի հունը։
19,1 Իսկ Ալեքսանդրը, տեղեկանալով բարբարոսական զորքերի
գումարվելը, արագորեն առաջ շարժվեց ու բանակեց թշնամու դեմ
հանդիման, այնպես, որ Գրանիկոսը հոսում էր (թշնամի) բանակնե-
2 րի միջև։ Բարբարոսները, դրված լինելով բարձրադիր ափը, հան-
գիստ էին մնում. նրանք որոշել էին հարձակվել թշնամու վրա, երբ
սա կփորձեր գետն անցնել, քանզի նրանք կարծում էին, թե կկա-
րողանան կռվում հեշտությամբ գերազանցել մակեդոնացիների
3 փաղանգին, երբ սա կոտորակված լինի։ Բայց Ալեքսանդրը լուսա-
բացին իր ուժերը քաջաբար անցկացրեց գետով և, նախքան թշնա-
մին կկարողանար խանգարել, իր զորքերը դասավորեց ճակատա-
մարտի համար հարմար ձևով[246]։ Իրենց հերթին բարբարոսները
մակեդոնացիների զորաշարի հանդեպ դասավորեցին իրենց ամ-
բողջ հեծելազորայիններին, որոշած լինելով նրանց միջոցով վճռել
4 ճակատամարտի ելքը։ Մեմնոն Հռոդոսցին և սատրապ Արսամե-
նեսը[247], յուրաքանչյուրն իր հեծելազորով, գրավել էին ձախ թևը,
հաջորդաբար դասավորվել էր Արսիտեսը[248] պափլագոնացի հեծյալ-
ներով, այնուհետև հոնիացի սատրապ Սպիթրոբատեսը հյուրկա-
նացի հեծյալներով։ Աջ թևը զբաղեցրել էին հազար մեդացիներ,
Հռեոմիթրեսի երկու հազար ձիավորները և նույնքան էլ բակտրիա-
ցի հեծյալներ. կենտրոնը գրավել էին մյուս ազգերի հեծյալները,
որոնք մեծաթիվ էին և ընտիր իրենց արիությամբ։ Ամբողջ հեծ-
5 յալների թիվը տասը հազարից ավելի էր։ Պարսից հետևակը տասը
բյուր մարդուց ավելի էր[249], բայց նրանք (հեծյալներից) ետև դա-
սավորված լինելով, մնում էին հանգիստ, քանզի (ենթադրում էին,
թե) հեծյալները կկարողանան նեղել մակեդոնացիներին։
6 Երբ երկու կողմերի հեծյալները ոգևորությամբ մարտի նետ-
վեցին, թեսսալական հեծելազորը, որը դիրքավորվել էր ձախ թևում,
Պարմենիոնի գլխավորությամբ քաջաբար ընդունեց իր դիմաց
կանգնած թշնամու հարձակումը, իսկ Ալեքսանդրը, որը լավագույն
հեծյալներով դիրք էր գրավել աջ թևում, ինքն առաջինը նետվեց
պարսիկների վրա և ձեռնամարտի մտնելով, թշնամուն մեծ կոտո-
րած պատճառեց։
20,1 Բայց քանի որ բարբարոսները դիմադրում էին արիաբար և
իրենց ոգևորությունը հակադրում էին մակեդոնացիների քաջարիու-

թյան, րախտր միևնույն վայրում ի մի բերեց լավագույններին,
2 հաղթանակը վիճարկելու համար։ Քանդի Հոնիայի սատրապ Սպիթ-
րոբատեսը, որը ծագումով պարսիկ էր և Դարեհ արքայի փեսան և
իր քաջությամբ անվանի, հեծյալների մեծ զորամասի հետ նետվեց
մակեդոնացիների վրա, իրեն զինակից ունենալով արքունի տոհ-
մից[250] քառասուն մարդ, որոնք առանձնապես քաջարի էին, սլացավ
գիմադրողների վրա և անվեհեր կռվելով նրանցից ոմանց սպանեց,
3 ուրիշներին էլ վիրավորեց։ Ու քանի որ նրա հարձակումը դարձել էր
վտանգավոր, Ալեքսանդրը իր ձիուն շուռ տվեց դեպի սատրապը և
ձիավարեց բարբարոսի վրա։
Արդ, պարսիկը կարծելով, որ մենամարտելու այս պատե՜
առիթը աստվածներն են իրեն շնորհել, հուսադրվեց, որ իր իսկ քա-
ջագործությամբ Ասիան պետք է ազատվի վտանգներից և Ալեք-
սանդրի հռչակված խիզախությունը պետք է սանձահարվի իր սե-
փական ձեռքերով և պարսիկների փառքը պետք է այգպիսով փրկ-
վի։ Նախ իր տեգը շպրտեց Ալեքսանդրի վրա այնպիսի հուժկու
թափով, որ նրա նիզակը ծակելով Ալեքսանդրի վահանը և աջ ուսա-
4 ծածկը, թափանցեց զրահի մեջ։ Իսկ (Ալեքսանդր) արքան քաշեց
հանեց իր բազուկից կախ ընկած տեգը և դեն նետեց այն և աս-
պանդակներով իր ձիուն խթանելով և օգտագործելով իր սլացքի
համար թափը, իր նիզակը մխրճեց սատրապի կրծքի ուղիղ մեջ-
5 տեղը։ Այս որ կատարվեց, երկու կողմից էլ մոտիկ գտնվող շար-
քերը, ի տես այգ քաջագործության, բարձր ճչացին, այնուհանդերձ.
լանջապանակի վրա նիզակի ծայրը ջարդվեց և ջարդված բեկորը
ետ թռավ, այնժամ պարսիկը սուրը մերկացրեց և նետվեց Ալեք-
սանդրի վրա, իսկ թագավորը ճիշտ ժամանակին ծայրը նորից ամ-
րացնելով իր նիզակին, կարողացավ հարված հասցնել ուղիղ նրա
6 դեմքին։ Նույն այդ պահին Հռոսակեսը, ընկածի եղբայրը, հեծյալի
վրա հասնելով, իր թրով Ալեքսանդրի գլխին այնպիսի վտանգավոր
հարված հասցրեց, որ պատռեց նրա սաղավարտը և թեթևակի քեր-
7 ծեց մաշկը։ Երբ Հռոսակեսը պատրաստվում էր նորից հարված
իջեցնելու նույն այդ կետին, Կլեյտոսը[251], որը «սև» մականունն էր
ստացել, իր ձիով մոտիկ սլացավ ու կտրեց բարբարոսի բազուկը։
21,1 Տոհմակիցները համախմբվելով շրջափակեցին երկու ընկած-
ներին[252]. Նրանք նախ իրենց նիզակները նետեցին Ալեքսանդրի
վրա, այնուհետև համախումբ կռվելով, ամեն տեսակ վտանգները
4 դիմագրավեցին ու խոյացան թագավորին սպանելու։ Թեպետև սա
բազում և մեծ վտանգների ենթարկվեց, բայց չպարտվեց թշնամի-
ների բազմությունից, այլ հակառակ այն բանին, որ կրծքին երկու

հարված էր ստացել, մեկ հարված էլ սաղավարտին և երեք հար-
ված էլ այն վրահի վրա, որ վերցրել էր Աթենասի տաճարից[253], նա
չղիջեց, այլ լիցքավորված ոգու արիությամբ, նա հաղթահարեց
3 բոլոր դժվարությունները։ Այս ամենից հետո իր դեմ կռված մյուս
պարսիկ առաջնորդներից (ոմանք) նույնպես ընկան, որոնցից ամե-
նաերևելիներն էին Ատիզյուեսը և Փառնակեսը, Դարեհի կնոջ
եղբայրները, ինչպես նաև Միթրոբուզանեսը, որն առաջնորդում էր
կապպադովկիացիներին[254]։
4 Այսպիսով, երբ արդեն զորահրամանատարներից շատերն
սպանվել էին և պարսկական բոլոր զորամասերը պարտվել էին
մակեդոնացիների կողմից, առաջինը ստիպվեցին փախուստի դի-
մել Ալեքսանդրին հանդիման կռվողները, իսկ հետո նաև մյուս-
ները, դրանով իսկ թագավորը, բոլորի վկայությամբ, իր քաջագոր-
ծությամբ առաջնությունը նվաճեց և համարվեց ձեռքբերված հաղ-
թանակի գլխավոր պատճառը։ Հաջորդաբար թեսսալացիների հեծ-
յալներն իրենց ջոկատները լավագույնս օգտագործելով և աննման
5 կռվելով, քաջության մեծ համբավ ձեռք բերեցին։ Երբ արդեն
(պարսկական) հեծելազորը փախուստի էր դիմել, հետևակները
մտան մարտի, բայց երկար չկռվեցին, քանզի բարբարոսները,
ահաբեկված հեծելազորի նահանջից, հոգեպես ընկճվեցին և շուտով
6 փախուստի մատնվեցին։ Պարսկական հետևակից սպանվեցին
ավելի քան տասը հազար, իսկ հեծյալներից՝ ոչ պակաս քան երկու
հազար, մինչդեռ գերի վերցվածները քսան հազարից ավելի էին։
Մարտից հետո թագավորը սպանվածներին թաղեց մեծ շուքով[255],
այդպիսի հարգանք մատուցելով, նա ձգտում էր իր զինվորներին
ավելի ոգևորություն ներշնչել ճակատամարտի ժամանակ վտանգ-
ներին դիմագրավելու համար։
7 Վերականգնելով իր ուժերը, Ալեքսանդրը զորքը շարժեց Լյու-
դիայի միջով և վերցրեց Սարդես քաղաքն իր միջնաբերդով և
դրանցում պահվող բոլոր գանձերով, քանզի սատրապ Միթրինեսը
քաղաքը հոժարակամ հանձնել էր նրան[256]։
27,6 Սրանք[257] եռանդագին պատերազմելով, ամբողջ երկիրը, մինչև
Մեծն Փռյուգիա[258], նվաճեցին, իրենց զորքերը պահելով թշնամու
7 նվաճված երկրի հաշվին։ Իսկ Ալեքսանդրը նվաճեց ամբողջ ծովա-
փը, մինչև Կիլիկիա շատ քաղաքներ գրավեց և ամրացրած բերդերը
մեծ վճռականությամբ պաշարելով, բռնի ենթարկեց իրեն։
31,1 Ուստի և նա[259] բոլոր կողմերից իր զորքերը կանչեց, հրամա-

յելով գումարվել Բաբելոնում։ Նա հարցափորձեց իր ընկերներին և
տոհմակիցներին և նրանց միջից ընտրեց հարմարագույններին,
նրանցից ոմանց ըստ արժանվույն հրամանատարություն հանձնա-
րարելով, իսկ մյուսներին հրամայելով կռվել իր կողքին։ Երբ զո-
2 րագումարի համար սահմանված ժամանակը հասավ, բոլորը հա-
վաքվեցին Բաբելոնում։ Գումարված զինվորների ամբողջ թիվը
կազմեց՝ հետևակը ավելի քան քառասուն բյուր[260], իսկ հեծելազորը
ոչ պակաս տասը բյուրից։
Արդ, այսքան զորքով Դարեհը դուրս եկավ Բաբելոնից և առա-
ջացավ դեպի Կիլիկիա, իր հետ վերցնելով իր կնոջը և զավակներին՝
տղա և երկու աղջիկ, ինչպես նաև իր մորը։
32,2 Ալեքսանդրը տեղեկանալով, որ Դարեհը գտնվում է մի քանի օր-
վա ճանապարհի հեռավորության վրա, Պարմենիոնին զորքով ուղար-
կեց նախապես գրավելու անցումները, որ կոչվում էին Պյուլայ[261]։
Պարմենիոնը հասնելով այդ վայրերը, բարբարոսներին, որոնք
նախապես գրավել էին դժվարամատույց անցումները, գրոհով դուրս
3 շպրտեց և տիրացավ դրանց։ Դարեհը ցանկանալով իր զորքը դար-
ձնել դյուրաշարժ, գումակը և ավելորդ ամբոխին թողեց Սիրիայի
Դամասկոսում, իսկ այժմ, երբ լսեց, թե Ալեքսանդրը արդեն նա-
խապես գրավել է անցումները և կարծելով, թե նա չի համարձակվի
կռվել դաշտում, իր ընթացքը արագացրեց, շտապելով հանդիպել
4 նրան։ Տեղի բնակիչները արհամարհելով մակեդոնացիներին, որոնց
փոքրաթիվ լինելու պատճառով, և առավել զարմացած պարսիկների
բազմությամբ, լքեցին Ալեքսանդրին և միացան Դարեհի զորքերին,
նրանք մեծ հոժարությամբ պարսիկներին հայթայթում էին պարեն
և անհրաժեշտ ամեն ինչ և իրենց մտքում կանխանշում էին բարբա-
րոսների հաղթանակը։ Իսկ Ալեքսանդրը երկյուղ ազդելով գրավեց
Իսսոսը, որը նշանակալից քաղաք էր։
33,1 Երբ հետախույզները հաղորդեցին նրան, թե Դարեհը գտնվում
է երեսուն ասպարեզ հեռավորության վրա և զարմանալի արագու-
թյամբ առաջ է շարժվում իր զորքերով, որոնք ընդունել են ահե-
ղագդու ռազմական դասավորություն, Ալեքսանդրը կռահեց, թե սա
աստվածների կողմից իրեն շնորհված հարմար առիթ էր, որպեսզի
մեկ ճակատամարտում հաղթելով, կործանի պարսկական տերու-
թյունը. ուստի և նա համապատասխան խոսքերով ոգևորեց իր զին-
վորներին վճռական ճակատամարտի համար, զինվորների գնդերը
և հեծյալների ջոկատները դասավորեց տեղանքի հարմարության
համեմատ. հեծյալներին կարգեց ամբողջ զորքի առաջ, իսկ հետե-
2 վակի փաղանգին հրամայեց մնալ պահեստում, հեծյալներից ետև։

Ինքը, վերցնելով հեծյալներից լավագույններին, աջ թևով առաջ
շարժվեց, հանդիպելու թշնամուն, իսկ ձախ թևը զբաղեցնում էին
3 թեսսալացիների հեծյալները, որոնք առանձնապես աչքի էին ընկ-
նում իրենց արիությամբ և հմտությամբ։ Երբ զորքերը արդեն մո-
տեցան իրար մինչև նետընկեց, պարսիկները Ալեքսանդրի դեմ նե-
տերի այնպիսի քանակ արձակեցին, որ դրանք օդում իրար բախ-
4 վելով, մեծապես թուլացնում էին հարվածները։ Երբ երկու կողմերի
շեփորահարները հարձակում ազդարարեցին, առաջինը մակեդո-
նացիները միաբերան աղաղակելով, աննախընթաց աղմուկ բարձ-
րացրին, իսկ երբ նրանց պատասխանեցին բարբարոսները, մոտա-
կա բոլոր լեռները արձագանքեցին, և այս վերջին գոռոցը գերա-
զանցեց մակեդոնացիների աղաղակին, քանի որ հիսուն բյուր մարդ
գոռում էր միաբերան։
5 Ալեքսանդրը իր հայացքը ուղղելով բոլոր կողմերը, անհամբե-
րությամբ փնտրում էր Դարեհին, և երբ նկատեց նրան, անմիջապես
իր հեծյալների հետ նետվեց իր իսկ արքայի կողմը, նպատակադրվե-
լով ոչ այնքան ջախջախել պարսիկներին, որքան նվաճել հաղթա-
6 նակը իր իսկ ձեռքով։ Այդ նույն ընթացքում մնացած բոլոր հեծ-
յալները ևս նետվել էին իրար վրա և շատերն արդեն սպանվել էին և
կռվողների քաջարիության պատճառով բոլորի համար կռվի ելքը
թվում էր անորոշ. քանզի հաղթանակի նժարը տատանվում էր այս
և այն կողմ, քանի որ շարքերը մերթ նահանջում էին, մերթ էլ նո-
7 րից առաջ գալիս։ Արդ, նիզակը նետելիս կամ թրով հարվածելիս
ոչ մեկը չէր վրիպում, քանի որ շարքերի խտությունը հարմար թի-
րախ էր։ Ուստի և շատերը փոխադարձ վերքեր ստանալով ընկնում
էին, մինչև վերջին շունչը կատաղորեն կռվելով, այնպես, որ կյան-
քը նրանց ավելի շուտ էր լքում, քան արիությունը։
34,1 Յուրաքանչյուր զորամասի հրամանատար կռվելով իր ենթա-
կաների գլուխն անցած, իր արիությամբ շատերին մղում էր քաջա-
գործության։ Ուստի և կարելի էր տեսնել բազմաթիվ և բազմապիսի
վիրավորների և շատ մոլեգին մենամարտեր, հաղթանակի հասնելու
2 մղումով։ Այսպես, պարսիկ Օքսաթրեսը, որը Դարեհի եղբայրն էր և
մեծ գովեստների էր արժանացել իր քաջության համար, տեսնելով,
որ Ալեքսանդրը անկասելի թափով սլանում է Դարեհի վրա, բռ-
նըկվեց իր եղբոր բաղդին հաղորդակից դառնալու ցանկությամբ։
3 Արդ, վերցնելով իր ջոկատի լավագույն հեծյալներին, նրանց ուղեկ-
ցությամբ սլացավ Ալեքսանդրի դեմ և կարծելով, թե եղբայրասի-
րության այդ ցուցադրումը պարսիկների մեջ իր անվանը մեծ համ-
բավ կբերի, սկսեց կռվել Դարեհի քառաձի ռազմակառքի առաջ և

4 թշնամու հետ ձեռնամարտի բռնվելով, իր արիությամբ և ռազմա-
կան հմտությամբ շատերին սպանեց։ Բայց քանի որ Ալեքսանդրի
զորագնդի մարտիկները գերազանցում էին իրենց արիությամբ,
Դարեհի քառաձի ռազմակառքի շուրջ սպանվածների բազում դիակ-
ներ կիտվեցին, քանզի բոլոր (մակեդոնացիները) մտածելով միայն
հարվածել (պարսից) արքային, այս նպատակով եռանդագին մըր-
ցում էին իրար հետ, չխնայելով նույնիսկ իրենց կյանքը[262]։
5 Այս ճակատամարտում ընկան պարսից հայտնի առաջնորդ-
ներից շատերը, որոնց թվում էին Անտիքսյուեսը և Հռեոմիթրեսը և
Եգիպտոսի սատրապ Տասիակեսը[263]։ Մակեդոնացիների բանակից
նույնպես շատերն ընկան և ինքը Ալեքսանդրը ևս վիրավորվեց ազ-
6 դրից, երբ թշնամին շրջապատել էր նրան։ Դարեհի ռազմակառքին
լծված ձիերը ծածկված լինելով վերքերով և սարսափած իրենց
շուրջը կիտված դիակներից, չէին ենթարկվում իրենց սանձերին և
քիչ էր մնացել նույնիսկ Դարեհին քշեին թշնամիների մեջ։ Ուստի
և (պարսից) արքան այս ծայրագույն վտանգի առաջ ինքը խլեց
երասանները, ստիպված լինելով հրաժարվել իր (արքայական) դիր-
քի բարձր պատկառանքից և ոտնահարել պարսից արքաների հինա-
7 վուրց սովորույթը։ Դարեհի սպասավորները մոտիկ բերեցին մի
երկրորդ քառաձի և նրա վրա փոխադրվելիս տեղի ունեցած անկար-
գության ժամանակ Դարեհը, տեսնելով վրա հասնող թշնամուն, ա-
ռու սարսափով համակվեց։
Տեսնելով իրենց արքայի խռովյալ վիճակը, պարսից մեծերը
փախուստի դիմեցին, երբ մոտիկ գտնվող հեծյալները ևս նույնն
8 արեցին, շուտով ամբողջ հեծելազորը փախուստի մատնվեց։ Ու քա-
նի որ փախուստը տեղի էր ունենում նեղ ճանապարհով և դաժան
վայրերով, ապա նրանք իրար վրա ընկնելով իրար էին կոխրտում
և շատերը սպանվեցին առանց պատերազմում վերք ստանալու։
Քանզի ռազմիկները կուտակվել էին իրար վրա, ոմանք արդեն
առանց զենքի, մյուսներն իրենց ամբողջ զրահով, ոմանք էլ իրենց
թրերը մերկացրած, ցած էին տապալում նրանց, ովքեր ընկնում էին
իրենց վրա։ Այսուհանդերձ, հեծյալների մեծ մասը հասնելով դաշ-
տերը, ամբողջ թափով իրենց ձիերը քշեցին և կարողացան ապաս-
9 տան գտնել դաշնակից քաղաքներում։ Իսկ մակեդոնացիների փա-
ղանգը և պարսից հետևակ զորքերը կարճատև մարտի բռնվեցին,
քանզի հեծելազորի արդեն ողջ հաղթանակի նախամարտն էր եղել։
Շուտով բարբարոսների ամբողջ բանակը փախուստի մատնվեց և
քանի որ այսքան բյուրավոր մարդիկ նեղ վայրերով էին փախչում,
ապա ամբողջ վայրը ծածկվեց դիակներով։

35,1 Գիշերը վրա հասած լինելով, պարսիկները կարողացան հեշտու-
թյամբ ցրվել տարբեր ուղղություններով, մինչդեռ մակեդոնացի-
ները թողնելով նրանց հետապնդելը, ընկան կողոպուտի ետևից,
նետվելով հատկապես դեպի արքունի վրանները, վերջիններում
2 եղած մեծ հարստության պատճառով։ Այստեղից նրանք վերցրին
շատ արծաթ, ոչ քիչ ոսկի և մեծ քանակությամբ թանկարժեք
զգեստներ արքունի գանձերից։ Նմանապես արքայի ընկերներից և
տոհմակիցներից և մյուս հրամանատարներից ոչ քիչ քանակու-
3 թյամբ հարստություն խլեցին։ Քանզի պարսկական հայրենի մեկ
սովորության համաձայն, ոչ միայն արքայի տան, այլև նրա ընկեր-
ների և տոհմակիցների կանայք ևս ոսկեզօծ կառքերի մեջ ուղեկ-
4 ցում էին (զորքին). իսկ այգ կանանցից յուրաքանչյուրն իր հետ
կրում էր խոշոր քանակությամբ թանկարժեք սպասք և կանացի
զարդեր, իրենց ունեցած մեծ հարստության և շքեղության համա-
պատասխան։
5 Գերի վերցված այս կանանց վիճակը ծանրագույն եղավ։ Քան-
զի նրանք, որոնք նախկինում իբրև վայելք հազիվ էին հանդուրժում
փոխադրվել շքեղ կառքերով և որոնց մարմնի որևէ մասը մերկ չէր
երևացել, այժմ միայն մեկ խիտոն[264] հագած, իրենց զգեստները
պատառոտելով, ողբաձայն դուրս էին նետվում իրենց վրաններից և,
աստվածներին կոչելով, փարվում էին նվաճողների ծնկներին։
6 Նրանք դողդողացող ձեռքերով պոկում էին իրենց մարմնի զարդերը
և հերարձակ փախչում էին քարքարոտ վայրերով և, իրար գլխի
հավաքվելով, օգնություն հայցում նրանցից, որոնք իրենք ուրիշի
7 օգնության կարիքն ունեին։ (Գերեվարողներից) ոմանք այս դըժ-
բախտների մազերից բռնած քշում տանում էին, մյուսները պատա-
ռոտում էին նրանց զգեստները և նրանց մերկ մարմինները ձեռքի
կամ նիզակի կոթի հարվածներով առաջ էին հրում, դրանով իսկ,
բախտի շնորհիվ, անարգում էին բարբարոսների ունեցածներից
ամենաթանկը և ազնվագույնը։
36,1 Արդ, մակեդոնացիներից առավել գթասիրտները, տեսնելով
բախտի շրջվելը, կարեկցում էին նրանց և ողորմածություն զգում
այդ դժբախտներին հասած աղետի համար. քանզի այդ կանանց
բարձր ծագման հատուկ ամեն ինչ խլվել էր նրանցից և նրանք շըր-
ջապատվել էին այն ամենով, ինչ նրանց համար օտար էր և թշնա-
մական։ [Այսուհանդերձ, այս կարեկից վերաբերմունքը բնորոշ
չէր զինվորների մեծ մասին][265], ուստի և կանայք քշվեցին դժբախտ
և ողբալի գերության։
2 Ներկաների արտասվալից կարեկցանքը շարժեցին հատկա-

պես Դարեհի մայրը և կինը և ամուսնական հասակի երկու դուստրերը
3 և փոքրահասակ տղան։ Քանզի սրանց նկատմամբ բախտի փոփո-
խությունը և անսպառելի աղետների մեծությունը այնպիսի, տեսա-
րան էին պարզում, որ դիտողը կարեկցանք էր դդում այդ դժբախ-
4 տությունների հանդեպ։ Որովհետև նրանք ոչինչ չգիտեին Դարեհի
մասին, արդյոք նա կենդանի՞ էր և ապահով, թե՞ նա ևս ընդհանուր
կոտորածի ժամանակ սպանվել էր. այլ տեսնում էին, թե իրենց
վրանը կողոպտում էին զինված թշնամիները, որոնք անգիտանում
էին գերված կանանց ինքնությունը և այդ անգիտության պատճա-
ռով անվայել արարքներ գործում։ Նրանք տեսնում էին, թե ինչպես
ամբողջ Ասիան իրենց հետ գերի է դառնում և թե ինչպես սատրապ-
ների կանայք ընկնում էին իրենց ոտքերին, օգնություն հայցելով,
բայց իրենք անկարող էին որևէ մեկին օգնել, քանի որ իրենց այդ
դժբախտության մեջ իրենք ուրիշների օգնության կարիքն ունեին։
5 Արդ, (Ալեքսանդր) արքայի սպասյակները[266] զբաղեցնելով
Դարեհի վրանը, Ալեքսանդրի համար լոգանք և ընթրիք պատրաս-
տեցին և ջահերի ուժեղ բոց վառելով, սպասում էին, որպեսզի սա,
վերադառնալով հետապնդումից, իր համար պատրաստ գտնի Դա-
րեհի բոլոր հարմարությունները, իբրև ապացույց այն բանի, որ
տիրել է համայն Ասիային։
6 Այս ճակատամարտում բարբարոսներից սպանվեցին ավելի
քան տասը բյուր հետևակ և ոչ պակաս քան մեկ բյուր հեծյալ, իսկ
մակեդոնացիներից՝ երեք հարյուր հետևակ և շուրջ հարյուր հիսուն
հեծյալ։ Այդպիսին էր Կիլիկիայի Իսսոսում տեղի ունեցած ճակա-
տամարտի ելքը։
Արքաներից Դարեհը չարաչար պարտվելուց հետո շտապեց
37,1 փախուստի դիմել, նա հաջորդաբար իր ձիերից լավագույններին
փոխնիփոխ վերցնելով, արագորեն սլանում էր, ամեն կերպ աշխա-
տելով խուսափել Ալեքսանդրի ձեռքն ընկնելուց և շտապում էր հաս-
2 նել վերին սատրապությունները։ Իսկ Ալեքսանդրը հետայրների
հեծելազորի[267] և մյուս հեծյալներից լավագույնների ուղեկցությամբ
հետապնդում էր նրան, շտապելով ձեռք գցել իրեն՝ Դարեհին։ Երկու
հարյուր ասպարեզ անցնելուց հետո նա գիշերվա կեսին ետ վերա-
դարձավ իր բանակատեղին և ճանապարհի իր հոգնությունը լոգան-
քով փարատելուց հետո, հանգստացավ և ընթրեց։
3 Ինչ-որ մեկը գալով Դարեհի կնոջ և մոր մոտ, հայտնեց, թե
Ալեքսանդրը վերադարձել է հետապնդումից, Դարեհին զինաթա-
փած լինելով։ Այնժամ կանայք ուժեղ ճչացին և ողբ ու կական բարձ-
րացրին, իսկ գերի վերցվածները լսելով այդ հաղորդումը, միացան

նրանց վշտին և բարձրաձայն սգացին։ Արքան, լսելով կանանց տա-
ռապանքը, իր ընկերներից մեկին՝ Լեոննատոսին, ուղարկեց (նրանց
մոտ), որպեսզի դադարեցնի հուզմունքը և հանգստացնի Սիսյուն-
գամբրիսին[268], հաղորդելով, որ Դարեհը դեռևս կենդանի է և որ
Ալեքսանդրը նրանց հանդեպ պատշաճ վերաբերմունք կցուցադրի,
(հայտնի նաև), թե Ալեքսանդրը ցանկանում է առավոտյան խոսել
4 նրանց հետ և գործով ապացուցել իր բարեհոգությունը։ Այսպիսով,
գերի ընկած կանայք այս անակնկալից և, ընդհանրապես, անսպա-
սելի բարեբախտությունից (սրտապնդված), Ալեքսանդրին ողջու-
նեցին իբրև աստված և դադարեցրին իրենց ողբը։
5 Իսկ արքան լուսաբացին իր հետ վերցնելով իր առավել պատ-
վավոր ընկերներից[269] Հեփեստիոնին, եկավ այդ կանանց մոտ։
Որովհետև նրանք երկուսն էլ իրար նման էին հագնվել, իսկ Հեփես-
տիոնը առավել բարձրահասակ էր ու գեղեցիկ, Սիսյունգամբրիսը
կարծելով, որ սա է արքան, երկրպագեց սրան։ Բայց երբ ներկա-
ները նրան նշան արեցին և ձեռքերով ցույց տվեցին Ալեքսանդրին,
Սիսունգամբրիսը շփոթվեց իր անգիտության համար և դարձյալ
սկսեց երկրպագել Ալեքսանդրին, իսկ արքան ընդհատելով նրան,
6 ասաց. «Հոգ մի արա, ով մայր, քանզի սա նույնպես Ալեքսանոր է»։
Երբ արքան պառավ կնոջ «մայր» անվանեց, այդպիսի ազնվագույն
արտահայտությամբ ասես կանխավ խոստացավ բարեսիրտ լինել
նրանց հանդեպ, որոնք քիչ առաջ դժբախտացել էին։ Հավաստիաց-
նելով այդ կնոջը, թե նա կլինի իր երկրորդ մայրը, իսկույն իր
արարքներով հաստատեց իր բանավոր խոստումները։
38,1 Ալեքսանդրը նորից հագցրեց նրան արքայական զարդերը և
վերականգնեց նրա նախկին դիրքը պատշաճ պատիվներով. քանզի
վերադարձրեց նրան սպասավորների այն շքախումբը, որ Դարեհն
էր շնորհել, միաժամանակ իր կողմից ևս պարգևեց նախկինում
եղածից ոչ պակաս թվով սպասավորների և խոստացավ (Դարեհի)
աղջիկների ամուսնությունն ավելի առատությամբ ապահովել, քան
որոշել էր Դարեհը, իսկ տղային մեծացնել իբրև իր որդին և մատու-
2 ցել թագավորական պատիվ։ Այնուհետև իր մոտ կանչելով տղային,
համբուրեց նրան և տեսնելով նրա անվախ հայացքը, որը ոչնչից
չէր երկյուղել, ասաց Հեփեստիոնին և նրա հետ եղողներին, թե այս
տղան թեպետ վեց տարեկան է, բայց իր տարիքի համեմատ ավելի
արիություն է դրսևորում, որով և շատ ավելի քաջ է հորից։ Ինչ վե-
րաբերում է Դարեհի կնոջ, ապա ասաց, որ նրա վեհ դիրքը կպահ-
պանի այնպես, որ իր նախկին բարեբախտության համեմատ անար-
ժան ոչինչ չի զգալու։

3 Ալեքսանդրը ողորմածության և բարեգթության բազում այլ
խոստումներ ևս տվեց, որով կանայք, անսպասելի ուրախության մե-
ծությունից, չկարողացան իրենց արցունքը զսպել։ Այս բոլորից հե-
տո իր աջը տալով, ոչ միայն բարեգործություն ստացածների գո-
վասանքին արժանացավ, այլև իր արշավակից բոլոր զինվորների
մոտ դերազանց բարեհոգության համբավ նվաճեց։ Ես, ընդհանրա-
պես, կարծում եմ, թե Ալեքսանդրի կատարած գործերից և ոչ մեկը
արձանագրվելու և պատմության մեջ հիշատակվելու այնքան ար-
5 ժանի չէ, ինչքան այս։ Քանզի քաղաքներ պաշարելը և ճակատա-
մարտելը, ինչպես նաև պատերազմներում հաղթանակ տանելը
առավելապես հնարավոր են դառնում բախտի և քաջության շնոր-
հիվ, մինչդեռ երբ մարդ իշխանություն ունենալով հանդերձ գթու-
թյուն է ցուցաբերում անկյալների հանդեպ, ապա այդ մեկը իմաս-
6 տության արդյունք է։ Քանզի շատերը բախտի շնորհած հաջողու-
թյուններից մեծամտանում են և բարեբախտության մեջ գոռոզա-
նալով, մոռանում են մարդկային բնության հատուկ թուլություն-
ները, ուստի և կարելի է տեսնել թե ինչպես շատ շատեր անկարող
են լինում տանել բարեբախտությունը, ասես այն ծանր մի բեռ լի-
7 նեի։ Ահա թե ինչու Ալեքսանդրը, թեպետև ապրել է մեզանից շատ
սերունդներ առաջ, իր անձնական առաքինությունների պատճա-
ռով պետք է հետագա ժամանակներում ևս արժանանա իրավացի և
պատշաճ գովասանքի։
39,1 Դարեհը շտապ հասավ Բաբելոն և Իսսոսի ճակատամարտից
փրկվածներին ի մի հավաքեց. նա հոգեպես չէր ընկճվել, թեև խո-
շոր աղետի մեջ էր ընկել, այլ նամակ գրեց Ալեքսանդրին, (առա-
ջարկելով) մարդկայնորեն տանել իր բարեբախտությունը և գեր-
վածներին ազատ արձակել, փոխարենը խոշոր գումար ստանալով։
Նա միաժամանակ ավելացնում էր, թե ինքը կզիջի Ալյուս գետից
արևմուտք ընկած երկիրը և քաղաքները, եթե (Ալեքսանդրը) ցան-
2 կանա դառնալ իր բարեկամը։ Ալեքսանդրը ընկերներին գումարելով
խորհրդի, թաքցրեց նրանցից իսկական նամակը և գրելով մեկ
ուրիշը, որը առավել համապատասխանում էր իր շահերին, այն
ներկայացրեց ժողովականներին և (Դարեհի) դեսպաններին ձեռ-
3 նունայն ետ ուղարկեց[270]. Ուստի և Դարեհը նամակների միջոցով
Ալեքսանդրի հետ համաձայնության գալու փորձերից հույսը կտրած,
սկսեց պատերազմական մեծ պատրաստություններ տեսնել։ Նա
նորից սպառազինեց նրանց, որոնք փախուստի ժամանակ իրենց
զենքերը կորցրել էին և միաժամանակ ուրիշներին ևս զինվորա-
գրելով, դասեց զորամասերում. իր մոտ կանչեց նաև վերին սատ-

րապությունններում[271] գտնվող զորքերը, որոնց նախապես թողել
4 էր այնտեղ, երբ ստիպված էր շտապ արշավել։ Վերջապես, նա
այնքան շատ ջանք թափեց զորքը կազմակերպելու համար, որ այն
դարձավ կրկնակի, քան Իսսոսի ճակատամարտում էր։ Հավաքվե-
ցին ութսուն բյուր հետևակ և քսան բյուր հեծյալ, չհաշված մեծ
քանակությամբ մանգաղակիր ռազմակառքերը։
52,7 Արդ, Ալեքսանդր արքան Ալեքսանդրիայի կառուցումը իր ըն-
կերներից ոմանց հանձնարարելով, եգիպտական բոլոր գործերը
կարգավորվելուց հետո, իր զորքերով վերադարձավ Սիրիա։
53,1 Իսկ Դարեհը, լսելով նրա ժամանումը, բոլոր կողմերից իր զոր-
քերը գումարեց և ճակատամարտի համար նախապատրաստեց
ամեն ինչ։ Նա թրերն ու նիզակները ավելի երկար պատրաստեց,
քան նախկինում էր. քանզի կարծում էին, թե Կիլիկիայում տեղի
ունեցած ճակատամարտում Ալեքսանդրը այդ պատճառով հասավ
մեծ առավելության։ Նա պատրաստեց նաև վարպետորեն մտածված
երկու հարյուր մանգաղակիր կառքեր թշնամուն ապշեցնելու և ահա-
2 բեկելու նպատակով։ Այդ կառքերի լծին ամրացված էին քերիչներ,
որոնք երեք թիզ երկարությամբ դուրս էին ցցվում արտաքին ձիերի
կողքերից և որոնց հատող սայրերը շրջված էին հանդիպակաց կող-
մը. իսկ սռնու թեքության վրա ուղիղ դրությամբ ամրացված էին
ևս երկու քերիչ, որոնց սայրերը նույնպես, նախորդների նման,
շրջված էին հանդիպակաց կողմը, բայց սրանք ավելի երկար էին
և ավելի լայն։ Սրանց ծայրերից ամրացված էին մանգաղներ։
2 Իր ամբողջ զորքը շողշողուն զենքերով ու քաջարի հրամանա-
տարներով ապահովելուց հետո (Դարեհը) դուրս եկավ Բաբելոնից,
ունենալով շուրջ ութսուն բյուր հետևակ և ոչ պակաս քան քսան
բյուր հեծյալ[272]։ Նրա ընթացքի աջ կողմում գտնվում էր Տիգրիսը,
իսկ ձախ կողմում՝ Եփրատը, և նա անցնում էր հարուստ երկրի մի-
ջով, որը կարող էր անասուններին առատ խոտ հայթայթել և զոր-
4 քի բազմությանը ապահովել բավարար պարենամթերքով։ Նա ձգ-
տում էր ճակատամարտ մղել Նինվեի շրջակայքում, քանի որ այն-
տեղ դաշտերը շատ հարմար էին իր նպատակի համար և նրա դու-
մարած մեծաթիվ զորքերին շարժվելու լայն հնարավորություն էին
ընձեռում։ Նա բանակ դնելով Արբելա կոչված գյուղի մոտ, այստեղ
ամեն օր մարզում էր իր զորքը և մշտական ուսուցման ու վարժու-
թյունների միջոցով զինվորներին դարձրեց կարգապահ. քանզի նա
շատ էր մտահոգված, որ չլինի թե ճակատամարտի ընթացքում
որևէ անկարգություն առաջանա այն բանի պատճառով, որ տարբեր
լեզուներով խոսող բազմաթիվ ժողովուրդներ էին դումարվել։

54,1 Միաժամանակ նա, ինչպես նախկինում, դարձյալ դեսպաններ
ուղարկեց Ալեքսանդրի մոտ հաշտության համար, նրան զիջելով
Ալյուս գետից արևմուտք ընկած երկիրը և խոստանալով նրան
2 տալ երկու բյուր տաղանդ արծաթ[273]։ Բայց քանի որ Ալեքսանդրը
ուշադրություն չդարձրեց դրան, նորից ուրիշ դեսպաններ ուղարկեց,
գովելով Ալեքսանդրին այն բանի համար, որ ազնվությամբ է վե-
րաբերվել իր մոր և մյուս գերիների հետ, միաժամանակ առաջար-
կելով նրան դառնալ իր բարեկամը և ստանալ Եփրատից արևմուտք
ընկած երկիրը և երեք բյուր տաղանդ արծաթ[274] և ամուսնանալ իր
աղջիկներից մեկի հետ ու դրանով իսկ ընդհանրապես դառնալով իր
փեսան և գրավելով իր որդու դիրքը, հաղորդակից դառնա ամբողջ
3 թագավորության կառավարման[275]։ Ալեքսանդրը խորհրդի հրավի-
րեց բոլոր ընկերներին և հայտնելով ստացված առաջարկություն-
ները, պահանջեց, որ յուրաքանչյուրն իր կարծիքը ազատորեն ար-
4 տահայտի։ Այսուհանդերձ, մյուսներից և ոչ մեկը չհամարձակվեց
որևէ խորհուրդ տալ, նկատի ունենալով քննարկվող հարցի մեծ
կարևորությունը, առաջինը Պարմենիոնն ասաց. «Եթե ես Ալեք-
սանդրը լինեի, մատուցվածները կընդունեի և հաշտություն կկնքեի»։
Իսկ Ալեքսանդրը նրան պատասխանեց. «Ես էլ Պարմենիոնը
լինեի, նույնպես կընդունեի»։
5 Շարունակելով իր ասելիքը, նա մեծահոգի խոսքերով մերժեց
պարսիկների առաջարկները, բայց միաժամանակ գովաբանելով
մատուցված ընծաները, դեսպաններին պատասխան տվեց ասելով,
թե երկիրը չէր կարող իր կարգ ու կանոնը պահպանել, եթե գոյու-
թյուն ունենային երկու արև և ոչ էլ օյկումենեն[276] երկու թագավորի
իշխանության տակ գտնվելիս կարող է հանգիստ և խաղաղ մնալ։
6 Ուստի և պատվիրեց դեսպաններին հաղորդել Դարեհին, որ եթե
ձգտում է առաջնության, ապա ինքը կռիվ կմղի նրա դեմ բոլորի
վրա միանձնյա իշխելու համար։ Իսկ եթե նա, արհամարհելով
փառքը, գերադասում է շահն ու հեշտասեր կյանքը, ապա թող կա-
տարի Ալեքսանդրի հրամանները. թող նա թագավորի ուրիշների
վրա, քանի որ այդ իշխանությունը նրան շնորհվում է Ալեքսանդրի
մեծահոգությամբ։
7 Այնուհետև նա, արձակելով խորհուրդը, վերցրեց զորքը և առաջ
շարժվեց դեպի թշնամու բանակատեղին։ Այս ընթացքում Դարեհի
կինը մահացել էր, և Ալեքսանդրը նրան թաղեց մեծ շուքով։
55,1 Դարեհը լսելով (Ալեքսանդրի) պատասխանները, հրաժարվեց
բանակցությունների միջոցով հաշտության հասնելու մտքից։ Ուս-
տի և նա շարունակում էր իր զորքերի ամենօրյա մարզումները և

պատրաստում էր նրանց պատերազմական կարգապահության։ Նա
իր ընկերներից Մազայոսին ընտիր զորամասով ուղարկեց հսկելու
դետի անցումը և նախապես գրավելու անցահունը. իսկ ուրիշներին
ուղարկեց հրոճարակ անելու այն երկիրը, որով պետք է անցներ
թշնամու զորքը. քանզի նա մտադիր էր (Տիգրիս) գետի հունը օգ-
տագործել իբրև պաշտպանական գիծ մակեդոնացիների հարձակ-
2 ման դեմ։ Սակայն, Մազայոսը ենթադրելով, որ գետն անանցանելի է,
հունի խորության և հոսանքի ուժգնության պատճառով, հոգ չտա-
րավ անցահունը պահպանելու։ Դրա փոխարեն գործակցելով այն
զորամասերի հետ, որոնք կրակի էին մատնում երկիրը, մեծ ավե-
րածություններ պատճառեց, կարծելով, թե պարենի պակասության
պատճառով երկիրը անանցանելի կդառնա թշնամու համար։
3 Մինչդեռ Ալեքսանդրը հասնելով Տիգրիսի գետանցը և տեղացի-
ներից իմանալով, թե ո՞րտեղ է անցահունը, նա իր զորքը անցկաց-
րեց (մյուս ափը). անցումը կատարվեց ոչ առանց դժվարության և
4 ոչ էլ ամբողջապես անվտանգ։ Քանզի գետանցում ջրի խորությունը
հասնում էր կրծքից վերև, իսկ հոսանքի ուժգնությունը հունով անց-
նողներից շատերին քշեց և զրկեց նրանց քայլ անելու հնարավորու-
թյունից, մինչդեռ հոսանքն էլ հարվածելով նրանց վահաններին,
5 շատերին շեղում էր և ենթարկում ծայրագույն վտանգների։ Բայց
Ալեքսանդրը հոսանքի թափը կասեցնելու նպատակով պատվիրեց
բոլորին միահյուսել իրենց ձեռքերը և, իրենց մարմինները ի մի
6 խտացնելով, ստեղծել մի տեսակ կամուրջ։ Քանի որ անցումը
մեծ համարձակություն էր և մակեդոնացիները հազիվ կարողացել
էին ապահով փրկվել, (Ալեքսանդրը) այդ օրը զորքերին հանգիստ
տվեց, իսկ հաջորդ օրը մարտական շարքերով առաջնորդեց նրանց
թշնամու դեմ և ընդհուպ մոտենալով պարսիկներին, բանակեց այն-
տեղ։
56,1 Հաշվի առնելով պարսկական զորքերի բազմությունը և անխու-
սափելի ճակատամարտի վճռական բնույթը, քանի որ ամեն ինչ
կարող էր որոշվել իրենց ձեռքով, (Ալեքսանդրը) ամբողջ գիշերը
անքուն անցկացրեց, զբաղված հաջորդ օրվա հոգսերով։ Առավոտ-
յան հերթափոխի պահին նրա քունը տարավ և նա այնքան խորը
2 քնեց, որ ցերեկը չկարողացավ զարթնել ու վեր կենալ։ Սկզբում
ընկերները այդ տեսնելով ուրախացան, կարծելով, թե արքան, այս-
պես լավ հանգստանալուց հետո, ավելի կայտառ կլինի վերահաս
ճակատամարտի ընթացքում։ Բայց քանի որ ժամանակն անցնում
էր, իսկ արքան դեռ քնած էր մնում, Պարմենիոնը, ավագագույնը
ընկերներից, իր պատասխանատվությամբ հրաման արձակեց զին-

3 վորներին, պատրաստվել ճակատամարտին։ Սակայն Ալեքսանդրը
դեռևս չէր վեր կենում, ուստի և ընկերները, մոտիկ գալով, հազիվ
կարողացան նրան զարթնեցնել։ Քանի որ բոլորը զարմանում էին
կատարվածի վրա և ցանկանում էին դրա պատճառն իմանալ, Ալեք-
սանդրը ասաց, որ Դարեհն իր ուժերը մեկ վայրում հավաքելով,
ազատել է իրեն բոլոր տագնապներից. քանզի մեկ օրում ամեն ինչ
կվճռվի և իրենք կազատվեն տանջանքներից ու երկարատև վտանգ-
4 ներից։ Այսուհանդերձ, Ալեքսանդրը իր մոտ կանչելով հրամանա-
տարներին, պատշաճ խոսքերով դիմեց նրանց և, քաջալերելով վե-
րահաս կռիվների համար, ամբողջ զորքը ռազմաշարքերով տարավ
բարբարոսների դեմ, հեծյալ ջոկատները հետևակ փաղանգներից
առաջ դասավորելով։
57,1 Աջ թևում (Ալեքսանդրը) դասավորեց արքունի հեծելագունդը,
որի հրամանատարն էր «Սև» մականվանյալ Կլեյտոսը և սրանց
կողքին մյուս ընկերները, որոնց առաջնորդում էր Փիլոտասը, Պար-
մենիոնի որդին. այնուհետև դասավորվեցին ևս յոթ հեծելագունդ,
2 նույնի հրամանատարությամբ։ Սրանց թիկունքում դասավորված
էր արգիրասպիդների[277] հետևակ գունդը, որը տարբերվում էր մյուս-
ներից իր զենքերի փայլով և մարդկանց արիությամբ. սրանց
առաջնորդում էր Նիկանորը, Պարմենիոնի որդին։ Հաջորդը նա
կանգնեցրեց Ելիմիոտիս կոչված զորամասը[278], որը առաջնորդում
էր Կոյնոսը, այնուհետև կանգնեցրեց Օրեստների և Լյունկեստների
գնդերը, որոնց հրամանատարն էր Պերդիկկասը։ Հաջորդ զորա-
գունդը Մելեագրոսինն էր, իսկ սրա կողքին կանգնած էր Պոլյու-
պերքոնը, իր հրամանատարության տակ ունենալով այսպես կոչ-
3 ված ստյումփայներին։ Իսկ Փիլիպպոսը, Բալակոսի որդին, առաջ-
նորդում էր հաջորդ զորագունդը և նրանից հետո Կրատերոսի առաջ-
նորդած զորագունդն էր։ Վերոհիշյալ հեծյալ գնդերի շարքերը լրաց-
նում էին Պելոպոննեսոսից և Աքայայից նրանց հետ արշավին մաս-
նակցող հեծյալները, այնուհետև ձիավորները Փթիոտիսից[279] և
Մալիսից[280], ինչպես նաև լոկրիսցիներ և փոկիսցիներ[281], որոնց
4 առաջնորդում էր Երիգյուոս միտիլենացին։ Այնուհետև կանգնած
էին թեսսալացիները, առաջնորդ ունենալով Փիլիպպոսին, սրանք
ձիավարությամբ և քաջությամբ գերազանցում էին մյուսներին։
Սրանցից հետո (Ալեքսանդրը) կանգնեցրեց կրետացի աղեղնավոր-
ներին և աքայացի վարձկաններին։
5 Իր զորաբանակի թևերից յուրաքանչյուրին Ալեքսանդրը անկ-
յան ձև տվեց, որպեսզի թշնամու զորքերի բազմությունը չկարողա-
6 նա շրջապատել մակեդոնացիների փոքրաթիվ զորքերին։ Մանգա-

ղակիր ռազմակառքերի հարձակման դեմն առնելու նպատակով ար-
քան հրամայեց փաղանգի հեծյալներին, որ երբ քառաձի կառքերը
մոտենալիս լինեն, ապա բոլորն իրենց վահանները միացնեն իրար
և իրենց սարիսաներով[282] հարվածեն վահաններին, որպեսզի բարձ-
րացած աղմուկից (ձիերը) վախենան և ետ փախչեն, իսկ եթե (ձիե-
րը) համառեն, ապա նրանց ճանապարհը բացեն շարքերի միջով,
այնպես, որ նրանք անցնեն առանց վտանգելու մակեդոնացիներին.
Ինքը. Ալեքսանդրը, աջ թևի հրամանատարությունը վերցրեց իր վրա
և շարքերը շեղակի դասավորելով, որոշեց ճակատամարտի ամբողջ
ելքը անձամբ վճռել։
58.1 Դարեհն իր զորքերը ըստ ազգերի ճակատելուց հետո, ինքը ևս
անցավ Ալեքսանդրի դիմաց և բանակը շարժեց թշնամու դեմ։ Հա-
կառակորդ շարքերը, երբ մոտեցան իրար, շեփորահարները երկուս-
տեք հարձակում ազդարարեցին և այրերը մեծ աղմուկով հարձակ-
2 վեցին իրար վրա։ Սկզբում մանգաղակիր կառքերը ուժեղ թափով
սուրացին և մեծապես անհաբեկեցին մակեդոնացիներին, քանզի
Մազայոսը, հեծյալների հրամանատարը, խիտ շարքերով արշա-
վում էր մանգաղակիր կառքերի հետ, վերջիններիս հարձակումը
3 դարձնելով առավել ահռելի։ Ու երբ փաղանգի ռազմիկները համա-
խմբվելով միացրին իրենց վահանները և թագավորի հրամանի հա-
մաձայն բոլորն սկսեցին իրենց սարիսաներով հարվածել վահան-
4 ներին, մեծ աղմուկ բարձրացավ։ Այդ բանից էլ ձիերը խրտնեցին և
ռազմակառքերի մեծ մասը ետ շրջվեց և անկասելի թափով նետվեց
յուրայինների շարքերի վրա։ Մնացած կառքերը հարձակվեցին
փաղանգի վրա, բայց երբ մակեդոնացիները լայն տարածություն-
ներ բացեցին (իրենց շարքերի միջով), կառքերը նետվեցին այն-
տեղ և մի մասը ցած գլորվեց նիզակների հարվածներից, մի մասը
կարողացավ խուսափել, մի մասն էլ մեծ թափով առաջ ընթացավ և
երկաթե սայրերի օգնությամբ մակեդոնացիների շարքերում բազ-
5 մազան ձևերով մահ պատճառեց։ Կործանարար այս զենքերը այն-
քան հուժկու էին և հատու, որ շատերի բազուկները կտրեցին վա-
հաններով հանդերձ, շատ դեպքերում էլ կտրեցին մարդկանց պա-
րանոցը, որով գլուխները, դեռևս բաց աչքերով և դեմքի արտահայ-
տությունը պահած, թավալվում էին գետնին, ոմանց էլ կողերը մա-
հացու կտրատելով, շուտափույթ մահ էին պատճառում։
59.1 Երբ արդեն զորքերն ընդհուպ մոտեցան իրար և սկսեցին օգ-
տագործել իրենց աղեղներն ու պարսատիկները և սպառվեցին
նրանց նետած տեգերն ու նետասլաքները, նրանք ձեռնամարտի
2 բռնվեցին։ Սկզբում մարտի մտան հեծյալները, և քանի որ մակե-

դոնացիները կռվում էին աջ թևում, Դարեհը, որն առաջնորդում էր
(իր գործերի) ձախ թևը, իր հետ վերցրել էր տոհմակից հեծյալ-
ներին, սրանք ընտրված էին իրենց քաջության և նվիրվածության
3 պատճառով և հազար հոգով ընդգրկված էին մեկ գնդի մեջ[283]։ Քանի
որ սրանց քաջագործության ականատեսը ինքը արքան էր, ապա
սրանք հոժարաբար ընդունում էին նրա վրա արձակված բոլոր նե-
տերը։ Սրանց հետ էին նաև խնձորակիրները[284], որոնք մեծաթիվ
էին և աչքի էին ընկնում իրենց քաջությամբ. սրանցից բացի նաև
մարդերը[285] և կոսսայները[286], որոնք հիանալի էին իրենց մարմնա-
4 կան ուժով և հոգեկան արիությամբ։ Սրանց կողքին կռվում էին նաև
պալատին մոտ կանգնած արքունի զորամասերը և հնդիկներից
արիագույնները։ Ահա սրանք մեծ աղմուկով նետվելով թշնամու
վրա, բաջաբար կռվում էին և իրենց բազմությամբ նեղում մակե-
դոնացիներին։
5 Մազայոսը, որը ղեկավարում էր աջ թևը և (իր հրամանատա-
րության տակ) ուներ գերազանց հեծյալներ, առաջին իսկ հարձակ-
ման ժամանակ իր դեմ կանգնածներից շատերին ոչնչացրեց, իսկ
կադուսիներից երկու հազար և սկյութներից հազար ընտրյալ ձիա-
վորների ուղարկեց, հրամայելով ձիավարել թշնամու թևի շուրջ և
6 մոտենալով ճամբարին, գրավել հանդերձանքը։ Նրանք հրամայ-
վածը իսկույն կատարեցին և երբ արդեն մտան մակեդոնացիների
բանակատեղին, գերի ընկածներից ոմանք խլելով զենքերը, սկսե-
ցին օգնել սկյութներին և հափշտակել հանդերձանքը։ Այս անսպա-
սելի պատահարի հետևանքով ամբողջ ճամբարով մեկ աղաղակ և
7 շփոթ առաջացավ։ Գերի ընկած կանանցից շատերը գնացին դեպի
բարբարոսները, բայց Դարեհի մայրը, Սիսյունգամբրիսը, ուշ
չդարձրեց իրեն կանչող գերի կանանց, այլ մնաց հանգիստ և ան-
խռով, քանզի չէր վստահում բախտի անակնկալ փոփոխության և
չէր ուզում արատավորել Ալեքսանդրի հանդեպ իր երախտապարտու-
8 թյունը։ Վերջապես, սկյութները հանդերձանքի մեծ մասը հափշ-
տակելուց հետո մեկնեցին Մազայոսի մոտ և հաղորդեցին իրենց
հաջողությունը։ Նույնպես և Դարեհի կողքին կռվող հեծյալների մի
մասը իրենց բազմության պատճառով նեղեցին իրենց դեմ կանգնած
մակեդոնացիներին և ստիպեցին փախուստի դիմել։
60,1 Երբ արդեն պարսիկներն այս երկրորդ հաջողությունն ունեցան,
այնժամ Ալեքսանդրը շտապեց յուրայինների պարտությունը կան-
խել իր միջամտությամբ և վերցնելով արքունի հեծելազունդը և
ձիավորներից ամենաերևելիներին, սուրաց իրեն՝ Դարեհի վրա
2 Պարսից արքան ընդունելով թշնամու հարձակումը, ինքն իսկ կռվե-

լով ռազմակառքի վրայից, նիզակահարում էր իր վրա հարձակվող-
ներին և շատերը զորավիգ էին լինում նրա կովին։ Եվ երբ արքա-
ները մոտեցան իրար, Ալեքսանդրը աշտեն շպրտեց Դարեհի վրա,
բայց վրիպեց և հարվածը պատահեց արքայի ձիավարին ու գետին
3 տապալեց։ Երբ Դարեհի շուրջ եղողները բարձրաձայն աղաղակե-
ցին, ավելի հեռու գտնվողները կարծեցին, թե ընկել է ինքը արքան։
Ու քանի որ սրանք սկսեցին փախուստի դիմել և ուրիշները ևս հա-
ջորդաբար հետևեցին նրանց, Դարեհի զորագնդի խիտ շարքերն աս-
տիճանաբար սկսեցին քայքայվել։ Հետևաբար, երբ երկու թևերը
մերկացան կռվողներից, ինքը (Դարեհը) ևս ահաբեկվեց ու դիմեց
4 փախուստի։ Երբ բոլորը այդպես փախուստի դիմեցին, հեծյալների
(ընթացքից) փոշին վեր բարձրացավ և քանի որ Ալեքսանդրի զորքը
նրանց կրնկակոխ հալածում էր, բազմության և փոշու խտության
պատճառով հնարավոր չէր նկատել, թե Դարեհը ո՞ր կողմն էր
փախչում, մինչդեռ շրջապատը լցվել էր վայր ընկնող այրերի տրն-
քոցով և հեծյալների դղրդյունով, ինչպես նաև մտրակների անընդ-
հատ շառաչով։
5 Մինչ այս դեպքերը կատարվում էին, Մազայոսը, որն առաջ-
նորդում էր աջ թևը, բազմաթիվ և լավագույն հեծյալներով մեծա-
պես ճնշում էր իրեն հանդիման ճակատածներին, բայց Պարմենիո-
նը թեսսալացի հեծյալների և իր մյուս զորքերի օգնությամբ համա-
6 ռորեն դիմադրում էր թշնամուն։ Սկզբում նա փայլուն կռվելով, թես-
սալացիների արիության շնորհիվ նույնիսկ առավելության հասավ,
բայց Մազայոսի զորքերի բազմությունն ու զորությունը մեծապես
7 վտանգեց մակեդոնացիների հեծելազորայիններին։ Ու քանի որ մեծ
կոտորած եղավ և արդեն դժվարացավ բարբարոսների ուժին դիմադ-
րելը, Պարմենիոնը իր հեծյալներից ոմանց ուղարկեց Ալեքսանդրի
մոտ, խնդրելու, որ նա շուտափույթ հասնի օգնության։ Սրանք
իսկույն հրամանը կատարեցին, բայց տեսնելով, որ Ալեքսանդրը
(Դարեհին) հալածելիս շատ է հեռացել ռազմադաշտից, ձեռնունայն
8 վերադարձան, այսուհանդերձ, Պարմենիոնը մեծ հմտությամբ օգ-
տագործելով թեսսալացի հեծելազորայիններին և (թշնամուց) շա-
տերին կործանելով, ի վերջո փախուստի մատնեց բարբարոսներին,
մանավանդ, որ սրանք վհատվել էին Դարեհի փախուստի պատճա-
ռով[287]։
61,1 Դարեհը լինելով հմուտ ռազմավար և օգտվելով (բարձրացած)
փոշու թանձրությունից, իր փախուստը չկազմակերպեց մյուս բար-
բարոսների նման, այլ սուրաց հակառակ ուղղությամբ և ընթացքը
քողարկելով բարձրացած փոշու թանձրությամբ, ինքը անվտանգ

խուսափեց և իր հետ եղած բոլոր զորամասերը ապահով հասցրեց
2 մակեդոնացիների թիկունքում գտնվող գյուղերը։ Երբ ի վերջո բոլոր բարբարոսները փախուստի դիմեցին և մակեդոնացիները մնացածներին մինչև վերջինը սպանեցին, շուտով մոտակա ամբողջ
3 դաշտը լցվեց դիակներով։ Այս ճակատամարտում բարբարոսներից սպանվեցին հեծյալ և հետևակ ընդամենը ավելի քան ինը բյուր մարդ[288], իսկ մակեդոնացիներից սպանվեցին շուրջ հինգ հարյուր մարդ և շատ շատերն էլ վիրավորվեցին[289], որոնց թվում նաև ամենահայտնի հրամանատարներից Հեփեստիոնը նիզակի հարվածով վիրավորվեց բազուկից. սա թիկնապահների հրամանատարն էր, իսկ զորավարներից (վիրավորվեցին) Պերդիկկասը և Կոյնոսը, ինչպես նաև Մենիդասը և հայտնի հրամանատարներից ոմանք։

Ահա այսպիսի վախճան ունեցավ Արբելայի մոտ տեղի ունեցած ճակատամարտը։

64,1 Դարեհը Արբելայի մոտ ճակատամարտում պարտվելուց հետո փախչելով դիմեց դեպի վերին սատրապությունները, նա շտապում էր տարածություն ստեղծել իր և Ալեքսանդրի միջև, որպեսզի անհրաժեշտ ժամանակ և հնարավորություն ունենա զորքեր պատրաստելու։ Նա սկզբում անցավ Մեդիայի Եկբատանան և մնաց այնտեղ, հավաքելով պատերազմից փախչելով փրկվածներին և զինելով
2 անզեններին։ Մոտակայքում բնակվող ցեղերից նա զինվորներ պահանջեց և Բակտրիայի և վերին սատրապությունների սատրապների և զորավարների մոտ հրեշտակներ ուղարկեց, կոչ անելով նրանց հավատարիմ մնալ իրեն։
3 Իսկ Ալեքսանդրը հաղթանակից հետո թաղեց (իր) սպանյալներին և մտավ Արբելա, որտեղ էլ գտավ բազմաղան և առատ պարեն, ոչ քիչ քանակությամբ բարբարոսական զգեստներ և գանձեր և երեք հազար արծաթ տաղանդ։ Մտածելով, որ դիակների բազմության պատճառով այնտեղ օդը կարող է ապականվել, նա իսկույն
4 ճանապարհ ընկավ և ամբողջ զորքով հասավ Բաբելոն։ Տեղաբնակները նրան սիրահոժար ընդունեցին և օթևաններում մակեդոնացիներին շքեղորեն հյուրընկալեցին, ուստի և (Ալեքսանդրը) բարմացրեց իր զորքերը անցած չարչարանքներից հետո։ Նա քաղաքում մնաց ավելի քան երեսուն օր, պարենի առատության և բնակիչների մարդասիրության պատճառով։
5 Այնուհետև նա Ագաթոն պյուդնացուն հանձնեց միջնաբերդի պաշտպանությունը, տրամադրելով նրան յոթ հարյուր մակեդոնացի զինվոր. Ապոլլոդորոս ամփիպոլսեցուն և Մենես պելլացուն զորավարներ նշանակեց Բաբելոնի և մինչև Կիլիկիա ընկած սատրապու-

թյունների վրա, տալով նրանց հազար արծաթ տաղանդ և հրամա-
6 յելով զորքեր հավաքագրել ինչքան հնարավոր է։ Իսկ Միթրինեսին,
որը իրեն հանձնել էր Սարդեսի միջնաբերդը, տվեց Արմենիան[290]։
Ավար վերցրած գումարներից նա յուրաքանչյուր հեծյալին պար-
գևեց վեց մինա[291], յուրաքանչյուր դաշնակից հեծյալին՝ հինգ, մա-
կեդոնական փաղանգի զինվորին՝ երկու մինա և բոլոր օտար վարձ-
կաններին երկու ամսվա վարձ։
65,1 Երբ արքան մեկնեց Բաբելոնից և դեռևս ճանապարհին էր, նրա
մոտ ժամանեցին Անտիպատրոսի կողմից ուղարկված մակեդոնացի
հինգ հարյուր հեծյալ և վեց հազար հետևակ, Թրակիայից վեց հար-
յուր հեծյալ, երեք հազար տրալլացիներ, Պելոպոննեսոսից չորս
հազար հետևակ և հազարից քիչ պակաս հեծյալ, իսկ Մակեդոնիայից
ժամանեցին արքայի ընկերների հինգ հարյուր որդիներ, որոնք
2 ուղարկված էին որպես (արքայի) թիկնապահներ։ Արքան ընդու-
նելով այս բոլորին, շարունակեց իր առաջընթացը և վեցերորդ օրը
հասավ Սիտտակենե գավառը[292]։
Քանի որ այս երկիրը հարուստ էր ամեն տեսակ պարենի առա-
տությամբ, ուստի և նա այստեղ մնաց բավական ժամանակ, միև-
նույն ատեն հոգ տանելով ճանապարհի հոգնությունից հետո զոր-
քերի հանգստության մասին, ինչպես նաև մտածելով վերադասա-
վորել իր բանակի շարքերը։ Նա ուզում էր բարձրացնել մի շարք
հրամանատարների և բանակն ուժեղացնել հրամանատարների
3 թվով ու կարողություններով։ Իր որոշումը նա կատարեց մեծ ուշադ-
րությամբ նա քննեց գերազանց արարքները և շատերին, որոնք
բարձր հրամանատարներ էին, առավել մեծ պաշտոնի բարձրաց-
րեց, այնպես, որ բոլոր հրամանատարներին առավել բարձրացնե-
4 լով, նրանց տվեց մեծ սիրով կապեց իրեն։ Նա հոգ տարավ նաև
բուն իսկ զինվորների դրության մասին և շատ բարենորոգումներ
կիրառելով, նրանց վիճակը բարելավվեց։ Նա ամբողջ զորքին ար-
տակարգ նվիրվածություն ներշնչեց իր առաջնորդի նկատմամբ,
որպեսզի կատարեն բոլոր հրամանները և գերազանցեն իրենց քա-
ջագործությամբ, այս բոլորից հետո նա առաջ նետվեց հետագա
պայքարի համար։
5 Նա առանց դիմադրության հանդիպելու մտավ Սուսիանե (եր-
կիրը) և տիրացավ Սուսայի հոչակավոր պալատներին, որովհետև
սատրապ Աբուլետեսը, ինչպես ոմանք պատմում են, հոժարակամ
հանձնեց իրեն քաղաքը, քանի որ Դարեհը ինքն էր այդպես հրա-
մայել իր հավատարիմ հրամանատարներին։ Պարսից արքան այդ-
պես էր վարվում, որպեսզի Ալեքսանդրը, հրապուրվելով շ ացնող

շեղումներով և ընկնելով խոշորագույն քաղաքներ գրավելու և մեծ
գանձերի տիրանալու ետևից, զբաղված լինի, իսկ ինքը, Դարեհը,
փախչելով ժամանակ շահի պատերազմին նախապատրաստվելու
համար։
66,1 Ալեքսանդրը գրավելով քաղաքը և պալատի գանձատունը, այն-
տեղ գտավ ավելի քան չորս բյուր տաղանդ չդրոշմած[293] ոսկի և ար-
2 ծաթ։ Արքաներն այս ամենը շատ տարիներ պահել են անձեռն-
մխելի, որպես ապավեն բախտի քմահաճույքների դեմ։ Դրանից
բացի այնտեղ կար նաև ինը հազար ոսկի տաղանդ դահեկանի[294]
տեսքով։
3 Հետաքրքիր մի դեպք պատահեց արքային գանձերի գրավման
ժամանակ։ Երբ նա բազմեց արքունի գահի վրա, որը շատ ավելի
խոշոր էր, քան մարմնի չափերը, մանկլավիկներից[295] մեկը տես-
նելով, որ նրա ոտքերը շատ են բարձր մնացել գահի պատվանդա-
նից, վերցնելով Դարեհի սեղանը, այն դրեց (արքայի) օրորվող ոտ-
քերի տակ։ Սեղանը լավ համարվեց և արքային հաճոյացրեց այդ
արարքի դիպուկությունը, բայց գահին մոտիկ կանգնածներից մի
ներքինի բախտի այդպիսի փոփոխությունից սրտում հուզվեց և
5 արտասվեց։ Ալեքսանդրը նրան նկատելով հարցրեց. «Ի՞նչ վատ
բան ես տեսել ու լաց ես լինում»։ Ներքինին պատասխանեց. «Այժմ
ես քո ստրուկն եմ, մինչդեռ նախկինում Դարեհինն էի, և քանի որ
բնավորությամբ տիրասեր եմ, վշտացա տեսնելով, որ նրա կողմից
առավել հարգված կահույքը այժմ դարձել է անպատիվ իր»։
6 Արքան այս պատասխանից ըմբռնեց այն ամբողջ փոփոխու-
թյունը, որ տեղի է ունեցել պարսկական թագավորության մեջ։ Նա
զգաց, թե մեծամիտ արարք գործեց, որը բոլորովին հակադիր էր
7 գերի վերցված կանանց հանդեպ իր ցուցաբերած ազնվության։ Ուս-
տի և կանչելով սեղանը (իր ոտքերի տակ) դնողին, հրամայեց այն
ետ վերցնել։ Փիլոտասը[296], որը այնտեղ ներկա էր, ասաց. «Բայց սա
անարգանք չէ, քանի որ դու ինքդ չես հրամայել, այլ դեպքը կա-
տարվել է ինչ-որ բարի ոգու նախախնամությամբ և կամքով»։ Այս-
պիսով, արքան այդ խոսքերը իբրև բարի նշան ընդունելով, հրա-
մայեց, որ սեղանը մնա գահի տակ իբրև պատվանդան։
67,1 Այնուհետև նա Դարեհի մորը և դստրերին և որդուն թողեց Սու-
զայում, տրամադրելով նրանց հունարեն լեզուն սովորեցնողների,
իսկ ինքը զորքը վերցնելով ճանապարհ ընկավ և չորրորդ օրը հա-
2 սավ Տիգրիս գետը[297]։ Սա հոսելով Ուքսիանեի լեռներից, նախ հա-
զար ասպարեզ տարածության վրա անցնում է դաժան երկրով, որը
կտրտված է մեծ ձորերով, այնուհետև հոսում է դաշտավայրի մի-

քով, հետզհետե դառնում մեղմահոս և, վեց հարյուր ասպարեզ
3 անցնելուց հետո, թափվում է Պարսից ծովը։ Անցնելով Տիգրիսը,
(Ալեքսանդրը) մտավ ուքսիացիների երկիրը, որը ամենաբեր է և
ոռոգվում է առատ ջրերով և արտադրում է առատ և բազմազան
մրգեր։ Երբ հասած մրգերը չորացվում են, Տիգրիսն ի վար նավող
վաճառականները Բաբելոնիա բերում են բավականության համար
ամեն տեսակ բարիք։
4 Ալեքսանդրը (առաջ ընթանալիս) անցումները պաշտպան-
ված տեսավ Մադետեսի[298] կողմից, որը Դարեհի ազգականն էր և
նշանակալից ուժեր ուներ։ (Արքան) նկատեց, թե վայրը խիստ ամ-
րացված է։ Գահավեժ ժայռերը անանցանելի էին, բայց տեղացի-
ներից մեկը, ծագումով ուքսիացի, որը քաջ գիտեր այդ վայրերը,
արքային խոստացավ նեղ ու վտանգավոր մի արահետով զինվոր-
5 ներին հասցնել թշնամուց ավելի բարձր դտնվող դիրքերը։ Ալեք-
սանդրը ընդունեց նրա առաջարկները և նրա հետ ուղարկեց բավա-
կան զինվորներ, իսկ ինքը, շարունակելով իր առաջընթացը ինչքան
հնարավոր էր, հաջորդաբար հարձակվեց անցումները պաշտպա-
նողների վրա։ Քանի որ հարձակումը եռանդուն էր և բարբարոս-
ների ուշադրությունը այստեղ էր շեղված, (Ալեքսանդրի կողմից)
ուղարկվածները անսպասելի հայտնվեցին անցումը պահպանող-
ների գլխավերևում։ Քանի որ բարբարոսները ահաբեկվեցին և
փախուստի դիմեցին, ապա (Ալեքսանդրը) տիրացավ անցմանը և
շուտով նաև Ուքսիանե երկրի բոլոր քաղաքներին։
68,1 Այստեղից ճանապարհ ընկնելով (Ալեքսանդրը) առաջ ընթա-
ցավ դեպի Պերսիս[299] և հինգերորդ օրը հասավ Սուսիական կոչված
ժայռերին։ Այստեղ անցումները նախապես վերցրել էր Աբիոբար-
զանեսը[300] երկու բյուր և հինգ հազար հետևակ զինվորներով և երեք
2 հարյուր հեծյալներով։ Արքան որոշեց հարձակվել և գրավել ան-
ցումները, ուստի և նեղ ու դաժան վայրերով շարժվեց առաջ, բայց
դիմադրության չհանդիպեց։ Մինչդեռ բարբարոսները թույլ տվեցին
նրան կիրճի միջով առաջանալ մինչև ինչ-որ տեղ, բայց երբ նա
արդեն հասել էր կես ճանապարհին, դժվարանցանելի մի վայր, հան-
կարծ հարձակվեցին, վերևից գլորելով սայլաբեռ մեծությամբ քա-
րեր, որոնք հանկարծակի ընկնելով մակեդոնացիների վրա, շատ
շարքերին կործանեցին. (բարբարոսներից) շատերն էլ գահավեժ
ժայռերի գլխից տեգեր էին շպրտում խտացած (մակեդոնացիների)
վրա և ոչ մի դեպքում չէին վրիպում, որիշներն էլ ձեռքերով քարեր
էին նետում հարձակվող մակեդոնացիների վրա։ Նեղ կիրճը մեծա-

պես նպաստեց պարսիկներին, որոնք և շատերին սպանեցին, ոչ
քչերին էլ վիրավորեցին։
3 Ալեքսանդրը արդեն անզոր էր օգնելու իր աղետյալ զինվոր-
ներին և տեսնելով, որ թշնամիներից ոչ ոք ոչ սպանվել է, ոչ իսկ
վիրավորվել, մինչդեռ իր զինվորներից շատերը կործանվել են և գրե-
թե բոլոր հարձակվողները վիրավորվել, շեփորով զինվորներին
4 ազդարարեց վերադարձ ռազմից։ Անցումներից ետ քաշվելով երեք
հարյուր ասպարեզ, նա բանակ դրեց և փորձեց տեղացիներից իմա-
նալ, թե կա՞ արդյոք որևէ մեկ ուրիշ անցում։ Երբ բոլորը հաստա-
տեցին, թե ոչ մեկ այլ անցում չկա, սակայն կարելի է շատ օրերի
ճանապարհով շրջանցել այդ ամենը, Ալեքսանդրը անվայել համա-
րեց սպանվածներին անթաղ լքելը, բայց և միաժամանակ անհար-
մար սեպեց իր մեռյալներին պահանջելը, այդ բանում տեսնելով
իր պարտության խոստովանանքը, նա հրամայեց բոլոր գերված-
5 ներին բերել իր առաջ։ Սրանց հետ իր մոտ առաջնորդվեց նաև
երկու լեզվով խոսող մի մարդ, որը գիտեր պարսկերեն։
Նա ասաց, որ ինքը ծագումով լյուկիացի է, բայց գերի ընկնելուց
հետո երկար տարիներ այս լեռնային վայրերում այծեր է արածում,
այդ պատճառով էլ ինքը լավ ծանոթ է այդ երկրին և կարող է զորքը
ծառախիտ արահետով առաջնորդել անցումները պահպանողների
6 թիկունքը։ Արքան խոստացավ նրան պատվել առատ պարգևներով
և այդ մարդու առաջնորդությամբ գիշեր ժամանակ մեծ դժվարու-
թյամբ առատ ձյան միջով անցավ այդ լեռը. ճանապարհն ընկած
էր գահավեժ երկրով, որը կտրատված էր խոր ձորերով և բազում
անդունդներով։ Հայտնվելով թշնամու պահակակետերի դեմ, առա-
ջիններին կոտորեց, երկրորդ դիրքերում գտնվողներին գերի վերց-
րեց, իսկ երրորդ դիրքերում գտնվողներին փախուստի մատնելով,
տիրացավ անցումներին և Արիոբարզանեսի զորքերի մեծ մասին
կոտորեց։
69,1 Այնուհետև երբ նա առաջ էր ընթանում դեպի Պերսեպոլիս, ճա-
նապարհին նրան նամակ բերեցին քաղաքի կառավարիչ Տիրիդա-
տեսից։ Նամակում գրված էր, որ եթե նա ժամանի ավելի շուտ
քան նրանք, որոնց հանձնարարված է Պերսեպոլիսը պահել Դարեհի
2 համար, ապա ինքը քաղաքը կհանձնի նրա տիրությանը։ Ուստի և
Ալեքսանդրը իր զորքը շտապ տարավ առաջ և կամրջելով Արաքսես
գետը[301], զինվորներին անց կացրեց (մյուս ափը)։
Այստեղ էլ, մինչ արքան առաջ էր ընթանում, տարօրինակ և
ահավոր մի տեսարան տեղի ունեցավ, որը զայրույթ առաջացրեց
այն կատարողների դեմ, իսկ անխղճորեն տուժածների հանդեպ

համակրանք հարուցեց։ Այսպես, արքային ծիծենու ճյուղերով[302]
դիմավորեցին հելլեններ, որոնք իրենց երկրից տեղահանվելով այս-
տեղ էին բերվել պարսից նախորդ արքաների կողմից, թվով մոտա-
վորապես ութ հարյուր մարդ, որոնց մեծ մասն արդեն ծերացել էր
և բոլորը խեղանդամվել էին, ոմանք զրկվել էին ձեռքերից, ոմանք
4 ոտքերից, ուրիշներ ականջներից ու քթերից. նրանց, ովքեր ծանոթ
էին զինության և արհեստներին ու առաջադիմել էին ուսման մեջ,
բոլոր մյուս վերջավորությունները հաշմել էին և թողել միայն այն,
ինչը անհրաժեշտ էր իրենց արհեստին։ Բոլոր զինվորները, տես-
նելով նրանց պատկառելի տարիքը և կրած մարմնական աղետ-
ները, կարեկցում էին այդ դժբախտների վիճակի վրա։ Բոլորից
առավել այդ դժբախտներին կարեկցում էր ինքը՝ Ալեքսանդրը և
չէր կարողանում զսպել արտասուքը։
5 Քանի որ բոլորը միաբերան ձայն բարձրացրին և խնդրեցին
Ալեքսանդրին, որպեսզի պաշտպան կանդնի իրենց այդ դժբախ-
տությունների մեջ, ուստի և արքան իր մոտ հրավիրելով նրանց
մեծավորներին, իր մեծահոգության համեմատ պատվեց նրանց
և խոստացավ ամեն կերպ օժանդակել, որպեսզի կարողանան
6 իրենց տները վերադառնալ։ Բայց նրանք, հավաքվելով խորհրդի,
այնտեղ մնալը դերադասեցին տուն վերադառնալուց։ Քանզի նրանք
մտածեցին, որ եթե ազատվեն և փոքր խմբերով ցրվեն ու թա-
փառեն իրենց քաղաքներում, ապա բախտի հարվածներին դժվա-
րությամբ կդիմանան. մինչդեռ, քանի որ նույն աղետին են են-
թարկված, ապա իրար հետ ապրելով, նրանք մխիթարություն
7 կգտնեն միմյանց դժբախտության նույնության մեջ։ Այսպիսով,
նրանք դարձյալ գալով արքայի մոտ, իրենց որոշումը հայտնեցին
8 և խնդրեցին նրա օգնությունը իրենց այս մտադրությունը իրա-
կանացնելու համար։ Ալեքսանդրը հավանություն տվեց նրանց
որոշման և նրանցից յուրաքանչյուրին պարգևեց երեք հազար
դրաքմե, տղամարդու հինգ զգեստ, նույնքան և կանացի երկու զույգ
եզներ, հիսուն ոչխար և հիսուն մեդիմնոս[303] ցորեն։ Միաժամանակ
նրանց ազատ հայտարարեց ամեն տեսակ արքունի հարկերից և
իր վերակացուներին կարգադրեց, որպեսզի հոգ տանեն, որ նրանք
ոչ ոքից վնաս չկրեն[304]։
9 Ալեքսանդրը, ահա, իր մեղմության հատուկ այսպիսի բարե-
գործություններով թեթևացրեց այդ տառապյալների դժբախտու-
թյունը։
70,1 Իսկ Պերսեպոլիսը, որը պարսից թագավորության մայրաքա-
ղաքն էր, Ալեքսանդրը մակեդոնացիներին ներկայացրեց իբրև

Ասիայում գտնվող քաղաքներից ամենաթշնամին և այն հանձնեց
2 իր զինվորներին կողոպտելու, բացի արքունի պալատներից։ Այն ամենահարուստ քաղաքն էր արևի տակ և անձնական տներն իսկ շատ տարիների ընթացքում լցված էին ամեն տեսակ բարիքներով։ Մակեդոնացիները, ներխուժելով քաղաք, սպանեցին բոլոր այրերին և հափշտակեցին (նրանց) ունեցվածքը. (տներից) շատերը պատկանում էին բազմության և լիքն էին ամեն տեսակ կահավորանքով ու զարդերով։ Այստեղից տարվեց մեծ քանակությամբ արծաթ և հափշտակվեց ոչ քիչ ոսկի, ինչպես նաև հաղթողների ավարը դարձան շատ և թանկարժեք զգեստներ, մի մասը ծովի ծիրանագույն, մյուս մասը ասեղնագործած ոսկե զարդերով։ Իսկ մեծ և ամբողջ աշխարհով մեկ հռչակված արքունի պալատները մատնվեցին անարգանքի և լիակատար ավերման։
4 Մակեդոնացիները, թեպետև ամբողջ օրը ընկել էին կողոպուտի ետևից, դարձյալ չկարողացան հանգեցնել առավելի հա-
5 մար իրենց ունեցած ցանկությունը։ Կողոպուտի ընթացքում այնքան մեծ էր նրանց ընչաքաղցությունը, որ նրանք նույնիսկ սկըսեցին կռվել իրար միջև և շատերը, որոնք կողոպուտից առավել մեծ բաժին էին յուրացրել, սպանվեցին։ Մինչև իսկ ոմանք գրտնըված իրերից ամենաթանկարժեքները դաշույններով կտրատում էին և վերցնում իրենց համապատասխան բաժինը. ուրիշներ էլ տարված իրենց զայրույթով, վեճի առարկա կողոպուտը յուրաց-
6 նողների ձեռքերն էին կտրում։ Իսկ կանանց, ամբողջ զարդերով հանդերձ, բռնի տանում էին և բոլոր դերի վերցվածներին ստրկացնում։
Այսպիսով, Պերսեպոլիսը ինչքան որ իր հարստությամբ գերազանցում էր մյուս քաղաքներին, այժմ այնքան գերազանցեց բոլորին իր դժբախտություններով։
71,1 Ալեքսանդրը, բարձրանալով միջնաբերդ, ձեռք գցեց այնտեղ գտնվող գանձերը։ Այդ գանձերը կուտակվել էին պետության եկամուտներից, սկսած դեռևս Կյուրոսից, պարսից առաջին թագավորից մինչև այդ ժամանակները և լիքն էին արծաթով ու ոսկով. Այնտեղ գտնվեցին տասներկու բյուր տաղանդ, ամբողջ ոսկին ևս արծաթի
2 արժեքի վերածած[305]։ Ցանկանալով այդ գանձերի մի մասը տանել իր հետ, պատերազմի կարիքները հոգալու նպատակով, իսկ մյուս մասը կուտակել Սուսայում և պահպանել այդ քաղաքում, նա Բաբելոնից և Միջագետքից, ինչպես նաև Սուսայից մեծ թվով ջորիներ ուղարկեց մի մասը բեռնատար, մի մասը սայլերին լծած, դրանց գումարած նաև երեք հազար բեռնատար ուղտ. դրանց միջոցով էլ ամեն ինչ տեղափոխեց առավել նախընտրելի վայրեր։

3 Քանզի նա խիստ թշնամանք ունենալով տեղարնիկների հանդեպ,
չէր վստահում նրանց և մտածում էր վերջնականապես կործանել
Պերսեպոլիսը։
Կարծում ենք, որ անտեղի չի լինի, եթե համառոտակի խոսենք
այդ քաղաքում գտնվող (արքունի) պալատների մասին, սրանց
4 շքեղության պատճառով։ Միջնաբերդը նշանակալից է և առնված
եռակի պարսպի մեջ։ Առաջինը կառուցված էր մեծ հմտությամբ
պատրաստված հիմքերի վրա և ուներ վաթսուն կանգուն բարձ-
5 րություն և վերջանում էր աշտարակներով։ Երկրորդը իր կառուց-
վածքով նման էր առաջինին, բայց ուներ կրկնակի բարձրություն,
իսկ երրորդ պարիսպը ձևով քառակող էր և ուներ վաթսուն կանգուն
բարձրություն, այն կառուցված էր կարծր և բնականից հավերժ
6 դիմացկուն քարից։ Կողերից յուրաքանչյուրն ուներ պղնձե դռներ,
որոնց կողքին քսան կանգուն բարձրությամբ պղնձե ձողեր. սրանք
նախատեսված էին դիտողին զարմացնելու, իսկ դռները՝ ապա-
հովության համար։
7 Միջնաբերդի արևելյան կողմում, չորս պլեթրոն հեռավորու-
թյան վրա գտնվում է թագավորական կոչված բլուրը, որտեղ
արքաների գերեզմաններն էին։ Սա հարթած ժայռ էր և ուներ բազ-
մաթիվ սենյակներ, որոնցում գտնվում էին մահացած (թագա-
վորների) շիրիմները։ Այն զուրկ էր ձեռակերտ որևէ մուտքից
և մահացածների դագաղներն ընդունում էր հատուկ ձեռակերտ
8 վերամբարձ սարքերի միջոցով։ Այս միջնաբերդի շուրջը կային
արքունի, ինչպես նաև զորավարների օթևաններ, բոլորը շքեղա-
շատ, ինչպես նաև կառույցներ, որոնք հատկապես պատրաստած
էին գանձերը պահելու համար։
72,1 Ալեքսանդրը իր հաջողությունների առթիվ հաղթահանդեսներ
կազմակերպեց, մեծաշուք զոհեր մատուցեց աստվածներին և իր
ընկերներին փայլուն ճաշկերույթներ տվեց։ Ու երբ նրա գինա-
կիցները խրախճում էին և խնջույքը արդեն բորբոքվել էր ու գի-
նարբուքը սաստկանում էր, բոլորը հարբեցին և խմողների հո-
2 դին լցվեց ահեղ կատաղությամբ։ Այնժամ ներկա եղող կանանցից
մեկը, որի անունը Թաիս էր և ծագումով Ատտիկայից[306], ասաց,
թե Ասիայում Ալեքսանդրի կատարած բոլոր գործերից լավագույնը
կլինի այն, որ իրենց հետ հանդիսավոր ուրախ երթի դուրս գալով,
պալատները հրի մատնի, և կանանց ձեռքերը կարճ ժամանակում
3 ոչնչացնեն պարսկական հռչակավոր կառույցները։ Քանի որ այս
խոսքերն ասված էին երիտասարդ այրերի, որոնք հարբելուց
անրան կերպով դրգռված էին, ուստի և, ինչպես կարելի էր սպա-

սել, ինչ-որ մեկը գոռաց՝ դուրս դալ երթի և ջահեր վառել ու վրեժ
4 լուծել հելլենական սրբավայրերի պղծման համար[307]։ Ուրիշներ
նույնպես ձայնակցեցին նրան և ասացին, թե այդ արարքը վայել
է միայն Ալեքսանդրին։ Ու երբ արքան ևս ոգևորվեց նրանց խոսքերից բոլորը վեր թռան իրենց տեղերից և առաջարկեցին ըսկըսել հաղթական երթը ի պատիվ Դիոնիսոսի[308]։ Երբ շուտով բազմաթիվ ջահեր հավաքվեցին և արդեն երաժիշտ կանայք ևս ներկա էին խրախճանքին, այնժամ արքան նրանց առաջնորդեց երգերով ու ֆլեյտաներով ու սրինգներով, իսկ ամբողջ գործողությունը
6 ղեկավարում էր հետերա Թաիսը։ Սա արքայից հետո առաջինը իր
վառված ջահը նետեց պալատի մեջ, ու երբ բոլորը ևս նույնը արեցին, հրդեհի մեծության պատճառով պալատի շրջապատը արագ կերպով բոցավառվեց։ Ամենազարմանալին այն էր, որ պարսից արքա Քսերքսեսի՝ Աթենքի ակրոպոլիսի նկատմամբ գործադրած սրբապղծությունը տարիներ հետո նույն եղանակով խրախճանքի պահին փոխհատուցեց տուժածների համաքաղաքացի մի կին։
73,1 Այս ամենից հետո Ալեքսանդրը շրջագայեց Պերսիսի քա-
ղաքները և դրանց մի մասը ուժով նվաճեց, մյուս մասն էլ իր
սիրալիր վերաբերմունքով գրավեց իր կողմը և այնուհետև ընկավ
2 Դարեհի ետևից։ Սա մտածում էր գումարել Բակտրիանե (երկրում)
և մյուս սատրապություններում գտնվող զորքերը, սակայն հա-
լածվելով (Ալեքսանդրից), նա երեք բյուր պարսիկների և հելլեն վարձկանների հետ շտապեց փախչել Բակտրիայի վրայով, բայց այստեղից հեռանալիս ձերբակալվեց Բակտրիայի սատրապ Բես-
3 սոսի կողմից ՝ և սպանվեց։ Նա նոր էր վախճանվել, երբ Ալեք-
սանդրը իր հեծյալներով նրան հալածելիս, մահացած գտավ և արժանացրեց արքայական թաղման։ Մինչդեռ ուրիշները գրել են, թե Ալեքսանդրը նրան գտավ դեռևս շնչելիս և կարեկցեց նրան կրած դժբախտությունների համար, և քանի որ Դարեհը խնդրել է նրան վրեժ լուծել իր սպանության համար, Ալեքսանդրը համաձայնվելով հալածել է Բեսսոսին։ Բայց որովհետև սա շուտ էր մեկնել և շատ հեռացել Բակտրիանեում, ուստի (Ալեքսանդրը) հրաժարվեց թշնամուն հալածելուց և ետ վերադարձավ։
Այսպիսին էր իրավիճակը Ասիայում։
74,1 ...Այդ տարին[309], Դարեհի վախճանվելուց հետո, Բեսսոսը
Նաբառնեսի և Բարքսաեսի և շատ այլոց հետ ազատվելով Ալեքսանդրի ձեռքից, հասավ Բակտրիանե։ Նա Դարեհի կողմից կարգվել էր այդ երկրի սատրապ և քանի որ իբրև կառավարիչ ճանաչված էր ժողովրդի կողմից, ուստի խնդրեց բնակիչներից պաշտպանել

2 իրենց ազատությունը։ Նա մատնանշում էր, որ իրենց երկիրը դժ-
վարամատույց լինելով և ունենալով ռազմունակ այրերի բավարար
բազմություն, մեծապես կնպաստի իրենց անկախությունը հաս-
տատելու համար։ Նա խոստացավ գլխավորել պատերազմը և
բազմությանը համոզելով, ինքն իրեն հայտարարեց թագավոր։
Այսպիսով, նա զինվորներ հավաքագրեց և մեծ քանակությամբ
զենքեր շինեց և ամեն ինչ ջանասիրությամբ նախապատրաստեց
հետագա կարիքների համար։
3 Մինչդեռ Ալեքսանդրը տեսնելով, որ մակեդոնացիները Դա-
րեհի մահով արշավանքը համարում էին ավարտված և ցանկա-
նում էին վերադառնալ հայրենիք, նրանց գումարեց համաժողո-
վի[311] և համոզիչ խոսքերով դիմելով նրանց, նախապատրաստեց
հետագա արշավանքի համար, միաժամանակ, սակայն, դումա-
րելով իր հետ դաշնակցած հելլենական քաղաքներից հավաքված
զորքերին և գովելով նրանց մատուցած ծառայությունները, ազատ
արձակեց բանակից, յուրաքանչյուր հեծյալին պարգևելով մեկ
4 տաղանդ, իսկ հետևակներին՝ տասը մինա։ Բացի այդ նա վճա-
րեց նրանց մնացած ամբողջ ռոճիկը, ինչպես նաև այն ամբողջ
ծախսը, որ անհրաժեշտ էր մինչև նրանց հայրենիք վերադառնալը,
իսկ նրանց, ովքեր նախընտրեցին մնալ արքայի զորքում, յուրա-
քանչյուրին շնորհեց երեք տաղանդ։ Նա առատ պարգևներով
պատվեց զինվորներին մասամբ իր մեծահոգի բնավորության պատ-
ճառով, մասամբ էլ այն պատճառով, որ Դարեհին հետապնդելիս նա
5 ձեռք էր բերել մեծ քանակությամբ հարստություն։ Նա (արքայի)
գանձապահներից ստացել էր ութ հազար տաղանդ. դրանից բացի
այն ամենը, ինչ բաժանեց զինվորներին, ներառյալ նաև ամբողջ
գարդերը և ըմպանակները կազմում էին տասներեք հազար տա-
ղանդ, իսկ կողոպուտը և հափշտակված իրերը դրանից էլ ավելի
էին հաշվվում։
75,1 Ալեքսանդրը մեկնեց դեպի Հյուրկանիա[312] և երրորդ օրը բա-
նակ դրեց Հեկատոնտապյուլոս[313] կոչված քաղաքի մոտ։ Որովհետև
այս քաղաքը բարգավաճ էր և վայելքի համար ամեն ինչի մեծ
առատություն ուներ, ուստի այստեղ նա իր զորքին մի քանի օրով
2 դադար տվեց։ Այնուհետև հարյուր հիսուն ասպարեզ առաջ գնա-
լով, բանակ դրեց մի խոշոր ժայռի մոտ։ Դրա ստորոտում կար
զարմանահրաշ մի քարայր, որից խոշոր մի գետ էր արտաբխում,
անունը Ստիբոյտես[314]։ Սա երեք ասպարեզ կատաղի թափով հո-
սելուց հետո, երկու ճյուղի է բաժանվում կրծքանման մի ժայռի մոտ,
որի տակին կար գետնի հսկայական մի բացվածք, այդ անդունդի

մեջ մեծ աղմուկով գահավիժելով և ժայռին զարնվելուց փրփրա-
լից դառնալով, գետր երկրի տակով հոսում է երեք հարյուր աս-
պարեզ, որից հետո նորից հայտնվում է նրա հոսանքը։
3 Ալեքսանդրը իր զորքով մտավ Հյուրկանիա և նվաճեց երկրի
բոլոր քաղաքները, մինչև Կասպյան կոչված ծովը, որը ոմանք
կոչում են Հյուրկանիայի (ծով)։ Պատմում են, թե դրանում խո-
շոր օձեր են լինում, ինչպես նաև բազմապիսի ձկներ, որոնք շատ
4 են տարբերվում մեզ հայտնիներից։ Անցնելով Հյուրկանիան, նա
հասավ Բարեբախտ (կոչվող) գյուղերը, որոնք հիրավի այդպիսիք
էին. քանզի այստեղ երկիրը ավելի բերքատու է, քան մեկ այլ
5 վայրում։ Ինչպես պատմում են, յուրաքանչյուր որթատունկ (այս-
տեղ) տալիս է մեկ մետրետե[315] գինի, իսկ թզենիները երբեմն
տալիս են տասր մեդիմնոս[316] չորացրած թուզ։ Հնձելու ժամա-
նակ լքված ցորենը հողին ընկնելիս, առանց ցանված լինելու, ծլում
6 է և հասցնում առատ բերք։ Տեղաբնիկներին հայտնի է նաև մի
ծառ, արտաքինով կաղնու նման, որի տերևներից մեղր է կաթում[317],
ոմանք այն հավաքում են և առատորեն օգտագործում իրենց կա-
րիքների համար։ Այնտեղ կա նաև թռչող մի կենդանի, որը կոչում
են անթրեդոն[318], սա մեղվից փոքր է, բայց մեծագույնս օգտավետ։
Այն թափառում է սարերում և բազմապիսի ծաղիկներից (նեկտար)
հավաքում ու բնակվելով ժայռերի խոռոչների և շանթահարված
ծառերի փչակների մեջ, այնտեղ խորիսխ է պատրաստում և ար-
տադրում այնպիսի մի հեղուկ, որն իր քաղցրությամբ մեր մեղ-
րին շատ չի զիջում[319]։
76,1 Այսպես, Ալեքսանդրը ձեռք բերեց Հյուրկանիան և այդ երկրի
հարևանությամբ ապրող ժողովուրդներին և Դարեհի հետ փա-
խած (պարսիկ) առաջնորդներից շատերը իրենց հանձնեցին (Ալեք-
2 սանդրին)։ Սրանց նա ընդունեց ողորմածաբար, որով և արդար
լինելու լայն համբավ ձեռք բերեց։ Այսպիսով, Դարեհի հետ ար-
շավանքի մասնակցած շուրջ հազար հինգ հարյուր հելլեններ,
որոնք առանձնապես քաջարի էին, իրենց հանձնեցին Ալեքսանդ-
րին և ներման արժանանալով, ընդունվեցին նրա բանակի շար-
քերը, մյուս վարձկաններին հավասար իրավունքներով։
3 Ալեքսանդրը, առաջանալով Հյուրկանիայի առափնյա մասով,
մտավ Մարդեր[320] կոչված (ցեղերի) երկիրը։ Քանի որ սրանք հատ-
կապես աչքի էին ընկնում իրենց արիությամբ, արհամարհեցին
Ալեքսանդրի զորությունը և հարգանքի ոչ մի տուրք չմատուցեցին
4 նրան, այլ ութ հազար զինվորներով երկրի մատույցները նախա-
պես գրավելով, անվախ կերպով դիմագրավեցին մակեդոնացի-

ների արշավանքը։ Իսկ արքան, հարձակվելով նրանց վրա, կռվի
բռնվեց և մեծ մասին կոտորեց, իսկ մնացյալին քշեց անմատույց
վայրերը։
5 Մինչ նա հրկիզում էր երկիրը, և արքունի ձիերին տանող սպասա-
վորները փոքր ինչ հեռացել էին արքայից, բարբարոսներից ոմանք
6 հարձակվեցին և խլեցին ձիերից լավագույնին[321]։ Այն նվիրել էր Դե-
մարատոս Կորթնացին. ձին մասնակցել էր Ասիայում արքայի մղած
բոլոր կռիվներին։ Երբ այն դեռ անթամբ էր, հանդուրժում էր իր վրա
միայն ձիապահին, բայց երբ արժանացավ թագավորական հանդեր-
ձանքին, սրան ևս չէր հանդուրժում, այլև ենթարկվում էր միայն
7 Ալեքսանդրին և խոնարհում մարմինը, որպեսզի (արքան) հեծնի։
Այս կենդանու բարեմասնությունների պատճառով արքան դայրա-
ցավ նրա կորստի համար և հրամայեց երկիրը անտառահատել,
միաժամանակ համալեզու մարդկանց միջոցով տեղաբնիկներին
հայտարարեց, որ եթե չհանձնեն ձին, ապա իրենց ամբողջ երկիրը
ավերված կտեսնեն, իսկ բնակիչներին՝ գլխովին սրի քաշված։
8 Քանի որ սպառնալիքները սկսեցին իսկորեն իրագործել, ուստի
բարբարոսները, ահաբեկված վերադարձրին ձին, միաժամանակ
թանկարժեք ընծաներ ուղարկեցին, ինչպես նաև հիսուն մարդ,
խնդրելով ներման արժանանալ։ Ալեքսանդրը այդ մարդկանցից
ամենահայտնիներին պատանդ վերցրեց։
77,1 Երբ նա դարձյալ վերադարձավ Հյուրկանիա, նրա մոտ ժամա-
նեց ամազոնների թագուհին, որի անունն էր Թալեստրիս և թա-
գավորում էր Փասիս և Թերմոդոնտ գետերի միջև գտնված երկրում.
Սա հայտնի էր դարձել իր գեղեցկությամբ ու մարմնի ուժով և իր
ցեղակիցների միջավայրում հիացմունքի էր արժանացել իր քա-
ջության համար։ Սա իր զորքի բազմությունը թողնելով Հյուրկա-
նիայի սահմանների վրա, ժամանեց Ալեքսանդրի մոտ երեք հար-
յուր ամազոնուհիների հետ, զարդարված իրենց բոլոր զենքերով։
2 Արքան զարմացավ կանանց հանկարծակի հայտնվելու և նրանց
շքեղության վրա. ու երբ հարցրեց Թալեստրիսին, թե ինչու՞ է սա
ներկայացել, վերջինս պատասխանեց, թե եկել է երեխա ունե-
2 նալու նպատակով։ Քանի որ արքան իր կատարած սխրանքներով
դարձել էր լավագույնը բոլոր մարդկանց մեջ, իսկ ինքն իր քաջու-
թյամբ և կորովով գերազանցում էր բոլոր կանանց, հետևաբար և
առաջնակարգ երկու ծնողից ծնվածն էլ իր առաքինություններով
պետք է գերազանցի մյուս մարդկանց։ Արքան շատ հաճոյացավ
և, նրա առաջարկն ընդունելով, տասներեք օր հաղորդվեց նրա հետ,

որից հետո նրան թանկարժեք նվերներով պատվեց և ուղարկեց նրա
հայրենի երկիրը։
4 Այս բոլորից հետո Ալեքսանդրը համոզված, որ արդեն հասել
է իր նպատակին և ինքը իշխանության անբաժան տերն է, սկսեց
հետևել պարսկական շքեղության և Ասիայի արքաների պերճան-
քին։ Նախ, նա արքունիքում ասիածին մականակիրներ կարգեց,
այնուհետև հրամայեց, որ իրեն թիկնապահություն անեն այրերից
ամենաերևելիները, որոնց թվում նաև Դարեհի եղբայր Օքսաթրեսը։
5 Ապա գլխին դրեց պարսկական դիադեման և հագավ ճերմակ խի-
տոն[322], կապեց պարսկական գոտին և մնացած մյուս բաները, բա-
ցի անաքսիրիդից[323] և կանդիսից[324]։ Իր ընկերներին ևս բաժանեց ծի-
րանի եզրակարերով համազգեստներ, իսկ ձիերին հագցրեց պարս-
կական հանդերձանք։ Այս ամենից բացի նա Դարեհի նման իրեն
հարճեր վերցրեց, որոնց թիվը տարվա օրերից պակաս չէր և որոնք,
ընտրված լինելով Ասիայի բոլոր կանանց միջից, իրենց գեղեցկու-
7 թյամբ գերազանց էին։ Սրանք ամեն գիշեր անցնում էին արքայի
մահճի մոտով, որպեսզի սա կարողանար ընտրել նրան, ում հետ
կցանկանար գիշերը կենակցել։ Սակայն, փաստորեն Ալեքսանդրը
այդ սովորություններից հազվադեպ էր օգտվում և սահմանափակվում
էր առավելապես նախորդ բարքերով, վախենալով մակեդոնացինե-
րին նախատած լինելուց։
78,1 Բայց քանի որ շատերը դժգոհում էին այս ամենից, ուստի և
սրանց նվերներով սիրաշահեց, իսկ ինքը տեղեկանալով, որ Արե-
յայի[325] սատրապ Սատիբարզանեսը[326] ոչնչացրել է իր հետ թող-
նըված զինվորներին և համաձայնության գալով Բեսսոսի հետ, որո-
շել է միասին կռվել մակեդոնացիների դեմ, արշավեց նրա վրա։
Սատիբարզանեսը իր զորքը հավաքեց Քորտականայում[327], որը
այդ երկրում նշանակալից քաղաք էր և ուներ բնականից շատ
2 ամուր դիրք։ Բայց երբ արքան մոտեցավ, (Սատիբարզանեսը)
ահաբեկվեց զորքերի բազմությունից և մակեդոնացիների կատա-
րած քաջագործությունների համբավից։ Ուստի և երկու հազար
հեծյալներով սուրաց Բեսսոսի մոտ, շտապ օգնություն խնդրելու,
իսկ մնացյալին պատվիրեց ապաստանել...[328] կոչված լեռը, որը
դժվարամատույց է և ապահով ապաստարաններ ունի նրանց հա-
3 մար, ովքեր չեն համարձակվում դեմ առ դեմ կռվել։ Երբ նրանք
այս պատվերը կատարել էին, արքան իր խիզախ բնավորության
համաձայն հարձակվեց նրանց վրա և ամրացված ինչ-որ խոշոր
ժայռաբլրում ապաստանածներին պաշարելով, ստիպեց նրանց
4 անձնատուր լինել։ Այնուհետև երեսուն օրվա ընթացքում նվաճեց

այդ սատրապության սահմաններում գտնվող բոլոր քաղաքները և
դուրս գալով Հյուրկանիայից, առաջ շարժվեց դեպի Դրանգիների[329]
մայրաքաղաքը և այստեղ կանգ առավ ու դադար տվեց իր զորքե-
րին։
81,1 Այս ամենը կատարելուց և Դրանգինեում գործերը կարգավո-
րելուց հետո, (Ալեքսանդրը) իր զորքով արշավեց նախկինում
արիմասպներ կոչված ժողովրդի վրա, որոնք այժմ կոչվում են
եվերգետներ[330], հետևյալ պատճառով։ Կյուրոսը, որը մեդացիներից
իշխանությունը փոխանցեց պարսիկներին, արշավանքներից մեկի
ժամանակ անապատ մի վայր ընկնելով, պարենի պակասության
պատճառով գտնվեց մեծ վտանգի մեջ, այնպես, որ սնունդ չհայթ-
այթելով դինվորները ստիպված էին իրար միս ուտել, այնժամ արի-
մասպները գալով իրենց հետ բերում են երեք բյուր սայլ ուտելիք
և (Կյուրոսը) անսպասելիորեն փրկվելով, նրանց ապահարկ հայ-
տարարեց և այլ պարգևներով պատվելով, ժողովրդի նախկին
2 անունը վերացնելով նրանց կոչեց եվերգետներ։ Այժմ, Ալեքսանդրը
արշավելով նրանց երկիրը, սիրահոժար ընդունելություն գտավ,
ուստի և այդ ժողովրդին պատվեց սլատշաճ նվերներով։
Այսպես վարվեցին նաև կեդրոսիներ կոչվող նրանց հարևան-
ները, ուստի նրանց ևս պատշաճ շնորհներ պարգևեց։ Այս երկու
3 ժողովուրդների կառավարումը հանձնեց Տիրիդատեսին[331]։ Մինչ
(Ալեքսանդրը) զբաղված էր այստեղ, ոմանք գալով հաղորդեցին,
թե Սատիբարզանեսը հեծյալների մեծ զորքով Բակտրիանեից
վերադարձել է Արեյա և տեղաբնիկներին ապստամբության մղել
Ալեքսանդրի դեմ։ Արքան լսելով կատարվածի մասին, իր զորքի մի
մասը Երիգյուոսի և Ստասանորի հրամանատարությամբ ուղարկեց
նրա դեմ, իսկ ինքը նվաճելով Արաքոսիան, մի քանի օրվա ընթաց-
քում այն հպատակեցրեց իրեն։

## Գիրք 18

3,1 Պերդիկկասը վերցնելով գերագույն հրամանատարությունը և
խորհրդի նստելով մյուս հրամանատարների հետ[332], Լագոսի որդի
Պտղոմեոսին տվեց Եգիպտոսը, Լաոմեդոն միտիլենացուն՝ Սիրիան,
Փիլոտասին՝ Կիլիկիան և Պիթոնին՝ Մեդիան, իսկ Եվմենեսին՝
Պափլագոնիան և Կապպադովկիան և սրանց սահմանակից բոլոր
երկրները, որոնցով Ալեքսանդրը ժամանակի բացառման պատ-
ճառով չկարողացավ անցնել Դարեհի դեմ պատերազմելիս. Անտի-
գոնոսին տվեց Պամփյուլիան և Լյուկիան և մեծ կոչված Փռյուգիան,
այնուհետև, Ասանդրոսին տվեց Կարիան, Մենանդրոսին՝ Լյուդիան,

Լեոննատոսին՝ Հելլեսպոնտյան Փռյուգիան։ Այս սատրապություն-
2 ներն, ահա, այսպես բաշխվեցին։ Իսկ Եվրոպայում Լյուսիմաքոսին
տրվեց Թրակիան և սրան սահմանակից ցեղերը, որոնք ապրում
էին Պոնտական ծովի ափին, իսկ Մակեդոնիան և սրան սահմանա-
կից ցեղերը հանձնվեցին Անտիպատրոսին։ Նույնպես որոշվեց
Ասիայի մյուս սատրապություններին ձեռք չտալ, այլ դրանք թող-
նել իրենց նախկին կառավարիչների իշխանության տակ, նույնպես
թույլ տվեց, որ Տաքսիլեսը և Պորոսը տեր մնան իրենց թագավո-
րություններում, ինչպես կարգադրել էր դեռևս Ալեքսանդրը։
3 Պիթոնին նա տվեց Տաքսիլեսի և մյուս թագավորների (տի-
րույթներին) սահմանակից սատրապությունը, իսկ Կովկասի[333] եր-
կարությամբ ընկած երկիրը, որը կոչվում է Պարոպանիսադե, հանձ-
նեց Օքսյուարտես բակտրիացուն, որի դստեր՝ Հռոքսանեի հետ
ամուսնացել էր Ալեքսանդրը։ Սիբյուրտիոսին տվեց Արաքոսիան և
Կեդրոսիան, Ստասանոր սոլիացուն՝ Արիան և Դրանգինեն, Փի-
լիպպոսին հանձնարարեց Բակտրիանեն և Սոգդիանեն, Ֆրատա-
փեռնեսին՝ Պարթյուեան և Հյուրկանիան, Պևկեստեսին՝ Պերսիսը,
Տլեպոլեմոսին՝ Կարմանիան, Ատրոպատեսին՝ Մեդիան[334], Ար-
քոնին՝ Բաբելոնիան, Արկեսիլաոսին՝ Միջագետքը[335]։
5,2 Այսպես, Կիլիկյան Տավրոսից անընդմեջ լեռը ամբողջ Ասիայի
միջով ձգվում է մինչև Կովկաս և Արևելյան օվկիանոս[336]։ Այս (լեռ-
նաշղթան) բաժանվում է բազմապիսի բարձր գագաթների, որոնցից
3 յուրաքանչյուրն ունի իր առանձին անունը։ Այս ձևով Ասիան բա-
ժանվել է երկու մասի, որից մեկը ձգվում է դեպի հյուսիս, մյուսը
դեպի հարավ։ Այս թեքություններին համապատասխան էլ գետերի
մի մասը հոսելով թափվում է Կասպից ծով, մյուսները՝ Եվքսինյան
Պոնտոս, մի քանիսն էլ դուրս են գալիս Հյուսիսային օվկիանոս։
Սրանց հակառակ ուղղությամբ հոսող գետերի մի մասը թափվում
է Հնդկաց ծով, մյուսները՝ այդ երկրամասին հարող օվկիանոս,
4 մի քանիսն էլ դուրս են գալիս Կարմիր կոչված ծով։ Սատրապու-
թյունները ևս նույն ձևով բաժանված լինելով, մի մասը հարում է
դեպի հյուսիս, մյուս մասը դեպի հարավ։ Դեպի հյուսիս նայող
սատրապություններից առաջինը գտնվում է Տանաիս գետի[337] եր-
կայնքով, հետո՝ Սոգդիանեն և Բակտրիանեն. սրանց հաջորդում են
Արիան, Պարթյուեան և Հյուրկանիան, որով շրջափակված է Հյուր-
կանյան ծովն ինքն իր մեջ։ Այնուհետև՝ Մեդիան, որն ընդգրկում է
տարբեր անուններով շատ երկրներ և որը բոլոր սատրապություն-
ներից խոշորագույնն է։ Այնուհետև՝ Արմենիան, Լյուկաոնիան և

Կապպադովկիան, որոնք բոլորն էլ ունեն դաժան կլիմա. սրանց
ուղղակի սահմանակից են և Մեծ Փռյուգիան և Հելլեսպոնտոսյան
Փռյուգիան, ծայրամասայիններից են Լյուդիան և Կարիան, Փռյուգիայից վերև և սրան զուգահեռ՝ Պիսիդիան, իսկ սրանից հետո՝
Լյուկիան։
16,1 Մինչ այս դեպքերը կատարվում էին, Պերդիկկասը, վերցնելով
իր հետ արքա Փիլիպպոսին և թագավորի զորքերին, արշավեց
Կապպադովկիայի տիրակալ Արիարաթեսի դեմ։ Քանզի սա չէր
հնազանդվել մակեդոնացիներին, իսկ Ալեքսանդրը անուշադրության էր մատնել նրան, Դարեհի դեմ մղած պատերազմի և զբաղվածության պատճառով, ուստի և սա հնարավորություն ունեցավ
2 երկար ժամանակ իշխել Կապպադովկիայում[338]։ Այդ պատճառով
էլ եկամուտներից նա մեծ քանակությամբ դրամ կուտակեց և մեծաթիվ զորք կազմեց տեղաբնիկներից և օտար վարձկաններից,
այսպիսով իր թագավորությունը պաշտպանելու համար նա պատրաստ էր պատերազմելու Պերդիկկասի դեմ, ունենալով երեք բյուր
հետևակ և մեկ բյուր ու հինգ հազար հեծյալ զորք։ Պերդիկկասը
ճակատամարտ տալով և կռվում հաղթելով նրան, մոտ չորս
հազար մարդու սպանեց, ավելի քան հինգ հազարին գերի
3 վերցրեց, որոնց թվում էր նաև ինքը՝ Արիարաթեսը։ Սրան և
սրա բոլոր ազգականներին (Պերդիկկասը) չարչարելով ցցահան արեց[339], իսկ պարտվածներին ներելով ապահով թողեց և
կարգավորելով Կապպադովկիայի գործերը, սատրապությունը
հանձնեց Եվմենես Կարդիացուն, ինչպես որ սկզբից արդեն որոշվել էր։
39,5 Այս ամենից հետո Անտիպատրոսը[340] նորից վերաբաժանեց
սատրապությունները և Պտղոմեոսին հատկացրեց նախկինում արդեն նրա ունեցածը. քանզի անկարելի էր նրան տեղաշարժել, քանի որ համարվում էր, թե Եգիպտոսը նա իր քաջությամբ ձեռք է
6 բերել որպես իր իսկ նիզակով նվաճված երկիր։ Լաոմեդոն միտիլենացուն տվեց Սիրիան, Փիլոքսենոսին՝ Կիլիկիան. իսկ վերին
սատրապություններից Միջագետքը և Արբելիտիսը[341] տվեց Ամփիմաքոսին, Բաբելոնիան՝ Սելևկոսին, Սուսիանեն՝ Անտիգենեսին,
որովհետև սա էր առաջինը հարձակվել Պերդիկկասի վրա, Պևկեստեսին՝ Պերսիսը, Տլեպոլեմոսին՝ Կարմանիան, Պիթոնին՝ Մեդիան,
Փիլիպպոսին՝ Պարթյուեան, իսկ Արիան և Դրանգիանեն՝ Ստասանդրոս կիպրացուն, Բակտրիանեն և Սողդիանեն՝ Ստասանոր
սոլիացուն, որը նույնպես (Կիպրոս) կղզուց էր։ Պարոպանիսադեն կցեց Ալեքսանդրի կին Հռոքսանեի հոր՝ Օքսյուարտեսի (տի-

րույթներին), իսկ Հնդկաստանի՝ Պարոպանիսադեին սահմանակից մասերը տվեց Ագենորի որդի Պիթոնին. Հաջորդ թագավորություններից այն, որ ընկած էր Ինդոս գետի երկայնքով, տվեց Պորոսին, իսկ այն, որ ընկած էր Հյուդասպեսի երկայնքով, (տվեց) Տաքսիլեսին, քանզի հնարավոր չէր սրանց տեղաշարժել առանց թագավորական զորքերի և ականավոր առաջնորդի։ Դեպի հյուսիս հարող սատրապություններից Կապպադովկիան (տվեց) Նիկանորին, Մեծ Փոյուգիան և Լյուկիան, ինչպես առաջ, տվեց Անտիգոնոսին, Կարիան՝ Ասանդրոսին, Լյուդիան՝ Կլեյտոսին և Հելես-
7 պոնտյան Փոյուգիան՝ Արրիդայոսին։ Թագավորական զորքերի զորավար նա նշանակեց Անտիգոնոսին, որին հանձնարարված էր ավարտել պատերազմը Եվմենեսի և Ալկետասի դեմ։ Նա իր որդուն՝ Կասսանդրոսին հազարապետ կարգեց Անտիգոնոսի մոտ, որպեսզի սրա ինքնագլուխ գործողությունները աննկատ չմնան։ Իսկ ինքը, վերցնելով թագավորներին և իր սեփական զորքը, մեկնեց Մակեդոնիա, թագավորներին իրենց հայրենի երկիրը վերադարձնելու համար։

40,1 Անտիգոնոսը, որը նշանակվել էր Ասիայի զորավար Եվմենեսի դեմ պատերազմն ավարտելու համար, իր զորքերը գումարեց իրենց ձմեռանոցներից։ Պատերազմի համար պատրաստություններ տեսնելուց հետո, նա առաջ շարժվեց Եվմենեսի վրա, որը դեռևս
2 Կապպադովկիայում էր։ Իսկ Եվմենեսը, քանի որ նրա դեմ ապստամբել էր իր հայտնի հրամանատարներից մեկը, Պերդիկկաս անունով և երեք օրվա ճանապարհի հեռավորության վրա բանակել էր ապստամբության հարած երեք հազար հետևակայիններով և հինգ հարյուր հեծյալներով, ապստամբների դեմ ուղարկեց Փոյնիքս տենեդոսցուն երեք հազար հետևակայիններով և հազար հեծ-
3 յալներով։ Սա գիշերային արագ ընթացքից հետո, գիշերվա երկրորդ պահին անսպասելի հարձակվեց ապստամբների վրա և, մինչ սրանք քնած էին, Պերդիկկասին կենդանի գերի վերցրեց և
4 տիրացավ ամբողջ զորքին։ Եվմենեսը ապստամբության պատճառ եղող հրամանատարներին մահվան ենթարկեց, իսկ զինվորներին խառնելով մնացած զորքի շարքերին և նրանց հետ մարդասիրաբար վերաբերվելով, իր հանդեպ բարյացակամությամբ համակեց։
5 Այս դեպքերից հետո Անտիգոնոսը սուրհանդակ ուղարկեց ոմն Ապոլլոնիդեսի մոտ, որը Եվմենեսի զորքում հեծելազորի հրամանատարն էր, և գաղտնաբար նրան մեծ խոստումներ տալով,
6 համոզեց դավաճանել և կռվի ժամանակ անցնել իր կողմը։ Մինչ Եվմենեսը բանակել էր Կապպադովկիայի դաշտերից մեկում, որը



Տ – 913

հարմար էր հեծելազորային կռվի համար, Անտիգոնոսը իր ամ-
բողջ զորքով վրա հասավ ու գրավեց դաշտի վրա իշխող բարձունք-
7 ները։ Այդ ժամանակ Անտիգոնոսն ուներ ավելի քան մեկ բյուր
հետևակ, որոնց կեսը մակեդոնացիներ էին, հայտնի իրենց քա-
ջագործություններով, երկու հազար հեծյալ և երեսուն փիղ, իսկ
Եվմենեսը ոչ պակաս քան երկու բյուր հետևակ և հինգ հազար հեծ-
8 յալ։ Տեղի ունեցավ մեծ ճակատամարտ և երբ Ապոլլոնիդեսը իր
հեծելազորով անսպասելի անցավ թշնամու կողմը, Անտիգոնոսը
հաղթեց և թշնամուց կոտորեց մոտ ութ հազար մարդու։ Նրա ձեռքն
ընկավ նաև ամբողջ գումակը, այնպես, որ Եվմենեսի զինվորնե-
րը մի կողմից զարհուրեցին պարտությունից և մյուս կողմից
բարոյալքվեցին գումակի կորստի պատճառով։
41.1 Այս դեպքերից հետո Եվմենեսը մտածեց փախչել Արմենիա և
այնտեղի բնակիչներից ոմանց դաշնակցությամբ գրավել իր կողմը։
Բայց քանի որ հետապնդվում էր և միաժամանակ տեսնելով, որ
զինվորներն անցնում են Անտիգոնոսի կողմը, նա վերցրեց ամ-
2 րացված մի փոքր վայր, որը կոչվում էր Նորա[242]։ Այս բերդը շատ
էր փոքր և պարսպի շրջագիծը երկու ասպարեզից ավելի չէր, բայց
իր ամուր դիրքով՝ հրաշալի, քանզի տներն իրար կողքի կառուց-
ված էին բարձր ժայռի վրա և զարմանալի կերպով ամրացված էին
3 մասամբ բնությունից, մասամբ էլ ձեռակերտ կառույցներով։ Այս-
տեղ կուտակված էր նաև մեծ քանակությամբ հացահատիկ և վա-
ռելափայտ և այլ. այնպես, որ շատ տարիներ կարող էր ամեն ին-
չով ապահովել այնտեղ ապաստանածներին։ Եվմենեսի հետ այս-
տեղ ապաստանեցին նաև նրա ընկերներից նրանք, որոնք առանձ-
նապես համակրում էին նրան և որոշել էին հետին վտանգների
ժամանակ նրա հետ միասին մեռնել։ Իսկ ընդամենը, հեծյալներն
ու հետևակները միասին, շուրջ վեց հարյուր էին։
4 Անտիգոնոսն, ահա, վերցնելով Եվմենեսի զորքը և տիրանա-
լով նրա սատրապություններին և դրանց եկամուտներին, միաժա-
մանակ նաև ձեռք բերելով մեծ քանակությամբ դրամ, սկսեց ձգտ-
տել առավել մեծ բաների։ Քանզի Ասիայում գտնվող զորահրա-
մանատարներից և ոչ մեկն արդեն առաջնությունը վիճարկելու
համար իր հետ կռվելու արժանի զորք չուներ։ Ուստի և նա առայժմ
ձևացնում էր, թե բարեկամաբար է տրամադրված Անտիպատրոսի
հանդեպ, բայց որոշել էր իր գործերը ապահովելուց հետո այլևս
5 չանսալ ոչ արքաներին, ոչ էլ Անտիպատրոսին։ Ուստի և նա բեր-
դում ապաստանածներին նախ շրջափակեց կրկնակի պարիսպնե-
րով և փոսերով և զարմանալի խրամատներով։ Այնուհետև բա-

նակցություններ վարելով Եվմենեսի հետ, վերականգնեց իր
նախկին բարեկամությունր և աշխատեց համոզել նրան համա-
գործակցելու իր հետ։ Իսկ սա, իմանալով, որ բախտը կտրուկ
փոփոխվում է, առավել մարդասիրություն էր պահանջում, քան
7 կարելի էր իր գտնված հանգամանքներում։ Նա պահանջում էր ետ
վերադարձնել նախկինում իրեն տրված սատրապությունները և
իրեն անպարտ ճանաչել բոլոր մեղադրանքներից։ Իսկ Անտիգո-
նոսը այդ ամենի մասին հաղորդեց Անտիպատրոսին և այդ ամ-
րության առաջ ուժեղ պահակազոր թողնելով, արշավեց թշնամու
այն հրամանատարների վրա, որոնք փրկվել էին և զորքեր ունեին,
դրանք էին Ալկետասը, Պերդիկկասի եղբայրը, և Ատտալոսը, որը
ամբողջ նավատորմի հրամանատարն էր։
42,1 Այնուհետև Եվմենեսը բանակցությունների համար Անտի-
պատրոսի մոտ դեսպաններ ուղարկեց, որոնց գլխավորում էր
Հիերոնիմոսը[343], որը գրել է դիադոխների[344] պատմությունը։ Իսկ
ինքը կյանքում բազմաթիվ և բազմապիսի փոփոխությունների
առաջ կանգնած լինելով, հոգեպես չընկճվեց, քանզի քաջ գիտակ-
ցում էր, թե բախտը երկուստեք կտրուկ շրջադարձներ է կատա-
2 րում։ Նա մի կողմից տեսնում էր, որ մակեդոնացիների թագավոր-
ները արքայական դատարկ ձևականություն էին միայն, մյուս
կողմից, որ մեծ ձգտումներ ունեցող շատ մարդիկ իրար էին հա-
ջորդում իբրև հրամանատարներ և նրանցից յուրաքանչյուրը ցան-
կանում էր գործել իր շահերին համապատասխան։ Ուստի և նա
հուսով էր, իրականում այդպես էր վիճակը, թե շատերը իր կա-
րիքը կունենային իր խելքի և ռազմական գործերում ունեցած հըմ-
տության, ինչպես նաև իր պարտավորություններին չափազանց
հավատարիմ լինելու պատճառով։
3 Տեսնելով, որ տեղի նեղվածության և ժայռոտ լինելու պատ-
ճառով ձիերը չեն կարողանում մարզվել և դրանով իսկ կարող
էին հեծելամարտի համար անպետքանալ, (Եվմենեսը) ձիերի
մարզման համար տարօրինակ և արտակարգ մի հնար մտածեց։
4 Նա ձիերի գլուխները հերթականությամբ պարանով գերաններից
կամ ցցերից կապելով և երկու կամ երեք կրկնաթիզ բարձրաց-
նելով նրանց, բոլոր ձիերին ստիպում էր կանգնել ետևի ոտների
վրա, իսկ առջևի ոտքերը հազիվ էին դիպչում գետնին։ Այսպիսով,
ձին երբ որ փորձում էր հենվել առջևի վրա, ամբողջ մարմինն ու
սրունքները ցավում էին և նրա բոլոր անդամները հավասարապես
լարվում էին։ Այսպիսի շարժման պատճառով ամբողջ մարմնից
5 քրտինքը առատորեն ծորում էր և ձիերին կանգնած վիճակում պա-

հում էր չափազանց աշխատանքի մեջ։ Իսկ բոլոր զինվորներին
տալիս էր նույն սնունդը, ինքը ևս մասնակից լինելով սակավա-
պետության և բոլորի հանդեպ ունեցած իր միատեսակ վերաբեր-
մունքով մեծ համակրանք շահեց և իր հետ այնտեղ ապաստա-
նածների մեջ համերաշխություն հաստատեց։ Այսպիսին էր Եվմե-
նեսի և նրա հետ այդ ժայռի վրա ապաստանածների դրությունը։
50,1 Ասիայում, Անտիպատրոսի մահվան լուրը տարածվելուց հե-
տո, անմիջապես խռովություններ ծագեցին, քանի որ իշխանու-
թյուն ունեցողներից յուրաքանչյուրն սկսեց մտածել իր շահերի
մասին։ Անտիգոնոսը, որը գլխավորն էր սրանց մեջ, արդեն հաղ-
թել էր Եվմենեսին Կապպադովկիայում և նրա զորքերին գրավել
էր իր կողմը, այնուհետև վերջնականապես ջախջախել էր Ալկե-
տասին և Ատտալոսին Պիսիդիայում ու նրանց զորքերը ևս գրա-
վել էր իր կողմը։ Դրանից բացի նա Անտիպատրոսի կողմից
ընտրվել էր Ասիայի գերագույն զորահրամանատար և միաժամա-
նակ հայտարարվել էր մեծաթիվ զորքերի առաջնորդ, այդ պատ-
ճառով իսկ նա համակվել էր գոռոզությամբ և ամբարտավանու-
2 թյամբ։ Նա ամբողջ տերության մեջ իշխանությունը իր ձեռքը
վերցնելու հույսերով տարված, որոշեց այսուհետև չլսել ոչ թագա-
վորներին, ոչ ևս նրանց խնամակալներին։ Քանզի նա համոզված
էր, թե քանի որ ավելի հզոր բանակ ուներ, ապա ինքը կարող էր
տիրանալ Ասիայի գանձերին և ոչ ոք ի վիճակի չի լինի դիմադրե-
3 լու իրեն։ Քանզի նա այդ ժամանակ ուներ վեց բյուր հետևակ և
մեկ բյուր հեծյալ զորք ու երեսուն փիղ. այս ամենից բացի նա հու-
սով էր, որ անհրաժեշտության դեպքում կարող էր պատրաստել նաև
այլ ուժեր, քանի որ Ասիան կարող էր անդադար միջոցներ հայ-
4 թայթել օտար վարձկաններին վճարելու համար։ Այսպիսի մտադ-
րություններով նա իր մոտ կանչեց պատմագիր Հիերոնիմոսին,
որը Եվմենես կարդիացու բարեկամն էր և համաքաղաքացին և
նրա հետ միասին ապաստանել էր Նորա կոչված ամրոցում։ Առատ
նվերներով նրանց պատվելուց հետո, ուղարկեց իբրև դեսպան
Եվմենեսի մոտ, խնդրելով մոռանալ Կապպադովկիայում նրա դեմ
մղած պատերազմը, դառնալ իր ընկերն ու դաշնակիցը և ստանա-
լով առավել բազմապատիկ ընծաներ քան ինչ ունեցել էր նախկի-
նում և առավել մեծ սատրապություն և ընդհանրապես դառնալով
Անտիգոնոսի ընկերների մեջ առաջինը, լինել մասնակից նրա
5 բոլոր ծրագրերին։ Անտիգոնոսը նաև գումարեց իր ընկերներին
խորհրդի և նրանց իր բոլոր ծրագրերին հաղորդակից դարձնելով,
իր առավել կարևոր ընկերներից ոմանց սատրապություններ խոս-

տացավ, մյուսներին՝ զորական պաշտոններ և բոլորին մեծ հույ-
սեր տալով. իր մտադրությունների հանդեպ նրանց հոգին լցրեց
հոժարությամբ։ Քանզի նա որոշել էր շրջել Ասիայում և արդեն
կառավարող սատրապներին հեռացնելով, իր ընկերներին հաս-
տատել (այդ երկրների) իշխանության վրա։
53,1 Այժմ, քանի որ պատմել ենք Անտիգոնոսի կատարած գործե-
րի մասին, վերադառնանք Եվմենեսի հետ կատարված դեպքերի
նկարագրությանը։ Սա մեծ և անսպասելի փոփոխությունների
հանդիպեց, մշտապես մասնակից լինելով և՛ լավին, և՛ վատին,
ավելի քան կարելի էր հուսալ։ Այսպես, նա այդ դեպքերից առաջ
դինակցելով Պերդիկկասին և թագավորներին, ստացավ Կապպա-
դովկիայի և սրան սահմանակից երկրների սատրապությունը, որ-
տեղ էլ ձեռք բերելով մեծ զորք և տիրելով շատ հարստության, հան-
3 րահայտ բարեբախտություն ունեցավ։ Քանզի նա Կրատերոսին և
Նեոպտոլեմոսին, որոնք հայտնի հրամանատարներ էին և առաջ-
նորդում էին մակեդոնացիների անհաղթ զորքերին, հաղթեց վճռա-
4 կան ճակատամարտում և կռվի ընթացքում սպանեց նրանց։ Ու
քանի որ թվում էր, թե արդեն անհաղթելի է, նա ձեռնարկեց այն-
պիսի փոփոխության, որ մեծ ճակատամարտի բռնվելով Անտիգո-
նոսի հետ, ստիպված եղավ սակավաթիվ ընկերների հետ ապաս-
տան գտնել բոլորովին փոքրիկ մի ամրոցում։ Այստեղ փակվելով
նա թշնամու կողմից շրջապատվեց թշնամու զորքերից կրկնակի
պարիսպներով և արդեն ոչ մի օգնական չուներ իր սեփական դժ-
5 բախտության մեջ։ Մեկ տարի պաշարված մնալուց հետո, երբ փրր-
կության ոչ մի հույս չկար, հանկարծ իր դժբախտությունը անսպա-
սելի լուծում գտավ։ Քանզի Անտիգոնոսը, որը պաշարել էր Եվմենե-
սին և շտապում էր ոչնչացնել նրան, փոխեց իր մտադրությունը և
առաջարկեց համագործակցել, որից հետո հավատարմության
6 երդումներ ստանալով, վերացրեց պաշարումը։ Այսպիսով, որոշ
ժամանակ անց անսպասելի փրկվելուց հետո, նա մնաց Կապպա-
դովկիայում, որտեղ կրկին հավաքեց իր նախկին ընկերներին և
իր հետ նախորդ արշավանքներին մասնակցածներին, որոնք այդ
ժամանակ թափառում էին երկրում։ Որովհետև նա առանձնապես
սիրելի էր, ուստի և արագ կերպով գտավ շատերին, որոնք պատ-
րաստ էին հաղորդակից դառնալու նրա հույսերին և հոժարությամբ
7 մասնակցելու նրա քննարկումներին։ Վերջապես, քիչ օրեր անց,
բացի իր հետ ամրոցում պաշարված հինգ հարյուր ընկերներից, նա
ունեցավ նաև ավելի քան երկու հազար զինվոր, որոնք կամովին
ենթարկվեցին իրեն։ Բախտի օգնությամբ նա այնքան հզորացավ,

որ իր ձեռքը վերցրեց թագավորական զորքերը և պաշտպանեց
թագավորներին այն բոլոր մարդկանցից, որոնք համարձակվել
էին փորձել վերացնելու նրանց իշխանությունը։ Բայց այդ բոլորի
մասին մենք քիչ հետո իր տեղում կպատմենք ավելի մանրամասն։
58,1 Երբ Աթենքում արքոնտ էր Արքիպպոսը, Հռոմում կոնսուլներ
ընտրվեցին Քվինտոոս Էլիոսը և Լուկիոս Պապիրիոսը[345]։ Սրանց
ժամանակ Եվմենեսը դեռ նոր էր հեռացել ամրոցից, երբ նամակ-
ներ ստացավ Պոլյուպերքոնից[346], որոնցում, բացի վերևում հիշա-
տակվածներից, գրված էր նաև, որ թագավորները նրան տալիս են
իբրև պարգև հինգ հարյուր տաղանդ, իբրև հատուցում նրա կրած
վնասների և որ այդ մասին թագավորները նամակներ են հղել Կի-
լիկիայում գտնվող զորավարներին և գանձապահներին, որպեսզի
տան իրեն այդ հինգ հարյուր տաղանդը և ուրիշ ինչքան դրամ որ
պահանջի վարձկաններ հավաքագրելու և այլ անհրաժեշտ կարիք-
ների համար, միաժամանակ (նամակներում) հրահանգված էր
նաև երեք հազար մակեդոնական արգիրասպիտների[347] հրամանա-
տարներին, որպեսզի իրենց հանձնեն Եվմենեսին և ամեն ինչում
սիրահոժար գործակցեն նրան, քանի որ նա հայտարարված էր
2 ամբողջ Ասիայի ինքնակալ զորավար։ Սրան նամակ եկավ նաև
Օլյումպիասից[348], որով խնդրում և աղաչում էր օգնել թագավոր-
ներին և իրեն. քանզի (ասում էր), միայն նա է ընկերների մեջ
բոլորից հավատարիմ մնացել և միայն նա կարող է թագավորա-
3 կան ընտանիքի մեկուսացումը վերացնել։ Օլյումպիասը միաժա-
մանակ խնդրում էր նրան խորհուրդ տալ՝ ինչ է ավելի շահավետ
համարում իր համար, մնալ Եպիրոսում և չհավատալ նրանց, ով-
քեր մշտապես համարվում են (թագավորի) խնամակալներ, բայց
իրականում աշխատում են թագավորական իշխանությունը վերց-
4 նել իրենց ձեռքը, թե՞ վերադառնալ (Մակեդոնիա)։ Եվմենեսը
իսկույն պատասխան գրեց Օլյումպիասին, խորհուրդ տալով առայժմ
մնալ Եպիրոսում, մինչև պատերազմը ինչ-որ կերպ վճռվի։ Իսկ
ինքը, քանի որ մշտապես ամենահաստատ հավատարմություն է
պահպանել թագավորների հանդեպ, որոշեց չենթարկվել Անտիգո-
նոսին, որն աշխատում էր սեփականել թագավորական իշխանու-
թյունը, քանի որ Ալեքսանդրի որդին որբացած լինելու և հրամա-
նատարների ագահության պատճառով օգնության կարիք ուներ,
մտածեց, որ իր պարտքն է ամեն մի վտանգի ենթարկվել թագա-
վորների փրկության ի խնդիր։
59,1 Այսպիսով, (Եվմենեսը) հրամայելով իր մարդկանց ճանա-
պարհ ընկնել, մեկնեց Կապպադովկիայից, իր հետ ունենալով

շուրջ հինգ հարյուր հեծյալ և ավելի քան երկու հազար հետևակ։
Քանզի նա ժամանակ չուներ սպասելու այն բոլոր ուշացածներին,
որոնք խոստացել էին մասնակցել իր հետ արշավանքին, որով-
հետև նշանակալից մի զորամաս Մենանդրոսի հրամանատարու-
թյամբ, որին ուղարկել էր Անտիգոնոսը, արդեն մոտենում էր.
որպեսզի արգելի իրեն մնալ Կապպադովկիայում, քանի որ այժմ
2 նա դարձել էր Անտիգոնոսին թշնամի։ Բայց քանի որ այս զորքը
երեք օր հետո գալով և ուշացած լինելով իր առաքելությունից,
շտապեց հետապնդել Եվմենեսի հետ մեկնածներին ու չկարողա-
3 նալով հասնել նրանց, վերադարձավ Կապպադովկիա։ Իսկ Եվմե-
նեսը շտապողույթ ընթացքով արագորեն անցնելով Տավրոսը, հա-
սավ Կիլիկիա։ Արգիրասպիդների հրամանատարներ Անտիգենեսը
և Տևտամոսը, հնազանդվելով թագավորների նամակներին, մեծ
հեռավորությունից եկան դիմավորելու Եվմենեսին և նրա ընկեր-
ներին։ Նրան սիրալիր ողջունելուց և մեծագույն վտանգներից
անակնկալ փրկված լինելուն համար խնդակցելուց հետո, նրանք
խոստացան հոժարակամ գործակցել նրան ամեն ինչում։ Արգի-
րասպիդ մակեդոնացիները ևս, որոնք շուրջ երեք հազար էին,
4 նրանց ընդունեցին սիրալիր և բուռն զգացումներով։ Բոլորը զար-
մանում էին բախտի այդպիսի անսպասելի արագ փոփոխման
վրա, երբ իմացան, որ թագավորները և մակեդոնացի (առաջնորդ-
ները) դեռ քիչ առաջ Եվմենեսին և նրա ընկերներին մահվան էին
դատապարտել, իսկ այժմ արդեն, մոռանալով իրենց վճիռը, ոչ
միայն նրան անպարտ ճանաչելով վերացրել էին պատիժը, այլև
նրան էին հանձնել ամբողջ թագավորության գերագույն իշխանու-
թյունը։ Եվ այս ամենը գոհունակությամբ էին ընդունում բոլոր
նրանք, ովքեր հետևում էին Եվմենեսի բախտի փոփոխություններին։
62,1 Եվմենեսի այսպիսի անսպասելի և արագ հզորացումից հետո
Պտղոմեոսը[349] նավատորմիղով հասավ Կիլիկիայի Զեփյուռիոնը
և պատգամավորներ ուղարկեց արգիրասպիդների առաջնորդների
մոտ, խնդրելով նրանց չհնազանդվել Եվմենեսին, որին բոլոր
2 մակեդոնացիները մահվան են դատապարտել։ Նույնպես (մարդ)
ուղարկեց Կվինդոսում[350] գտնվող բերդապահներին, բողոք հայտ-
նելով, որպեսզի ոչ մեկ դրամ չտան Եվմենեսին, միաժամանակ
խոստանալով նրանց ապահովություն շնորհել։ Բայց ոչ ոք սրան
ուշադրություն չդարձրեց, որովհետև թագավորները և նրանց
խնամակալ Պոլյուպերքոնը, ինչպես նաև Ալեքսանդրի մայր Օլիմ-
պիասը գրել էին իրենց, որ ամեն կերպ ծառայեն Եվմենեսին, քանի
3 որ սա թագավորության ինքնակալ զորավարն էր։ Առանձնապես

դժգոհ էր Անտիգոնոսը Եվմենեսի բարձրացման և նրա ձեռքում
այդքան մեծ ուժի կենտրոնացման պատճառով. քանզի նա են-
թադրում էր, որ Պոլյուպերքոնը Եվմենեսին դարձնում էր իր (Ան-
տիգոնոսի) համար մեծագույն հակառակորդ, քանի որ ինքը դար-
4 ձել էր միապետության հակառակորդը։ Հետևաբար, որոշելով դա-
վադրություն կազմակերպել Եվմենեսի դեմ, նա ընտրեց իր ընկեր-
ներից Փիլոտասին և հանձնեց նրան մի նամակ, ուղղված արգի-
րասպիդներին ու Եվմենեսի հետ եղող մյուս մակեդոնացիներին.
նրա հետ ուղարկեց նաև երեսուն գործունյա՝ և լեզվանի մակեդո-
նացիների, որոնց հրամայված էր առանձին հանդիպել արգիրաս-
պիդների առաջնորդներ Անտիգենեսին ու Տևտամոսին և սրանց
միջոցով Եվմենեսի դեմ դավադրություն կազմակերպել, խոստա-
նալով մեծ պարգևներ և առավել խոշոր սատրապություններ, միա-
ժամանակ (պատվիրեց նրանց) հանդիպել արգիրասպիդներից ծա-
նոթներին և համաքաղաքացիներին և կաշառել նվերներով, Եվմե-
5 նեսի դեմ դավադրության մասնակցելու համար։ Այսուհանդերձ
նրանք ոչ մեկին չկարողացան համոզել, միայն արգիրասպիդնե-
րի առաջնորդ Տևտամոսը կաշառվեց և հանձն առավ համոզելու
իր զորակից Անտիգենեսին, որպեսզի սա ևս հաղորդակից դառնա
6 այդ ձեռնարկման։ Մինչդեռ Անտիգենեսը, որն առանձնապես
հայտնի էր իր ողջամտությամբ և հաստատուն հավատարմու-
թյամբ, ոչ միայն հակաճառեց, այլև վերահամոզեց կաշառվածին,
քանզի նա բացատրեց, որ իր համար ավելի ձեռնտու է Եվմենե-
7 սի ապրելը, քան թե Անտիգոնոսի։ Որովհետև Անտիգոնոսը, դառ-
նալով առավել հզոր, կխլի իրենց սատրապությունները և իրենց
կփոխարինի իր իսկ ընկերներով։ Մինչդեռ Եվմենեսը, լինելով
օտարերկրացի[351], երբեք չի համարձակվի գործել իր անձնական շա-
հերին համապատասխան, այլ մնալով իբրև զորավար, իրենց հետ
կվարվի որպես ընկերների և, եթե իրենք գործակցեն նրան, կթող-
նի սատրապությունները իրենց ձեռքին և, հավանաբար, ուրիշ
(երկրներ) ևս կհանձնի իրենց։ Այսպիսով, Եվմենեսի դեմ դավադ-
րություններ կազմակերպողները այս կերպ ձախողվեցին։

## Գիրք 19

12,1 Ասիայում Եվմենեսն իր հետ ունենալով արգիրասպիդ մակե-
դոնացիներին և սրանց առաջնորդ Անտիգենեսին, ձմեռեց Բաբե-
լոնիայի այսպես կոչված Կարյան շեներում[352]։ Նա դեսպաններ
ուղարկեց Սելևկոսի և Պիթոնի մոտ, խնդրելով նրանց օգնել թա-
գավորներին և միանալ իր հետ Անտիգոնոսի դեմ կռվելու, Տրի-

2 պարգիոսում, երբ կատարվեց սատրապությունների երկրորդ բա-
ժանումը[353], սրանցից Պիթոնը հայտարարվեց Մեդիայի սատրապ,
իսկ մյուսը՝ Բաբելոնիայի։ Սելևկոսի մարդիկ հայտարարեցին,
թե իրենք պատրաստ են ծառայելու թագավորներին, սակայն եր-
բեք չեն հանդուրժի կատարել Եվմենեսի հրամանները, որին մա-
կեդոնացիներն իրենց զորաժողովում մահվան են դատապարտել։
Այս որոշման շուրջ շատ վիճելուց հետո իրենց կողմից մեկին դես-
պան ուղարկեցին Անտիգենեսի և արգիրասպիդների մոտ, պա-
3 հանջելով հեռացնել Եվմենեսին ղեկավարությունից։ Բայց քանի
որ մակեդոնացիները կարևորություն չտվեցին այդ խոսքերին,
Եվմենեսը, գովելով նրանց հավատարմությունը, իր զորաբանա-
կով մեկնեց և հասնելով Տիգրիս գետը, բանակեց Բաբելոնից երեք
հարյուր ասպարեզ հեռավորության վրա։ Նրա նպատակն էր ճա-
նապարհը շարունակել դեպի Սուսա, դրանով իսկ նա ցանկանում
էր հավաքել վերին սատրապությունների զորքերը և թագավորա-
4 կան գանձարանն օգտագործել հրատապ կարիքների համար։ Սա-
կայն նա ստիպված էր գետն անցնել, քանզի իր ետին գտնվող
երկիրը արդեն նախապես ավարի էր ենթարկվել, մինչդեռ հան-
դիպակաց երկիրը բոլորովին անվնաս էր մնում և կարող էր զոր-
5 քերին առատորեն պարեն մատակարարել։ Երբ, ուրեմն, նա անց-
ման համար բոլոր կողմերից նավակներ էր կենտրոնացրել, Սելև-
կոսն ու Պիթոնը նավեցին (գետն ի վար) երկու տրիերաներով ու
մեծաթիվ լաստանավերով[354], քանզի այդ նավերը դեռևս մնացել
էին այն ամենից, ինչ Բաբելոնի մոտ պատրաստել էր տվել Ալեք-
սանդրը։
13,1 Այս ամենը բերելով ափհանման վայրը, (Սելևկոսը և Պի-
թոնը) դարձյալ փորձեցին համոզել մակեդոնացիներին հեռացնել
Եվմենեսին զորավարությունից և իրենց իսկ շահերին հակառակ
չբարձրացնել մի մարդու, որն օտար էր և սպանել է բազմաթիվ մա-
2 կեդոնացիների։ Բայց քանի որ Անտիգոնոսը և նրա մարդիկ ոչ մի
կերպ չհամոզվեցին, ապա Սելևկոսի մարդիկ մակույկներով մո-
տեցան մի հին ջրանցքի և մաքրեցին դրա՝ ժամանակի ընթացքում
արդեն լցված սկիզբը։ Այսպիսով, մակեդոնացիների բանակատե-
ղին շրջափակվեց ջրով և մոտակա բոլոր հողերը ամեն կողմից
ջրածածկ լինելով, ամբողջ զորաբանակը ողողումից կործանվելու
3 վտանգի տակ էր։ Այդ օրը նրանք սպասեցին անգործ, չիմանալով
ինչպես վարվել ստեղծված պայմաններում։ Բայց հաջորդ օրը
նրանք մոտիկ բերելով շուրջ երեք հարյուրի հասնող լաստանա-
վերը, զորքի լավագույն մասը անցկացրին, մինչդեռ ոչ ոք չխան-

գարեց նրանց ափհանումը, քանզի Սելևկոսի հետ միայն հեծյալներ էին, այն էլ հակառակորդից շատ ավելի փոքր քանակությամբ։
4 Բայց երբ արդեն գիշերն էր իջնում, Եվմենեսը, քանի որ շատ էր մտահոգված գումակի համար, մակեդոնացիներին նորից ետ տարավ գետանցով և տեղաբնիկներից մեկի խորհուրդներով սկսեց փորել մի տեղ, որով հեշտ էր շրջել ջրանցքը և մոտիկ վայրը դարձնել անցանելի։ Սելևկոսն ու նրա մարդիկ տեսնելով այդ և ցանկանալով ինչքան հնարավոր է նրանց ավելի շուտ դուրս հանել իրենց սատրապությունից, դեսպաններ ուղարկեցին հաշտություն կնքելու համար և թույլ տվեցին Եվմենեսին գետն անցնել։ Միաժամանակ, սակայն, թղթատարներ ուղարկեցին Միջագետք, Անտիգոնոսի մոտ, խնդրելով հնարավորին չափ շուտափույթ ժամանել իր զորքով, նախքան սատրապները կհասնեին իրենց զորքերով։
6 Ինչևէ, Եվմենեսը անցնելով Տիգրիսը և հասնելով Սուսիանե, իր զորքը, պարենի պակասության պատճառով, բաժանեց երեք մասի։ Երկրի միջով նա մասնատված անցնելիս ամբողջովին զրկված էր ցորենից, բայց իր զինվորներին բաժանեց բրինձ, քնջութ և արմավ, քանի որ երկիրը առատորեն արտադրում էր այդ բերքը։
7 Նա վերին սատրապությունների առաջնորդներին ես ուղարկել էր թագավորներից ստացված նամակները, որոնցում գրված էր, որ նրանք ամեն կերպ պետք է հնազանդվեն Եվմենեսին, այժմ դարձյալ թղթատարներ ուղարկեց, պահանջելով բոլոր (հրամանատարներին) իրենց զորքերով հավաքվել Սուսիանեում։ Բայց պատահեց, որ ճիշտ այդ ժամանակ նրանք արդեն ի մի գումարել էին իրենց զորքերը ուրիշ նպատակներով, որոնց մասին անհրաժեշտ է գրել ամենից առաջ։
14,1 Պիթոնը հայտարարվել էր Մեդիայի սատրապ, իսկ երբ դարձավ բոլոր վերին սատրապությունների զորահրամանատար, նա սպանեց Պարթյուեայի նախկին զորահրամանատար Փիլոտասին և
2 նրա փոխարեն նշանակեց իր եղբորը՝ Եվդամոսին։ Այս կատարվելուց հետո, մյուս բոլոր սատրապները միավորեցին իրենց ուժերը, վախենալով, որ իրենք ևս կարող են նույն բախտին արժանանալ, քանի որ Պիթոնը խռովարար էր և իր մտքում մեծ ծրագրեր ուներ։ Ուստի և ճակատամարտում նրան հաղթելով և նրա
3 զինակիցներից շատերին սպանելով, նրան դուրս քշեցին Պարթյուեայից։ Սա սկզբում մեկնեց Մեդիա, իսկ քիչ անց գնալով Բաբելոն, խնդրեց Սելևկոսին, որպեսզի սա օգնի իրեն և հաղորդակից
4 դառնա իր բոլոր ակնկալություններին։ Ահա այս հանգամանքներում վերին սատրապներն իրենց զորքերը համակենտրոնացրել էին,

*երբ Եվմենեսի ուղարկած թղթատարները ժամանելով, զորքերը*
*պատրաստ գտան։ Հրամանատարների մեջ ամենահայտնին և, բո-*
*լորի կարծիքով, վորահրամանատարությունը ստանձնելու (արժա-*
*նին) Պևկեստեսն էր, որը Ալեքսանդրի թիկնապահն էր եղել և ար-*
*քայի կողմից բարձրացվել էր (պաշտոնում) իր քաջության համար։*
5 *Նա երկար ժամանակ ստացել էր Պերսիսի սատրապությունը[355] և*
*մեծապես վայելում էր տեղաբնիկների հարգանքը։ Ասում են, թե*
*այդ պատճառով էլ Ալեքսանդրը մակեդոնացիներից միայն սրան*
*թույլատրեց պարսկական տարազ հագնել, ցանկանալով սիրաշահել*
*պարսիկներին և կարծելով, թե սրա միջոցով ամեն ինչում կապա-*
*հովի այդ ազգի հնազանդությունը։ Այդ ժամանակ (Պևկեստեսն)*
*ուներ մեկ բյուր նետաձիգներ և պարսատիկավորներ, մակեդոնա-*
*կան զորաշարքերում կռվելու համար զինված երեք հազար մարդ,*
*հելլեն և թրակիացի վեց հարյուր հեծյալ և ավելի քան չորս հարյուր*
6 *պարսիկ ձիավոր։ Մակեդոնացի Տլեպոլեմոսը, որը կարգվել էր*
*Կարմանիայի սատրապ, ուներ հազար հինգ հարյուր հետիոտն և*
*յոթ հարյուր հեծյալ զինվորներ։ Սիբյուրտիոսը, Արաքոսիայի կա-*
*ռավարիչը, բերեց հազար հետևակ և վեց հարյուր տասը հեծյալ։*
*Պարոպանիսադեից, որտեղ սատրապության կառավարիչը Օքսյու-*
*արտեսն էր, ուղարկվեց Անդրոբազոսը հազար երկու հարյուր հե-*
7 *տևակ և չորս հարյուր հեծյալ զինվորներով։ Ստասանդրոսը, Արիայի*
*և Դրանգիների սատրապը, որն իր հետ վերցրել էր նաև Բակտրիա-*
*նեի զորքերը, ուներ հազար հինգ հարյուր հետևակ և հազար հեծ-*
8 *յալ։ Հնդկաստանից եկավ Եվդամոսը[356], բերելով հինգ հարյուր*
*հեծյալ, երեք հարյուր հետևակ և հարյուր քսան փիղ, այս գազան-*
*ներին նա վերցրել էր Ալեքսանդրի մահից հետո, սպանելով Պորո-*
*սին։ Այսպիսով, սատրապների հետ գումարվեց ընդհանուր թվով*
*ավելի քան տասնութ հազար հետևակ և չորս հազար վեց հարյուր*
*հեծյալ զորք։*
15,1 *Երբ բոլորը հավաքվեցին Սուսիանեում և հանդիպեցին Եվմե-*
*նեսին, ընդհանուր զորաժողով գումարեցին, որտեղ մեծ վեճ առա-*
*ջացավ ընդհանուր հրամանատարության վերաբերյալ։ Պևկեստեսը*
*այն կարծիքին էր, որ իրեն հետևող զինակիրների բազմության,*
*ինչպես նաև Ալեքսանդրի կողմից իր ստացած բարձր պաշտոնի*
*պատճառով ինքը պետք է ստանձնի բոլորի հրամանատարությունը,*
2 *բայց Անտիգենեսը, մակեդոնական արգիրասպիդների զորավարը,*
*ասում էր, որ իր կարծիքով ընտրելու իրավունքը պետք է տրվի իր*
*հետ եղող մակեդոնացիներին, որոնք Ալեքսանդրի հետ միասին*
3 *կռվելով (նվաճել են) Ասիան և իրենց քաջության պատճառով ան-*

պարտելի են դարձել։ Մինչդեռ Եվմենեսը, երկյուղ կրելով, որ իրար
հանդեպ թշնամանք ծագելու դեպքում (իրենցից) յուրաքանչյուրը
Անտիգոնոսի համար կդառնա հեշտ հաղթահարելի, խորհուրդ տվեց,
ոչ թե մեկին ընտրել բոլորի առաջնորդ, այլ զորքերի կողմից
ընտրված բոլոր սատրապներն ու զորավարները ամեն օր հավաք-
վելով արքունի բակում, այդտեղ գումարեն մտածելով ընդհանուրի
4 շահերի մասին։ Քանզի, թեպետ մահացած էր, Ալեքսանդրի հա-
մար մի վրան կար խփած ու նրա մեջ գահ էր դրած, որի առաջ,
զոհ մատուցելուց հետո, սովորություն ունեին հրատապ հարցերի
շուրջ այդտեղ գումարել։ Քանի որ բոլորին թվաց, թե նրա խորհուրդը
բխում էր բոլորի շահերից, ուստի և ամեն օր նա ժողով էր հրա-
5 վիրում, ասես հանրավարական[357] քաղաքի նման։ Այնուհետև, երբ
նրանք հասան Սուսա, Եվմենեսը գանձերը պահպանողների մոտից
ստացավ այնքան դրամ, ինչքան անհրաժեշտ էր իր կարիքների հա-
մար, քանզի թագավորները (գանձապահներին ուղղած) իրենց նա-
մակներով պատվիրել էին միայն սրան տալ ինչքան գումար որ
ցանկանար։ Մակեդոնացիներին վեց ամսվա վարձ վճարելուց հետո
նա Եվդամոսին, որը Հնդկաստանից բերել էր փղերին, տվեց երկու
հարյուր տաղանդ, իբրև թե գազաններին պահելու վրա ծախսելու
համար, բայց իրականում՝ այդ պարգևով ցանկանալով սիրաշա-
հել մարդուն, քանզի եթե սա միանար ախոյաններին, ապա մեծ
բեկում կառաջացներ, քանզի այդ դազանների օգտագործումը սար-
սափ էր առաջացնում։ Իսկ մյուս սատրապներից յուրաքանչյուրը
իր հետևորդներին մատակարարում էր իր կառավարած երկրից։
6 Եվ մինչ Եվմենեսը, մնալով Սուսիանեում, կազմակերպում էր
իր ուժերը, Անտիգոնոսը, որը ձմեռել էր[358] Միջագետքում, սկզբում
որոշել էր հետապնդել Եվմենեսին և նրա զորքերին նախքան սրանք
կհասցնեին բազմանալ, բայց երբ լսեց, որ սատրապներն իրենց
զորքերով եկել ու միացել են մակեդոնացիներին, նա հրաժարվեց
շտապելուց և սկսեց իր զորքերին հանգիստ տալ և միաժամանակ
հավաքագրեց նոր զինվորներ։ Քանզի նա տեսնում էր, որ պատե-
րազմը պետք է մղվեր մեծ ուժերով և ոչ թե սովորական պատ-
րաստությամբ։
17,2 Այդ ժամանակ էլ Անտիգոնոսը մեկնելով Միջագետքից, հա-
սավ Բաբելոնիա և այնտեղ Սելևկոսի և Պիթոնի հետ համագոր-
ծակցության դաշն կնքեց։ Նրանց մոտից ևս զինվորներ վերցնե-
լով, Տիգրիս գետի վրա նավերով կամուրջ կապեց և իր զորքերը
3 անցկացնելով արշավեց իր թշնամիների դեմ։ Երբ Եվմենեսը և
նրա հետ եղողները իմացան այս կատարվածը, Քսենոփիլոսին,

որը Սուսայի բերդապահն էր, պատվիրեցին չտալ Անտիգոնոսին ոչ մի դրամ և նրա հետ ոչ մի հարաբերություն չունենալ, այնուհետև վեցնելով իրենց զորքը, արշավեցին դեպի Տիգրիս գետը[359]. այն գտնվում է Սուսայից մեկ օրվա ճանապարհի հեռավորության վրա, որտեղ այն դուրս է գալիս լեռնային երկրից, որը բնակեցված է ինքնավար ցեղերով, որոնց անվանում են ուքսիներ. շատ տեղերում այդ գետն ուներ երեք, երբեմն նույնիսկ չորս ասպարեզ[360] լայնություն, իսկ խորությունը հոսանքի մեջտեղում հասնում էր փղերի հասակին, լեռներից դուրս գալուց հետո այն հոսում է մոտ յոթ հարյուր ասպարեզ, մինչև թափվում է Կարմիր ծով[361]։ Դրանում կան ծովային բազմաթիվ ձկներ և ծովային գազաններ, որոնք հայտնվում են ճիշտ Շան համաստեղության ծագ-
4 ման ժամանակ[362]։ Այս գետն իրենց առաջ իբրև պատվար ունենալով, գետի ակունքներից մինչև ծովը գետափի երկայնքով պահակակետեր հաստատեցին և սպասում էին թշնամու հարձակման։ Ու քանի որ գետի երկարության պատճառով պահակության համար ոչ քիչ թվով զինվորներ էին հարկավոր, Եվմենեսը և Անտիգենեսը խնդրեցին Պևկեստեսին Պերսիսից ուղարկել մեկ բյուր
5 աղեղնավորներ։ Նա սկզբում ուշադրություն չդարձրեց նրանց խոսքին, դեռևս դժգոհ լինելով այն բանից, որ ինքը չստացավ (ընդհանուր) զորավարությունը, բայց հետո, ինքն իր մեջ մտածելով, հանգեց այն եզրակացության, որ եթե Անտիգոնոսը հաղ-
6 թի, ապա ինքը կարող է կորցնել իր սատրապությունը և նույնիսկ իր կյանքը վտանգի տակ կլինի։ Ուստի և մտածելով հենց իր մասին ու ենթադրելով, թե ինքը ինչքան շատ ավելի թվով զինվորներ ունենա, այնքան ավելի հեշտ կարող է (ընդհանուր) զորավարության հասնել։ Նրանց պահանջի համաձայն ուղարկեց մեկ բյուր աղեղնավորների։ Թեպետև պարսիկներից ոմանք գտնվում էին երեսուն օրվա ճանապարհի հեռավորության վրա, այսուհանդերձ հրամայվածը նույն օրն իսկ լսեցին, շնորհիվ պահակակետերում
7 եղած հնարամտության, մի բան, որը լավ չի լինի լռությամբ անցնել։ Պերսիսը ձորաշատ երկիր լինելով, ունի բազմաթիվ և բարձր դիտակետեր, որոնց վրա կանգնեցվել էին տեղաբնիկների միջից առավել բարձր ձայն ունեցողները, քանի որ այդ դիտակետերը գտնվում էին իրարից ձայնը լսելու հեռավորության վրա, ապա հրամանը ստացողները նույն եղանակով այն հաղորդում էին հաջորդներին, սրանք էլ դարձյալ հաջորդներին, մինչև որ հրամանը կհասներ սատրապության վերջին սահմանը։

18,1 Մինչդեռ Եվմենեսը և Պևկեստեսը զբաղված էին այս գործե-

րով, Անտիգոնոսը իր զորքերով առաջ շարժվեց և հասավ Սուսա
մայրաքաղաքը և նա Սելևկոսին կարգեց այդ երկրի սատրապ, և
տալով նրան զորամաս, կարգադրեց պաշարել միջնաբերդը, քանի
որ գանձերի պահապան Քսենոփիլոսը չէր հնազանդվել, իսկ ինքը
զորքերի հետ դուրս գալով արշավեց թշնամու դեմ, թեպետև եր-
թուղին կիզող շոգի տակ էր և խիստ վտանգաշատ օտար զորքերի
անցման համար։ Այդ իսկ պատճառով նրանք ստիպված էին գի-
շերները ճանապարհ գնալ և գետի մոտ բանակել նախքան արևի
2 ծագելը։ Այսուհանդերձ, նա չկարողացավ բոլորովին անվնաս
դուրս գալ և խուսափել այդ երկրին հատուկ չարիքներից ու թե-
պետև նա հնարավոր ամեն ինչ արեց, բայց չափազանց շոգի
պատճառով մեծ թվով զինվորների կորցրեց, առավել ևս, որ Շան
3 համաստեղության ծագման ժամանակն էր։ Հասնելով Կոպրատես
գետը, նա սկսեց պատրաստություններ տեսնել այն անցնելու հա-
մար։ Այս գետը, բխելով լեռնային մի շրջանից, թափվում էր Պա-
սիտիգրիս գետը. այն գտնվում էր Եվմենեսի բանակած վայրից
ութսուն ասպարեզ հեռավորության վրա և ուներ գրեթե չորս
պլեթրոն լայնք և քանի որ ընթացքը արագահոս էր, (անցնելու հա-
4 մար) անհրաժեշտ էին նավակներ կամ կամուրջ։ Ձեռք բերելով
փոքր թվով լաստանավեր[363], դրանցով անցկացրեց հետևակներից
ոմանց. հրամայեց նրանց խրամատ փորելով և պատնեշ բարձրաց-
նելով, այնտեղ ընդունել մնացած զորքը։ Իսկ Եվմենեսը անմիջա-
պես որ լրտեսների միջոցով իմացավ թշնամու մոտենալը, ինքը
անցավ (Պասի) տիգրիսի[364] վրա դցված կամրջով, իր հետ ունե-
նալով չորս հազար հետևակ և հազար երեք հարյուր հեծյալ, և
հանկարծակի նետվեց (գետն) անցած Անտիգոնոսի ավելի քան
երեք հազար հետևակ և չորս հարյուր հեծյալ զինվորների, ինչպես
նաև ոչ պակաս քան վեց հազար այն զինվորների վրա, որոնք սո-
վորաբար անասնակեր հայթայթելու համար ցրված խմբերով
5 անցնում էին (գետը)։ Անակնկալ հարձակվելով նրանց վրա, քանի
դեռ գտնվում էին անկարգ վիճակում, մյուսներին իսկույն փա-
խուստի մատնեց, իսկ դիմադրություն ցույց տված մակեդոնացի-
ներին ուժով և զորքերի բազմությամբ գերազանցելով, բոլորին
6 ստիպեց փախչել դեպի գետը։ Քանի որ բոլորը թափով նետվեցին
նավակների վրա, ապա բազմության ծանրությունից գրանք ջրա-
մույն եղան. լողալ համարձակվածներից շատերը քշվելով դետի
7 հոսանքից, կործանվեցին, իսկ քչերը փրկվեցին։ Մինչդեռ լողալու
գործում անփորձ եղողները գերությունը գերադասելով դետում
խեղդվելուց, գերի հանձնվեցին. սրանք թվով չորս հազար էին։

Անտիգոնոսը կործանվողների այսքան մեծ բազմություն տեսնե-
լով հանդերձ, անկարող եղավ օգնել նրանց, նավակներ չունենա-
լու պատճառով։
19,1 Համոզվելով, որ անկարելի է (գետն) անցնել, Անտիգոնոսը
շարժվեց դեպի Բատակես քաղաքը, որը գտնվում է Եվլայոս գետի
մոտ[365], Քանի որ ուղևորությունը խիստ շոգերի պատճառով կիզիչ
էր, մեծ թվով զինվորներ կոտորվեցին և ամբողջ զորքը ընկավ
2 հուսահատության մեջ։ Այսուհանդերձ, նա մի քանի օր մնալով
վերոհիշյալ քաղաքում և զորքին հանգիստ տալուց հետո ենթադ-
րեց, որ ավելի նպատակահարմար է ուղղվել դեպի Մեդիայի Եկ-
բատանա (քաղաքը) և այնտեղից արշավելով, նվաճել վերին սատ-
րապությունները։ Մեդիա տանող երկու ճանապարհ կար, որոնցից
յուրաքանչյուրն ուներ իր դժվարությունը. Կոլոնոս (քաղաքով)[366]
անցնող ճանապարհը լավ էր և արքունի, սակայն կիզիչ էր ու եր-
կար, ձգվելով գրեթե քառասուն օրվա ընթացքի երկարությամբ,
իսկ կոսսայների ազգի միջով ընկած ճանապարհը դժվար էր, նեղ
և զառիթափներով և անցնում էր թշնամի երկրի միջով. այդ ամե-
նից բացի զուրկ էր անհրաժեշտ պարենից, բայց կարճ էր և ցուրտ։
3 Հեշտ չի զորքերի համար այնտեղով անցնելը առանց համոզելու
այդ լեռնային երկրում բնակվող բարբարոսներին. քանզի նրանք
հին ժամանակներից անտի ազատ են եղել և ապրում են քարայր-
ներում. Նրանք սնվում են կաղիններով և սնկերով, ինչպես
4 նաև վայրի գազանների ապխտած մսով։ Անտիգոնոսը, քանի որ
իր հետ ուներ այդքան մեծ թվով զորքեր, կոսսայներին համոզելը,
կամ նվերներով սիրաշահելը իր արժանապատվությունից ցած
համարելով, իր պելտաստներից[367] լավագույններին ընտրեց և
իր աղեղնավորներին ու պարսատիկավորներին և թեթևազեններին
երկու մասի բաժանելով, մի մասին հանձնեց Նեարքոսին և հրա-
մայեց նրան առաջ գնալ և նախօրոք գրավել նեղ և դժվարանցա-
նելի վայրերը, մյուս մասին դասավորելով ամբողջ ճանապարհի
երկայնքով, ինքը առաջ անցավ փաղանգի հետ միասին, վերջա-
5 պահների հրամանատար նշանակելով Պիթոնին։ Նեարքոսի հետ
առաջ ուղարկվածները գրավեցին մի քանի պահակակետեր, բայց
առավել կարևորները գրավելու համար ուշացած լինելով, շատ
մարդկանց կորցրին և հազիվ կարողացան ճողոպրել, երբ բար-
6 բարոսները հարձակվեցին նրանց վրա։ Իսկ Անտիգոնոսի հետ
մնացած զորքերը ամեն անգամ դժվարանցանելի որևէ վայր հաս-
նելիս անօգնական վիճակում ընկնում էին վտանգների մեջ։ Քանզի
տեղաբնիկները այդ վայրերին ծանոթ էին և ձորերի վրա կախ-

ված բարձունքները նախապես գրավելով, ճանապարհով անց-
նողների վրա շարունակ գլորում էին խոշոր քարեր, միաժամա-
նակ նրանք մեծ քանակությամբ սլաքներ էին արձակում և վիրա-
վորում մարդկանց, որոնք ոչ կարող էին պաշտպանվել, ոչ իսկ
խուսափել սլաքներից, տեղանքի անհարմար լինելու պատճա-
7 ռով։ Քանի որ ճանապարհը զառիթափ էր և դժվարագնաց, ապա
փղերը և ձիավորները, ինչպես նաև ծանրազենները, խիստ վտանգ-
8 վեցին և տանջվեցին, անկարող լինելով օգնել իրենք իրենց։ Այս-
պիսի դժվար դրության մեջ ընկնելով, Անտիգոնոսը զղջաց, որ
չլսեց Պիթոնին, որը խորհուրդ էր տվել դրամով գնելու անցման
իրավունքը։ Այնուհանդերձ, շատ մարդանց կորցնելուց և ամբողջ
ձեռնարկումը վտանգելուց հետո, նա հազիվ փրկվելով, իններորդ
օրը հասավ Մեդիայի բնակեցված մասը։
20,1 Զորաբանակը (այդ) անվերջանալի չարիքների և վրա հասած
չափից ավելի փորձանքների համար մեղադրում էր Անտիգոնոսին,
ուստի և սկսեցին դժգոհության ձայներ լսվել, քանզի քառասուն
օրվա ընթացքում նրանք ընկել էին երեք խոշոր դժբախտության
մեջ։ Այնուհանդերձ, Անտիգոնոսը զինվորների հետ սիրալիր խո-
սելով և առատորեն ամեն տեսակ պարեն ապահովելով, զորքերին
2 դուրս բերեց փորձություններից։ Նա Պիթոնին դուրս ուղարկեց,
պատվիրելով շրջել ամբողջ Մեդիան և հավաքել ինչքան կարող է
ավելի շատ հեծյալներ և մարտական ձիեր, ինչպես նաև մեծ թվով
3 բեռնատար անասուններ։ Քանի որ այն երկիրը մշտապես լի է եղել
չորքոտանիներով, ապա հանձնարարությունը հեշտությամբ՝ կա-
տարելուց հետո Պիթոնը վերադարձավ, բերելով երկու հազար հեծ-
յալ, ավելի քան հազար ձի իրենց լծասարքով, ինչպես նաև այն-
քան բեռնակիր անասուններ, որոնք կարող էին բավարարել ամ-
բողջ զորաբանակը. դրանից բացի արքունի գանձարանից բերեց
4 նաև հինգ հարյուր տաղանդ։ Անտիգոնոսը հեծյալներին ջոկատ-
ների բաժանեց և ձիերը տալով նրանց, ովքեր (կովելիս) իրենց
կորցրել էին և բեռնատար անասունները բաժանելով իբրև պարգև,
նա նորից կարողացավ նվաճել զինվորների համակրանքը։
21,1 Իսկ Եվմենեսի հետ եղող սատրապներն ու զորավարները, երբ
տեղեկացան, որ թշնամին բանակել է Մեդիայում, սկսեցին վիճել
իրար միջև։ Քանզի Եվմենեսը և Անտիգենեսը, արգիրասպիդների
առաջնորդը, և բոլոր նրանք, ովքեր ծովափից էին արշավել, այն
կարծիքին էին, որ պետք է դարձյալ վերադառնան դեպի ծովափ,
իսկ վերին սատրապություններից իջածները, մտահոգված իրենց
սեփական գործերի համար, պնդում էին, թե պետք է պաշտպա-

2. նել վերին երկրները։ Քանի որ տարաձայնություն խորանում էր,
Եվմենեսը, տեսնելով, որ եթե զորաբանակը մասերի տրոհվի, ապա
այդ մասերից յուրաքանչյուրն առանձին անընդունակ կլինի կռվե-
լու, զիջեց (վերին երկրներից) եկած սատրապների պահանջնե-
րին։ Ուստի և մեկնելով Պասիտիգրիսից, նրանք առաջ ընթացան
դեպի Պերսեպոլիս, Պերսիսի մայրաքաղաքը, որն ընկած էր քսան-
չորս օրվա երթի հեռավորության վրա։ Ճանապարհի առաջին
հատվածը, որը ձգվում էր մինչև այսպես կոչված Կլիմաքսը[368],
դաշտային էր, կիզիչ և պարենաղուրկ, բայց մնացած մասը բարձ-
րադիր էր, ուներ առողջարար կլիմա և ամենամյա մրգերի առա-
3 տություն. քանզի այնտեղ կային կանաչապատ և ստվերաշատ
հովիտներ և բազմապիսի բուսականությամբ պարտեզներ, ինչպես
նաև զանազան ծառերով բնական բացատներ և հոսող ջրեր, այն-
պես, որ ուղևորները հանգստանալու համար մեծ բավականու-
թյամբ դանդաղում են (այս) հաճելի վայրերում։ Այստեղ կային
նաև մեծ քանակությամբ ամեն տեսակ անասուններ, զոր բնիկ-
ների մոտից հավաքելով, Պևկեստեսը առատորեն բաշխում էր
զինվորներին, աշխատելով նվաճել նրանց համակրանքը։ Այդ
երկրում բնակվում են պարսիկներից ամենառազմունակները,
որոնք բոլորը աղեղնավորներ են և պարսատիկավորներ. այդ եր-
կիրը իր բնակչության խտությամբ նույնպես գերազանցում է
մյուս սատրապություններին։
22,1 Երբ նրանք հասան Պերսեպոլիս մայրաքաղաքը, Պևկեստեսը,
լինելով այս երկրի զորավարը, մեծաշուք զոհեր մատուցեց աստ-
վածներին և Ալեքսանդրին և Փիլիպպոսին[369], այնուհետև, գրեթե
ամբողջ Պերսիսից մեծ քանակությամբ զոհաբերելու անասուններ
և խրախճանքի ու տոնախմբության համար անհրաժեշտ ամեն ինչ
հավաքելով, զորքի համար կերուխում կազմակերպեց։ Տոնախմ-
բության մասնակիցներով նա լրացրեց չորս շրջանակ իրար մեջ,
2 որոնցից առավել մեծը պարփակում էր առավել փոքրին։ Արտա-
քին շրջանակի պարագիծը տասը ասպարեզ էր և այն լրացնում էին
վարձկանները և դաշնակիցների բազմությունը, երկրորդի (պա-
րագիծը) ութ ասպարեզ էր, որում տեղավորված էին արգիրաս-
պիդ մակեդոնացիները և ընկերներից[370] նրանք, որոնք կռվել էին
Ալեքսանդրի հրամանատարությամբ. հաջորդ շրջանակի պարա-
գիծը չորս ասպարեզ էր և այն լցրել էին երկրորդական հրամանա-
տարները, ինչպես նաև այն ընկերները և զորավարները և հեծյալ-
ները, որոնք չէին գտնվում ռազմաշարքերում, ամենավերջինը,
(որի պարագիծը) երկու ասպարեզ էր, իրենց մահիճներով զբա-



9—913

գեցրել էին զորավարները և հիպպարքոսի պաշտոն[371] ունեցող-
ները, ինչպես նաև պարսիկներից առավել պատվավորները[372]։
3 Սրանց մեջտեղում կային աստվածների և Ալեքսանդրի և Փիլիպ-
պոսի ղոհասեղանները։ Այդ մահիճները պատրաստված էին տերև-
ներից և ծածկված վարագույրներով և ամեն տեսակ ծածկոցնե-
րով, քանի որ Պևրսիսը առատորեն մատակարարում էր այն ամե-
նը, ինչ անհրաժեշտ էր շքեղության և զվարճության համար. շրջա-
նակները իրարից այնքան հեռավորության վրա էին, որպեսզի
խրախճողները իրար չխանգարեին, բայց և միաժամանակ մոտիկ
լինեին իրենց անհրաժեշտ ամեն ինչին։
23,1 Քանի որ բոլորին ըստ արժանվույն ծառայություն էր մա-
տուցվում, բազմությունը հաճոյացավ Պևկեստեսի հոգատարու-
թյունից և բացահայտ երևաց, որ նա մեծ հաջողություն ունեցավ
(ղորքի) համակրանքը շահելու ուղղությամբ։ Բայց Եվմենեսը,
այս տեսնելով և մտածելով, որ Պևկեստեսը այդպես է վարվում
բազմության հետ, ձգտելով ընդհանուր հրամանատարության,
կեղծ նամակներ հորինեց, որոնց միջոցով զինվորներին համար-
ձակություն ներշնչեց պատերազմների ելքի նկատմամբ և նվաս-
տացնելով Պևկեստեսի հեղինակությունն ու փայլը, բարձրացրեց
իր անձնավորությունը և բազմության աչքերին մեծացրեց իր բա-
2 րեհաջող հույսերի ակնկալությունները։ Գրվածների իմաստն այն
էր, որ Օլյումպիասը միանալով Ալեքսանդրի որդու հետ, Կաս-
սանդրոսի սպանությունից հետո, դարձել էր Մակեդոնիայի թա-
գավորության տերը և որ Պոլյուպերքոնը իր հետ ունենալով թա-
գավորական զորքերի լավագույն մասը և փղերին, անցել էր Ասիա
Անտիգոնոսի դեմ կռվելու և արդեն մոտենում էր Կապպադով-
3 կիային։ Նամակը, որը գրված էր ասորերեն գրերով[373], ուղարկ-
ված էր Օրոնտեսի կողմից, որը տիրում էր Արմենիայի սատրա-
պության և Պևկեստեսի բարեկամն էր[374]։ Քանի որ նամակին
հավատք ընծայվեց, (այդ) սատրապների միջև նախկինում գոյու-
թյուն ունեցած մտերմության պատճառով, Եվմենեսը կարգադրեց,
որ այդ նամակը փոխանցելով ցույց տան հրամանատարներին և
մյուս զինվորներից շատերին. (դրանից հետո) համայն զորաբա-
նակի մտադրությունը փոխվեց, և բոլորն իրենց ակնկալություն-
ները կապեցին Եվմենեսի հույսերի հետ, հավատալով, որ նա թա-
գավորների միջոցով կկարողանա բարձրացնել ում ցանկանա և
4 պատժել բոլոր իրեն վնասողներին։ Խնջույքից հետո Եվմենեսը,
ցանկանալով սաստել անհնազանդներին կամ զորավարության
ձգտողներին, դատաստանի կանչեց Սիբյուրտիոսին, որը Արաքո-

սիայի սատրապն էր և Պևկեստեսի մտերիմ բարեկամը. Նրանից
Թաքուն Եվմենեսը հեծյալներ ուղարկեց Արաքոսիա, կարգադրե-
լով գրավել Նրա ունեցածը և Նրան այնպիսի վտանգների ենթար-
կեց, որ եթե նա Թաքուն չփախչեր, բազմությունը նրան մահվան
կենթարկեր։
Այս միջոցներով Եվմենեսը ուրիշներին ահաբեկելուց, իսկ
իր անձի հեղինակությունն ու փայլը բարձրացնելուց հետո դարձ-
յալ փոխվեց և սիրալիր և մեծաշուք խոստումներով շահեց Պևկես-
տեսի համակրանքը, որով սա իր հանդեպ դարձավ հոժարակամ
և հանձն առավ զինակից դառնալ Թագավորների օգտին նրա մղած
2 պայքարին։ Նպատակ ունենալով նաև մյուս սատրապներից և
զորավարներից երաշխիքներ ստանալ, որպեսզի սրանք իրեն
չլքեն, ձևացրեց, թե իրր դրամական կարիքի մեջ է և յուրաքան-
չյուրից պահանջեց փոխ տալ Թագավորներին ինչքան գրամ կարող
3 են։ Ստանալով չորս հարյուր տաղանդ այն առաջնորդներից
որոնցից նա անհրաժեշտ համարեց, դրանով իսկ նախկինում իր
դեմ դավադրություն նյութելու կամ իրեն լքելու մեջ կասկածվող-
ներին դարձրեց իր անձի հավատարմագույն թիկնապահները և
պայքարի զինակիցները։
4 Մինչդեռ Եվմենեսը, ապագայի մասին մտածելով, այդպիսի
միջոցների էր դիմում, մարդիկ ժամանեցին Մեդիայից հաղորդե-
լով, որ Անտիգոնոսը դուրս է եկել զորքով և շարժվում է դեպի
Պերսիս։ Եվմենեսն այդ իմանալով, ինքը ևս զորքը վերցնելով
5 շարժվեց թշնամու դեմ և գնաց վտանգին ընդառաջ։ Ճանապարհ
ընկնելու երկրորդ օրը նա զոհեր մատուցեց աստվածներին և զոր-
քերի համար շքեղ խրախճանք կազմակերպելով, բազմությանը
կոչ արեց հավատարիմ մնալ իրեն, սակայն ինքը գինարբուքի
ժամանակ հետևելով ներկա եղող հյուրերի օրինակին, որոնք թա-
փով հանձնվել էին խմիչքին, հիվանդացավ։ Այդ իսկ պատճառով
ընթացքը դանդաղեց, քանի դեռ ինքը տառապում էր ախտից, իսկ
զորքն ընկավ հուսահատության մեջ, քանի որ թշնամին շուտով
կարող էր հարձակվել, իսկ իրենց զորավարներից ամենակարողը
6 տառապում էր հիվանդությամբ։ Այսուհանդերձ, երբ հիվանդու-
թյունը տեղի տվեց ու Եվմենեսը փոքր-ինչ ապաքինվեց, նա առաջ
շարժվեց իր զորքով, որին առաջնորդում էին Պևկեստեսը և Ան-
տիգենեսը, իսկ ինքը փոխադրվում էր պատգարակով և հետևում
վերջապահներին, որպեսզի աղմուկից և ճանապարհի նեղություն-
նից չանհանգստանա։
25,1 Երբ արդեն (երկու) բանակները գտնվում էին իրարից մեկ օրվա

ճանապարհի հեռավորության վրա, երկուստեք հետախույզներ
ուղարկեցին և թշնամու թիվն ու նրա մտադրությունն իմանալով.
սկսեցին պատրաստվել ճակատամարտի, սակայն բաժանվեցին
2 առանց կռվի. քանզի կողմերը իրենց առաջ ունենալով ինչ-որ գետ
և ձոր, կանգնել էին մարտաշարքերով, բայց տեղանքի դժվա-
րագնաց լինելու պատճառով չկարողացան մարտի բռնվել։ Ուստի
և բանակելով իրարից երեք ասպարեզ հեռու, չորս օր մանր ընդհա-
րումները շարունակեցին և, քանի որ պարենի պակասություն էին
զգում, զբաղվեցին երկիրը կողոպտելով, իսկ հինգերորդ օրը Ան-
տիգոնոսը դեսպաններ ուղարկեց սատրապների և մակեդոնացի-
ների մոտ, պահանջելով չհնազանդվել Եվմենեսին, այլ վստահել
3 իրեն։ Նա խոստանում էր թույլ տալ սատրապներին պահել իրենց
իսկ սատրապությունները, մակեդոնացիներից ոմանց պարգևել
ընդարձակ հողեր, մյուսներին՝ իրենց հայրենի երկիրը ուղարկել
պատվով ու նվերներով, իսկ իր հետ արշավանքին մասնակցել
ցանկացողներից յուրաքանչյուրին տալ համապատասխան պաշ-
4 տոն։ Ու քանի որ մակեդոնացիները ուշադրություն չընծայեցին
նրա խոսքերին ու մինչև իսկ սպառնացին (նրա ուղարկած) դես-
պաններին, Եվմենեսը հանդես գալով գովեց նրանց և պատմեց մի
առակ, որը թեպետև ավանդական է և հին, բայց ոչ անպատեհ
5 տվյալ հանգամանքներում։ Պատմեց, որ առյուծը սիրահարվելով
կույսին, գիմում է աղջկա հորը և առաջարկում ամուսնանալ. Հայրն
ասում է, թե ինքը պատրաստ է աղջկան տալու, բայց վախենում
է (առյուծի) ճիրաններից ու ժանիքներից, որ չլինի թե ամուսնու-
թյունից հետո մի օր ինչ-որ պատճառով հանկարծ կատաղի ու
6 աղջկա հետ գազանաբար վերաբերվի։ Ինչևիցե, երբ առյուծը հա-
նեց իր ճիրաններն ու ժանիքները, (աղջկա) հայրը տեսնելով, որ
առյուծն արդեն զրկվել է այն ամենից, ինչը նրան դարձնում էր
սարսափելի, լախտով հարվածելով, հեշտությամբ սպանեց նրան։
7 «Անտիգոնոսը նույնպես, (ասաց նա), ցանկանում է նման մի բան
անել։ Նա իր խոստումները կկատարի մինչև այն ժամանակ, երբ
կդառնա ամբողջ զորքերի տերը և այդ պահին էլ նա կպատժի (այդ
զորքերի) առաջնորդներին»։ Քանի որ բազմությունը հավանու-
թյուն տվեց նրան, գտնելով, որ ճիշտ է ասում, նա արձակեց դո-
րաժողովը։
26,1 Երբ արդեն գիշերն իջել էր, Անտիգոնոսի զորաբանակից մի
քանի դասալիք եկան. Նրանք հաղորդեցին, թե Անտիգոնոսը զին-
վորներին հրամայել է գիշերվա երկրորդ պահին[375] վերացնել
2 ճամբարը և մեկնել. Եվմենեսը կշռադատելով դրությունը, ճիշտ

կերպով ենթադրեց, որ թշնամին պետք է նահանջի Գաբենե. քան-
զի այդ երկիրը, որը երեք օրվա ճանապարհի հեռավորության վրա
էր, մնացել էր անվնաս, ուներ առատ ցորեն և անասնախոտ և ընդ-
հանրապես կարող էր առատությամբ բավարարել մեծ բանակի
3 կարիքները։ Այս բոլոր բարիքներից բացի այդ երկիրը շատ բա-
րենպաստ էր իր գետերով և ձորերով, որոնք դժվարանց էին։
Շտապելով թշնամուն կանխել, Եվմենես վարվեց նույն կերպ․
նա վարձկաններից մի քանիսին դրամի միջոցով համոզեց և իբրև
դասալիքների ուղարկեց (Անտիգոնոսի մոտ), պատվիրելով ասել,
թե Եվմենես որոշել է գիշերով հարձակվել ճամբարի վրա։ Իսկ
ինքը նախապես ուղարկեց դումակը և պատվիրեց զինվորներին
4 շուտափույթ ընթրելուց հետո հեռանալ ճամբարից։ Այս ամենը
արագ կերպով կատարվեցին, մինչդեռ Անտիգոնոսը դասալիքնե-
րից լսելով, թե թշնամին որոշել է գիշերով հարձակվել, հետաձգեց
5 իր մեկնումը և զորքը դասավորեց ճակատամարտի համար։ Քա-
նի որ նա զբաղված էր այս գործերով և մտահոգված էր գալիք ճա-
կատամարտի համար, ապա Եվմենես և նրա զորքը առանց նկատ-
վելու կարողացան ճանապարհ ընկնել և շտապել դեպի Գաբենե։
Իսկ Անտիգոնոսը մինչև որոշ ժամանակ զորքը պահեց ի զեն,
բայց երբ հետախույզների միջոցով իմացավ թշնամու մեկնելու
մասին, համոզվեց, որ հակառակորդը ռազմական հնարանքով
գերազանցեց իրեն, բայց ինքը դարձյալ չհրաժարվեց իր այդ նույն
6 որոշումից։ Նա հրամայեց զինվորներին վերացնել ճամբարը և
շարժվեց առաջ այնպիսի արագությամբ, որ (նրա երթը) նման-
վում էր հետապնդման։ Բայց Եվմենես արդեն երկու պահ առաջ
էր անցել, ուստի և Անտիգոնոսը տեսնելով, որ հեշտ չի ամբողջ
զորքով հասնել այդքան առաջ անցածներին, այսպիսի մի հնար
7 մտածեց։ Նա մնացած զորքը հանձնելով Պիթոնին, կարգադրեց
նրան դանդաղորեն հետևել, իսկ ինքը, վերցնելով հեծյալներին,
արշավեց մեծ արագությամբ[376] և առավոտյան հասնելով թշնա-
մու վերջապահներին, որոնք ինչ-որ բլուրներից ցած էին իջնում,
8 կանգնեց բարձունքներում, որտեղից տեսանելի էր դառնում թշնա-
մուն։ Եվմենես բավական հեռու տարածությունից նկատելով հա-
կառակորդի հեծյալներին և կարծելով, թե թշնամու ամբողջ զորքը
արդեն մոտեցել է, կանգնեցրեց իր ընթացքը և իր ուժերը դասա-
9 վորեց այնպես, ասես անմիջապես ճակատամարտ պետք է սկսվեր։
Երկու զորքերի առաջնորդներն ահա այսպես կարողացան գերա-
զանցել իրար ռազմական հնարքներով, կարծես թե հնարամտու-
թյան մրցում էին մղում և ցույց էին տալիս, թե իրենցից յուրա-

քանչյուրը հաղթանակի իր հույսերը կապում է իր իսկ անձի հետ։
10 Անտիգոնոսն ահա այս հնարքով խուչընդոտեց թշնամու առաջըն-
թացին, իսկ ինքն իր զորքերը կարգի բերելու համար կարողացավ
դադար ստանալ, և երբ իր ամբողջ բանակը տեղ հասավ, բոլո-
րին դասավորեց ճակատամարտի և սարսափազդու մարտաշար-
քերով իջավ թշնամու վրա։
27,1 Ներառյալ նաև Պիթոնի ու Սելևկոսի բերած զորամասերը,
Անտիգոնոսն ընդամենը ուներ ավելի քան երկու բյուր և ութ հա-
զար հետևակ, ութ հազար հինգ հարյուր հեծյալ և վաթսունհինգ
փիղ։ (Հակառակորդ) զորավարները ռազմաշարքերի տարբեր
դասավորություն կիրառեցին, այս դեպքում ևս փորձելով գերա-
2 զանցել իրար։ Եվմենեսը ձախ թևում կարգեց Եվդամոսին, որը
Հնդկաստանից փղերն էր բերել, հարյուր հիսուն հոգուց բաղկա-
ցած իր հեծյալների վաշտով, իսկ նրանց առաջ կանգնած էին
հիսուն հեծյալից բաղկացած ընտրյալ նիզակավորների երկու
3 ջոկատ։ Սրանց տեղադրեց ստորոտի բարձրադիր կետերում, ա-
ջորդաբար նա կարգեց զորավար Ստասանդրոսին, որի հետ էր
նրա իսկ սեփական հեծելազորը, թվով ինը հարյուր հիսուն մարդ։
4 Սրանցից հետո կանգնեցրեց Ամփիմաքոսին, Միջագետքի սատ-
րապին, որին հետևում էին վեց հարյուր հեծյալ, իսկ սրանց կից
վեց հարյուր հեծյալ Արաքոսիայից, որոնց նախկինում առաջնոր-
դում էր Սիբյուրտիոսը, բայց սրա փախուստի պատճառով այն
5 այժմ առաջնորդում էր Կեփալոնը։ Հաջորդը կանգնած էին հինգ
հարյուր (հեծյալ) Պարոպանիսադեից և նույն թվով թրակիացի-
ներ վերին (սատրապություններում հաստատված) բնակավայրե-
րից։ Այս ամենի առջևում (Եվմենեսը) աղեղնաձև դասավորեց
փղերից քառասունհինգին, իսկ գազանների միջև եղած տարածու-
թյուններում կանգնեցրեց բավականաչափ աղեղնավորների և
6 պարսատիկավորների։ Այս ձևով նա իր ձախ թևը ամրացնելուց
հետո նրան կցեց փաղանգը։ Փաղանգի եզրը զբաղեցնում էին
վարձկանները, որոնք վեց հազարից ավելի էին, այնուհետև՝ հինգ
հազար մարդ մակեդոնական ձևով զինված, թեպետև նրանք տար-
բեր ազգություններից էին։
28,1 Սրանցից հաջորդաբար դասավորվեցին մակեդոնացի արգի-
րասպիդները, թվով առավել քան երեք հազար, որոնք անպար-
տելի էին և իրենց քաջությամբ մեծ սարսափ էին պատճառում
հակառակորդին։ Ու վերջապես վահանակիրների[377] (գունդը),
թվով առավել քան երեք հազար, սրանց, ինչպես նաև արգիրաս-
2 պիդներին առաջնորդում էին Անտիգենես և Տևտամոսը։ Ամբողջ

փաղանգի առաջ նա դասավորեց քառասուն փիղ և սրանց միջև
ընկած տարածությունները լրացրեց թեթևազենների շարքերով։
3 Աջ թևում նա դասավորեց հեծյալներին (հետևյալ կերպ). փաղան-
գի կողքին ութ հարյուր (հեծյալ) Կարմանիայից, որոնց առաջ-
նորդում էր սատրապ Տլեպոլեմոսը. այնուհետև (կանգնած էին)
հետայրոսներ[378] կոչվածները, թվով ինը հարյուր (հեծյալ) և Պև-
կեստեսի ու Անտիգենեսի վաշտը երեք հարյուր հեծյալներով,
որոնք միացել էին մեկ ջոկատի մեջ, իսկ թևի վերջում՝ Եվմենեսի
վաշտը նույնքան հեծյալներով և որպես նրանց առաջապահ՝ Եվմե-
նեսի (երիտասարդ) ստրուկներից (կազմված) երկու ջոկատ, յու-
րաքանչյուրը բաղկացած հիսուն հեծյալից, մինչդեռ թևից այն կողմ
(զորամասերի) կողքերը պահպանում էին չորս ջոկատ, որոնցում
4 կային երկու հարյուր ընտիր հեծյալներ։ Սրանցից բացի, յուրա-
քանչյուր հեծյալ վաշտից[379] ընտրելով ամենաարագ և ամենաուժեղ
ձիավորներին, թվով երեք հարյուր մարդ, կանգնեցրեց իր իսկ
վաշտի ետևում։ Ամբողջ այդ թևի երկայնքով կանգնեցրեց քառա-
սուն փիղ։ Այսպիսով, Եվմենեսի զորքերի ընդհանուր թիվն էր երեք
բյուր և հինգ հազար հետևակ, վեց հազար հարյուր հեծյալ և հար-
յուր ամանչորս փիղ[380]։
29,1 Անտիգոնոսն իր հերթին բարձրադիր վայրից դիտելով հակա-
ռակորդի զորքերի դասավորությունը, իր զորքերը դիրքավորեց
համապատասխան ձևով։ Այսպես, տեսնելով, որ թշնամու աջ թևը
ուժեղացված է դայաններով և հեծյալների լավագույն զորամա-
սերով, նրանց հակադրեց իր հեծյալներից թեթևագույններին,
որոնք նոսր շարքերով կանգնած լինելով, պետք է խուսափեին
ճակատային գործողություններից, շրջադարձ կռիվ մղեին և այդ
եղանակով իսկ անգործունյա դարձնեին թշնամու զորքերի այն
2 հատվածը, որի վրա նա մեծապես հույս ուներ։ Այս թևում նա
կանգնեցրեց Մեգիայից և Պարթյուեայից (բերված) հեծյալ աղեղ-
նավորներին ու նիզակավորներին, որոնք թվով հազար էին և լա-
վագույնս վարժված շրջադարձ գործողություն կատարելու մեջ.
հաջորդաբար նա կանգնեցրեց դեռևս ծովափից իր արշավանքին
հետևած տարանտինացիներին, թվով հազար երկու հարյուր հեծ-
յալ, որոնք ընտրված էին դարանակալման գործում հմուտ լինելու,
ինչպես նաև Անտիգոնոսի հանդեպ նրանց ունեցած հավատար-
3 մության պատճառով. Փոյուգիայից և Լյուդիայից հազար հեծյալ-
ներին, Պիթոնի հետ եղած հազար հինգ հարյուրին և Լյուսանիոսի
չորս հարյուր նիզակավորներին և այս բոլորից բացի երկձիա-
վոր[381] կոչվածներին և վերին (երկրներում հաստատված) բնակա-

վայրերից ութ հարյուր հեծյալներին։ Ձախ թևն, ահա, լրացված էր այս ձիավորներով, որոնց բոլորին առաջնորդում էր Պիթոնը։ Հետևակներից առաջինը դասվեցին վարձկանները, թվով ավելի քան ինը հազար. Նրանցից հետո երեք հազար լյուկիացիներ և պամփյուլիացիներ. այնուհետև այլազան ցեղերից բաղկացած ավելի քան ութ հազար զինվոր մակեդոնական ձևով զինված ու դրանցից բացի մոտ ութ հազար մակեդոնացիներ, որոնց տրամադրել էր նրան Անտիպատրոսը այն ժամանակ, երբ հռչակվել էր
4 թագավորության խնամակալ։ Աջ թևում փաղանգի շարունակությամբ առաջինը կանգնած էին այլացեղ վարձկանները, թվով հինգ հարյուր մարդ. հաջորդաբար՝ հազար թրակիացիներ, դաշնակիցներից հինգ հարյուր հեծյալ, իսկ սրանց շարունակությամբ հետայրոս կոչվածներից հազար հեծյալ, որոնց առաջնորդն էր Անտիգոնոսի որդի Դեմետրիոսը, որն այդ ժամանակ առաջին ան-
5 գամ պետք է կռվեր իր հոր կողքին։ Աջ թևի եզրին կանգնած էր երեք հարյուր հեծյալների ջոկատը, որոնց հետ ինքն՝ Անտիգոնոսը մասնակցում էր ճակատամարտին։ Սրանց առջևում կանգնած էին իր իսկ սեփական (երիտասարդ) ստրուկներից կազմված երեք վաշտ և սրանց զուգահեռ նույնքան վաշտ, ուժեղացված հարյուր
6 տարանտինացիներով։ Ամբողջ թևի երկարությամբ նա դասավորեց ուժեղագույն փղերից երեսունին, կազմելով կորագիծ և սրանց միջև առաջացած տարածությունները լրացրեց թեթևազինների ընտիր շարքերով։ Մնացած գազաններից մեծ մասին նա տեղադրեց փաղանգի առջևում, իսկ դրանցից մի քանիսին կանգնեցրեց
7 թևում գտնվող հեծյալների հետ։ Այս ձևով իր զորքերը շարադասելուց հետո, նա բլրից իջավ հակառակորդի վրա, զորքերին տված թեք դասավորություն. քանզի աջ թևը, որի վրա նա առանձնապես հույս ուներ, առաջ էր ձգվում, իսկ մյուս թևը ետ էր մնում, քանի որ այս թևը պետք է խուսափեր ճակատամարտից, իսկ մյուսը պետք է կռիվ մղեր։

30.1 Երբ արդեն հակառակորդ բանակներն ընդհուպ մոտեցան իրար և երկու կողմից տրվեց պայմանական ազդանշանը, զորքերը փոխնիփոխ բազմակի աղաղակեցին, և շեփորահարները ռազմանշան շեփորեցին։ Առաջինը Պիթոնի հեծյալները, որոնք իրենց առաջ հիշատակության արժանի որևէ հաստատուն պատվար չունեին ու իրենց դեմ կանգնած հակառակորդին գերազանցում էին և՛ բազմությամբ և՛ թեթևաշարժությամբ, փորձեցին օգտվել իրենց
2 այդ առավելություններից։ Քանի որ ճակատային գրոհը փղերի դեմ նրանք համարում էին ոչ ապահով, ուստի և ձիավարելով

(Թշնամու) թևի շուրջը և կողքից հարձակում գործելով, խիտ նե-
տահարումներով հարվածներ էին հասցնում, մինչդեռ իրենք,
իրենց թեթևաշարժության պատճառով, ոչ մեկ կորուստ չէին
կրում, միաժամանակ մեծ վնաս էին հասցնում փղերին, որոնք
իրենց ծանրության պատճառով ոչ կարող էին հետապնդել, ոչ
3 իսկ ետ վերադառնալ, երբ այն անհրաժեշտ էր։ Իսկ Եվմենեսը
տեսնելով, որ իր (զորքերի) թևը ճնշվում էր հեծյալ աղեղնավոր-
ների բազմության կողմից, Եվդամոսից, որը ղեկավարում էր ձախ
թևը, պահանջեց նրա հեծյալներից ամենաթեթևներին. այդ ամ-
4 բողջ հեծելագունդը տանելով թևային հարվածի, նա իր թեթևազեն
հետևակով և արագաշարժ հեծյալներով ներխուժեց թշնամու շար-
քերի մեջ. և քանի որ փղերը ևս հետևեցին նրան, ապա նա հեշ-
տությամբ կարողացավ Պիթոնին փախուստի մատնել և հալածեց
5 նրան մինչև բլրի ստորոտը։ Այս դեպքերին միաժամանակ, այն-
պես պատահեց, որ հետևակ փաղանգները բավական ժամանակ
կռվեցին իրար դեմ, բայց վերջապես, երբ արդեն երկու կողմից
շատեր ընկել էին, Եվմենեսի զորքերը գերազանցեցին հակառա-
կորդին արգիրասպիդ մակեդոնացիների քաջագործությունների
6 պատճառով։ Քանզի սրանք առաջացած տարիքում էին[382] և իրենց
մղած բազմաթիվ ճակատամարտերի պատճառով գարձել էին
առանձնապես անվեհեր և փորձառու, ուստի և ոչ մեկը չէր կա-
րողանում դիմադրել նրանց անմիջական հարձակմանը։ Այդ պատ-
ճառով իսկ, թեպետև նրանք միայն երեք հազար էին, այսուհան-
դերձ դարձան ամբողջ զորքի գլխավոր ուժը։
7 Իսկ Անտիգոնոսը տեսնելով, որ իր ձախ. թևը փախուստի էր
մատնվել և ամբողջ փաղանգը պարտվել էր, ուշադրություն չդարձ-
րեց նրանց (խոսքերին), ովքեր խորհուրդ էին տալիս հեռանալ
դեպի լեռները և նորից հավաքել փախչելով փրկվածներին և դրա-
նով իսկ պահպանել իր բանակի մի մասի ամբողջականությունը.
ընդհակառակը, օգտվելով ստեղծված իրավիճակի ընձեռած պա-
տեհությունից, նա թե՛ իր զորքի փախած մասին փրկեց և թե՛
8 հաղթանակը ապահովեց։ Քանզի Եվմենեսի արգիրասպիդները և
հետևակների մնացած բազմությունը հեշտությամբ փախուստի
մատնելով իրենց դեմ կանգնածներին, որոնց հալածեցին մինչև
9 մերձավորագույն[383] բլուրները։ Բայց Անտիգոնոսը, երբ այժմ
թշնամու շարքերում խզում էր առաջացել, իր հեծյալների մի մա-
սով սուրաց այնտեղ և կողքից հարձակվեց Եվդամոսի հրամանա-
տարության տակ ձախ թևում կանգնած զորամասերի վրա։ Քանի
որ հարձակումն անսպասելի էր, ապա նա իր հակառակորդներին

շուտով կարողացավ փախուստի մատնել և շատերին ոչնչացնե-
լուց Հետո իր Հեծյալներից թեթևագույններին առաքեց ու նրանց
միջոցով ետ կանչեց փախչողներին ու բլուրների ստորոտում նորից
վերականգնեց նրանց ուղմաշարքերը։ Երբ Եվմենեսն իմացավ
իր զորքերի պարտության մասին, շեփորի ազդանշանով ետ կան-
չեց (թշնամուն) Հալածողներին և շտապեց օգնության Հասնելու
Եվդամոսին։
37,1 Երբ արդեն ճրագները վառելու ժամանակն էր, երկու զորա-
վարներն էլ փախչողներին ետ կանչելուց Հետո նորից իրենց զոր-
քերը կարգի բերեցին ճակատամարտ տալու Համար, որովհետև
իրար Հանդեպ անչափ թշնամանքով էին լցված ոչ միայն զորա-
2 վարները, այլև կռվողների ամբողջ բազմությունը։ Քանի որ գի-
շերը պարզ էր և լիալուսին, իսկ բանակներն էլ զուգաՀեռաբար
կանգնած էին իրարից չորս պլեթրոն Հեռավորության վրա, ապա
զենքերի շաչյունը և ձիերի փնչոցը բոլոր Հակառակորդներին
թվաց Հույժ մոտիկ։ Բայց մինչև շարքերը Հավաքվեցին կռվում
սպանվածներից գրեթե երեսուն ասպարեզ Հեռավորության վրա,
կես գիշերը վրա Հասավ, իսկ երկու բանակներն էլ արդեն Հյուծ-
վել էին թե՛ ճանապարՀից և թե՛ ճակատամարտի դաժանությու-
նից, ինչպես նաև անսվաղ մնալուց. այնպես, որ ստիպված եղան
3 Հրաժարվել ճակատամարտից և ճամբար մտնել։ Եվմենեսը որո-
շել էր շարժվել ու գնալ դեպի դիակները, նպատակ ունենալով իր
ձեռքը վերցնել դրանց թաղման գործը և իր Հաղթանակը դարձ-
նել անվիճելի։ Բայց քանի որ զինվորները չլսեցին նրան, այլ աղա-
ղակեցին, թե իրենք կվերադառնան Հեռվում մնացած իրենց իրերի
մոտ, ապա նա ստիպված եղավ զիջել բազմությանը։ Քանզի Հնա-
րավոր չէր զինվորներին խիստ մեղադրել այն դեպքում, երբ շա-
տերն էին վիճարկում Հրամանատարության իրավունքը, ոչ իսկ
նա ժամանակը Հարմար էր Համարում անՀնազանդներին պատ-
4 ժելու։ Անտիգոնոսն, ընդՀակառակը, առանց ամբոխավարության,
Հաստատապես վերցրել էր Հրամանատարությունը, ուստի և Հար-
կադրեց իր զորքերին բանակել սպանվածների մոտ, երբ դրանով
իսկ նա իր ձեռքը վերցրեց դրանց թաղման գործը, նա վիճարկեց
Հաղթանակը, Հայտարարելով, թե սպանվածներին տեր դառնալը
5 նշանակում է Հաղթել ճակատամարտում։ Այս կռվում Անտիգոնո-
սի բանակից սպանվեցին երեք Հազար յոթ Հարյուր Հետևակ և
Հիսունչորս Հեծյալ, վիրավորվեցին ավելի քան չորս Հազար մարդ,
իսկ Եվմենեսի զորքերից ընկան Հինգ Հարյուր քառասուն Հետևակ

և փոքր թվով հեծյալներ, վիրավորվեցին ավելի քան ինը հարյուր
մարդ։
32,1 Անտիգոնոսը տեսնելով, որ ճակատամարտում նահանջելուց
հետո իր զինվորների տրամադրությունն ընկել է, որոշեց շտապ-
փույթ կերպով շարժվել և գնալ ինչքան հնարավոր է հակառա-
կորդից հեռու։ Մտածելով իր զորքերին նահանջի ճանապարհին
արագընթաց դարձնել, նա վիրավորներին և ծանր բեռնատարնե-
րին ուղարկեց մոտակա քաղաքներից մեկը, իսկ սպանվածներին
լուսադեմին շտապ թաղելուց հետո, նա իր մոտ պահեց հակառա-
կորդի կողմից ժամանած քարոզին, որը եկել էր մեռյալներին
վերցնելու հարցով, որից հետո կարգադրեց (զորքին) միանգամից
2 ճաշել։ Երբ օրն անցավ, նա քարոզին ետ ուղարկեց, ասելով, թե
թույլատրում է մեռյալներին վերցնել հաջորդ օրը, մինչդեռ ինքը
գիշերվա առաջին իսկ պահին ամբողջ բանակով ճանապարհ ըն-
կավ և արագ ընթացքով կարողացավ մեծ տարածությամբ հեռա-
նալ հակառակորդից և ձեռք բերեց անվնաս մնացած մի երկիր իր
զորքերը վերակազմավորելու համար։ Նա, իրոք որ հասավ մինչև
Մեդիայի Գամարգա[385] վայրը. այդ երկիրը գտնվում էր Պիթոնի
իշխանության տակ և ի վիճակի էր մեծաքանակ զորքերին առա-
տորեն ապահովել ամեն տեսակ պարենամթերքով։ Իսկ Եվմենեսը,
3 երբ հետախույզների միջոցով իմացավ Անտիգոնոսի զորքերի
հեռանալը, հրաժարվեց (հակառակորդին) հալածելուց, քանի որ
իր զորքերը ևս անսվաղ էին և մեծապես հոգնել էին դժվարություն-
ներից, բայց ձեռնամուխ լինելով մեռյալները վերացնելու գործին,
մեծ շուքով հոգաց դրանց թաղումը։
34,7 Իսկ Եվմենեսը ավարտելով մեռյալների թաղումը, զորքով
մեկնեց Պարետակեներից դեպի Գաբենե, որն անվնաս էր մնացել
և կարող էր զորքերին առատորեն ապահովել ամեն ինչով։ Այդ
երկիրը գտնվում էր Անտիգոնոսի (բանակած վայրից) քսանհինգ
կայան[386] հեռավորության վրա, եթե մարդ գնալու լիներ բնակեց-
ված երկրամասի միջով, իսկ անապատ և ջրազուրկ երկրի միջով
գնալիս՝ ինը կայան։ Այս վայրերում և իրարից այսքան հեռավո-
րության վրա Եվմենեսն ու Անտիգոնոսը ձմեռեցին և միաժամա-
նակ թարմացրին իրենց զորքերը։
Ասիայում Անտիգոնոսը, որը ձմեռում էր Մեդիայի Գադա-
37,1 մալա վայրում[387], տեսնելով, որ իր զորքերը ավելի թույլ էին քան
հակառակորդի զորքերը[388], շտապեց հանկարծակի հարձակումով
գերակշռության հասնել նրանց նկատմամբ։ Քանզի սրանք ձմե-
ռում էին տարբեր վայրերում ցրված, այնպես, որ դրանց որոշ

մասերը գտնվում էին իրարից նույնիսկ վեց օրվա ճանապարհի
2 հեռավորության վրա։ Անտիգոնոսը հրաժարվեց բնակեցված երկ-
րամասերի միջով ընթանալուց, քանի որ այն թե՛ երկար էր և թե՛
հեշտ նկատելի թշնամու կողմից, իսկ անապատ և ջրազուրկ ճա-
նապարհով գնալ համարձակվելը նա թեև համարում էր շատ սան-
ձալի, բայց և այնպես առավել պիտանի իր ծրագրած հարձակման
համար։ Քանզի այդ ճանապարհով ոչ միայն կարող էր արագ տեղ
հասնել, այլև հեշտությամբ կխուսափեր (թշնամու) ուշադրությու-
նից և անսպասելի կհարձակվեր թշնամու վրա, որն անգիտանա-
լով Անտիգոնոսի շարժումները, ցրված մնում էր գյուղերում և
3 հանգստանում։ Այսպիսի ծրագիր ունենալով նա իր զինվորներին
պատվիրեց պատրաստ լինել ճանապարհվելու և իրենց հետ վերց-
նել տասը օրվա համար սառը սնունդ, իսկ ինքը լուր տարածելով,
թե շարժվում է Արմենիայի վրա, հանկարծակի, հակառակ բոլո-
րի ենթադրության, արշավեց անապատի միջով. այդ կատարվեց
4 ձմեռային արևադարձի ժամանակ։ Նա կարգադրեց ճամբարնե-
րում կրակ վառել միայն ցերեկները, իսկ գիշերները այն ամբող-
ջովին հանգցնել, որպեսզի չլինի թե որևէ մեկը իրենց նկատի լեռ-
5 նագագաթներից և այդ մասին տեղեկացնի հակառակորդին։ Քան-
զի ամբողջ անապատը համարյա դաշտային էր, բայց այն շրջա-
պատված էր բարձր բլուրներով, որոնց գագաթներից հեշտ էր
կրակի փայլը նկատել մեծ հեռավորությունից։ Բանակը հինգ օր
դժվարին ճանապարհ անցնելուց հետո, զինվորները ցրտի պատ-
ճառով, ինչպես նաև անհրաժեշտ կարիքից դրդված, ճամբարնե-
րում կրակ էին վառում թե՛ ցերեկ ժամանակ և թե՛ գիշերվա
6 ընթացքում։ Այդ բանը նկատելով ինչ-որ մարդիկ, որոնք ապրում
էին անապատի շրջակայքում, նույն օրն իսկ Եվմենեսին և Պևկես-
տեսին այդ մասին տեղեկացնելու համար լրաբերներ ուղարկեցին,
նրանց տրամադրելով վազող ուղտեր. քանզի այդ կենդանիները կա-
րող են անընդհատ գնալ մոտ հազար հինգ հարյուր ասպարեզ ճա-
նապարհ։
38,1 Երբ Պևկեստեսն իմացավ, թե ճանապարհի միջին ռազմական
ճամբար է հայտնվել, որոշեց մեկնել ձմեռման համար հատկաց-
ված ամենահեռավոր վայրերը, որովհետև նա վախեցավ, թե հա-
կառակորդը այդ վայրերը կգրավի նախքան իրենց դաշնակից
2 զորքերը բոլոր կողմերից կհավաքվեին այնտեղ։ Տեսնելով նրա
հուսալքումը, Եվմենեսը խորհուրդ տվեց նրան քաջ լինել և մնալ
անապատի սահմանների վրա, վստահեցնելով, թե ինքը հնար է
մտածել, որով կարող է երեք կամ չորս օրով դանդաղեցնել Անտի-

գոնոսի ժամանումը։ (Նա ասաց, որ) եթե այդպես անի, ապա իրենց
զորքերը հեշտությամբ կարող են դումարվել, իսկ հակառակորդը,
3 լինելով հոգնած և ամեն ինչից զրկված, կընկնի իրենց ձեռքը։ Քա-
նի որ բոլորը զարմանում էին այս տարօրինակ խոստման վրա և
պահանջում էին իմանալ, թե այդ ի՞նչը կարող էր խանդարել թշնա-
մու առաջընթացին, Եվմենեսը հրամայեց բոլոր հրամանատարնե-
րին իրենց զինվորներով հետևել իրեն, բերելով իրենց հետ կրակով
լցրած շատ անոթներ։ Այնուհետև նա բարձրադիր վայրերից մի կեա
ընտրեց, որն ուղղված էր դեպի անապատը և շատ հարմար էր բոլոր
կողմերից պարզ երևալու համար և նշաններ դնելով ներդրավեց մոտ
յոթանասուն ասպարեզ շրջագծով մի տարածություն։ Իր հետ եկած-
ներից յուրաքանչյուրին առանձին տեղ հատկացնելով, պատվիրեց
նրանց գիշերը կրակ վառել իրարից շուրջ քսան կանգուն հեռավո-
րության վրա և գիշերվա առաջին պահին իսկ ուժեղ բոց անել, ցույց
տալու համար, որ իբրև դեռևս զարթուն են և զբաղված են իրենց
կարգի բերելով և ընթրիքի պատրաստությամբ. երկրորդ պահին
պակասեցնել բոցը, իսկ երրորդ պահին թողնել բոլորովին քիչ
կրակ, այնպես որ հեռու տարածությունից դիտողներին թվա, թե
4 այդ իսկապես ռազմական ճամբար է։ Երբ զինվորները կատարեցին
այդ հրամանը, հակառակադիր բարձունքների վրա հոտեր արածող-
ներից ոմանք, որոնք Մեդիայի սատրապ Պիթոնին բարեկամ էին,
կրակները նկատեցին։ Կարծելով, որ այդ իրականում ռազմական
ճամբար է, նրանք շտապեցին իջնել դաշտ և այդ մասին հաղորդե-
5 ցին Անտիգոնոսին և Պիթոնին։ Իսկ սրանք զարմացան այդ անսպա-
սելի լուրի առթիվ ու կանդնեցնելով իրենց ընթացքը, խորհուրդ
դումարեցին, թե ինչպե՞ս օգտվեն այս տեղեկություններից, քանզի
վտանգավոր էր հոգնատանջ եղած և ամեն ինչի կարիք ունեցող
զորքերին առաջնորդել արդեն իսկ դումարված և ամեն ինչով ապա-
6 հովված հակառակորդի դեմ։ Ենթադրելով, որ դավաճանություն է
տեղի ունեցել և հակառակորդը, ամեն ինչ նախապես իմացած լինե-
լով, արդեն գումարվել է, նրանք հրաժարվեցին ուղղակի առաջ
գնալուց և, թեքվելով դեպի աջ, նրանք գնացին բնակեցված երկրա-
մասի անվնաս մնացած վայրերով, ցանկանալով այնտեղ կազդու-
րել հոգնատանջ զորքերին։
39,1 Եվմենեսն այս միջոցով իր ռազմավարությամբ հակառակոր-
դին գերազանցելուց հետո, բոլոր կողմերից իր մոտ հավաքվելու
հրաման ուղարկեց իր զինվորներին, որոնք անջատաբար ձմեռում
էին գյուղերում։ Նա պատնեշ բարձրացնելով ռազմակայանի առաջ և
այն ամրացնելով խորունկ խրամատով, սկսեց այնտեղ ընդունել իր

դաշնակիցներին, որոնք ժամանակ առ ժամանակ գալիս էին, և
2 ռազմական ճամբարը լցրեց ամեն անհրաժեշտ պարենով։ Մինչդեռ
Անտիգոնոսը անցնելով անապատը և տեղաբնիկներից իմանալով,
որ Եվմենեսի մնացած բոլոր զորքերը Թեպետև գումարվել են, բայց
փղերը պետք է նոր դուրս գային իրենց ձմեռանոցներից, որոնք
(իրեն) մոտիկ էին և կտրված ամեն տեսակ օգնությունից, նրանց
դեմ ուղարկեց երկու հազար մեդացի և երկու հարյուր տարանտի-
նացի հեծյալ նիզակավորների, իսկ հետևակներից՝ բոլոր թեթևա-
3 զեններին։ Քանզի նա հույս ուներ, որ՝ փղերի վրա անջատ հարձա-
կում գործելով, հեշտությամբ կկարողանա դրանց տիրանալ և դրա-
նով իսկ թշնամուն զրկել նրա բանակի հզորագույն հատվածից։
Եվմենեսն, իր հերթին, կռահելով կատարվելիքը, օգնության ուղար-
կեց իր լավագույն հեծյալներից հազար հինգ հարյուր մարդու և
4 երեք հազար թեթևազեն հետևակի։ Քանի որ առաջինը այնտեղ
հայտնվեցին Անտիգոնոսի զինվորները, փղերի հրամանատարները
կենդանիներին դասավորեցին քառակուսու ձևով և առաջ շարժվե-
ցին, մեջտեղ առնելով բեռնատար գումակը, իսկ ետևից գալիս էին
փղերի հետ կռվող հեծյալները, թվով ոչ ավելի քան չորս հարյուր
5 մարդ։ Երբ թշնամին իր ամբողջ ծանրությամբ հարձակվեց նրանց
վրա և հետզհետե ճնշեց, հեծյալները պարտվեցին, չդիմանալով
թվական գերակշռության, իսկ փղերի համար պատասխանատու
եղողները սկզբում դիմադրեցին և հաստատ մնացին, թեև բոլոր
կողմերից հարվածներ էին ստանում, իսկ իրենք ի վիճակի չէին
6 հակառակորդին որևէ վնաս հասցնել։ Երբ արդեն նրանք հյուծվել
էին, անսպասելի հայտնվեցին Եվմենեսի կողմից ուղարկվածները
և նրանց դուրս բերեցին վտանգից։ Մի քանի օր անց, երբ հակա-
ռակորդ զորքերը բանակել էին իրար դեմ, իրարից քառասուն աս-
պարեզ հեռավորությամբ, երկու զորավարներն էլ իրենց զորքերը
պատրաստեցին ճակատամարտի, ամեն ինչ վճռելու մտադրու-
թյամբ։
40,1 Անտիգոնոսը իր հեծյալներին տեղաբաշխելով թևերի վրա, ձախ
(թևը) հանձնեց Պիթոնին, իսկ աջը՝ իր Դեմետրիոս որդուն, որի
կողքին պետք է կռվեր նաև ինքը։ Հետևակներին տեղավորելով միջ-
նամասում, նա, ամբողջ ճակատի երկայնքով, առջևում դասավո-
րեց փղերին և դրանց միջև եղած տարածությունները լրացրեց թե-
թևազեն զորակարգերով։ Նրա զորքերի ընդհանուր թիվն էր՝ երկու
բյուր և երկու հազար հետևակ, ինը հազար հեծյալ, ներառյալ նաև
Մեդիայից հավաքագրվածները և վաթսունհինգ փիղ։
2 Եվմենեսն, իր հերթին, իմանալով, որ Անտիգոնոսը իր լավա-

դույն հեծյալների հետ տեղ է գրավել աջ թևում, ինքն էլ կանգնեց
նրա դիմաց, իր ձախ թևում կարգելով իր զորքերից լավագույննե-
րին։ Նա այստեղ կենտրոնացրեց սատրապներից մեծ մասին,
նրանց ուղեկցող ընտրյալ ձիավորների հետ, և ինքը նույնպես որո-
շեց կռվել նրանց կողքին։ Նրանց հետ էր նաև Միթրիդատեսը,
Արիոբարզանեսի որդին, հետնորդը այն յոթ պարսիկներից մեկի,
որոնք սպանել էին մոգ Սմերդիսին[389]։ (Միթրիդատեսը) իր քաջու-
թյամբ աչքի ընկած մի այր էր և մանկուց դաստիարակվել էր զին-
3 վորավայել։ Այդ ամբողջ թևի առաջ նա կորագծով կարգեց փղերից
վաթսուն ուժեղագույններին և նրանց միջև ընկած տարածություն-
ները լրացրեց թեթևազենների զորակարգերով։ Հետևակներից (ձախ
թևին մոտիկ) առաջինը նա զետեղեց վահանակիրներին[390], այնու-
հետև՝ արգիրասպիդներին և, վերջապես, վարձկաններին ու մնա-
ցած զորքերից նրանց, որոնք զինված էին մակեդոնական եղանա-
կով, իսկ այս բոլորի առջևում կանգնած էին փղերն ու բավական
4 թվով թեթևազեններ։ Աջ թևում նա դասավորեց հեծյալներից և
փղերից ամենաթույլերին, նրանց բոլորի վրա հրամանատար կար-
գելով Փիլիպպոսին, որին պատվիրեց խուսափել ճակատամարտից
և հետևել մյուս թևում կատարված գործողություններին։ Այդ ժա-
մանակ Եվմենեսի բանակում կար ընդամենը երեք բյուր վեց հա-
զար յոթ հարյուր հետևակ, վեց հազար հեծյալ և հարյուր տասնչորս
փիղ։
41,1 Ճակատամարտից փոքր ինչ առաջ Անտիգենեսը, արգիրաս-
պիդների զորավարը, մակեդոնացի հեծյալներից մեկին ուղարկեց
դեպի հակառակորդի փաղանգը, կարգադրելով նրան մոտենալ
(փաղանգին) և բարձրաձայն դիմել մարտիկներին։ Սա, ձիավա-
րելով, միայնակ մոտեցավ ձայնը լսելու հեռավորությամբ այն
տեղ, ուր կանգնած էր Անտիգոնոսի մակեդոնացիների փաղանգը և
բարձր ձայնեց. «Ով անմիտ գլուխներ, դուք ձեր հայրերի՞ դեմ եք
մեղանչում, որոնք Փիլիպպոսի և Ալեքսանդրի հետ ամբողջ աշ-
խարհն են նվաճել»։ (Շարունակելով ասաց, որ) նրանց քիչ հետո
կտեսնեն արժանի թե՛ արքաներին և թե իրենց մղած նախկին մար-
2 տերին։ Քանզի այդ ժամանակ արգիրասպիդներից ամենակրտսեր-
ները շուրջ վաթսուն տարեկան էին, մյուսների մեծ մասը շուրջ
յոթանասուն, ոմանք նույնիսկ ավելի տարեց, բայց բոլորն իրենց
ռազմական հմտությամբ և արիությամբ անհաղթելի էին, քանզի
անվերջ պատերազմների մեջ նրանք ձեռք էին բերել մեծ փորձ և
3 համարձակություն։ Երբ այս վերոհիշյալ հայտարարությունը եղավ,
Անտիգոնոսի զորքերի միջից դժգոհության ձայներ լսվեցին այն

բանի համար, որ նրանք հարկադրվում են կռվել իրենց ցեղակից-
ների և ավագների դեմ, իսկ Եվմենեսի զորաշարքերից ծիչեր լսվե-
ցին, որոնք կոչ էին անում շուտափույթ իրենց տանել թշնամու վրա։
Եվմենեսը տեսնելով սրանց ոգևորությունը, նշան տվեց, որ հրա-
մայվում էր փողահարներին հարձակում շեփորել, իսկ բոլոր զոր-
քերին՝ աղաղակել։
42,1 Առաջինը մարտի բռնվեցին փղերը, այնուհետև հեծյալների
բազմությունը։ Քանի որ դաշտը շատ ընդարձակ էր և ամբողջովին
աղով ներծծված լինելու պատճառով բոլորովին անմշակ լքված,
ուստի հեծյալներն այնքան փոշի բարձրացրին, որ ոչ ոք չէր կա-
րողանում հեշտությամբ փոքր տարածությունից իսկ տեսնել, թե
2 ի՞նչ է կատարվում։ Անտիգոնոսն այդ նկատելով, մեդական հեծ-
յալներին, ինչպես նաև տարենտինական հեծյալներից բավականին
ուժ ուղարկեց հակառակորդի գումակի վրա։ Քանզի նա, շատ իրա-
վացի կերպով, հույս ուներ, որ բարձրացած փոշու պատճառով (իր
այդ շարժումը) աննկատելի կմնա և գումակը ձեռք բերելուց հետո
3 իր համար դժվար չի լինի թշնամուն հաղթել։ Ուղարկված հեծյալ-
ները ձիավարելով իրենց հակառակորդի թևի շուրջը և մնալով ան-
նկատ, հարձակվեցին բեռնատարների վրա, որոնք մարտադաշտից
համարյա հինգ ասպարեզ հեռավորության վրա էին գտնվում։ Այս-
տեղ նրանք պատահեցին ամբոխի բազմության, որը պիտանի չէր
կռվելու, իսկ նրանց փոքրաթիվ պաշտպաններին էլ շուտով պար-
4 տության մատնելով, մնացած ամեն ինչին տիրացան։ Մինչև այս
դեպքերը կատարվում էին, Անտիգոնոսը մարտի բռնվեց իր դիմաց
կանգնած հակառակորդ զորամասերի հետ և հեծյալների բազմու-
թյամբ հայտնվելով, սարսափի մատնեց Պևկեստեսին, Պերսիսի
սատրապին, որն իր հեծյալների հետ դուրս էր եկել փոշու ամպից,
իր հետ տանելով նաև մյուսներից հազար հինգ հարյուր հեծյալ։
5 Իսկ Եվմենեսը փոքրաթիվ զինվորներով մնացել էր թևի եզրին,
ամոթալի համարեց անձնատուր լինել բախտին ու փախչել։ Նա գե-
րադասեց քաջաբար և հոժարակամ մեռնել, հավատարիմ մնալով
թագավորների՝ իր հանդեպ ցույց տված վստահության, ուստի և
6 քայլեց իր իսկ Անտիգոնոսի վրա։ Սկսվեց դաժան հեծելամարտ,
որի ընթացքում Եվմենեսի մարտիկները գերազանցում էին (հակա-
ռակորդին) իրենց ոգևորությամբ, իսկ Անտիգոնոսի հեծյալները՝
իրենց թվով, այդ իսկ պատճառով երկուստեք շատեր ընկան։ Հենց
այդ ժամանակ էլ, երբ փղերն սկսեցին երկուստեք կռվել, Եվմենեսի
փղերից ամենաառաջից գնացողը, ընդհարվելով հակառակորդի
7 ամենաուժեղ փղի հետ, ընկավ։ Այսպիսով, Եվմենեսը տեսնելով,

որ իր զորքերը ամենուրեք նվազում են, մարտից դուրս բերեց իր
մնացած հեծյալներին, և, անցնելով մյուս թևը, իր ձեռքը վերցրեց
այդ զորքերի հրամանատարությունը, որոնց (նախապես) հանձնել
էր Փիլիպպոսի առաջնորդության, պատվիրելով խուսափել ընդհա-
րումից։ Հեծյալների կռիվն, ահա, այսպիսի վախճան ունեցավ։
43,1 Ինչ վերաբերում է հետևակներին, ապա (Եվմենեսի) արգիրասպ-
իդները խիտ շարքերով ուժգնորեն հարձակվեցին հակառակորդի
վրա և, ձեռնամարտի բռնվելով, ոմանց սպանեցին, իսկ մյուսներին
ստիպեցին փախուստի դիմել։ Նրանք անսանձելի էին իրենց թա-
փով ու, կռվելով հակառակորդի ամբողջ փաղանգի դեմ, այնքան
գերազանցեցին իրենց հմտությամբ և արիությամբ, որ իրենցից ոչ
մեկին չկորցրին, մինչդեռ թշնամուց ավելի քան հինգ հազարին
սպանեցին և մնացած բոլոր հետևակ զորամասերին, որոնք թեև
2 իրենցից բազմապատիկ էին, փախուստի մատնեցին։ Եվմենեսը,
երբ իմացավ, թե իր գումակը գրավված է, բայց Պևկեստեսի հեծ-
յալները հեռու չեն, փորձեց բոլորին հավաքել և դարձյալ հեծելա-
մարտ մղել Անտիգոնոսի դեմ։ Քանզի նա հույս ուներ, որ եթե այդ
կռվում հաղթի, ապա կկարողանա ոչ միայն փրկել իր գումակը,
3 այլև գրավել հակառակորդինը։ Բայց քանի որ Պևկեստեսն ու նրա
զորքը չլսեցին նրան, այլ ընդհակառակը, ավելի ևս հեռու նահան-
ջեցին մինչև ինչ-որ գետ, միաժամանակ նաև գիշերը վրա հասած
լինելու պատճառով, նա ստիպված եղավ հարմարվել իրավիճա-
4 կին։ Մինչդեռ Անտիգոնոսը իր հեծյալներին երկու մասի բաժանե-
լով, մի մասին ինքը վերցրեց և սպասեց, հետևելով Եվմենեսի շար-
ժումներին, իսկ մյուս մասին հանձնելով Պիթոնին, կարգադրեց
հարձակվել արգիրասպիդների վրա, քանի որ սրանք կտրվել էին
5 հեծյալների օգնությունից։ Երբ Պիթոնը արագորեն այդ հրամանը
կատարեց, մակեդոնացիները քառակուսի դասավորություն կազմե-
լով ապահով կերպով նահանջեցին դեպի գետը, որտեղ և մեղադրե-
ցին Պևկեստեսին հեծյալների պարտության պատճառ լինելու մեջ։
Քանի որ Եվմենեսը ևս իր զորքով հասավ նրանց, երբ արդեն ճրագ-
ները վառելու պահն էր, ապա նրանք խորհուրդ գումարեցին, թե
6 ի՞նչ է պետք անել։ Սատրապներն այնժամ ասացին, թե անհրաժեշտ
է շուտափույթ նահանջել դեպի վերին սատրապությունները, մինչ-
դեռ Եվմենեսը պնդում էր, թե պետք է մնալ ու կռվել, քանի որ հա-
կառակորդի փաղանգը ջախջախված էր, հեծյալները երկուստեք
7 հավասարազոր էին։ Այնուամենայնիվ, մակեդոնացիները ասացին,
թե ոչ մի կողմին չեն լսելու, քանի որ իրենց գումակը գրավվել է և
իրենց երեխաները, կանայք և պետքական շատ ուրիշ անձեր գտնը-

8 վում են թշնամու ձեռքին։ Այնժամ, ուրեմն, նրանք ցրվեցին, առանց
որևէ համաձայնեցված կարծիք հաստատելու. դրանից հետո մակե-
դոնացիները թաքուն բանակցություններ վարեցին Անտիգոնոսի
հետ և ձերբակալելով Եվմենեսին, նրան հանձնեցին Անտիգոնոսի
ձեռքը, որից հետո ետ բերելով իրենց դումակը և երաշխիքներ
9 ստանալով, մտան նրա բանակի կազմի մեջ։ Նույնպես նաև սատ-
րապներն ու մնացած հրամանատարների ու զինվորների մեծագույն
մասը, լքելով իրենց զորավարին, մտածեցին միայն իրենց անվտա-
նգության մասին։
44,1 Այժմ, երբ Անտիգոնոսը անսպասելի տիրացել էր Եվմենեսի և
իր դեմ կանգնած բոլոր ուժերին, արգիրասպիդների առաջնորդ Ան-
տիգենեսին ձերբակալելով, կենդանի իջեցրեց փոսի մեջ և այրեց,
իսկ Եվդամոսին, Հնդկաստանից փղերին բերողին և Կելբանոսին[391],
ինչպես նաև մի քանի այլոց, որոնք իր հանդեպ միշտ թշնամաբար
2 էին վերաբերվել, սպանեց։ Իսկ Եվմենեսին հանձնելով սլահա-
կախմբի հսկողության, մտածում էր ինչպե՞ս նրան լավագույնս
օգտագործել։ Քանզի նա ցանկանում էր իր հետ ունենալ մի լավ
զորավարի, որը շնորհապարտ լիներ իրեն, այսուհանդերձ, նա քիչ
էր վստահում Եվմենեսի խոստումներին, Օլյումպիասի և թագավոր-
ների հանդեպ վերջինիս տածած սիրո պատճառով։ Փաստորեն,
անցյալում, երբ Անտիգոնոսը խնայելով փրկել էր Եվմենեսին
Փոյուգիայի Նորա (ամրոցում), նա ոչ պակաս չափով (շարունա-
կեց) շատ հոժարակամ պաշտպանել թագավորներին։ Մյուս կող-
մից դարձյալ նկատելով, որ մակեդոնացիները բորբոքված պա-
հանջում էին անպայման պատժել Եվմենեսին, Անտիգոնոսը սպա-
նեց մարդուն։ Սակայն, նրա հետ իր ունեցած նախկին բարեկա-
մության պատճառով կիզեց նրա դիակը և աճյունը անոթի մեջ
3 դնելով, այն ուղարկեց նրա հարազատներին։ Վիրավորների թվում
գերի վերցվեց նաև պատմագիր Հիերոնիմոս Կարդիացին, որը
մինչ այդ մշտապես պատվի էր արժանացել Եվմենեսի մոտ, բայց
նրա մահից հետո վայելեց Անտիգոնոսի հովանավորությունը և
վստահությունը։
4 Այնուհետև Անտիգոնոսը տիրանալով Մեդիայում գտնված
ամբողջ զորքին, ինքը ձմեռեց Եկբատանայի մոտ գտնվող մի գյու-
ղում, որտեղ այդ երկրի արքունիքն էր, իսկ զինվորներին բաժա-
նեց ամբողջ սատրապության մեջ, հատկապես Ռագայ կոչված
նահանգում, որն իր այդ անունն ստացել էր այնտեղ անցյալ ժա-
մանակներում տեղի ունեցած դժբախտությունների պատճառով[392]։
5 Այս երկրում, որտեղ թեև գոյություն էին ունեցել բազում և բոլո-

րից առավել բարգավաճ քաղաքներ, բայց այնպիսի երկրաշարժ-
ներ են տեղի ունեցել, որ թե՛ քաղաքները և թե՛ դրանց բոլոր բնա-
կիչները ոչնչացել են, իսկ այդ երկիրն ընդհանրապես կերպա-
փոխվել է և նախկինում եղած գետերի ու լճերի փոխարեն նորերն
են առաջացել։
46,1 Երբ Անտիգոնոսը ձմեռում էր Մեդիայում, իմացավ, որ Պի-
թոնը, ձմեռանոցներում գտնվող զինվորներից շատերին խոստում-
ներով և պարգևներով գրավում է իր կողմը և մտածում է ապս-
տամբել։ Սակայն նա իր մտադրությունները թաքցրեց և ձևացնե-
լով, թե իբր չի հավատում Պիթոնին մեղադրողներին, շատերի
ներկայությամբ նրանց հանդիմանեց այն բանում, որ քայքայում
են իրենց բարեկամությունը, իսկ դրսում գտնվողների համար
խոսք տարածեց, թե ինքը մտադիր է վերին սատրապությունների
զորավարությունը թողնել Պիթոնին, միաժամանակ ապահովու-
2 թյան համար տրամադրել նրան բավականաչափ զորք։ Նա նույ-
նիսկ նամակ հղեց Պիթոնին, խնդրելով նրան շուտափույթ գալ իր
մոտ, որպեսզի անհրաժեշտ ամեն ինչի մասին անձամբ խորհրր-
դակցելուց հետո, ինքը շտապի վերադառնալ դեպի ծով[393]։ Նա
այսպիսի մեքենայություններ էր մտածում, որպեսզի խանգարի
Պիթոնին ճշմարտությունը կասկածելուց և միաժամանակ, որ-
պեսզի համոզի նրան սատրապությունը ստանձնելու նպատակով
գա և ընկնի իր ձեռքը։ Քանզի հեշտ չէր բռնությամբ ձերբակալել
մի մարդու, որը Ալեքսանդրի կողմից պաշտոնի բարձրացման էր
արժանացել իր արիության համար, իսկ այդ ժամանակ էլ Մեդիա-
3 յի սատրապն էր և հաճոյացել էր ամբողջ բանակին։ Պիթոնը այդ
ժամանակ ձմեռում էր Մեդիայի ծայրագույն վայրերում և արդեն
կաշառել էր բազմաթիվ մարդկանց, որոնք խոստացել էին իր հետ
ապստամբել, բայց երբ ընկերները նրան գրեցին Անտիգոնոսի
ծրագրերի մասին, ակնարկելով, թե մեծ հույսեր պետք է ունենա,
ապա նա սին ակնկալություններից խաբված, եկավ Անտիգոնոսի
4 մոտ։ Վերջինս տիրանալով Պիթոնին և մեղադրելով նրան սա-
յանի մասնակիցների առաջ, հեշտությամբ կարողացավ դատա-
5 պարտել նրան և անմիջապես մահապատժի ենթարկեց։ Այնու-
հետև ամբողջ բանակը մի տեղ գումարելով, նա Մեդիայի սատ-
րապ հայտարարեց մեդացի Օրոնտոբատեսին, իսկ զորավար կար-
գեց Հիպպոստրատոսին, որն ուներ երեք հազար հինգ հարյուր
6 հետևակ վարձկան[394] ...իսկ ինքը, (Անտիգոնոսը), վերցնելով իր
զորքը, մեկնեց Եկբատանա։ Այստեղ նա վերցնելով հինգ հազար
տաղանդ չդրոշմած[395] արծաթ, շարժվեց դեպի Պերսիս. չվերթը

դեպի այդ երկրի մայրաքաղաքը, որը կոչվում է Պերսեպոլիս, տե-
վում է քսան օր։
47,1 Մինչ Անտիգոնոսը ճանապարհին էր, դավադրության մաս-
նակից դարձած Պիթոնի ընկերները, որոնցից ամենահայտնիներն
էին Մելեագրոսն և Մենոյտասը, հավաքեցին Եվմենեսի և Պիթոնի
2 ցրիվ թափառող կողմնակիցներին, թվով ութ հարյուր հեծյալ։ Նախ
նրանք սկսեցին կողոպտել այն մեդացիների երկիրը, որոնք չէին
ցանկանում հարել ապստամբներին, այնուհետև տեղեկանալով,
որ Հիպպոստրատոսը և Օրոնտոբատեսը բանակել էին արհամար-
հելով վտանգը, գիշերով հարձակվեցին նրանց ճամբարի վրա։
Նրանք շուտով գրավեցին արտաքին պատնեշը, բայց չդիմանա-
լով (հակառակորդի) թվական գերակշռությանը, դարձյալ հեռա-
ցան, զինվորներից ոմանց համոզելով միանալ ապստամբությանը.
3 Քանի որ նրանք թեթև էին զինված և բոլորը ձիերով էին, ապա
իրենց հանկարծակի ասպատակումներով երկիրը լցրին անկար-
գությամբ։ Այնուամենայնիվ, որոշ ժամանակ անց նրանք, պա-
շարվելով ինչ-որ վայրում, որը շրջափակված էր գահավեժ ժայ-
ռերով, մասամբ սպանվեցին, մասամբ էլ գերի վերցվեցին։ Նրանց
4 առաջնորդներից Մելեագրոսը և մեդացի Օկրանեսը, ինչպես նաև
ականավոր մարդկանցից ոմանք, դիմադրելիս սպանվեցին։
Մեդիայում ապստամբածների վախճանն ահա այսպիսին
եղավ։
48,1 Անտիգոնոսը շուտափույթ Պերսիս հասնելով, տեղաբնիկ-
ների կողմից արժանացավ արքայական պատվի, ասես արդեն
Ասիայի օրինական տերը ճանաչված լիներ, իսկ ինքը ատյանի
նստելով իր ընկերների հետ, զբաղվեց սատրապությունների հար-
ցով։ Նա թույլատրեց Տլեպոլեմոսին պահել Կարմանիան, իսկ
Ստասանորին՝ Բակտրիանեն։ Քանզի հեշտ չէր նրանց հեռացնել
սոսկ նամակ ուղարկելով, քանի որ սրանք սիրաշահել էին տեղա-
2 բնիկներին և շատ կուսակիցներ ունեին։ Ասիա ուղարկեց Եվիտո-
սին, բայց քանի որ սա քիչ ժամանակ անց մահացավ, ապա նրա
փոխարեն կարգեց Եվագորասին, մի մարդու, որը հիացնում էր
թե՛ իր քաջությամբ և թե՛ իր խելամտությամբ։ Օքսյուարտեսին,
Հռոքսանեի հորը, նա թույլատրեց պահել սատրապությունը Պա-
րոպանիսադեում, որտեղ նախկինում ևս նա տիրում էր. քանզի
սրան ևս հնարավոր չէր դուրս անել առանց երկարատև արշա-
վանքի և մեծ բանակի։
3 Արաքոսիայից նա իր մոտ հրավիրեց Սիբյուրտիոսին, որն իր
հանդեպ բարյացակամ էր տրամադրված, ու նրան թույլ տվեց

պահելու սատրապությունը, միաժամանակ նաև հանձնեց նրան
արգիրասպիդներից ամենախռովարարներին, իբր թե նրանք կա-
րող էին օգտակար լինել պատերազմում, մինչդեռ իրականում,
նրանց կործանելու համար։ Քանզի նա սատրապին առանձին կար-
գադրեց, որպեսզի սրանց փոքր խմբերով ուղարկի այնպիսի գոր-
ծողությունների, որոնց ընթացքում նրանք կարող էին կործան-
վել...
5 ...Այնժամ Անտիգոնոսը տեսնելով, որ Պևկեստեսը մեծ հար-
գանք է վայելում պարսիկների մոտ, նախ նրանից վերցրեց սատ-
րապությունը։ Այնուհետև, երբ տեղաբնիկներն ընդվզեցին և
նրանց առաջնորդներից մեկը, Թեսպիոսը, նույնիսկ բացարձակ
հայտարարեց, թե պարսիկները ուրիշ ոչ մեկին չեն հնազանդվե-
լու, սրան սպանեց և Պերսիսի հյուպարքոս նշանակեց Ասկլեպիո-
դորոսին, տալով նրան բավականաչափ զորք։ Ինչ վերաբերում է
Պևկեստեսին, ապա սրան բազում այլ հույսերով ու սին խոստում-
6 ներով օրորելուց հետո, դուրս բերեց այդ երկրից։ Երբ Անտիգո-
նոսը ուղևորվում էր Սուսա, նրան Պասիտիգրիս գետի մոտ դիմավո-
րեց Քսենոփիլոսը, Սուսայի գանձարանի վերակացուն, որն ուղարկ-
ված էր Սելևկոսի կողմից, Անտիգոնոսի ամեն մի հրամանը կատա-
րելու համար։ Անտիգոնոսը նրան ընդունեց ու ձևացրեց, թե նրան
դասում է իր ամենասերտ ընկերներին հավասար, որպեսզի չլի-
7 նի թե մտափոխվելով, դարձյալ իրեն դրկի (Սուսայի գանձերից)։
Անտիգոնոսը ձեռք գցելով Սուսայի միջնաբերդը, տիրացավ այն-
տեղ գտնվող ոսկեձույլ խաղողի փաթաթվող որթին[396] և բազում
այլ կերտվածքների, որոնց ընդհանուր կշիռը կազմում էր մեկ բյուր
8 և հինգ հազար տաղանդ։ Այս ամենից բացի նրա համար կուտակ-
վեց նաև մեծ քանակությամբ այլ հարստություն, բաղկացած թե՛
պսակներից և թե՛ տարբեր ընծաներից, ինչպես նաև ռազմական
ավարներից։ Սրանք կազմեցին հինգ հազար տաղանդ, նույնքան
ևս կար Մեդիայում, չհաշված Սուսայում գտնվող գանձերը, այն-
պես, որ ամբողջը միասին կուտակվել էր երկու բյուր և հինգ հա-
զար տաղանդ։
90,1. Ասիայում Սելևկոսը Սիրիայի Գազա (քաղաքի) մոտ Դեմետ-
րիոսի կրած պարտությունից հետո[397] Պտղոմեոսից վերցնելով ոչ
ավելի քան ութ հարյուր հետևակ և շուրջ երկու հարյուր հեծյալ[398],
մեկնեց Բաբելոն։ Նա այնքան էր ոգևորված իր հույսերով, որ եթե
նույնիսկ ոչ մեկ զորք չունենար, դարձյալ իր ընկերների և իր
ստրուկների հետ կձեռնարկեր այդ արշավանքը դեպի վերին
երկրները։ Քանզի նա ենթադրում էր, թե բաբելոնացիները, իրեն

նախկին բարեհաճության պատճառով, սիրահոժար կմիանան
իրեն և թե Անտիգոնոսը իր զորքերով հեռու մեկնած լինելով, հար-
2 մար առիթ է ընձեռել իր նպատակները իրագործելու համար։ Թե-
պետև ինքն այսքան եռանդով էր, բայց նրան ուղեկցող ընկեր-
ները շատ անհանգստացան, տեսնելով, թե իրենց հետ արշավան-
քին մասնակցողները չափազանց փոքրաթիվ են, մինչդեռ թշնա-
մին, որի դեմ իրենք գնում են, իր տրամադրության տակ ունի
մեծաքանակ պատրաստի զորք, հսկայական միջոցներ և բազում
3 դաշնակիցներ։ Նկատելով, որ՝ նրանք ահաբեկվել են, Սելևկոսը
քաջալերում էր նրանց, հորդորելով, որ Ալեքսանդրի հետ արշա-
ված և իրենց քաջագործությունների համար նրա ձեռքով բարձրա-
ցած մարդկանց վայել չի դժվարության դեպքում ամբողջովին
հենվել ուժի և հարստության վրա, այլ հմտության և խելամտու-
թյան, որոնցով էլ ինքը (Ալեքսանդրը) կատարեց իր մեծ և բոլո-
րին հիացնող գործերը։ Այնուհետև, (ավելացրեց նա), պետք է
հավատալ նաև աստվածների պատգամներին, թե այդ արշավան-
4 քի վախճանը կլինի արժանի իր մտադրություններին։ Քանզի
Բրանքիդայում[399], երբ ինքը գուշակից պատգամ հարցրեց, աստ-
ված իրեն անվանեց «արքա Սելևկոս», իսկ երազում Ալեքսանդրը
կանգնելով իր կողքին, պարզորոշ վկայեց ապագա իշխանության
մասին, որը ժամանակի ընթացքում պետք է վիճակվեր իրեն։
5 Դրանից բացի նա մատնացույց էր անում նաև, որ այն ամենը, ինչ
լավ է և հիացնում է մարդկանց, ձեռք է բերվում տառապանքի ու
վտանգների գնով։ Նա հաճոյանում էր նաև իր զինակիցներին և
իրեն դնում բոլորի հետ հավասար վիճակում, որպեսզի յուրա-
քանչյուրը հարգի իրեն և սիրահոժար համակերպվի այդ խելա-
հեղ համարձակության։
91,1 Երբ նա առաջ ընթանալիս մտավ Միջագետք, Կարայում բնա-
կեցված մակեդոնացիներից ոմանց համոզեց, մյուսներին բռնի
ստիպեց հարել իր արշավանքին։ Երբ նա մտավ Բաբելոնիա, տե-
ղաբնիկներից շատերը եկան նրան դիմավորելու և անցնելով նրա
կողմը, հայտարարեցին, թե ինչպես իրեն հաճո է, այնպես էլ կգոր-
2 ծակցեն։ Քանզի նա չորս տարի այդ երկրի սատրապը լինելով,
բոլորին լավ էր վերաբերվել, դրանով իսկ շահելով բազմության
համակրանքը և դեռ նախապես իր համար ապահովել էր գործա-
կիցներ, եթե իրեն երբևիցե պատեհություն տրվեր իշխանությունը
3 վիճարկելու։ Նրա կողմն անցավ նաև Պոլիարքոսը, որն ինչ-որ
երկրամասի կառավարիչ էր կարգված, ավելի քան հազար զինվոր-

ներով։ Իսկ նրանք, ովքեր հավատարիմ էին մնացել Անտիգոնո-
սին, տեսնելով, որ բազմության պոռթկումը անսանձելի է, միա-
սին հավաքվելով ապաստանեցին միջնաբերդում, որի պահակա-
4 պետ նշանակված էր Դիփիլոսը։ Սելևկոսը միջնաբերդը պաշարե-
լուց հետո այն գրոհով գրավեց և ետ վերցրեց իր այն բարեկամներին
և ստրուկներին, որոնք, երբ ինքը Բաբելոնից մեկնել էր Եգիպտոս,
5 Անտիգոնոսի կողմից հանձնվել էին պահակադրոի հսկողության։
Այս գործողությունն ավարտելուց հետո նա զինվորներ հավաքագրեց
և ձիեր գնելով, դրանք բաժանեց նրանց, ովքեր կարող էին դրան-
ցից օգտվել։ Բոլորին բարեկամաբար գիմելով և լավագույն հույ-
սեր ներշնչելով, կարողացավ նրանց սիրահոժար մասնակիցներ
դարձնել իր ձեռնարկած գործերին։ Սելևկոսն ահա այս կերպ
վերանվաճեց Բաբելոնիան։

## Գիրք 29[400]

22 Երբ Ասիայի թագավորների կողմից ուղարկված դեսպան-
ները հասան Հռոմ, Ատտալոսը[401] և նրա արքունի միջավայրը[402],
մեծ ընդունելության արժանացան։ Նրանց դիմավորեցին մեծ շու-
քով և առանձնակի սիրալիրությամբ և շնորհեցին առատ ընծա-
ներ։ Քանզի այս իշխանները հռոմեասեր էին դարձել[403], և բոլոր
դեպքերում հնազանդվում էին սենատին և, բացի այդ, իրենց ար-
քունիքը ժամանող հռոմայեցիներին ընդունում էին և հյուրընկա-
լում մեծ սիրով։ Սրանց պատճառով էլ սենատը բոլորին ունկնդրեց
և ցանկանալով սիրաշահել թագավոր Եվմենեսին[404], նրանց հա-
ճելի պատասխան տվեց, հայտարարելով, որ սենատը դեսպաններ
կուղարկի Փառնակեսի[405] հետ ծագած պատերազմին[405] ամեն
կերպ վերջ տալու նպատակով։
23 Լեոկրիտոսը, Փառնակեսի զորավարը, անընդհատ հարձա-
կումներ գործելով, ստիպեց Տիոսում[407] գտնվող վարձկաններին
քաղաքը հանձնել, իսկ իրենց, պայմանավորվածության համա-
ձայն, հսկողության տակ թույլ տալ հեռանալ անվտանգ։ Այս
վարձկանները, որոնք կնքված դաշինքի համաձայն պետք է հեռա-
նային քաղաքից, անցյալ ժամանակներում անարդար էին եղել
Փառնակեսի նկատմամբ, ուստի և Լեոկրիտոսը, հրահանգ ստա-
ցած լինելով Փառնակեսից սպանել բոլոր վարձկաններին, դրժեց

դաշինքը և, երբ վարձկաններր մեկնում էին Տիոսից, ճանապար-
հին հարձակվեց նրանց վրա և, նիզակահարելով, սպանեց բոլո-
րին։
24 Սելևկոսը[408] նշանակալից քանակությամբ զորքեր վերցնե-
լով, առաջ շարժվեց, որպեսզի Տավրոսն անցնելով օգնության
հասնի Փառնակեսին, սակայն նկատի ունենալով հռոմայեցիների
հետ իր հոր կնքած համաձայնագիրը[409], որի պայմաններով թույլ
չէր տրվում...[410]

## Գիրք 31

17 Հայաստանի թագավոր Արտաքսեսը[411] պաստամբելով Ան-
տիոքոսից, իր անունով քաղաք հիմնեց և ժողովեց հզոր արանց։
Իսկ Անտիոքոսը[412], որն այդ տարիներին հզոր էր, ինչքան ոչ ոք
մյուս թագավորներից, արշավեց նրա վրա և հաղթելով ստիպեց
նրան հնազանդվել[413]։
19,1 Կապպադովկիայի թագավորներն ասում են, թե իրենց տոհմը
վերաբերում է պարսիկների Կյուրոս (արքային) և պնդում են, թե
իրենք հետնորդներն են յոթ պարսիկներից մեկի, որոնք սպանել
են մոգին[414]։ Նրանք իրենց ցեղակցությունը Կյուրոսի հետ հաշ-
վում են հետևյալ կերպ։ Կամբյուսեսը, Կյուրոսի հայրը, ունեցել է
հարազատ մի քույր Ատոսսա (անունով)։ Ահա սրանից ու Կապ-
պադովկիայի թագավոր Փառնակեսից ծնվել է մի տղա՝ Գալլոսը
և սրանից ծնվել է Սմերդիսը, սրանից՝ Արտամնեսը, սրանից՝
Անափասը, որն իր առանձնակի քաջությամբ ու խիզախությամբ
2 դարձել է յոթ պարսիկներից մեկը։ Ահա այսպես են նրանք բա-
ցատրում իրենց ծագումնաբանական ցեղակցությունը Կյուրոսի,
ինչպես նաև Անափասի հետ, որին էլ, ինչպես նրանք ասում են,
իր արիության պատճառով շնորհվել է իշխանությունը Կապպա-
դովկիայի վրա, պարսիկներին ոչ մի հարկ չվճարելու պայմանով։
Սրա մահից հետո իշխել է համանուն որդին, իսկ սա ևս մահանա-
լով, թողել է երկու որդի՝ Դատամես և Արիմնայոս, իշխանությունը
ժառանգել է Դատամեսը, մարդ, որը թե՛ պատերազմում և թե՛
թագավորական իշխանությունը գործադրելիս մեծ գովեստների է
արժանացել. սա պարսիկների դեմ պատերազմի ելնելով և փա-
ռավորապես կռվելով, մարտում վախճանվել է։ Թագավորությունը
ժառանգել է նրա որդի Արիամնեսը[415], որն ունեցել է երկու որդի՝

Արիարաթես և Հոլոփեռնես[416]։ Արիամնեսը հիսուն տարի իշխելուց
3 հետո վախճանվել է հիշարժան ոչ մի գործ չկատարելով։ Իշխա-
նությունը ժառանգում է նրա ավագ որդի Արիարաթեսը, որի մա-
սին ասում են, թե առանձնապես գուրգուրանքով սիրել է իր եղբո-
րը և նրան բարձրացրել է ամենասիրելի գիրքերը․ այսպես, նա
ուղարկված է եղել դինակցելու պարսիկներին եգիպտացիների
դեմ (պատերազմում) և վերադարձավ մեծ պատիվներով, զոր
Օքոսը[417], պարսից թագավորը շնորհում էր քաջագործության հա-
մար։ Նա կյանքից հեռացավ իր հայրենիքում, թողնելով երկու
4 որդի՝ Արիարաթես և Արյուսես։ Սրա եղբայրը, որը իշխում էր
Կապպադովկիայում, հարազատ որդի չէր ունեցել, ուստի և որդե-
գրել էր իր եղբոր որդիներից ավագին՝ Արիարաթեսին։ Այդ տարի-
ներին էր, որ Ալեքսանդր Մակեդոնացին պարտության մատնեց
պարսիկներին, որից հետո վախճանվեց, ապա Պերդիկկասը, որն
այդ ժամանակ ամբողջ պետության առաջնորդն էր, Եվմենեսին
ուղարկեց որպես Կապպադովկիայի զորապետ։ Արիարաթեսը
պարտության մատնվելով, ճակատամարտում ընկավ, որից հետո
թե՛ ինքը Կապպադովկիան և թե՛ նրան սահմանակից երկրներն
5 ընկան մակեդոնացիների (տիրապետության) տակ։ Իսկ Արիարա-
թեսը, նախորդ թագավորի որդին, հուսահատվելով այդ ժամա-
նակ ստեղծված դրությունից, քչերի հետ հեռանում է դեպի Հա-
յաստան։ Ոչ շատ ժամանակ անց, երբ արդեն Եվմենեսն ու Պեր-
դիկկասը և նրանց համախոհները մահացել էին[418], իսկ Անտիգո-
նոսն ու Սելևկոսը զբաղված էին այլ գործերով, (Արիարաթեսը) հա-
յերի թագավոր Արդոատեսից[419] զորք ստանալով, սպանեց մակեդո-
նացիների զորապետ Ամյունտասին, մակեդոնացիներին անհա-
պաղ դուրս վտարեց երկրից և վերանվաճեց իր հայրենի իշխանու-
6 թյունը։ Քանի որ սա ունեցավ երեք որդի, ապա թագավորությունն
ստացավ նրա ավագ որդի Արիամնեսը։ Սա հարսնախոս ուղարկե-
լով Թեոս մականվանյալ Անտիոքոսի[420] մոտ, սրա դուստր Ստրա-
տոնիկեին ամուսնացրեց իր ավագ որդու՝ Արիարաթեսի հետ։ Սա,
լինելով առանձնապես որդիասեր, դիադեմա կապեց իր որդու
(գլխին) և նրան հայտարարեց գահակից, նրա հետ հավասար բա-
ժանելով թագավորական իշխանության բոլոր առավելություննե-
րը։ Հոր վախճանվելուց հետո Արիարաթեսը թագավորում է մենակ
և կյանքից փոխվելով, թագավորությունը թողնում է իր որդի
Արիարաթեսին, որն այդ ժամանակ բոլորովին մանկահասակ էր։
7 Սա ամուսնացավ Մեծն մականվանյալ Անտիոքոսի[421] դստեր հետ,

որի անունն էր Անտիոքիս[422] և որը չափազանց խորամանկ էր։
Քանի որ սա երեխաներ չէր ունենում, ուստի ճարպկորեն, մինչ-
դեռ իր ամուսինն անգիտանում էր, իրեն վերագրեց երկու կեղծ
որդիների՝ Արիարաթեսին և Հոլոփեռնեսին։ Սակայն ինչ-որ ժա-
մանակ հետո նա անսպասելի հղիացավ և ծնեց երկու աղջիկ և
միայն մեկ տղա՝ Միթրիդատեսին։ Այս ամենից հետո նա ամուս-
նուն բացահայտեց (ճշմարտությունը) խորթ երեխաների մասին,
որոշելով նրանցից ավագին համապատասխան կենսամիջոցներ
տրամադրելով Հռոմ ուղարկել, իսկ կրտսերին՝ Հոնիա, որպեսզի
նրանք չվիճարկեն թագավորությունը հարազատ որդուց։ Սա, ինչ-
պես պատմում են, այր դառնալով իր անունը փոխեց և դարձրեց
Արիարաթես, ստացավ հելլենական դաստիարակություն և գովելի
8 դարձավ իր բոլոր առաքինություններով։ Արդ, քանի որ սա հայ-
րասեր որդի էր, հայրը ջանադիր եղավ փոխհատուցել իր որդիա-
սեր զգացումով։ Նրանց փոխադարձ հոգատարությունը այն աս-
տիճանի հասավ, որ հայրը ձգտում էր ամբողջ իշխանությունից
հրաժարվել հօգուտ իր որդու, մինչդեռ որդին հայտարարում էր, թե
իր համար անկարելի կլինի ընդունել այդպիսի շնորհ, քանի դեռ
իր ծնողները կենդանի են։ Բայց երբ իր հոր համար հասավ ճա-
կատագրական օրը, նա ժառանգեց թագավորությունը և իր ամ-
բողջ հետագա կյանքի ընթացքում նա դարձավ երևելի հատկապես
իմաստասիրության հանդեպ ցուցաբերած իր հակումներով։ Դրա
հետևանքով էր, որ հելլեններին հնում անհայտ մնացած Կապպա-
դովկիան այդ ժամանակ դարձել էր կրթված մարդկանց ապրելա-
վայր։ Սա վերանորոգեց նաև բարեկամությունը և դաշնակցու-
թյունը Հռոմի հետ։ Կապպադովկիայում իշխած թագավորների
Կյուրոսից սերած լինելու մասին այսքան։
9 Հարյուր վաթսուն տարվա ընթացքում Կապպադովկիայում
իշխեցին յոթ թագավորներ, որոնց թագավորությունը, ինչպես
Դիոդորոսն է գրում, սկսել է այս ժամանակները։
21 Փիլոպատոր մականվանյալ Արիարաթեսը ժառանգելով հայրենի
թագավորությունը, նախ իր հորը մեծաշուք թաղեց, այնուհետև
պատշաճ կերպով հոգաց իր ընկերների մասին, ինչպես նաև պաշ-
տոններում կարգվածների և նրանց ստորադրյալների մասին,
դրանով իսկ նա արժանացավ բազմության ջերմ համակրանքին։
22 Այն բանից հետո, երբ Արիարաթեսը Միթրոբուզանեսին[423]
վերականգնեց հայրենի տիրության վրա, Արտաքսիասը, Հայաս-
տանի թագավորը, չհրաժարվելով իշխանության նկատմամբ իր

ունեցած ընչաքաղցությունից, դեսպաններ ուղարկեց Արիարաթեսի մոտ, առաջարկելով նրան համամիտ լինել իր հետ և յուրաքանչյուրն իր մոտ եղող երիտասարդին[424] մահվան ենթարկելով, իրար միջև բաժանեն Սոփենեն[425]։ Իսկ Արիարաթեսը, որին շատ էր օտար այդպիսի անազնվությունը, հանդիմանեց դեսպաններին և (նամակ) գրեց Արտաքսիասին, առաջարկելով նրան հեռու մնալ նման գործերից։ Հետևաբար, Արիարաթեսն ահա այս գործից հետո իր անձի շուրջ եղած համբավը ոչ քիչ չափով բարձրացրեց, իսկ Միթրոբուզանեսը, իրեն իշխանության վրա վերականգնողի հիացության արժանի հավատարմության և ազնվաբարո (վերաբերմունքի) շնորհիվ տիրացավ իր հայրենի իշխանության։

19a Կոմմագինեի կառավարիչ[426] Պտղոմեոսը, որը նախկինում իսկ արհամարհել էր Սիրիայի թագավորներին[427], այժմ ապստամբեց, քանի որ սրանք զբաղված էին իրենց գործերով, ապա (Պտղոմեոսը) անարգել տիրացավ այդ երկրին, առավելապես ապավինելով այդ վայրերի բնական ամրություններին։ Զբավաբարվելով այս հաջողությամբ, նա զորք հավաքեց և ներխուժեց Մելիտենե կոչված (երկիրը), որը պատկանում էր Կապպադովկիայի և ենթակա էր Արիարաթեսին, ու գրավեց գերիշխող դիրքերը։ Սակայն երբ Արիարաթեսը մեծաթիվ զորքով արշավեց նրա վրա, նա ետ քաշվեց իր սեփական գավառը։

27a Երբ հայտնի դարձավ, թե հռոմայեցիները թշնամաբար են տրամադրված Դեմետրիոսի[428] հանդեպ, ապա ոչ միայն մյուս թագավորները նրան արհամարհեցին, այլև նույնիսկ նրան ենթակա սատրապներից ոմանք, որոնցից ամենահայտնին Տիմարքոսն էր։ Սա ծագումով միլետացի էր և նախկինում թագավորած Անտիոքոսի[429] ընկերը, որը բազմիցս Հռոմ էր ուղարկվել իբրև դեսպան և շատ չարիք էր պատճառել սենատին։ Քանզի նա մեծ քանակությամբ դրամ տանելով իր հետ, կաշառում էր սենատորներին, իր ընծաներով առանձնապես ձգտելով գայթակղեցնել նրանց, ովքեր թույլ կարողության տեր էին։ Ահա այս եղանակով նա շատերին գրավելով իր կողմը և նրանց տալով հռոմեական կարգերին անհարիր առաջադրանքներ, փչացնում էր սենատը, նրան գործակցում էր եղբայրը՝ Հերակլեյդեսը, որն այսպիսի ծառայության համար օժտված էր ավելի քան որևէ մեկը։ Նույն եղանակով վարվեց նաև տվյալ դեպքում, երբ Հռոմ էր եկել արդեն լինելով Մեդիայի սատրապ, նա շատ մեղադրանքներ հարուցելով Դեմետ-

րիոսի դեմ, համոզեց սենատին նրա դեմ ընդունել այսպիսի որոշում. «Քանի որ Տիմարքոսը...[430], ապա նա թող լինի նրանց թագավորը»։ Տիմարքոսը ոգևորված այս որոշումից, Մեդիայում կազմակերպեց նշանակալից բանակ, միաժամանակ Դեմետրիոսի դեմ դաշինք հաստատեց Հայաստանի թագավոր Արտաքսիասի հետ։ Այնուհետև ահաբեկելով սահմանակից ժողովուրդներին իր զորքերի հզորությամբ և նրանցից շատերին հնազանդեցնելով իրեն, արշավեց Զևգմայի[431] վրա և, վերջապես, դարձավ թագավորության մեջ հզոր։

28 Հարյուր հիսունհինգերորդ օլիմպիադայում[432] Արիարաթեսի մոտից դեսպաններ ժամանեցին Հռոմ, բերելով տասը հազար ոսկուց բաղկացած պսակ, բացահայտելու համար այն համակրանքը, որը թագավորը տածում է հռոմայեցիների հանդեպ, ինչպես նաև հայտնելու, որ իրենց պատճառով նա մերժել է ամուսնության և բարեկամության (դաշինքը) Դեմետրիոսի հետ։ Քանի որ այդ նույնը վկայեցին նաև Գրակքոսը[433] և նրա դեսպանության անդամները, ապա սենատը, գովելով Արիարաթեսին, ընդունեց պսակը և միաժամանակ նրան ուղարկեց իրենց ամենաբարձր համարված ընծաները։

32 Օրոփեռնեսը[434] իր եղբայր Արիարաթեսին իշխանությունից հեռացնելով, բոլորովին ջանադիր չեղավ պետությունը խելամիտ կառավարելու և իր բարեգործություններով ու մարդասիրությամբ ժողովրդի համակրանքը շահելու համար։ Նա շատերին ոչնչացնելով դրամ կուտակեց և հիսուն տաղանդ ընծայով սպասկեց Տիմոթեոսին, իսկ յոթանասուն տաղանդով՝ Դեմետրիոս թագավորին, բացի այն վեց հարյուր տաղանդից...[435] խոստացավ նաև մնացած չորս հարյուր (տաղանդը) ևս շնորհել մեկ այլ ժամանակ։ Տեսնելով, որ կապպադովկիացիները դժգոհություն են արտահայտում, սկսեց բոլորից հարկեր հավաքել և ամենահայտնի մարդկանց ունեցվածքը հարքունի բռնագրավել։ Երբ նա արդեն մեծ քանակությամբ դրամ կուտակեց, չորս հարյուր տաղանդ թողեց Պրիենե[436] քաղաքում, հաշվի առնելով բախտի անակնկալները, այդ գումարը Պրիենեի քաղաքացիները հետագայում վերադարձրին։

32a Թագավոր Եվմենեսը[437] դժգոհ Արիարաթեսի գահընկեցությունից, ինչպես նաև Դեմետրիոսին դիմակայելու իր սեփական շահերից մղված, իր մոտ հրավիրեց ինչ-որ պատանու, որն իր դեմքի գեղեցկությամբ և տարիքով չափազանց նման էր Անտիոքոսին[438], Սիրիայի վերջին թագավորին։ Այդ պատանին ապրում

էր Սմյուռնայում և հաստատապես իրեն հայտարարում էր թագավոր Անտիոքոսի[439] որդի. շատերը նմանության պատճառով հավատում էին նրան։ Երբ սա ժամանեց Պերգամոն, թագավորը նրան զարդարեց դիադեմայով և արքայական հանդերձանքին արժանի ամեն ինչով և ուղարկեց Զենոփանես անունով ինչ-որ կիլիկեցու մոտ։ Սա ինչ-որ պատճառով խռովել էր Դեմետրիոսից, իսկ դժվար հանգամանքներում ստացել էր այդ ժամանակ թագավորած Եվմենեսի օժանդակություն, այդ պատճառով էլ թշնամաբար էր տրամադրված Դեմետրիոսի դեմ, իսկ բարեկամաբար՝ Եվմենեսի հանդեպ։ (Զենոփանեսը) պատանուն ընդունելով Կիլիկիայի ինչ-որ վայրում, լուրեր տարածեց Սիրիայում, թե պատանին իր ժամանակ պետք է վերագրավի իր հայրենի իշխանությունը[440]։ Մինչդեռ Սիրիայի բնակչությունը նախորդ թագավորների օրոք մեղմ վերաբերմունքի արժանացած լինելով, այժմ ծանր էր տանում Դեմետրիոսի խստությունը և նրա կտրուկ հրամանները։ Ուստի և նրանք փոփոխության համամիտ լինելով, ոգևորված էին հուսալի ակնկալություններով, թե շատ շուտով իշխանությունը պետք է անցնի մեկ ուրիշ, առավել մեղմաբարո թագավորի։

32b Օրոփեռնեսի (ուղարկած) դեսպանները Հռոմից վերադառնալիս, նավարկության ընթացքում դավադրություն նյութեցին Արիարաթեսի դեմ, բայց Կորկյուրայի[441] մոտ իրենք վերացվեցին Արիարաթեսի ձեռքով։ Նույնպես նաև Կորնթոսում Օրոփեռնեսի դրածոները նրա դեմ դավ նյութեցին, բայց այս անգամ ևս նա անակընկալ խուսափելով փրկվեց և հասավ Պերգամոն, Ատտալոսի մոտ։

34 Քանի որ իրադրությունը հետզհետե ավելի էր վատթարանում, Օրոփեռնեսը ջանում էր վճարել ռոճիկները, վախենալով, որ նրանք ապստամբություն կբարձրացնեն։ Բայց այդ ժամանակ դրամի կարիք զգալով, ստիպված եղավ սրբապղծել Զևսի տաճարը, որը բարձրացած է այսպես կոչված Արիադների լեռան վրա և հին ժամանակներից ի վեր հայտարարված էր անձեռնմխելի[442]։ Օրոփեռնեսը կողոպտեց այն և վճարեց իր ունեցած բոլոր պարտքերը։

## Գիրք 33

18 Արսակես[443] արքան մեղմ և մարդասեր քաղաքականություն կիրառելով, կարողացավ ձեռք բերել բարիքների ինքնաբեր մի հոսանք և իր թագավորությունը առավել ևս ընդարձակեց։ Քանզի

նա իր զորքը հասցնելով մինչև Հնդկաստան, առանց պատերազմի տիրացավ նախկինում Պորոսի տիրապետության տակ գտնված երկրին։ Իր թագավորական իշխանության այսպիսի հզորացումից հետո իսկ նա չձգտեց շքեղության, ոչ իսկ հպարտության, ինչպես սովոր են անել իշխանավորներից շատերը, այլ հպատակների հանդեպ ցուցաբերեց բարեսրտություն, իսկ գիմադրողների հանդեպ՝ արիություն։ Ընդհանրապես նա բազում ազգերի վրա իր իշխանությունը տարածելով, պարթևներին ծանոթացրեց նրանցից յուրաքանչյուրի լավագույն սովորույթների հետ։

## Գիրք 34/35

15 Երբ գարնան գաղջից ձյունը հալվում էր և բերքը, երկար սառնամանիքից հետո, սկսում էր ծլել ու աճել, իսկ մարդիկ նորից նետվում էին աշխատանքի, Արսակեսը[444], ցանկանալով փորձել իր թշնամիներին, խաղաղության բանակցությունների համար դեսպաններ ուղարկեց։ Անտիոքոսը[445] պատասխանեց նրան, թե կհամաձայնվի հաշտություն կնքել, եթե (Արսակեսը) գերությունից ազատ արձակելով ետ հանձնի իր եղբայր Դեմետրիոսին, եթե ետ գիջի իր գրաված իշխանությունները և եթե տիրելով միայն իր հայրենի իշխանությանը, դառնա իրեն հարկատու։ Իսկ Արսակեսը, վիրավորված այդ պատասխանի ծանրությունից, արշավեց նրա դեմ։

16 Անտիոքոսի ընկերները խնդրում էին նրան մարտի չբռնվել բազմապատիկ պարթևների հետ. քանզի նրանք կարող էին ապաստանել մերձակա լեռնային վայրերը և այդպիսով, դժվարամատույց վայրերի պաշտպանության տակ, ի չիք կդարձնեին հեծելազորի սպառնալիքը։ Անտիոքոսը, սակայն, ոչ մի կերպ չանսաց նրանց խոսքերին, հայտարարելով, թե ամոթալի է, երբ հաղթողները վախենում են նախկինում պարտվածների հանդգնություններից։ Այսպիսով, իր զորքերին կռվի կոչելով, նա արիաբար ընդունեց բարբարոսների գրոհը։

17,1 Երբ Անտիոքում՝ հայտնի դարձավ Անտիոքոսի մահը, ոչ միայն քաղաքն ընդհանուր սուգի մատնվեց, այլև ամեն մի առանձին տուն լցվեց տխրությամբ ու ողբով։ Կանանց կականը առավել ևս բորբոքում էր վիշտը։ Քանի որ կործանվել էր երեսուն բյուր մարդ, ներառյալ նաև նրանց, որոնք ռազմաշարքերից դուրս մաս-

նակցել էին արշավանքին, ապա հնարավոր չէր գտնել դժբախտությունից անմասն մնացած որևէ տուն։ Քանզի ոմանք իրենց կորած եղբայրներին էին ողբում, ուրիշներ՝ ամուսիններին, մյուսները (իրենց կորած) որդիներին, իսկ որբացած շատ աղջիկներ ու տղաներ իրենց լքվածությունն էին ողբում, մինչև որ ժամանակը, վշտի լավագույն բժիշկը, բթացրեց նրանց սգի սրությունը։

2 Աթենայոսը, Անտիոքոսի զորավարը, որը բազում չարիք էր գործել (զորքերին) օթևաններում[446] տեղավորելիս, առաջինը փախուստի դիմեց, լքելով Անտիոքոսին և իրեն արժանի կործանումը գտավ։ Քանզի երբ նա (փախուստի ժամանակ) հասավ իր ձեռքից տուժած ինչ-որ գյուղեր, ոչ ոք նրան չընդունեց իր տունը, ոչ իսկ սնունդ մատակարարեց նրան, ուստի և նա թափառելով երկրով մեկ, սովամահ եղավ։

19 Արսակեսը, պարթևների արքան, թշնամաբար էր տրամադրված սելևկիացիների[447] հանդեպ ու չէր մոռանում այն չարիքն ու պատիժները, որոնց նրանք ենթարկել էին իր Էնիոս զորապետին։ Երբ սելևկիացիները դեսպանություն ուղարկեցին Արսակեսի մոտ, խնդրելով նրան ներումն շնորհել կատարված դեպքերի համար և սպասում էին նրա պատասխանին, արքան դեսպաններին առաջնորդեց այնտեղ, ուր գետնին նստած էր աչքերից զրկված կույր Պիտթիդեսը և հրամայեց հաղորդել սելևկիացիներին, որ նրանց բոլորին նույն վիճակն է սպասում։ Սրանք, ահաբեկվելով սպասվող դժվարությունների չափազանցության առաջ, մոռացան անցած հին դժբախտությունները։

21 Եվհեմերոսը, պարթևների արքան[448], ծնունդով հյուրկանացի էր և իր դաժանությամբ գերազանցում էր մեր հիշատակած բոլոր բռնակալներին. այնպես, որ պատժի ոչ մի միջոց չմնաց, որ նա չկիրառեր։ Ամենատարբեր պատրվակներով նա բաբելոնացիներից շատերին, իրենց համայն ընտանիքներով հանդերձ, ստրկացնելով ուղարկեց Մեդիա, կարգադրելով վաճառել նրանց իբրև ռազմական ավար։ Միաժամանակ նա հրկիզեց Բաբելոնի ագորան[449] և տաճարներից մի քանիսը և ավերեց քաղաքի մեծագույն մասը։

## Գիրք 37

2,11 Երբ արդեն հռոմայեցիները հետզհետե ավելի ու ավելի էին գերազանցում[450], իտալացիները դեսպաններ ուղարկեցին Պոնտո-

սի թագավոր Միթրիդատեսին[451], որն այդ ժամանակ հզոր բանակ և ռազմական միջոցներ ուներ, խնդրելով նրան իր զորքերը առաջնորդել Իտալիա, Հռոմի դեմ. քանզի իրենց միանալու դեպքում հռոմեական ուժը հեշտությամբ կտապալվեր։ Իսկ Միթրիդատեսը պատասխանեց, թե իր զորքերը կառաջնորդի Իտալիա այն բանից հետո, երբ Ասիան հպատակեցնի իրեն, քանզի այդ ժամանակ նա զբաղված էր դրանով։ Այս պատճառով էլ ապստամբները ամբողջապես հուսահատվեցին...

26 Միթրիդատեսը Ասիայում հաղթելով հռոմեական հրամանատարությանը և շատերին գերի վերցնելուց հետո, բոլորին պատվեց զգեստներով և (ճանապարհի) պարենով ու ետ ուղարկեց իրենց հայրենի երկրները։ Երբ Միթրիդատեսի այդ մարդասեր վերաբերմունքի համբավը տարածվեց, քաղաքները համակվեցին արքային միանալու ձգտումով, դեսպանություններ հայտնվեցին բոլոր քաղաքներից, բերելով իրենց հետ (քաղաքային համայնքների) որոշումներ, որոնցով հրավիրում էին նրան իրենց երկրները և կոչում նրան աստված և փրկիչ։ Այնուհետև թագավորը որտեղ էլ որ հայտնվում էր, քաղաքները նրան դիմավորում էին ամբողջ համայնքով, դուրս գալով ընդառաջ սպիտակ հագուստով ու մեծագույն ուրախությամբ։

27 Մինչ Միթրիդատեսը Ասիայում գերիշխանություն էր ձեռք բերում և քաղաքներն անարգել ապստամբում էին հռոմայեցիներից, Լեսբոսի[452] բնակիչները որոշեցին ոչ միայն ինքյանք հանձնըվել թագավորին, այլև Ակվիլլիոսին[453], որը ապաստանել էր Միտիլենեում[454] և այնտեղ բժշկական խնամք էր ընդունում, հանձնել Միթրիդատեսին։ Ուստի ընտրելով իրենց արիությամբ առավել աչքի ընկած երիտասարդներին, ուղարկեցին նրա իջևանը։ Սրանք խմբովին վրա տալով, Ակվիլլիոսին ձերբակալեցին ու կապկպեցին, նրան թագավորին ուղարկելու համար իբրև լավագույն և հաճելի պարգև։

28 Միթրիդատեսը քիչ էր մնացել դավադրության հետևանքով ընկներ կյուզիկոսցիների[455] ձեռքը։ Սրանց հետ ստորգետնյա խրամատային գործողություններին մասնակցում էր նաև հռոմեացի մի հարյուրապետ[456], որը հանձն առավ այն իրագործել։ Ու քանի որ երկուստեք ևս հաճախակի մարտի էին բռնվում և վեճեր ունենում, ապա նա, հաճախակի վրույցների միջոցով, կարողացավ ծանոթություն հաստատել թագավորի մարդկանց հետ։ Պատահեց, որ նա մի անգամ խրամատներում պահակության համար մենակ մնաց ու երբ աշխատանքներին հսկող արքայական վերակացու-

ներից մեկը մոտեցավ նրան, (քաղաքը) մատնելու առաջարկությամբ, նա ձևացրեց, թե իբր համաձայնվում է։ Երբ առաջարկությունը հաղորդեցին արքային, վերջինս, ցանկանալով տիրանալ քաղաքին, պարգևներ առաջարկեց այդ մարդուն և ժամանակ որոշեց, որում պետք է պայմանավորվեին այդ մասին։ Երբ հռոմայեցին նրա խոստումների համար երաշխիք պահանջեց, արքան նրա մոտ ուղարկեց մարդկանց, որոնք պետք է իր անունից պայմանավորվեին։ Բայց սա ասաց, թե ինքը ոչ մի կերպ չի համաձայնվի, եթե երդումներ չստանա անձամբ իր իսկ արքայի կողմից։ Իսկ թագավորն իր արքայական պատվին արժանի չէր համարում իջնել խրամատները։ Բայց քանի որ մատնիչը ուրիշ ոչ մի կերպ չէր համաձայնվում, իսկ քաղաքին տիրանալու խնդիրը շատ էր կարևոր, Միթրիդատեսը ստիպված եղավ համաձայնվել նրա պահանջներին։ Եվ թագավորը կընկներ նրա ձեռքը, եթե արքայի ընկերներից մեկը ճշտորեն չգուշակեր դավաճանությունը և չպատրաստեր համապատասխան մի հարմարանք, որը կարող էր արագ բացվել ու փակվել։ Երբ այդ մեքենան տեղադրեցին ստորգետնյա խրամատում և Միթրիդատեսն իր ընկերների հետ իջավ այնտեղ, հարյուրապետը իր հետ ունենալով նրանց, ովքեր պետք է հարձակվեին թագավորի վրա, ...մերկացրեց սուսերը և նետվեց դեպի արքան։ Սա հասցրեց դուռը փակել և խուսափեց վտանգից։

## Գիրք XL

4 Պոմպեոսը[457] Ասիայում կատարած իր բոլոր գործերը (տախտակի վրա) շարադրելով, այն թողեց իբրև ընծայաբերում. այդ շարադրանքի պատճենը հետևյալն է. «Պոմպեոս Մեծ, Գնայոսի որդի, իմպերատոր, որը օյկումենեի ծովափը և օվկիանոսում գտնվող բոլոր կղզիները ծովահեններից ազատեց, որը մի ժամանակ փրկեց Արիոբարզանեսի[458] թագավորությունը պաշարումից, ինչպես նաև Գալատիան և նրանից վերև գտնվող երկրներն ու պրովինցիաները՝ Ասիան և Բիթյունիան, որը պաշտպանեց Պափլագոնիան ու Պոնտոսը, Հայաստանը և Աքայան[459], ինչպես նաև Իբերիան, Կոլխիսը, Միջագետքը, Սոփենեն, Գորդյուենեն, որը հպատակեցրեց Մեդիայի թագավոր Դարեհին, իբերների թագավոր Արտոլեսին[460], հրեաների թագավոր Արիստոբուլոսին, Նաբատեյան արաբների թագավոր Արետասին և Կիլիկիայի սահմանակից Սիրիան, Հրեաստանը, Արաբիան, Կյուրենայկե պրովինցիան, աքայացիներին, յողյուգներին, սուաններին, հենիոքներին և Կոլխի-

սի և Մայոտիս լճի միջև ընկած ծովափին բնակվող Մյուս ցեղերին, նրանց թագավորներով հանդերձ, Թվով ինր և Պոնտական ու Կարմիր ծովերի միջև բնակվող բոլոր ազգերին, որը (Հռոմի) գերիշխանության սահմանները հասցրեց մինչև երկրի ծայրերը և հռոմայեցիների եկամուտները պահպանեց և երբեմն էլ դրանք ավելացրեց, որը Թշնամիներից գրավելով աստվածների արձանները և պատկերքը և այլ զարդարանքներ, նվիրաբերեց աստվածուհուն[45] մեկ բյուր և երկու հազար վաթսուն տաղանդ ոսկի և երեք հարյուրյոթ տաղանդ արծաթ»։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Բնագրում՝ Σέσωστρις, Հերոդոտոսի (II, 102 և հաջ.), Ստրաբոնի (XV, c. 687) և այլ հույն հեղինակների մոտ՝ Σεσόωσις (Սեսովստրիս)։ Սա Եգիպտոսի Ռամզես II փարավոնն է (մ. թ. ա. 1283—1217 թթ.), հայտնի իր նվաճումներով ու ռազմական արշավանքներով, ինչպես նաև խեթերի դեմ մղած պատերազմներով։

2 Չշփոթել այժմյան Կարմիր ծովի հետ։ Այդ անվան տակ անտիկ հելլեններն, ընդհանրապես, հասկանում էին Հնդկաց օվկիանոսը, իսկ Դիոդորոսը, մասնավորապես, Պարսից ծոցը։

3 Հնում հույները Տանայիս կոչում էին այժմյան Դոն գետը։

4 Այստեղ, ըստ երևույթին, Դիոդորոսը նկատի ունի պատմահայր Հերոդոտոսի համապատասխան վկայությունը (Herod., II, 103—105)։ Հերոդոտոսը Սեսոստրիսին շփոթել է Եգիպտոսի փարավոն Պսամետիքոս 1-ի հետ, որը պատերազմել է սկյութների և թրակիացիների դեմ Պաղեստինում, բայց երբեք չի արշավել սկյութների երկիրը։ Այս նույն շփոթը նկատելի է նաև Դիոդորոսի մոտ։

5 Հնում Մայոտիս լիճ էր կոչվում այժմյան Ազովի ծովը։

6 Նինոսը թագավորել է Ասորեստանում մ. թ. ա. XIII դարի առաջին կեսին և, իր կնոջ՝ Շամիրամի հետ, համարվում է Ասորեստանի հզորության հիմնադիրը։ Այդ իսկ պատճառով Նինոսի և Շամիրամի կերպարները հնագույն ավանդությամբ ստացել են առասպելական բնույթ։

7 Դիոդորոսը նկատի ունի Աքեմենյան թագավորներին։

8 Այստեղ խոսքը Սելևկյան թագավորների մասին է, որոնք Ալեքսանդր Մակեդոնացու հետնորդներն էին։

9 Արմենիա ասելով, անշուշտ, Դիոդորոսը, ինչպես նաև այս անցքերի համար նրան աղբյուր ծառայող Կտեսիաս Կնիդացին, նկատի ունի Հայկական լեռնաշխարհը իբրև աշխարհագրական հասկացողություն, որտեղ դեռևս նկարագրվող դեպքերի ժամանակ չկար Արմենիա պետական կազմավորումը։ Հայկական լեռնաշխարհում դեռևս կազմավորված չէր նույնիսկ Ուրարտական պետությունը։ Ակնհայտ է, որ տվյալ դեպքում Դիոդորոսը արդեն բոլորին հայտնի հետագայի անվանումը վերագրում է մ. թ. ա. XIII դարին։ Սա, թվում է, ընդունված եղանակ է Դիոդորոսի համար, քանի որ նա, խոսելով այլ երկրների, ինչպես, օրինակ, նույն պարբերության մեջ Բաբելոնիայի մասին, երկրի բնակիչներին անվանում է բաբելոնացիներ, թեպետև, ինչպես ինքն իսկ նշում է, «այդ ժամանակ այժմյան Բաբելոնը դեռևս չէր կառուցվել»։ Ինչպես տեսնում ենք, այս դեպքում ևս Դիոդորոսը պատմական հետագա շրջանի անվանումով բնորոշում է իր համար առավել անհայտ հին շրջանը։

10 Սատրապ (σατράπης), հին պրսկ. xšatrapa բառի հունականացրած ձևն է և նշանակում է՝ «աշխարհապահ, աշխարհակալ»։ Ինչպես տեսնում ենք, Դիոդորոսը այստեղ ևս, հնագույն պատմական դեպքերը նկարագրելիս, օգտագործում է ավելի ուշ, ասենք՝ Աքեմենյանների և նրանցից հետո ընկած ժամանակաշրջանին բնորոշ հասկացություններ։

11 Բակտրիա, այժմ՝ Բալխ, երկիր՝ Պարսկաստանի ծայր հյուսիսում, Օքսոս գետի միջին, վտակների հովտում։

12 Կտեսիաս Կնիդացու մասին տե՛ս սույն հատորի առաջաբանը։

13 Այս նշված երկրները, բացի Եգիպտոսից, Փյունիկեից և Կոյլե Սիրիայից, գտնվել են Փոքր Ասիա թերակղզում։

14 Թվարկված այս ցեղերը բնակվելիս են եղել իրանական սարահարթում, զբաղեցնելով Հայկական լեռնաշխարհի հարավարևելյան մատույցներից սկսած մինչև Սոդիանե, Բակտրիանե և Արաքոսիա ընկած հսկայական տարածությունը։

15 Հայ մատենագրության մեջ համապատասխանաբար՝ Պարսք և Շոշաստան։

16 Օյկումենե ( οἰκουμένη ) կոչում էին հույները հին ժամանակ իրենց հայտնի բնակեցված աշխարհամասը։ Բառացի նշանակում է՝ «բնակեցված»։

17 Խոսքն այստեղ Նինոս թագավորի կառուցած Նինվե կամ Նինոս քաղաքի մասին է։ Ինչպես տեսնում ենք, Դիոդորոսը, ավելի ճիշտ՝ նրա աղբյուրը, որը հավանաբար Կտեսիասն է, սխալմամբ այն տեղադրում է Եփրատ գետի վրա, մինչդեռ, իրականում, Նինվե քաղաքը գտնվել է Տիգրիս գետի արևելյան ափին (Strabo, XVI, 1, 3)։

18 Ասպարեզ (բնագրում՝ σταδίων — ստադիոն). հունական տարբեր քաղաքներում ասպարեզն ունեցել է տարբեր երկարություն, ամենատարածվածը՝ ատտիկյան ասպարեզը, հավասար էր 177 մետրի։

19 Սեմիրամիսը հայկական ավանդության Շամիրամն է։ Հին աշխարհում նրա անվան շուրջ ստեղծվել են բազմաթիվ և բազմազան առասպելներ, որոնց մի ռասլի մասն էլ կապված է հայկական միջավայրի հետ. հիշենք Խորենացու մոտ պահպանված՝ Շամիրամի մասին պատմող հատվածները։ Դիոդորոսի այս և հետագա հատվածներում նկարագրված շատ դեպքեր ևս, հավանաբար, պիտի վերագրել առասպելական Շամիրամին։ Այսուհանդերձ, ուսումնասիրողներն իրավացի կերպով գտնում են, որ Շամիրամի առասպելական կերպարի հիմքում ընկած է պատմական Սամմու-րամատի անձնավորությունը, որը թագավորության թագուհի-խնամակալն էր իր որդու՝ Ադադ-Նիրարի III-ի (811—782 թթ.) գահակալության սկզբնական տարիներին։ Հետագա դարերի ընթացքում նրա անվան հետ են կապվել սեմական Աստարգատես (Ատարատես, Աշտար)—Դերկետո դիցուհուն բնորոշ շատ գծեր։

20 Նույն դիցուհու պաշտամունքի մասին գրում է նաև Քսենոփոնը, որի համաձայն, սակայն, դիցուհու տաճարը գտնվում էր ոչ թե Ասկալոնում, այլ Բոմբիկե քաղաքում, Խալոս գետի մոտ, Եփրատից ոչ հեռու. նա գրում է. «...Կյուրոսն առաջ ընթացավ... մինչև Խալոս գետը, մի պլեթրոն լայնքով, հարուստ խոշոր և ազնիվ ձկներով, որոնց սիրիացիները աստվածներ են համարում և թույլ չեն տալիս ոչնչացնել դրանց, ինչպես և աղավնիներին» (Xenoph., Anabasis, I, IV, 9):

21 Բնագրում՝ σατράπης (հյուպարքոս)— բառացի նշանակում է՝ ստորադրյալ պաշտոնյա, տեղապահ, փոխանորդ։

22 Հյուապատես ( Ὑστάσπης ) և Հյուդասպես ( Ὑδάσπης ) անունները ավելի շուտ իրանական են, մինչդեռ, թվում է, թե Սեմիրամիսի որդիները պետք է կրեին սեմական անուններ. այս անհամապատասխանության պատճառը, հավանաբար, Դիոդորոսի օգտագործած աղբյուրն է (այս դեպքում՝ Կտեսիասը), որը շարադրված է եղել իրանական միջավայրում՝ Աքեմենյանների արքունիքում։

23 Այս հատվածում Դիոդորոսի հաղորդումը, հավանաբար, ճիշտ չէ, քանի որ մանգաղակիր մարտակառքերը երևան են եկել շատ ավելի ուշ, քան ավյալ հատվածում նկարագրված դեպքերը։ Քսենոփոնը (շուրջ 435—356 թթ.) իր «Կյուրոպեդիա» երկում (գիրք 6, գլ. 1. 30) պատմում է, թե սովորական ռազմակառքերը առաջին անգամ Կյուրոս Մեծի ժամանակ (մ. թ. ա. VI դ. կես) վերածվեցին մանգաղակիր ռազմակառքերի, յուրաքանչյուր կողմից ռազմակառքի առանցքի վրա ամրացնելով մոտ մեկ մետր երկարությամբ երկաթե մանգաղներ։

24 Դարեհ Ա. Վշտասպյանը (521—486 թթ.) համարվում է Աքեմենյան Պարսկաստանի հզորության հիմնադիրը։

25 Դարեհ Ա-ի այս արշավանքը սկյութների դեմ տեղի է ունեցել մ. թ. ա. 512 թ., այն մանրամասն նկարագրել է Հերոդոտոսը (VI, 87), որի պատմելով Դարեհի զորքի թիվը հասնում էր 700 հազարի, ներառյալ նաև նավատորմը։

26 Քսերքսեսը, Դարեհի որդին, թագավորել է 486—465 թթ., նրա արշավանքը Հունաստան տեղի է ունեցել մ. թ. ա. 480 թ., որի ժամանակ մղվեց հայտնի Թերմոպիլեի ճակատամարտը։

27 Դիոնիսիոս Սիրակուսացին մ. թ. ա. V դ. վերջին IV դ. սկզբին իշխում էր Սիրակուսա քաղաքում և երկար պայքար է մղել կարթագենացիների դեմ։

28 Բնագրում՝ τετρήρεις և πεντήρεις. սրանք խոշոր ռազմանավեր էին, որոնց թիակները սեղադրված էին համապատասխանաբար՝ 4 և 5 շարքով, սրանց յուրաքանչյուրի անձնակազմը, ըստ Պոլիբիոսի (մ. թ. ա. II դար) բաղկացած էր շուրջ 300 թիավարներից և 120 սավազներից։

29 Այստեղ խոսքը Պունիկյան 2-րդ պատերազմին (218—201 թթ.) նախորդած տարիների մասին է։

30 Մեդացիների և պարսիկների զգեստը որոշակիորեն տարբերվում էր հին հունականից. այն բաղկացած էր գլխի համար կնգուղից, երկար մի վերնազգեստից, որի թևերն իջնում էին ձեռքերի վրա, տաբատից և երկարաճիտ կոշիկներից։ Ստրաբոնը (XI, 13,9) ընդհանրապես այդ զգեստի մասին հույների տածած արհամարհանքն է արտահայտում, ասելով, որ պարսիկները «հանդուրժում են հագնել կանացի զգեստներ, փոխանակ մերկ կամ թեթև հագնված շրջելու և իրենց ամբողջ մարմինը ծածկում են զգեստներով»։

31 Խորենացու (Ա,ժէ) մոտ՝ Նինուաս։ Գրաբարյան այսպիսի գրությունը և արտասանությունը առավել ճիշտ է համապատասխան հունարեն բնագրի Νινύας (Նինյուաս) ձևին։

32 Օնեսիկրիտոսը եղել է Ալեքսանդր Մակեդոնացու ուղեկիցներից և գրել է նրա Ասիական արշավանքների պատմությունը, որը, դժբախտաբար, չի հասել մեզ։

33 Նինվեի պարիսպների երկարությունը Հերոդոտոսը (I, 178) հաշվում է 480 ասպարեզ, իսկ Ստրաբոնի մոտ (XIV, 1,5) այն 385 ասպարեզ է. հավանաբար այս վերջին թիվը ձեռագրական աղավաղում է և պետք է այն նույնպես ուղղել 365։

34 Գրկաչափ (բնագրում՝ ὀργυιά) — երկարության չափ, որը հավասար էր ասպարեզի հարյուրերորդ մասին՝ շուրջ 1,85 մ.։

35 Կանգուն (πῆχυς) — հունական երկարության չափ, որը հավասար էր 1/4 գրկաչափի՝ 24 մատնաչափի։ Կար նաև «արքունի կանգուն», որը հավասար էր 27 մատնաչափի։ Հերոդոտոսի պատմելով (I, 178) այս պարիսպների բարձրությունը եղել է 200 արքունի կանգուն, որը հավասար է շուրջ 100 մետրի։

36 Պլեթրոն— երկարության չափ, որը հավասար է 30.8 մետրի։

37 Ակնհայտ է Դիոդորոսի այս նկարագրության նմանությունը Խորենացու մատյանում պահպանված Վան քաղաքի շինարարության նկարագրությանը, որը պատմահայրը նմանապես նույնպես վերագրում է Շամիրամին։ Ահա Խորենացու այդ հատվածը.

«Ապա յետ անկկառոյց լեալ այրասիրտն այն և կաթոտն Շամիրամ, հրաման տայ բերուլ ի երկու հազար արանց անարուեստից գործաւորաց յասորեստանեայց և յայլոց իշխեցելոց, և վեց հազար իւրոյ ընտրելոց յամենայն արուեստաւոր գործաւորաց փայտի և քարի, պղնձոյ և երկաթոյ, որք ամենեքին կատարեալք իցեն ի յարուեստագիտութեան, ածել անխափան ի փափագեալ տեղին. և գործն հաւասար հրամանին անույր գկատարումն։

Ու վաղվաղակի ածեալ լինէին բազմութիւն խառնիճաղանճ գործաւորացն և բազմարուեստից հանճարեղաց իմաստնոցն։ Եւ հրամայէ նախ դամբարտակ դնտոյն ապառաժիւք և մեծամեծ վիմօք շինել, կրով և աւազով մածուցեալս, անրաւ լայնութեամբ և բարձրութեամբ. որ կայ հաստատուն, որպէս ասեն, մինչև ցայսօր ժամանակի։ ...Եւ թէ զփորձ առնուլ դէպ ումեք լինիցի, և ոչ իբր պարսատիկաց քար մի արժանաւոր ի շինուածոյ ամրարտակին խլել ոք զօրեսցէ։ Եւ ի հեղուածս արուեստին՝ որ զքարամբքն՝ հայեցեալ ուրուք, որպէս ձարպոյ ինչ հեղման հայեցողացն երևեցուցանէ կարծիս։ Եւ այսպէս ընդ բազում ասպարէզս անցուցեալ զամբարտակն, հասուցանէ ի նկատեալ տեղի քաղաքին։

Անդ հրամայէ զամբոխն ի բազում դասս որոշել. և ի վերայ իւրաքանչիւրոց դասուց ընտիրս ի ճարտարացն վարդապետս կարգել. և այնպէս ի սաստիկ ճգնութեան պահեալ, յետ սակաւ ամաց կատարէ զհրաշալին ամրացուցիչ պարսպօք. հանդերձ դրամբք պղնձակերտիւք։ Շինէ և ընտիր ընտիրս և բազումս ի մէջ քաղաքին ապարանս ի պէս պէս քարանց և ի գունից զարդարեալս, կրկնայարկս և եռայարկս... և գեղեցիկ գունիւք և ընդարձակ փողոցիւք պկողմանս քաղաքին որոշելով։ Շինէ զչքնաղս ռմանս և զզարմանալոյ արժանաւորս ըստ պիտոյից ի միջոցաց քաղաքին լուալիս։ Եւ զմասն ինչ գետոյն ընդ մէջ քաղաքին բաշխեալ գնացուցանէ ի պէտս ամենայն պիտոյից, և յարբուցմունս բուրաստանաց և ծաղկոցաց. և զայլն զեզերբ ծովակին յաջմէ և յահեկէ, քաղաքին և բովանդակ շրջակային յարբուցումն։ Եւ զամենայն արևելեան և զհիւսիսային և զհարաւային կողմունս քաղաքին զարդարէ դաստակերտօք, և սաղարթիւք ծառոց վարսաւորաց՝ զանազանեալք ի պտուղս և ի տերևս. և բազումս բազմարբերս և ի նմա տնկեաց որթս։ Եւ զամենայնիւ հոյակապ և հռչակաւոր զպարսպեալն յօրինէր. և անթիւ բազմութիւն մարդկան ի ներքս բնակեցուցանէ» (Մ. Խորենացի. Ա, ԺԶ)։

38 Բարեկամ (հուն. φίλος —բառացի նշանակում է՝ սիրելի, բարեկամ)։ Անտիկ աշխարհում, հատկապես հելլենիստական տերություններում այդպես էին կոչվում թագավորի անմիջական բարեկամները, մերձավորները, որոնց միջից էլ թագավորն, ընդհանրապես, ընտրում և նշանակում էր իր բարձրաստիճան պաշտոնյաներին։

39 Սա գրավոր աղբյուրներում վկայված առաջին քարակերտ կամուրջն է. դրա մնացորդները հայտնաբերվել են հնագետների կողմից։ Նաբուքադրեզարը իր թողած արձանագրություններից մեկում այդ կամրջի կառուցումը վերագրում է իր հորը՝ Նաբոպալասարին (տե՛ս R. Koldwey, The Excavations at Babylon (english translation) pp. 197—199)։ Այս կարգը առանձնապես ընդունված էր Սելևկյանների արքունիքում, բայց նկատելի է նաև հելլենիստական Պերգամոնում, Պոնտոսում և այլն։ Այստեղ ևս φίλος-ները զբաղեցրել են բարձրագույն պետական պաշտոններ։ Այսպես, Ստրաբոնը գրում է. «Միհրդատ Եվպատորը այնքան հզորացավ, որ (Կոլխիդա) երկիրը նրան անցավ։ Որպես երկրի հյուպարքոս և կառավարիչ մշտապես ուղարկվում էր ընկերներից (τῶν φίλων) մեկը։ Սրանցից էր և Մոափեռնեսը, մորս հորեղբայրը» (Strabo, XI 2,18)։ Այս մասին տե՛ս նաև Ա. Մ. Կրկյաշարյան, Բդեշխությունների առաջացումը Հայաստանում, «Պատմա-բանասիրական հանդես» 1966, № 4, էջ 257-262։

40 Ոտնաչափ (հուն. πούς —ոտք) —հավասար է 30,8 սանտիմետրի։

41 Բաբելոնացիների Բել-Մարդուկ աստվածը հելլեններին հայտնի էր Զևս-Բելոս անունով։ Սա հայկական Բելն է, Աստվածաշնչի Բաաղը։

42 Այս նկարագրությունը հիշեցնում է E-temen-ana-ki-ի մեծ զիգգուրատը։ Հերոդոտոսի պատմելով (1, 181), այն ունեցել է ութ հարկ։ Այս կառույցի բարձրությունը եղել է մոտ 300 ոտնաչափ և ժամանակի ընթացքում դրա շուրջը հյուսվել է աշտա-

րակաշխնության մասին Աստվածաշնչում (գիրք Ծննդոց, ԺԱ) հիշատակված գրուցատաշտարակը (տե՛ս The Cambridge Ancient History, vol. I, էջ 503 և հետ.)։

43 Զևս-հունական դիցարանության գերագույն աստվածը, օլիմպոսյան աստվածների հայրը, համապատասխանում է հայկական դիցարանի Արամազդին։ Հերա—Զևսի քույրը՝ Կրոնոսից ու Հռեայից և նրա կինը։ Հռեա-աստվածների մեծ մայրը, որը ծնել էր Զևսին, Պոսեյդոնին, Հադեսին, Դեմետրին, Հերային։ Փոքր Ասիայում նա նույնացված էր Կյուբելեին։

44 Բնագրում՝ τὸ μῆκος —բառացի նշանակում է՝ երկարությունը. մենք թարգմանեցինք՝ բարձրությունը, քանի որ այստեղ իրոք խոսքը ոչ թե արձանի երկարության մասին է, այլ բարձրության։

**45** Տաղանդը ( τάλαντον ) սկզբնապես եղել է ծանրության չափի միավոր։ Ատտիկյան տաղանդը կշռել է 26,2 կգ։ Հետագայում տաղանդը դարձել է նաև դրամի խոշոր միավոր, որը համասար էր 60 արծաթ մինայի։ Բաբելոնյան տաղանդը համասար էր 100 մինայի, այսինքն՝ ատտիկյան տաղանդի նկատմամբ գտնվում էր 5։3 հարաբերության մեջ և կշռել է մոտ 44 կգ։

46 Բնագրում καρχήσιον —կարքեսիոն։ Այդ տիպի բաժակների իրանը ավելի նեղ էր, որը լայնանում էր և՛ դեպի բերանի մասը, և՛ դեպի հատակը։

47 Կրատեր (բառացի նշանակում է՝ խառնարան) կոչում էին հելլեններն այն երկունկանի անոթը, որի մեջ գինին խառնում էին ջրով։ Հելլենների մոտ նման անոթները շատ էին գործածական, քանի որ նրանք գինին անխառն խմելու սովորություն չեն ունեցել։ Դիոդորոսի այս հատվածում նշված հսկա կրատերները, հավանաբար, ծառայում էին որպես կուռքի խառնարաններ և օգտագործվել են պաշտամունքային նպատակներով։

48 Բաբելոնը մ. թ. ա. 539 թ. նվաճել է Կյուրոս Մեծը (559—529 թթ.)։

49 Բնագրում՝ Σύρου —սիրիացու. պետք է, հավանաբար, լինի Ἀσσυρίου —ասորեստանցու։ Դիոդորոսը այս դեպքում շփոթել է Սիրիան և Ասսիրիան։

50 Այս կինը, իրականում, ունեցել է ոչ թե պարսկական, այլ մարական ծագում (տե՛ս Josephi Flavii Contra Apionem. I, 141)։

51 Այս «կախյալ պարտեզները» իրականում կառուցել է բաբելոնյան թագավոր Ներուկադրեզարը (605—562 թթ.) իր կնոջ՝ մարական իշխանուհի Ամյուհիայի համար։ Այս մասին հաղորդում է նաև հրեա մատենագիր Հովսեպոս Փլավիոսը ( Jos. Flavii Contra Apionem. I, 141)։

52 Պարետակենե անունով հայտնի են երկու մարզ. առաջինը գտնվում էր Մեդիայի և Պարսկաստանի սահմանում, իսկ երկրորդը՝ Օքսոս և Յաքսարտես գետերի միջև, ներառնելով Բակտրիան և Սոգդիանեն։ Տվյալ դեպքում խոսքը վերաբերում է առաջինին։

53 2500 ասպարեզ=շուրջ 450 կմ։ Եթե Դիոդորոսի հաղորդումը ճիշտ է, ապա այն պետք է վերաբերի Եփրատ և Տիգրիս գետերի վերին հոսանքների միջև եղած տարածության։

54 Տե՛ս ծանոթ. 2։

55 Այստեղ Դիոդորոսը, մեր կարծիքով, նկատի ունի Հայկական Տավրոսի լեռները։

56 Բնագրում՝ ὀβελίσκος —օբելիսկ։

57 Հերոդոտոսի (I, 179) պատմելով, այդ վայրը գտնվում էր Բաբելոնից 8 օրվա ճանապարհի հեռավորության վրա, Եփրատի վտակ Իս գետի ակունքի մոտ։

58 1971 թ. հին Արտաշատի պեղումներից բավական քանակությամբ հայտնաբերվեց այդպիսի չորացրած կուպր։

59 Սա, ինչքան մեզ հայտնի է, այժմյան Բեհիստունի վաղագույն հիշատակությունն է մատենագրության մեջ։ Դիոդորոսի մոտ պահպանվել է այդ անվան հնագույն ձևը՝

Բագիստան. Հունարենին հատուկ «-ոն» վերջավորությամբ։ Այն բառացի նշանակում է՝ «աստվածների վայր»։ Բեհիստունի ժայռը հայտնի է Աքեմենյան Դարեհ I Վշտասպյանի՝ 516 թ. այնտեղ թողած եռալեզվյան (հին պարսկերեն, էլամերեն, բաբելերեն) սեպագիր մեծ արձանագրությամբ, որը ոչ միայն ունի խոշոր պատմական նշանակություն, այլև դարձել է բանալի սեպագիր արձանագրությունների վերծանման համար։

60 Ինչպես տեսնում ենք, Դիոդորոսը սեպագրերը համարում է սիրիական տառեր (պետք է լինի՝ «ասորիական»)։ Հետաքրքիր է նշել, որ Մովսես Խորենացին ևս (Ա, ԺԶ) Վանում պահպանված ուրարտական սեպագիր արձանագրությունները սխալմամբ վերագրում է նույնպես Շամիրամին։ Խորենացին, հավանաբար, իր պատմության այս հատվածները շարադրելիս օգտվել է Դիոդորոսից։

61 Դիոդորոսի այս սխալ հաղորդման աղբյուրը համարվում է հույն մատենագիր Կտեսիասը՝ Կնիդացին։ Զարմանալի է, որ վերջինս, թեպետև եղել էր պարսից Արտաքսերքսես II թագավորի (մ. թ. ա. 404—358 թթ.) բժիշկը և ապրել էր նրա արքունիքում, չգիտի ոչ միայն Բեհիստունի արձանագրության բովանդակությունը, այլև այն, որ դրա հեղինակը իրեն հովանավորող Արտաքսերքսես թագավորի նախնին է՝ Դարեհ Վշտասպյանը։

62 Եկբատանա (այժմ՝ Համադան) — Մեդական հնագույն քաղաք, որը մ. թ. ա. VII դարում եղել է Դեյոկեսի գլխավորությամբ կազմակերպված մեդական ցեղերի ուժեղ միավորման քաղաքական կենտրոնը։ Հետագայում դառնում է պարսկական տերության վարչական և առևտրական խոշոր կենտրոններից մեկը։

63 Սա Զագրոսյան լեռնաշղթան է։

64 Պերսիս կոչվում է Պարսկաստանի կենտրոնական մասը։

65 Այս նկարագրություններով Դիոդորոսը պարզապես փորձում է բացատրել այդ վայրերում պահպանված բազմաթիվ հողաթմբերի գոյության փաստը, որոնք, իրականում, հնագույն բնակավայրերի ավերակներն են։

66 Ամմոնի պաշտամունքը տարածված էր Եգիպտոսում և Լիբիայում։ Հետագայում հունական մշակույթի ազդեցությամբ Ամմոնը նույնացվել է հունական Զևսին։ Ամմոնի տաճարը հին աշխարհում հայտնի պատգամատուն էր, որտեղ այցելում էին հին աշխարհի թագավորները պատգամ ստանալու համար։ Նույն նպատակով այդ պատգամատունն այցելել է նաև Ալեքսանդր Մակեդոնացին։

67 Խորենացին (Ա, ԺԷ) այսպես է պատմում Նինվասի ձեռքով Շամիրամի սպանության մասին. «Իսկ երբ Զրադաշտը տիկնոջ դեմ մի սխալանք գործեց, և մեջտեղը հակառակություն ընկավ, Շամիրամը նրա դեմ պատերազմ սկսեց, որովհետև մարացին մտադրվել էր ամենքի վրա բռնանալ։ Երբ պատերազմը սաստկացավ, Շամիրամը փախուստ տվեց Զրադաշտից և դիմեց Հայաստան։ Այստեղ Նինվասը վրեժխնդրության համար ժամանակ գտնելով՝ մորն սպանում է և ինքը թագավորում է Ասորեստանի Նինվեի վրա»։

68 Այս Աթենայոսի մասին մեզ ուրիշ ոչինչ հայտնի չէ։

69 Հետերա հին Հունաստանում կոչում էին անառակ կանանց։

70 Խորենացու մոտ (Ա, ԺԹ) Նինվասի և Սարդանապալոսի միջև թվարկված են 32 թագավորներ։

71 Սարդանապալոսը հայտնի է նաև Կոնոսկոնկոլեռոս (Խորենացու մոտ (Ա, ԺԹ)՝ «Սարդանապալոս, որ կոչվում էր Թոնոս Կոնկողեռոս») անունով։ Սա պատմական Ասուրբանի-պալ թագավորն է, Աստվածաշնչի Ասենափարը։

72 Դիոդորոսի այս վկայությունը Սարդանապալոսի՝ ասորեստանյան վերջին թագավորի՝ ցոփ և այլանդակ կենցաղի մասին, չի հաստատվում գրավոր աղբյուրներով, ոչ իսկ իր՝ Դիոդորոսի հետագա պատմածներով։ Ասորեստանի վերջին թագավոր Սին-

շար-իշխունը ասորեստանյան հզոր գահակալների արժանի հետնորդն էր, որը մեծ եռանդով պայքարեց կործանվող տերությունը պահպանելու համար (The Cambridge Ancient History, v. III. 128 և 296)։

73 Խորենացու մոտ (Ա, ԻԱ) Արբակեսի անունը հանդիպում է Վարբակես ձևով, որի դաշնակիցը պատմահոր մոտ ոչ թե քաղդեացի Բելեսյուսն է, այլ Պարույր Սկայորդին։

74 Այս և հաջորդ հատվածներում Դիոդորոսի պատմածների մեջ պատմական ճշմարտության կորիզն այն է, որ Նինվե քաղաքն ընկավ մեդական թագավոր Կիաքսարի և Քաղդեաստանի թագավոր Նաբոպալասարի միացյալ հարվածների հետևանքով։

75 Պափլագոնիա—մարզ Փոքր Ասիայի հյուսիսային ափին, Պոնտոսից արևելք, այժմյան Սինոպի շրջանում։

76 Բնագրում՝ χελώνη χωστρίς ։ Հունարեն χελώνη նշանակում է «կրիա» (լատիներեն՝ testudo)։ Սա շարժական հզոր տախտակամած էր, որի ծածկույթի տակ պաշտպանված սակրավորները մոտենում էին պարիսպներին և սկսում իրենց քանդման աշխատանքները։

77 Բնագրում՝ κριός (բառացի նշանակում է «խոյ»)։ Սա ևս հարվածող մեքենա էր, բաղկացած հսկա գերանից, որի հարվածող կողմի վրա ամրացված էր խոյի գլխի նման մետաղե հզոր պանդված։

78 Պարիսպներ քանդելու այդ պաշարողական մեքենաները սկսել են կիրառվել հելլենիստական և հռոմեական ժամանակներում։

79 Այս դեպքերը Խորենացին (Ա, ԻԱ) պատմում է հետևյալ կերպ. «Թողլով զոչ կարևորագոյնսն ի բանից, ասասցուք որ ինչ հարկաւորն է։ Վերջին սոցա՝ որք առ ասորեստանեաց թագաւորութեամբն, և որք ի Շամիրամայ կամ թէ ի Նինոսէ, զմերն ասեմ Պարոյր առ Սարդանապալլաւ։ Սա ոչ փոքր ինչ օգնականութիւն գտեալ ի Վարբակայ Մարէ, բառնալով զթագաւորութիւնն ի Սարդանապալլայ։

...Քանզի Վարբակէս գաւառաւ միջացի, ի փոքուէ կողմանց ծաղաց գաւառին ամրագունի, խորամանկագոյն ի կենցաղավարութեան և ի մարտս երեւեալ, ծանուցեալ յանմարդի բարս և զհեշտասէր թուլամտութիւն յուլութեան թուլոյն Կոնկողիռոյ, խտացուցանէ բարուցն և ձեռացն առատութեամբ ի քաջացն և ի պիտանեաց արանց բարեկամս. որով և աշխարհակալութիւնն Ասորեստանի առ այնու ժամանակաւ վարիւր յայտնապէս մեծաւ հաստատութեամբ։ Յինքն և զքաջն մեր նախարար յանդուցանէ զՊարոյր, թագաւորութեան ձև և շուք խոստանալով նմա. և բազմամբոխս յարի արանց, և որ ի տեղ նիզակի և յաղեղն և ի սուսեր աջողաձեռք։ Եւ այսպէս զթագաւորութիւնն ի Սարդանապալլայ՝ յինքն առեալ, տիրէ Ասորեստանի և Նինուէի։ Բայց այլ վերակացուս կարգեալ Ասորեստանի, փոխէ `զթագաւորութիւնն ի Մարս»։

80 Բանն այն է, որ Բելեսյուսը, իմանալով, որ Սարդանապալոսի պալատում պատրաստված խարույկի մոխիրների մեջ պետք է մնացած լինեին ամբողջ ոսկին և արծաթը, որոշում է այդ մոխիրը վերցնելով տիրանալ Սարդանապալոսի ամբողջ հարստությանը։

81 Հույները հնում «քաղդեացիներ» ( Χαλδαῖοι ) անվան տակ հաճախ հասկացել են Բաբելոնի քրմերին, որոնք զբաղվում էին նաև մոգությամբ և աստղաբանությամբ։ Տվյալ դեպքում Դիոդորոսը ևս այդ բառն օգտագործում է այս նույն իմաստով։

82 Խոսքը Սատուրն մոլորակի մասին է։

83 Այստեղ արևն ընդունված է որպես աստվածություն։

84 Համապատասխանաբար՝ Մարս, Վեներա, Մերկուրիուս, Յուպիտեր մոլորակները։

85 Բնագրում՝ Ζωδιακόν —գոտիակ։

86 Խոսքը պարսից Աքեմենյան վերջին թագավոր՝ Դարեհ III Կոդոմանոսի (մ. թ. ա. 336—330 թթ.) մասին է։

87 Սա Մեծն Ալեքսանդր Մակեդոնացին է (մ. թ. ա. 336—323 թթ.)։

88 Խոսքը Անտիգոնոս Միականու մասին է, որը Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո տիրեց նրա նվաճած երկրների մի մասի վրա։ Սպանվեց մ. թ. ա. 301 թ. Մակեդոնացու հետնորդների միջև վերջինիս նվաճած ընդարձակածավալ տիրույթները բաժանելու համար մղված Իպսոսի ճակատամարտում։

89 Մակեդոնացու զորավարներից Սելևկոս I Նիկատորը (մ. թ. ա. 312—281 թթ.) եղել է Սելևկյան թագավորության հիմնադիրը։

90 Բնագրում՝ σύστημα (սիստեմա), բառացի նշանակում է՝ դրություն, միավորում, իրավակարգ, կազմակերպություն։ Մենք այն թարգմանեցինք «դաս» բառով, քանի որ այստեղ խոսքը իրոք վերաբերում է քրմական դասին։

91 Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների մասին է։

92 Հույն խոշորագույն պատմիչ Հերոդոտոսը (485—425 թթ.) առաջինն է, որը հեղինակել է պատմական երկ բառիս իսկական առումով, ուստի և իրավացի կերպով նրան տրվել է «պատմահայր» անունը։ Նրա 9 գրքից բաղկացած մատյանը, որն ամբողջությամբ հասել է մեզ, հիմնականում բովանդակում է հելլենական աշխարհի և բարբարոսների հնագույն շրջանի 240 տարվա պատմությունը։ Այն սկսվում է հունական ավանդություններից, արագ անցնում է Լիդիական թագավորության պատմության, նկարագրում է Կրեսոսի գահակալությունը, սրա պարտությունը Կյուրոս Մեծից։ Այնուհետև անցնում է պարսկական տերության, սրա կողմից նվաճված երկրների ու ժողովուրդների պատմությանը, նկարագրում է Պարսկաստանի բարձրացումն ու հզորացումը։ Հերոդոտոսի նպատակն է եղել ոչ միայն նկարագրել կողմերի միջև տեղի ունեցած պատերազմները, այլև շարադրել նրանց ամբողջ պատմությունը։ Ուստի և նրա աշխատությունը սկյութների, եգիպտացիների, թրակիացիների, փռյուգիացիների, ասորեստանցիների, պարսիկների, և այլ ժողովուրդների մասին ազգագրական և այլ տեղեկությունների անհատնում շտեմարան է։ Հերոդոտոսի երկը անգնահատելի նշանակություն ունի հայ ժողովրդի պատմության հնագույն շրջանն ուսումնասիրելու համար։ Այն առաջին պատմական երկն է, որտեղ հավաստի տեղեկություններ կան Հայաստանի և արմենների մասին։ Այսպես, նրա պատմության մեջ տեղեկություններ կան Աքեմենյանների գերիշխանության տակ գտնվող Արմենիա սատրապության մասին, Արմենիայից դանձվող հարկերի մասին (III, 93), պարսկական բանակի կազմում արմենական զորքի, նրա զանդերձանքի մասին (VII, 73), ինչպես նաև Հայկական լեռնաշխարհի մյուս երկրների հետ ունեցած առևտրական կապերի մասին (I. 194) և այլն։

93 Աքեմենյան թագավոր Քսերքսեսը (մ. թ. ա. 486—464 թթ.), Դարեհ Վշտասպյանի որդին և հաջորդը, հայտնի է 480 թ. Հունաստանի վրա կատարած իր արշավանքով, որի ժամանակ Թերմոպիլեի ճակատամարտում և Սալամիսի նավամարտում հելլենները, կռվելով հանուն ազատության, իրենց փառքով պսակեցին։

94 Իրականության մեջ Հերոդոտոսի մոտ (I, 95) տարիների ղումարը ոչ թե 500 է, այլ 520։

95 Խոսքն այստեղ Փոքր Ասիայի առափնյա հունական պոլիսների՝ քաղաք-պետությունների և Միջերկրական ծովի մերձավոր արևելքում առաջացած տաճարային քաղաքների մասին է.

որոնք մինչև պարսկական տիրապետությունը ինքնավար միավորներ էին և այդպիսին մնացին հետագայում ևս։

96 Մեր կարծիքով, այստեղ Դիոդորոսը Կյուարսարեսին է վերագրում մարական թագավորության հիմնադիր Դեյոկեսի գործունեությունը (համտ. Հերոդոտոս. գիրք I, գլ. 96)։

97 Սա Խորենացու միջոցով մեզ հասած հայկական ավանդության Աժդահակն է (Մ. Խորենացի, Ա, իզ-իթ)։

98 Խոսքը պարսկական տերության հիմնադիր Կյուրոս Մեծի (մ. թ. ա. 550—524 թթ.) մասին է։ Սրա փառաբանմանն է նվիրված Քսենոփոն Աթենացու «Կյուրոպեդիա» հայտնի երկը։

99 Հին Հունաստանում թվագրումը կատարում էին օլիմպիադաներով, որոնք տեղի էին ունենում չորս տարին մեկ։ Առաջին օլիմպիական խաղերը տեղի են ունեցել մ. թ. ա. 776 թ.։ Տվյալ դեպքում մեզ հետաքրքրող տարեթիվը կլինի՝ 776—(16×4)+1= 776—65=711։

100 Աքեմենյան թագավոր Արտաքսերքսես II Մնեմոնը գահակալել է մ. թ. ա. 405—359 թթ.։

101 Սա պարսկական գահի հավակնորդ Կյուրոս Կրտսերն է, որի անհաջող արշավանքի առիթով ստեղծվել է մեզ համար բացառիկ նշանակություն ունեցող համաշխարհային պատմագրության գլուխգործոցներից մեկը՝ Քսենոփոն Աթենացու «Անաբասիս»-ը, որի հայերեն ամբողջական թարգմանությունը լույս տեսավ վերջերս (Քսենոփոն, Անաբասիս, թարգմանությունը և ծանոթագրությունները՝ Ս. Կրկյաշարյանի, Երևան, 1970)։

102 Բնագրում՝ διφθέρα —դիփթերա, բառացի նշանակում է՝ մորթի, գրելու մագաղաթ. ունեցել է նաև «դիրք, տարեգրություն» փոխաբերական իմաստը (համտ. պրսկ. «դաֆթար»)։

103 Խորենացու մոտ (Ա, իբ) մարաց (այն է՝ մեդական) թագավորների շարքը ունի նույն պատկերը՝ Վարբակես, Մոդակիս, Սոսարմոս, Արտիկաս. չեն հիշատակվում վերջին երկուսը՝ Արբիանոսը և Արտայոսը։

104 Կադուսիները ռազմաշունչ ցեղեր էին, որոնք բնակվում էին Ուրմիա լճի և Կասպից ծովի հարավարևմտյան ափերի միջև։

105 Սակերը Միջին Ասիայի տափաստաններում բնակվող վաչկատուն սկյութական ցեղեր էին։

106 Տե՛ս ծանոթ. 3 և 5։

107 Նման մի զրույց հաղորդում է նաև Հերոդոտոսը (IV, 10), որի համաձայն. սակայն, Զևսի փոխարեն իբրև հայր հանդես է գալիս Հերակլեսը, իսկ որդիներն են՝ Ագաթյուրսեսը, Գելոնոսը և Սկյութեսը։

108 Այստեղ, հավանաբար, Դիոդորոսը նկատի ունի Սև ծովի հարավային ափը։

109 Այս արշավանքի ժամանակ, որը տեղի է ունեցել մ. թ. ա. 630—625 թթ. միջև. սկյութները անցնելով Ուրարտուի և Սիրիայի վրայով, ավերեցին Պաղեստինը, բայց համաձայն Հերոդոտոսի (I, 105), նրանք Եգիպտոսից ետ քշվեցին Պսամմետիքոս փարավոնի կողմից։ Այդ ավերածությունների նկարագրությունը բերված է աստվածաշնչում (Երեմիա, Դ-Ե)։

110 Այստեղ նկատի է առնված Հնդկաց օվկիանոսը։

111 Սրանք հայ մատենագրության մեջ հիշատակված մասքութներն են։

112 Ստրաբոնը (XII, 3,9) սրանց անվանում է «սպիտակ սիրիացիներ» (λευκόσυροι)

113 Աղբյուրներում մի շարք տարբերակներ կան Կյուրոսի մահվան հանգամանքների մասին, բայց և բոլոր դեպքերում նշվում է, որ նա սպանվել է իր տերության արևելյան սահմաններում պատերազմ մղելիս (հմմտ. Herod, I, 214)։ Բացառություն է կազմում Քսենոփոնի «Կյուրոպեդիան», որը ավելի շուտ բարոյախոսական պատմավեպ է, քան զուտ պատմական երկ. այստեղ Կյուրոսը խաղաղ պայմաններում, շրջապատված իր սիրելիներով, նրանց մեջ մահանալուց առաջ զոհեր է մատուցում աստվածներին, խրատական երկար ճառով հրաժեշտ է տալիս իր որդիներին և բարեկամներին և փիլիսոփայական վերացականությամբ խոսում հոգու անմահության մասին։

114 Ամազոնները առասպելական կին ռազմիկներ են, որոնց մասին հելլեններր հյուսել են բազմաթիվ զրույցներ։ Այդ զրույցները պահպանվել են անտիկ հեղինակների մոտ (Հոմերոս, Պինդարոս, Էսքիլոս, Հերոդոտոս, Ստրաբոն)։ Ամազոնների հիմնական հայրենիքը համարվում էր Կովկասը։ Հունական արվեստում (խեցեղենի վրա կատարված նկարներում, որմնանկարներում) ամազոնները պատկերված են հատուկ ձևի տապարներով, որոնց նմանները հայտնաբերվում են Փոքր Ասիայում և Անդրկովկասում կատարվող հնագիտական պեղումների միջոցով։

115 Թերմոդոնտ— գետ Փոքր Ասիայում, թափվում է Սև ծով։

116 Արես— Հելլենների դիցարանում ռազմի աստվածը։

117 Ամազոն (Ἀμαζών) բառը, սովորաբար, ստուգաբանվում է հետևյալ կերպ. α = ժխտական մասնիկ, μαζός՝ μαστός (նշ. է՝ ստինք) բառի հնագույն ձևը, ուստի ἀμαζών նշ. է՝ անստինք։

118 Արտեմիսը հունական դիցարանում որսի աստվածն էր։ Տավրիսյան Արտեմիսի պաշտամունքը հայտնի է հույն ողբերգակ Եվրիպիդեսի «Իֆիգենիան Տավրիսում» ողբերգությունից։

119 Խոսքը Մեծ Մայր աստվածուհի Հռեա-Կյուբելեի մասին է, որի պաշտամունքը լայնորեն տարածված էր Փոքր Ասիայում։

120 Անտիկ հեղինակների վկայությամբ, Ղրիմում և Սև ծովի կովկասյան ծովափին բնակվող բարբարոսները հնագույն ժամանակներում սովորություն են ունեցել իրենց մոտ ափ ընկած օտար նավաբեկյալներին զոհաբերել իրենց աստվածներին։

121 Հելիոս= Արև. այս անունով պաշտվում էր արևի աստվածությունը։

122 Հնում Կոլխիս էր կոչվում այժմյան արևմտյան Վրաստանը։

123 Տավրիկե— Ղրիմի թերակղզու հնագույն անվանումը։

124 Եթե հավատանք հռոմեացի հեղինակ Օվիդիոսին (Metamorphosi, VII, 408 և հաջ.), բույսը, որից ստացվում էր ակոնիտոն կոչված թույնը, առաջացել էր այն լորձունքից, որ կաթկթել էր դժոխքի պահակ Կերբերոս շան բերանից, երբ Հերակլեսը նրան դուրս էր բերել դժոխքից։ Ուստի և ենթադրում են, որ այդ բույսը աճել է Սև ծովի ափին գտնվող Հերակլեա քաղաքի մոտ, որտեղ հելլենները տեղադրում էին դժոխքի՝ Հադեսի մուտքը։

125 Կիրկեն «Ոդիսականի» գործող անձերից է («Ոդիսական», երգ X)։

126 Ըստ Հոմերոսի (Ոդիսական, X, 135—574), Էա կոչվող այդ կղզում Կիրկեն զբաղվում էր կախարդությամբ և իր մոտ ափ դուրս եկած նավորդներին փոխակերպում խոզերի։

127 Այս հրվանդանը գտնվում էր Լատիումի ամենահարավային մասում։

128 Արգոնավորդներ կոչվեցին Յասոնն ու նրա ուղեկիցներն այն պատճառով, որ ոսկեգեղմ մորթին հափշտակելու համար դեպի Կոլխիս նավեցին Արգո նավով։

129 Յասոն— Թեսսալացի դյուցազն, որը գլխավորել է Արգոնավորդների արշավանքը։ Նրա ուղեկիցներից մեկի՝ Արմենոսի անվան հետ է կապված հայերի թեսսա-

լական ծագման մասին առասպել-վարկածը, որը պահպանվել է Ստրաբոնի մոտ (Strabo, XI, 4.8 և XI, 14, 12):

130 Աթամասը, հունական ավանդության համաձայն, հողմերի աստված էոլոսի որդին էր և բեովտական Օրքոմենոս քաղաքի տիրակալը։

131 Հելլեսպոնտոս բառացի նշանակում է Հելլեի պոնտոս, Հելլեի ծով։

132 Այստեղ խոսքը Սև ծովի մասին է։

133 Այս դեպքում Դիոդորոսը նկատի ունի Ταῦρος (տավրոս) բառի երկու իմաստը. մի դեպքում այն նշանակում է Տավրիկեի բնակիչ, մյուս դեպքում՝ ցուլ։

134 Δράκων (դրակոն)— նշանակում է թևավոր վիշապ. Դրակոն եղել է նաև ոսկեգեղմ մորթին պահպանող անձնավորության անունը։

135 Κριός (Կրիոս) բառացի նշանակում է խոյ։

136 Հերակլեսը հելլեն դիցաբանության ամենանշանավոր հերոսն է, որի շուրջը հյուսվել են բազմաթիվ առասպելներ, որոնցից ամենատարածվածի էությունը հետևյալն է. Հերակլեսը մոլեգնության պահին սպանում է իր որդիներին. իր ծանր մեղքը քավելու համար աստվածները կարգադրում են նրան գնալ Եվրիսթեսի մոտ և ծառայել նրան 12 տարի։ Այդ տարիների ընթացքում Հերակլեսը իր տիրոջ հրամանով կատարում է իր հայտնի 12 սխրագործությունները, որից հետո աստվածները նրան շնորհում են ազատություն։

137 Էգեսը, հերոս Թեսևսի հայրը, եղել է Աթենքի առասպելական թագավորներից մեկը։

138 Դիոդորոսի աշխատության այս 9-րդ գրքից մեզ հասել են սոսկ հատվածներ, որոնք հանդիպում են ավելի ուշ հեղինակների երկերում, այդ իսկ պատճառով Դիոդորոսի այս հատվածները որոշ չափով կրում են կցկտուր բնույթ։

139 Բնագրում՝ Κροῖσος —Կրոյսոս։ Մենք վերցրել ենք Խորենացու միջոցով ավանդաբար մեզ հասած այդ անվան Կրեսոս ձևը։ Թագավորել է մ. թ. ա. 560—546 թթ.։

140 Լյուդիա երկիրը գտնվում էր Փոքր Ասիայի արևմտյան հատվածում, Մյուսիայից հարավ, Կարիայից հյուսիս։ Աքեմենյան տիրապետության ժամանակ դարձավ սատրապություն, որի կենտրոնն էր Սարդես հայտնի քաղաքը։

141 Սոլոնը (մ. թ. ա. շուրջ 638—559 թթ.) եղել է աթենական պոետ, օրենսդիր և պետական խոշոր գործիչ, որի անվան հետ են կապված Աթենքում անցկացված մի շարք քաղաքական ռեֆորմներ։ Սոլոնը համարվել է հին աշխարհի «յոթ իմաստուններից» մեկը։

142 Սա Կյուրոս Մեծն է (մ. թ. ա. 559—529 թթ.)։ Կրեսոսի գերեվարումը տեղի է ունեցել մ. թ. ա. 546 թ.։

143 Այս մասին առավել մանրամասն պատմում է Հերոդոտոսը (I, 53 և հաջ.)։

144 Հին հույները որևէ մեծ գործ ձեռնարկելուց առաջ սովորաբար դիմում էին պատգամախոսին, աստվածների կամքն իմանալու։

145 Ալյուս—գետ Փոքր Ասիայում (այժմ՝ Կըզըլ ըրմաք)։

146 Հերմոս—գետ Լյուդիայի և Մյուսիայի միջև։

147 Դելփյան սրբավայրը, որը գտնվում էր Հելլադայի Փոկիս գավառում, Պառնասոս լեռան ստորոտին, նվիրված էր Ապոլլոնին և հայտնի էր իր պատգամատունով, որն ամենանշանավորներից մեկն էր։

148 Ըստ ավանդության, Կրեսոսի որդին ի ծնե համր է եղել։

149 Պյութիա ընդհանուր անունով կոչվում էին Դելփյան տաճարում գուշակություններ անող քրմուհիները։

150 Հերոդոտոսի հաղորդած ավանդության համաձայն (Herod., I, 85), Կրեսոսի համր որդու լեզուն բացվել է Սարդես քաղաքի գրավման օրը, երբ քաղաք ներխուժած

պարսիկներից մեկը, Կրեսոսին հալածելիս, պատրաստվում էր մերկացրած սուրը իջեցնել թագավորի գլխին։ Հորը սպառնացող մահվան վտանգին ի տես. տղայի լեզուն բացվում է և նա հանկարծ աղաղակում է. «Անօրեն, այդ ո՞ւմ ես սպանում. չե՞ս տեսնում, որ առաջդ Կրեսոս թագավորն է»։ Այս զրույցը գեղարվեստական ընդհանրացման մեծ ուժով օգտագործել է հայ նոր գրականության հիմնադիր Խ. Աբովյանը իր «Վերք Հայաստանի» վեպի հայտնի առաջաբանում։

151 Կրեսոսի և Կյուրոսի մասին Դիոդորոսի այս հաղորդումները բացառիկ նշանակություն ունեն Խորենացու «Պատմության» Բ գրքի ԺԴ գլխում պատմածները ճիշտ ըմբռնելու և մեկնաբանելու համար։ Այս հարցին մենք կանդրադառնանք առանձին։ Այստեղ բավարարվում ենք համեմատության համար մեջբերելով պատմահոր համապատասխան հատվածները.

«Զայս ասացեալ պատմագրացն Յունաց, ոչ միոյ կամ երկուց, այլ բազմաց. ընդ որ տարակուսեալ մեր՝ բազում խոյզ խնդրոյ արարաք։ Քանզի լսէաք ի պատմութեանց ոմանց՝ Կիւրոսի սպանեալ զԿրեսոս, և բարձեալ զթագաւորութիւնն Լիւդէացւոց։ ...Բայց քանզի բազումք են, որ ասեն զԿիւրոս մերոյ Արտաշիսի կալեալ, և ոճով իմն պատմեն, ես հաւանիմ։ Քանզի ասէ Պոլիկրատէս այսպէս. Վեհ ինձ Արտաշէս պարթև քան զՄակեդոնացին Աղեքսանդր, զի կալով յիւրում աշխարհին, իշխեաց Թեբայ և Բաբելոնի. և չև ընդ Ալիւսս գետ անցեալ, գլիւդականն սատակեաց զզօրս, և կալաւ զԿրեսոս. և յառաջ քան զԱսիայ հասանելն՝ յԱտտիկէ ղեկին քարոզեցաւ։ Աւաղ բախտին. միայն թէ ի տէրութեանն և ոչ ի փախստեան էր վախճանեալ։

Հանգոյն զմին ասէ Եւագարոս. Փոքր Աղեքսանդրի և Դարեհի պատերազմ առ Արտաշիսին բաղդատիլ. քանզի նոցայն ոչ փոշւոյն մաքուր երևէր լոյս տուրնջեանն, այլ սա ծածկեաց նետաձգութեամբն և ստուերացոյց զարեգակն, ձեռագործ գիշեր զմիջօրէի արարեալ։ Ոչ փախստեայ համբաւաբեր Լիւդացւոցն թողեալ, այլ և զթագաւորն նոցին զԿրեսոս ի տապակի հրամայեաց կացուցանել։ ...Ընդ այս ոչ հպարտացեալ, այլ արտասուեաց ասելով. Աւաղ փառացս անցաւորի։

Դրէ և Սկամադրոս այսպէս. Խարկանք լինէին հպարտացելոցն Լիւդացւոց. Կրեսեայ Պիւթիայ հարցուկն պատասխանելով. Կրեսոս անցեալ ընդ Ալիւսս գետ քակեսցէ զիշխանութիւնս։ Զոր նորա զօտարաց կարծեցեալ, զիւրն քակէ. քանզի կալեալ զնա պարթևին Արտաշիսի, հրամայեաց հանել յերկաթեղէն տապակ։ Իսկ Կրեսոսի յիշեալ զբան Սողոնի աթենացւոյ, ասե յիւր լեզուն. Ով Սողոն, գեղեցիկ բարբառեցար, ոչ երանել զբարեբախտութիւն մարդոյ մինչև ցվախճան։ Եւ լուեալ որ մերձն կային, պատմեցին Արտաշիսի, եթէ զնոր ոմն աստուած կարդայ Կրեսոս։ Եւ գթացեալ Արտաշիսի, հրամայեաց ածել. և հարցեալ և ուսեալ, թէ զինչ է որ աղաղակեացն, հրամայեաց ներել զտանջանսն։

Գրէ և Փղեգոնիոս. Ամենայն թագաւորաց հզօրն եղեալ պարթևն Արտաշէս, և ոչ միայն զԼիւդացիս վանեալ և զԿրեսոս կապեալ, այլ յՈլէսպոնտոս և ի Թրակէ զտարեբրացն փոխեաց զընութիւն. ծովագնաց ընդ երկիր ըերեալ լինէր, և ընդ ծով հետևակելով. Թետաղացւոցն սպառնալով, և համբաւն հիացուցանէր զՀելլենականն։ Կործանեաց զլակեդեմոնացիս, փախոյց զփոկէացիս, զովկրացիք անձնատուրք եղեն, Բիւտացիք մասն են ի կազմածոյ նորա. առ հասարակ նմա Ելլադայ մատուցանէր զահն։ Յետ փոքու ժամանակի աղէտք անցին զամենեքումբք, ոչ այնքան թշուառացաւ Կիւրոս ընդ Մասքութս պատերազմելով, ոչ այսպիսի կիրս կրեաց Դարեհ ի սկիւթացւոցն սլահուստ. և ոչ Կամբիւսէս յեթովպացիս. փոքր և Քսերքսին յԵլլադայ զօրու երթալն, թողլով նոցա զվանս և զխորանս, միայն կենդանի փախուցեալ մազապուր։ Այլ սա մեծամեծ յաղթականօք սպանծացեալ, ի յիւրոց զօրացն խողխողի։

Արդ ես հաւատարմութեան արժանի համարիմ զայսոսիկ պատմութիւնս. և զայն Որեսոս. որ առ Կիւրոսիւ և կամ Նեքտանեբաւն պատմին, կամ սուտ լինել և կամ միով անուամբ բազում թագաւորաց վարել, որպէս յոլովից է սովորութիւն»

152 Օյկումենե (Տե՛ս ծանոթ. 16)։

153 Խոսքը մ. թ. ա. 465 թ. մասին է։

154 Աքեմենյան Արտաքսերքսես I-ը, Քսերքսեսի որդին, գահակալել է մ. թ. ա. 465—425 թթ.։

155 Սա Աքեմենյան Դարեհ II Նոթոսն է (423—404 թթ.)։

156 Խոսքը Պելոպոնեսյան պատերազմից (431—404 թթ.) հետո Սպարտայի և Աթենքի միջև կնքված հաշտության մասին է։

157 Արտաքսերքսես II Մնեմոն (404—358 թթ.)։

158 Դիոդորոսի գրքի այս ամբողջ ընդարձակ հատվածը (գլուխներ 19—31) համառոտ պատմում է այն նույն դեպքերի մասին, ինչ Քսենոփոն Աթենացու «Անաբասիս» հայտնի երկը։ Բայց քանի որ Դիոդորոսն օգտվել է նաև այլ աղբյուրներից, ապա նրա հաղորդած որոշ տեղեկություններ ոչ միայն լրացնում են Քսենոփոնին, այլև երբեմն տարբերվում են նրա պատմածներից։

159 Դա մ. թ. ա. 401 թ. էր։

160 Սա Կյուրոս Կրտսերն է (տե՛ս ծանոթ. 101)։

161 Այդ սատրապությունները կազմված էին Փոքր Ասիայի Միջերկրածովային ափամերձ մարզերից։

162 Խոսքը պելոպոննեսյան պատերազմի մասին է։

163 Նավարքոս (ναύαρχος) նշանակում է ծովակալ, նավապետ։ Այսպես էր կոչվում Սպարտայում և Աթենքում նավատորմի պետը։

164 Տրիերա— հին հունական ռազմանավ՝ երեք շարքի վրա տեղավորված թիակներով (Համեմ. ծանոթ. 28)։

165 Եփեսոս— հին հունական խոշոր քաղաք և նավահանգիստ՝ Փոքր Ասիայի հոնիական ծովափին։

166 Քսենոփոնի «Անաբասիս» երկում (I, IV, 2) Խեյրիսոփոսի բերած զինվորների թիվը ցույց է տրված 700։

167 Այս վարձկանները կազմված էին հույն ծանրազեններից՝ հոպլիտներից։ Սրանց արշավանքն ու վերադարձը, որը հայ ավանդության մեջ հայտնի է որպես «Նահանջ բյուրոցն», կազմում է «Անաբասիսի» բովանդակությունը։ Հայերեն թարգմանությունը տե՛ս Քսենոփոն, Անաբասիս, Երևան, 1970, թարգմ. Ս. Մ. Կրկյաշարյանի։

168 Սարդես— ամրացված քաղաք արևմտյան Փոքր Ասիայում, որը հանդիսանում էր պարսկական սատրապի նստավայրը։

169 Մեմփիս— հնագույն քաղաք Եգիպտոսում։ Քսենոփոնը ևս (Անաբասիս, I, IV, 2) Տամոսին համարում է եգիպտացի։

170 Պիսիդիա— լեռնային երկիր Փոքր Ասիայի հարավային մասում, Լիկիայի և Կիլիկիայի միջև։ Պիսիդիացիները, իրենց հարևան լիկաոնացիների, իսավրիացիների և պամփիլիացիների նման, ապրում էին Տավրոսում գտնվող բնակավայրերում ու քաղաքներում։ Մինչև 5-րդ դարի կեսերը (մ. թ. ա.) նրանք պարսկական տիրապետության տակ էին, իսկ հետագայում, օգտվելով Պարսկաստանում կենտրոնական իշխանության թուլացումից, անկախացան և սկսեցին արշավել պարսիկներին ենթակա հարևան մարզերը։ Պարսիկներին այնուհետև հնարավոր չեղավ նրանց լրիվ հնազանդեցնել։

171 Սա, ամենայն հավանականությամբ, Ազանայի դաշտն է։

172 Բնագրում՝ συνασπιζων (զինաստ եղող)։ Քսեննոփոնը (Անաբասիս, I, 12 և հաջ.) Սյուննեսիսին անվանում է «Թագավոր»։

173 Նկատի է առնված Արտաքսերքսես II-ը։

174 Իսսոս— առափնյա քաղաք Կիլիկիայում, Ասորիքի սահմանին մոտ։ Պատմության մեջ հայտնի է այն բանով, որ այստեղ մ. թ. ա. 333 թ. Աքեմենյան արքայից արքայի բազմահազար զորքը գլխովին ջախջախվեց Ալեքսանդր Մակեդոնացու կողմից։

175 էֆորոսների կոլեգիան, թվով 5 մարդ, Սպարտայի քաղաք-պետության բարձրագույն ղեկավար իշխանությունն էր, որն ամեն տարի ընտրվում էր համայնքի ընդհանուր ժողովում։

176 Բնագրում՝ Πύλαι, նշանակում է՝ դարբասներ, դռներ. գտնվում էր Կիլիկիայի և Սիրիայի միջև։ Հերոդոտոսը (V, 52 և հաջ.) պատմում է, որ Աքեմենյան Պարսկաստանի կարևորագույն ճանապարհների վրա, առանձնապես սատրապությունների սահմաններին և դժվարամատույց վայրերում, պարսիկները կառուցել էին ամրություններ, որոնք հույն պատմագիրը կոչում է «դարբասներ»։ Այնտեղ մշտապես կանգնած էին կայազորներ։ Դա արքայից արքային հնարավորություն էր տալիս վերահսկելու ճանապարհները և, անհրաժեշտության դեպքում, ուժ գործադրելու։ Կիլիկիայից Ասորիք տանող այս դարբասի մասին հիշատակում են նաև Քսենոփոնը (Անաբասիս, I, IV, 4) և Ստրաբոնը (XIV, 5, 18 և XVI, 2,8)։ Այդ դարբասը, որը կոչվում էր նաև Ամանոսյան դարբաս, գտնվում էր այն վայրում, որտեղ Ամանոս լեռը ճյուղավորվում է Տավրոսից ու ձգվում Կիլիկիայի արևելյան սահմանով մինչև ծով։

177 Մինա— հունական գրամի միավոր (տե՛ս ծանոթ. 45)։

178 Եփորոս— մ. թ. ա. 4—րդ դ. հույն մատենագիր։

179 Քսենոփոնի «Անաբասիսում»՝ Արիայոս։

180 Քսենոփոնն իր «Կյուրոպեդիա» երկում (IV, 1 30) պատմում է, թե սովորական ռազմակառքերը առաջին անգամ Կյուրոս Մեծի ժամանակ վերածվեցին մանգաղակիր ռազմակառքերի։ Առանցքի վրա ռազմակառքի յուրաքանչյուր կողմից ամրացվում էին երկաթե մանգաղներ. մոտ մեկ մետր երկարությամբ։

181 Քսենոփոնը (Անաբասիս, I, VII, 10) հաղորդում է, որ արքայի զորքը բաղկացած էր 1 միլիոն 200 հազար մարդուց և 200 մանգաղակիր ռազմակառքից։ Այս թիվը պետք համարել խիստ չափազանցված։ Վ. Տարնը W. W. Tarn, Cambridge Ancient History, vol. VI, էջ 7) գտնում է, որ ոչ միայն Քսենոփոնի, այլև Դիոդորոսի հաղորդած թվերը նույնպես չափազանցված են։ Նա ենթադրում է, որ երկու հակառակորդների բանակները թվով մոտավորապես իրար հավասար էին, բաղկացած շուրջ 30 հազար մարդուց, բայց Արտաքսերքսեսի 6.000 հեծյալների դիմաց Կյուրոսն ուներ 2.500։ Այս հանգամանքն էլ վճռեց ճակատամարտի ելքը հօգուտ Արտաքսերքսեսի։

182 Պեզանաւիս պեան կոչվում էր խմբերգի մի տեսակը, որը կապված էր Ապոլլոնի պաշտամունքի հետ։ Արդեն «Իլիականում» այդպիսի պեան երգվում է, ուղղված Ապոլլոնին, որպեսզի սա վերացնի իր իսկ ուղարկած ժանտախտը։ Պեան երգում են նաև Հեկտորի սպանությունից հետո, որպես հաղթանակի խորհրդանիշ։ Հետագայում պեանը երգում էին ճակատամարտից հետո, որպես հաղթության երգ, կամ, դրանից առաջ, որպես ռազմերգ։

183 Ետեոկլեսը և Պոլինիկեսը էդիպ արքայի որդիներն էին, որոնք հայրենի երկրում՝ Թեբե քաղաքում իշխանությունը գրավելու համար իրար միջև մենամարտեցին և սպանեցին իրար։ Այս դրույցը դարձել է նյութ Էսքիլեսի «Յոթը Թեբեի դեմ» և մասամբ՝ Սոփոկլեսի «Անտիգոնե» ողբերգությունների համար։

184 Հելլենների զորքում գիշերը բաժանված էր 3 կամ 4 պահի՝ հերթափոխության։

185 Զաքինթոս— կղզի Հունաստանի արևմուտքում, Հոնիական ծովում։

186 Թերմոպիլեի կիրճը գտնվում է Հունաստանում, Թեսսալիայի հարավում, և միակ անցումն է հյուսիսից կենտրոնական Հունաստան։ Այստեղ մ. թ. ա. 480 թ. սպարտացիների թագավոր Լեոնիդասն իր 300 քաջերով մինչև վերջին մարդը դիմադրեց Աքեմենյան Քսերքսեսի բազմահազար զորքերին։ Նրա օրինակը դարձել է քաջագործության չափանիշ։

187 Քսենոփոնի մոտ (Անաբասիս, 1, I, 11 և հաջ.) Սոփայնետոս ստյումփալացի։

188 Դիոդորոսի ձեռագիրն այս մասում թերի է։ Մեր թարգմանության մեջ անկյունավոր փակագծերում առնված նախադասության իմաստը հեշտ է լրացվում Քսենոփոնի «Անաբասիս»-ի համապատասխան հատվածից։

189 Հունական զորքերին մթերքով օրապահիկ չէր տրվում։ Զինվորներն իրենց օրական պարենը գնում էին զորքին ուղեկցող առևտրականներից, եթե զորքը գնում էր ոչ թշնամական երկրի միջով։ Թշնամու երկրում զորքը ապրում էր կողոպուտի հաշվին։ Զորահրամանատարի կարևոր հոգսերից մեկն էլ բանակի իջևանած վայրին մոտիկ մթերքի շուկայի առկայության հարցն էր։

190 Կարդուխների բնակեցրած երկրի սահմանները բավական ճշտորեն որոշվում են Քսենոփոնի (Անաբասիս, գիրք 4-րդ, գլ. 1—3) հաղորդած տվյալներով։ Հարավում այն եզերված էր Քուրդիստանի լեռներով, հյուսիսում՝ Տիգրիսի վտակ Կենտրիտեսը (Բոհտան-սու) այն բաժանում էր Հայաստանից։ Քսենոփոնի հաղորդած վկայություններից կարելի է հետևցնել, թե կարդուխներն այդ ժամանակ ունեցել են հարուստ գյուղեր, զբաղվել են երկրագործությամբ, գինեգործությամբ, անասնապահությամբ, ինչպես և արհեստագործությամբ. հատկապես զարգացած է եղել պղնձագործությունը։ Կարդուխներն արդեն գտնվում էին սոցիալ-տնտեսական զարգացման այն աստիճանի վրա, երբ քայքայվում են համայնական կարգերը։ Քսենոփոնից շուրջ չորս հարյուրամյակ հետո Ստրաբոնն արդեն վկայում է, որ գորդիենները (իմա՝ կարդուխները— Ս. Կ.) ունեին ամրացված քաղաքներ և հայտնի էին որպես լավագույն շինարարներ և պաշարողական գործիքների հմուտ վարպետներ (Strabo, XVI, 1, 24)։

191 Հոնիա կոչվում էր Փոքր Ասիայի արևմտյան ծովափը։

192 Կենտրիտես կոչվում էր վերին Տիգրիսի արևելյան թևը (այժմ Բոհտան-սու)։

193 Քսենոփոնի պատմելով (Անաբասիս, III, V, 17) Արմենիայի սատրապն էր Օրոնտասը (Երվանդը), իսկ Տիրիբազոսը՝ Արևմտյան կոչված Արմենիայի հյուպարքոս (Անաբասիս, IV, IV, 4)։

194 Այս հատվածում Դիոդորոսի բնագիրն ունի ոչ մեծ բացթողում։

195 Փասիս անվան տակ պիտի հասկանալ Արաքսի վերին հոսանքը։

196 Բնագրում Χάοι ։ Ուսումնասիրողները, ընդհանրապես, այս անունը համարել են Քսենոփոնի մոտ (Անաբասիս, V, V, 17; IV, IV, 18 և այլն) հիշատակված Տայքում ապրող տաոխների (հունարեն՝ Τάοχοι ) ցեղանվան աղավաղված ձևը։ Բացառված չէ, սակայն, որ այս դեպքում մենք գործ ունենք հայերի «հայ-խայ» ինքնանվանման հետ։ Տաոխները եղել են լեռնաբնակ ցեղեր, որոնք մ. թ. ա. V—IV դդ. ապրել են Հարպասոս գետի ակունքների շրջանում։ Ասսուրական սեպագիր արձանագրություններում հիշատակվում է Դայաենի (ուրարտերեն՝ Դիաուեխի) երկիրը, որն իրավամբ նույնացվում է տաոխների երկրի հետ։ Ուրարտական թագավորները (Մենուա, Արգիշտի, Սարդուրի) երկար պատերազմներ են մղել տաոխների դեմ և հարկադրել նրանց վճարել տուրք ոսկով, արծաթով, պղնձով և անասուններով (Б. Б. Пиотровский, О происхождении армянского народа, Ереван, 1946, էջ 8; П. Н. Ушаков, К походам урартийцев в Закавказье, ВДИ, 1946, № 2, էջ 32։ Г. А. Меликишвили, Диаухи,

ВДИ, 1950, № 4, էջ 26—42)։ Տաոխների անունից ծագել է պատմական Հայաստանի «Տայք» գավառի անունը (Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, Երևան, 1944, էջ 72)։

19. Այս փասիանները, հավանաբար, վերին Արաքսի շուրջն ապրող ցեղեր են եղել։ Փասիանների ցեղանունից էլ ծագել է պատմական Հայաստանի «Բասյան» գավառի անունը (Հ. Մանանդյան, նույն տեղում)։

198 Այս խալդայներին (Χαλδαῖοι) չպետք է շփոթել հարավային Միջագետքի նույնանուն ցեղի հետ։ Սրանք բնակվում էին Սև ծովի հարավարևելյան ծովափից ոչ հեռու (տե՛ս Б. Б. Пиотровский, Урарту, Ереван, 1944, էջ 328), իսկ Յ. Մարկվարտը ենթադրում է, որ այս խալդայները ուրարտացիներն էին, որոնց մի ժամանակ Լեհման-Հաուպտի ազդեցության տակ գիտության մեջ անվանում էին «խալդեր» (J. Markwart, Südarmanien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 229-230 Համեմ. նաև Հ. Մանանդյան. Քննական տեսություն..., հ. 1, էջ 68-69)։

199 Քսենոփոնի մոտ՝ (Անաբասիս, IV, VII, 18) Հարպասոս։

200 Սկյուտինները (բնագրում՝ Σκυθῖνοι. Անաբասիսում (IV, VII, 18 և IV, VIII, 1) սկյութիններ) այդ ժամանակ բնակվում էին Տրապիզոնից հարավ գտնվող լեռնային վայրերում։ Սրանք հետնորդներն են VIII դարի վերջին Հյուսիսային Կովկասից Փոքր Ասիա ներխուժած սկյութական այն ցեղերի, որոնց հարվածներից մեծապես տուժեց Ուրարտու պետությունը։ Փոքր Ասիա ներխուժած սկյութական ցեղերի մասին տե՛ս Б. Б. Пиотровский, Урарту, Ереван, 1944, էջ 295—324։ Համա. նաև՝ Հ. Մանանդյան. Քննական տեսություն..., հ. 1, էջ 73։

201 Գյումնասիա (Անաբասիսում (IV, VII, 19) Գյումնիաս)։ Այս քաղաքի տեղադրությունը վիճելի է։ Ուսումնասիրողների մեծ մասը ենթադրում է, որ այն գտնվում էր Բայբուրդյան գոգավորությունում, Ճորոխ գետի ակունքների շրջանում։ Բոլորովին այլ կարծիքի է Հ. Մանանդյանը, որը Հարպասոս գետը նույնացնելով Արաքսի հետ, ասում է, որ Գյումնիաս քաղաքը, հետևաբար նաև սկյութինների երկիրը, գտնվում էր այժմյան Լենինականի վայրում (Հ. Մանանդյան, Հին Հայաստանի և Անդրկովկասի մի քանի պրոբլեմների մասին, Երևան, 1944, էջ 13—17։ Նույնի՝ Քննական տեսություն..., հ. 1, էջ 64)։ Ավելի հավանական պիտի համարել առաջին տեսակետը, քանի որ, ինչպես պատմում է Քսենոփոնը, ուղեցույցը հայտարարում է, թե հելլեններին «հինգ օրվա ընթացքում կառաջնորդի այնպիսի մի վայր, որտեղից կտեսնեն ծովը» (Anabasis, IV, VIII, 20)։

202 Բնագրում՝ [illegible]. Քսենոփոնի մոտ՝ (Անաբասիս, IV, VII, 21) Թեքես (Θήχης)։ Այս լեռան տեղադրությունը վերջնականապես չի որոշվել։

203 Մակրոնների ցեղն ապրում էր Պոնտոսում։ Նրանց հիշատակում է դեռևս մ. թ. ա. VI—V դդ. մատենագիր Հեկատեոս Միլետացին։ Մակրոններին և նրանց երկիրը առավել մանրամասն նկարագրել է, ականատես Քսենոփոնը, իր «Անաբասիս» երկում (IV, VIII, 1—8)։

204 Սև ծովի հարավարևելյան ափերին պատահող նման թունավոր հատկություններով օժտված մեղրի մասին հաղորդում են անտիկ այլ հեղինակներ ևս։ Վնասակար այդ հատկությունները կապված են տեղի թունավոր բուսականության հետ։ Ճանապարհորդները պատմում են, թե այդպիսի մեղր մինչև օրս էլ պատահում է այդ վայրերում։ Այդ մեղրը վնասազերծելու նպատակով բնակիչները նորից այն եռացնում են ու խառնում շաքարով, որից հետո մեղրը դառնում է օգտագործելի։

205 Տրապեզունտ քաղաքը հունական հնագույն քաղաքներից էր Սև ծովի հարավային ափին, այժմյան Տրապիզոն քաղաքի վայրում։ Հունական ավանդության համաձայն, այն հիմնվել է մ. թ. ա. VIII դարի կեսերին Միլետի գաղութ Սինոպեի կողմից։

206 «Արգո»— առասպելական նավ, որով, ըստ հունական ավանդության, կատարվեց առաջին հեռավոր ծովագնացությունը. «Արգո» նավով ճամփորդել են հունական հերոսները դեպի Կոլխիդա, ոսկեգեղմ մորթին ձեռք բերելու համար։ Նավի անունով նրանք կոչվել են արգոնավորդներ։ Արգոնավորդների մասին առասպելը ավելի հին է, քան Հոմերոսի պոեմները։ Արգոնավորդների արշավանքը կատարել է հոմերոսյան հերոսներին նախորդած սերունդը։ Յասոնի և նրա ուղեկիցների անվան հետ կապված վրույցները առանձին նշանակություն ունեն հայ ժողովրդի կազմավորման խնդրի հետ կապված մի շարք հարցերի ուսումնասիրման համար։

207 Կերասունտ քաղաքը հին հունական գաղութ էր Տրապեզունտ քաղաքից արևմուտք։ Այժմ էլ Սև ծովի հարավային ափին կա նույնանուն քաղաք, սակայն, հավանաբար, ոչ հին քաղաքի վայրում։

208 Մոսինոյկներ— հունարեն բառացի նշանակում է փայտե կառույցներում ապրողներ։ Թերևս սա տեղական անվան՝ հույների կողմից արված ժողովրդական ստուգաբանություն է։ Ստրաբոնը նույն այդ ցեղերին անվանում է դարձյալ հունարեն «Հեպտակոմետներ» բառով, որը նշանակում է՝ յոթ գյուղերում ապրողներ։ Մոսինոյկների մասին հետաքրքիր դիտողություններ ունի Մ. Ի. Մաքսիմովան հարավարևելյան Սև ծովի ափի հնագույն ցեղերին նվիրված իր հոդվածում (М. И. Максимова, Местное население юго-восточного Причерноморья по «Анабасису» Ксенофонта, ВДИ, 1951, № 1)։ Մոսինոյկներին հիշատակում են մի շարք հնագույն մատենագիրներ, սկսած Հեկատեյոս Միլետացուց։ Այդ ցեղերը ապրելիս են եղել Կերասունտից արևմուտք, մերձափնյա անտառախիտ լեռներում։

209 Բնագրում՝ κάρυα, բառացի նշանակում է՝ ընկույզ, բայց այս դեպքում խոսքը շագանակի մասին է, մի բան, որ պարզորոշ է Քսենոփոնի «Անաբասիս»-ի համապատասխան հատվածից (V, IV, 29)։

210 Տիբարենե երկիրը գտնվում էր մոսինոյկների երկրից արևմուտք։ Հերոդոտոսի վկայությամբ (III, 94), տիբարենների երկիրը Դարեհ I-ի ժամանակ ընդգրկված էր պարսկական պետության 19-րդ սատրապության մեջ։ Բայց Քսենոփոնի վկայություններից հետևում է, որ նրանք ևս, իրենց հարևան մոսինոյկների, կոլխերի խալյուբների նման, ինքնուրույնություն էին ձեռք բերել։ Այս հանգամանքը պիտի վերագրել մի կողմից Աքեմենյանների կենտրոնական իշխանության թուլացման, մյուս կողմից լեռնային տեղանքի անմատչելիության և բնակիչների ռազմատենչ ոգուն։ Տիբարեններն, ընդհանրապես, նույնացվում են սեպագիր արձանագրություններում հիշատակված տաբալների հզոր ցեղի հետ (*И. Д. Джавахишвили*, Основные историко-экономические проблемы истории Грузии, Кавказа и Ближнего Востока древнейшей эпохи, ВДН, 1939, № 4; *В. А. Куфтин*, К вопросу о древнейших корнях грузинской культуры на Кавказе по данным археологии, Вест. муз. Груз., XII, 9, 1941 г.).

211 Կոտյուորա քաղաքի ճշգրիտ տեղը դեռևս հայտնի չէ։ Ենթադրում են, որ այն գտնվում էր ժամանակակից Օրդու բնակավայրի տեղում W. *Hamilton*, Researches in Asia Minor. Pontus and Armenia, I, London, 1842, էջ 251)։ Մ. թ. չեմին Կոտյուորան արդեն կորցրել էր իր նշանակությունը և վերածվել էր ոչ մեծ գյուղի (*Strabo*, XII. c. 548)։

212 Հերակլեան Սև ծովի հարավային ափին գտնվող հունական խոշորագույն քաղաքներից էր։ Գտնվում էր այժմյան Էրեյլի («Հերակլեա» անվան աղավաղված ձևը) քաղաքի տեղում։ Սինոպե— խոշորագույն հունական քաղաք Փոքր Ասիայի հյուսիսային ծովափին, այն հիմնել էին միլետացիները մ. թ. ա. VIII դարում։

213 Խոսքը պոնտական թագավոր Միհրդաս VI Եվպատորի մասին է (մ. թ. ա. 111—63 թթ.)։

214 Ըստ հունական դիցաբանության, Հերակլեսը 12 գերմարդկային սխրանքներ կատարեց։ Դրանցից մեկն էլ այն էր, որ նա կարողացավ իջնել ստորերկրյա աշխարհ, Հադեսի թագավորության սահմաններից ներս և առևանգել Հադեսի անքուն պահակ երեքգլխանի շուն Կերբերոսին։

215 Քրյուսոպոլիս (Χρυσόπολις) քաղաքը գտնվում էր Բոսփորի ասիական ափին, Բյուզանդիոնի դիմաց։

216 Խոսքը մ. թ. ա. 396 թ. հելլեններից պարսիկ սատրապ Տիսսափեռնեսի կրած մի շարք պարտությունների մասին է։

217 Ագեսիլաոս— լակեդեմոնացիների բասիլևսը մ. թ. ա. 399—358 թթ.։

218 Այսինքն՝ մ. թ. ա. 386 թ.։

219 Այս Օրոնտեսը Արմենիայի նախկին սատրապն էր, որը ամուսնացած էր պարսից արքա Արտաքսերքսեսի դստեր հետ։

220 Սա, հավանաբար, նույն Տիրիբազոսն է, որը Քսենոփոնի մոտ (Անաբասիս, IV, IV, 4) հիշատակված է որպես արևմտյան Արմենիայի հյուպարքոս։

221 Փոկայա և Կյումե— պարսից տիրապետության տակ գտնվող հունական քաղաքներ Փոքր Ասիայի արևմտյան ծովափին։

222 Կարիա— երկիր Փոքր Ասիայի ծայր հարավարևմտյան հատվածում։

223 Կիտիոն— ծովափնյա քաղաք Կիպրոսում։

224 Նալամիս— նավահանգիստ Կիպրոսում, այժմյան նույնանուն բնակավայրի մոտ։

225 Պյութո—Դելփյան տաճարի պատգամախոս քրմուհին։

226 Այս խոսքերի իմաստն այն է, որ ինքը՝ Տիրիբազոսը չէր կարող պատգամախոսին հարցրած լինել ապստամբության մասին, որը, հաջողության դեպքում, կհանգեցներ նաև արքայի սպանության։

227 Նկարագրված դեպքերը կատարվել են մ. թ. ա. 362/1 թթ.։

228 Մավսոլոսը հայտնի է իր կառուցած դամբարանով, որն իր անունով կոչվել է Մավսոլեում։

229 Այս Օրոնտեսը նույն անձն է, որը Քսենոփոնի «Անաբասիս»-ում հիշատակված է իբրև Արմենիայի սատրապ. պետք է նկատել, որ նա այդ ժամանակ արդեն զրկվել էր Արմենիայի սատրապությունից։

230 Այս Արտաբազոսը որդին էր Փռյուգիայի սատրապ Փառնաբազոսի և Ապամեի՝ Արտաքսերքսեսի դստեր։

231 Միթրոբարզանեսը Դատամեսի աներն էր, որը դավաճանել էր իր փեսային։

232 Նախորդ հատվածներում Դիոդորոսը պատմում է 352/1 թթ. Հունաստանում պոլիսների միջև մղված քաղաքական սուր պայքարի մասին։

233 Այսինքն՝ 337/6 թ.։

234 Այսինքն՝ 336/5 թ.։

235 Խոսքը Մակեդոնիայի թագավոր, Ալեքսանդր Մակեդոնացու հոր, Փիլիպպոս II-ի մասին է (մ. թ. ա. 360—336 թթ.)։

236 Ատտալոսը և Պարմենիոնը Փիլիպպոս Մակեդոնացու զորավարներից էին։ Այս երկուսին հետագայում սպանեց Ալեքսանդր Մակեդոնացին. Ատտալոսին 336 թ., իսկ Պարմենիոնին՝ 330 թ.։

237 Փոքր Ասիայի հելլենական քաղաքների ազատության կարգախոսը Փիլիպպոս Մակեդոնացու, իսկ հետագայում՝ Ալեքսանդր Մակեդոնացու համար նախ և առաջ ունեի

քաղաքական նշանակություն: Այդ ազատությունը նշանակում էր ոչ ավելի, քան քաղաքական ազատագրում պարսկական լծից (տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, Երևան, 1970, էջ 50—78):

238 Հույներն անասունը զոհաբերելուց առաջ նրա գլուխը զարդարում էին պսակով:

239 Հազարապետը (χιλίαρχος) պարսկական տերության բարձրաստիճան պաշտոնյաներից մեկն էր և ուներ առավելապես վարչատնտեսական, քան թե ռազմական բնույթ: Հետագայում այդ պաշտոնին հանդիպում ենք Արշակունյաց Հայաստանում: Բացառված չէ, որ հազարապետի պաշտոնը գոյություն է ունեցել նաև Աքեմենյան Հայաստանում:

240 Սա Դարեհ III Կոդոմանոսն է (մ. թ. ա. 336—330 թթ.), որը թագավոր դառնալուց առաջ, ինչպես հաղորդում է Հուստինոսը, եղել է Արմենիայի սատրապ (M. Juniani Justini Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, X. 3 4—5):

241 Խոսքը Արտաքսերքսես II-ի (մ. թ. ա. 405—359 թթ.) մասին է:

242 Այստեղ նկատի է առնված Արտաքսերքսես III Օքոսը (359—338 թթ.):

243 Հին հունական խոշոր և վաճառաշահ Կյուզիկոս քաղաքը գտնվում էր Հելլեսպոնտոսի (Մարմարայի ծով) ասիական ափին:

244 Իդա լեռը գտնվում էր պատմական Տրոյայի շրջանում:

245 Մակեդոնացիների անվան տակ Դիոդորոսը այս հատվածներում նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացու զորքերին:

246 Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների պատմության հեղինակ Արրիանոսը (Arriani, De expeditione Alexandri, Lipsiae, 1873, I, 13) տարբեր ձևով է պատմում այդ ճակատամարտի մասին: Ըստ նրա, հարձակումը տեղի է ունեցել երեկոյան մոտ և Գրանիկոսի ստորին հոսանքում, որտեղ գետը հոսում է հարթավայրով: Նա, ինչպես և Պլուտարքոսը Ալեքսանդրին նվիրված կենսագրության մեջ (Plutarchi vitae, Alexandr., XVI) գրում է, որ մարտը տեղի է ունեցել գետը անցնող մակեդոնացիների և գետափին կանգնած պարսիկների միջև, մինչդեռ Դիոդորոսի այս նկարագրության մեջ այն տեղի է ունենում լուսաբացին, այն բանից հետո, երբ մակեդոնացիները առանց դժվարության անցնում են գետը:

247 Արսամենեսը Արրիանոսի (De exped. Alexandri, II, 4, 5) և Կուրտիոս Ռուփոսի (Historiae Alexandri Magni, Lipsiae, 1816, III, 4, 3,) մոտ՝ Արսամես այդ ժամանակ Կիլիկիայի սատրապն էր: Սա, մեր կարծիքով, պետք է լինի այն նույն Արսամեսը, որը Աքեմենյան տիրապետության տապալումից հետո դառնում է Սելևկյաններին ենթակա Կոմմագենեի ոչ մեծ թագավորության հիմնադիրը: Սրա անունը հիշատակված է Նեմրութ լեռան հայտնի հուշարձանում, որպես Անտիոքոս I Կոմմագենացու նախնի (K. Humann und O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien, Berlin, 1890):

248 Արսիտեսը Հելլեսպոնտյան Փռյուգիայի սատրապն էր:

249 Հուստինոսը (Justini Juniani Epitoma historiarum Philippicarum Pompi-Trogi, Lipsiae, 1915, XI, 6, 11) պարսկական զորքի թիվը հասցնում է 600 հազարի, իսկ ըստ Արրիանոսի (De exped. Alexandri, I, 14, 4) պարսիկներն ունեցել են 20 հազար հետևակ և նույնքան հեծյալ:

250 Բնագրում՝ συγγενεῖς, բառացի նշանակում է՝ տոհմակիցներ: Այդպես էին կոչվում Աքեմենյան (հետագայում նաև Արշակունյաց) Պարսկաստանում բարձր ազնվականության ներկայացուցիչները. ավելի ուշ հելլենիստական միապետություններում

և այդ պատվավոր տիտղոսը շնորհվում էր արքային մոտիկ մարդկանց։

251 Կլեյտոսը Ալեքսանդր Մակեդոնացու թիկնապահներից էր։

252 Խոսքը Սպիթրիդատես և Հռոսակես եղբայրների մասին է։

253 Դիոդորոսը նախորդ հատվածներից մեկում (XVII, 18, 1) պատմում է, որ Ալեքսանդրը պատգամախոսի գուշակությունից հետո զոհեր է մատուցում Աթենասին և իր զրահը նվիրաբերելով դիցուհուն, փոխարենը վերցնում է նրա տաճարում գտնված զրահներից լավագույնը։

254 Արրիանոսի մոտ (I, 16,3) պարսկական սպանված առաջնորդների ցուցակն ավելի երկար է, սակայն այնտեղ բացակայում է Դարեհի կնոջ եղբոր Ատիզյեսի անունը։

255 Ալեքսանդրը, բնական է, թաղում է ոչ թե պարսիկ սպանվածներին, այլ իր բանակի զոհերին, որոնց թիվը փոքր էր։

256 Իր այս ծառայության դիմաց Միթրինեսը, իբրև հատուցում, Ալեքսանդրից ստանում է դեռ չնվաճված Արմենիայի սատրապությունը։

257 Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու զորահրամանատարների մասին է, որոնց երիտասարդ արքան իր զորքերի մի մասով ուղարկել էր Փռյուգիայի վրայով, մինչդեռ ինքը զբաղված է առափնյա քաղաքները նվաճելու գործով։

258 Կար երկու Փռյուգիա. 1) Մեծն Փռյուգիա կամ, պարզապես, Փռյուգիա, որը գտնվում էր կենտրոնական Փոքր Ասիայում և 2) Հելլեսպոնտյան Փռյուգիա կամ Փոքր Փռյուգիա, որը գտնվում էր Հելլեսպոնտոսի փոքրասիական ափին։

259 Խոսքը պարսից արքա Դարեհ III-ի մասին է։

260 Հուստինոսը նույնպես (XI 9,1) այդ զորքի թիվը համարում է 400 հազար, իսկ Արիանոսը (II, 8,8)՝ 600 հազար։

261 Պյուլայ (πύλαι) բառացի նշանակում է «դռներ, դարբասներ»։ Բնագրից պարզ չէ, թե դրանք ո՞ր դարբասներն են՝ Կիլիկիա՞ն, թե՞ Սիրիայի։ Հավանաբար այստեղ նկատի է առնված վերջինը, որը գտնվում էր Իսսոս քաղաքից հարավ, Արրիանոսը (II, 5,1) պարզապես ասում է՝ «մյուս դարբասները»։ Հերոդոտոսը (V, 52 և հաջ.) պատմում է, թե Աքեմենյան Պարսկաստանի կարևորագույն ճանապարհների վրա, առանձնապես սատրապությունների սահմաններին և դժվարամատույց վայրերում, պարսիկները կառուցել էին ամրություններ՝ «դարբասներ»։ Այնտեղ մշտապես կանգնած էին լինում կայազորներ։ Սա արքայից արքային հնարավորություն էր տալիս վերահսկելու ճանապարհները և անհրաժեշտության դեպքում ռազմական ուժ գործադրելու։

262 Այս տեսարանը պատկերված է Պոմպեյ քաղաքի ավերակների մեջ հայտնաբերված խճանկարներից մեկում (Diodorus of Sicily, in twelve volumes, vol. VIII, Loeb Classical Library, London, 1963, էջ 213, ծան. 1)

263 Կուրտիոսի մոտ (III, 11, 10) սպանվածներն են՝ Ատիզյեսը, Հռեոմիթրեսը և Եգիպտոսի սատրապ Սաբակեսը, իսկ Արրիանոսի մոտ (II, 11, 8)՝ Արսամեսը, Հռեոմիթրեսը, Ատիզյեսը, Եգիպտոսի սատրապ Սաբակեսը և Բուբակեսը։

264 Խիտոն— ներքնազգեստ, որը հագնում էին մերկ մարմնի վրա։

265 Դիոդորոսի ձեռագրի այս հատվածում նկատելի է ինչ-որ բացթողում։ Անկյունավոր փակագծերի մեջ առնված նախադասությունը C. Bradford Welles-ի առաջարկած վերականգնման թարգմանությունն է (տե՛ս Diodorus of Sicily, v. VIII, Loeb Classical Library. London, 1963, էջ 219)։

266 Բնագրում՝ οἰ παῖδες (բառացի նշանակում է՝ տղաներ, պատանի ստրուկներ)։

267 Հետայրոս (ἑταῖρος) բառացի նշանակում է՝ ընկեր, ուղեկից, մերձավոր։ Սովորաբար հետայրոսների հեծելազոր կոչվում էր մակեդոնական թագավորի արքունի

հեծյալ թիկնապահ գունդը։ Հետագայում այսպես կոչվում էին մակեդոնացիների ընտրանի հեծյալ պնդի մարտիկները։

268 Սիսյունգամբրիսը (կա նաև Սիսիգամբրիս ձևը) Դարեհ III-ի մայրն էր։

269 Հելլենիստական պետություններում մեծ դեր են խաղացել թագավորի ընկերները (φίλοι), որոնք կազմելով թագավորի անմիջական շրջապատը, զբաղեցնում էին պետական տարբեր պաշտոններ։ Բացի սովորական ընկերներից, կային առաջին ընկերներ (πρῶτοι φίλοι), հարգված կամ պատվավոր ընկերներ (τιμώμενοι φίλοι) և նախամեծար (προτιμώμενοι), կամ առավել պատվավոր (μάλιστα τιμώμενοι) ընկերներ։ Այս հարցի մասին տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Բդեշխությունների առաջացումը Հայաստանում, «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 4, էջ 260—261։

270 Դիոդորոսը միակ հեղինակն է, որը խոսում է այդ նամակը կեղծելու մասին։ Աղբյուրներից հայտնի է, որ Դարեհը երեք անգամ դիմել է Ալեքսանդրին հաշտության առաջարկով. 1) Իսոսի ճակատամարտից հետո։ Հուստինոսը (XI, 12, 1—2), Արրիանոսը (II, 14) և Կուրտիոս Ռուֆոսը (IV, 1,7—14) հաղորդում են, թե Դարեհն իր այս նամակով պահանջում էր Ալեքսանդրից հեռանալ Ասիայից և վերադարձնել բոլոր գերվածներին՝ փրկագին ստանալով (Հուստինոս, Կուրտիոս) կամ առանց փրկագնի (Արրիանոս)։ 2) Ալեքսանդրի կողմից Տյուրոս քաղաքի գրավումից հետո։ Դարեհն այս անգամ արդեն առաջարկում էր կնության տալ իր աղջիկներից մեկին և զիջել Ալյուս գետից արևմուտք ընկած ամբողջ երկիրը (Կուրտիոս, IV, 5, 1—8) կամ թագավորության մի մասը (Հուստինոս, XI, 12, 3—4)։ Սա մոտավորապես նույնն է, ինչ Դիոդորոսի հիշատակած նամակի բովանդակությունը։ 3) Եգիպտոսից Ալեքսանդրի վերադառնալուց և Գավգամելայի ճակատամարտից առաջ։ Այս անգամ Դարեհն առաջարկում է կնության տալ իր մյուս աղջկան և Եփրատ գետից արևմուտք ընկած ամբողջ երկիրը, ինչպես նաև 10 հազար (Արրիանոս, II, 25) կամ 30 հազար (Դիոդորոս, XVII, 54, 1—6, Կուրտիոս IV, 11; Հուստինոս, IX, 12, 7—6) տաղանդ հատուցում։

271 Վերին սատրապություններ կամ վերին երկրներ ասելով, անտիկ հեղինակները նկատի են ունեցել Հայաստանը, Սողիան, Պարսկաստանը և այլն։

272 Ըստ Հուստինոսի (XI, 2, 5) պարսկական զորքերի ընդհանուր թիվը եղել է 500 հազար, ըստ Արրիանոսի (III, 8,6)՝ մեկ միլիոն հետևակ և 40 հազար հեծյալ, իսկ ըստ Կուրտիոսի (IV, 12, 13)՝ 200 հազար հետևակ և 45 հազար հեծյալ։

273 Այլ ձեռագրերում՝ երկու կամ հինգ հազար տաղանդ։

274 Այլ ձեռագրերում՝ երեք հազար տաղանդ։

275 Պարսիկների մոտ (ինչպես նաև հետագայում Սելևկյանների պետության մեջ) ընդունված կարգ էր, որ թագավորն իր բացակայության ժամանակ տերության իշխանությունը բաժանում էր թագամառանդի հետ։

276 Տե՛ս ծանոթ. 16։

277 Բնագրում՝ ἀργυράσπιδες (ἄργυρος = արծաթ, ἀσπίς = վահան)։ Սրանք Ալեքսանդր Մակեդոնացու բանակում 3. 000 հոգուց բաղկացած թագավորի հետևակ թիկնապահների հատուկ զորագունդն էին կազմում, որոնք կրում էին արծաթե թերթիկով ծածկված վահաններ և հռչակված էին իրենց քաջությամբ և մարտունակությամբ։ Այդ անունը կրող զորագնդի հանդիպում ենք նաև հետագայում՝ Սելևկյան թագավորության ժամանակ։ Այլ դեպքերում, հատկապես Ալեքսանդրի ժառանգներին վերաբերող հաղորդումներում, արծաթ՝վահանակիրները՝ արգիրասպիդները, անվանված են հյուպասպիստներ՝ ὑπασπισταί (W. W. Tarn, Alexander the Great, v. II, London 1948 թ. 116)։

278 Մակեդոնական փաղանգը կազմակերպված էր տերիտորիալ հատկանիշով և յուրաքանչյուր զորամաս կոչվում էր այն տեղանունով, որի բնակիչներից էր այն կազմված։

279 Փթիոտիս— երկրամաս Թեսսալիայում։

280 Մալիս— երկրամաս Հյուսիսային Հելլադայում։

281 Լոկրիս և Փոկիս— կենտրոնական Հելլադայի գավառներ։

282 Սարիսա կոչվում էր մակեդոնական հետևակի նիզակը, որի երկարությունը հասնում էր 5—6 մետրի։

283 Սա, հավանաբար, արքունի թիկնապահ հեծելագունդն էր, որը, ըստ երևույթին, գլխավորում էր հազարապետը։ Սասանյան արքունիքում հազարապետության բարձրագույն պաշտոնի արմատները, հավանաբար, պիտի փնտրել այստեղ, Աքեմենյանների արքունիքում։ Եթե այդպես է, ապա նկատելի է, որ այն սկսելով իբրև զինվորական պաշտոն, հետագայում դառնում է ամենակարևոր վարչատնտեսական պետական պաշտոնը պարսկական արքունիքում, որի նմանությամբ այդ պաշտոնը առաջանում է նաև Հայաստանում, Արշակունի թագավորների արքունիքում։

284 Բնագրում μηλοφόροι. այս անունը կրում էին արքայի հետևակ թիկնապահները, որոնց նիզակի ծայրին կար մետաղե խնձորաձև (հուն. μῆλον-խնձոր) դնդիկ։

285 Հերոդոտոսի (I, 125) պատմելով, մարդերը եղել են իրանական վաչկատուն ցեղեր։ Քսենոփոնը (Anabasis, IV, III, 4) մարգերին հիշատակում է Արմենիայի սատրապ Օրոնտասի և Արտուխասի զորքերի կազմում։ Ստրաբոնը (XI, 13,3, համա. նաև XI, 7,1 և 8,1) հաղորդում է, որ մարդերը ապրում էին հայկական լեռնաշխարհի հարավում։ Աշխարհագիր Պտղոմեոս Կլավդիոսի վկայությամբ (Ptol., V 12,9) մարդերը բնակվում էին Տիգրիսի ակունքներից արևելք։ Մարգերի մասին տե՛ս Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. I, Երևան, 1944, էջ 69—70։

286 Կոսսայների իրանական ցեղը ապրում է Զագրոսյան լեռների շրջանում։

287 Այս դեպքը տարբեր հեղինակներ տարբեր ձևով են պատմում։ Ըստ Դիոդորոսի, Ալեքսանդրը չէր ստացել Պարմենիոնի խնդրանքը օգնության մասին և վերջինս ինքը կարողացավ դուրս գալ ստեղծված ծանր վիճակից։ Ըստ Կուրտիոսի (IV, 15, 6—8; 16, 1—4) և Պլուտարքոսի (Alexander, XXXII, 3—4), Ալեքսանդրը ստանում է նրա խնդրանքը, բայց ետ չի դառնում, իսկ ըստ Արրիանոսի (III, 5,1), Ալեքսանդրը ստանում է նրա խնդրանքը և վերադառնալով օգնում Պարմենիոնին։

288 Նույն դեպքերը նկարագրող մյուս հեղինակների մոտ այս թիվը տարբեր է. Կուրտիոսի մոտ (IV, 16, 26) 40 հազար, Արրիանոսի մոտ (III, 15,6) 300 հազար։

289 Ըստ Կուրտիոսի (IV, 16, 26) սպանվել է 300 մակեդոնացի, իսկ ըստ Արրիանոսի (III 15,6)՝ 100 մակեդոնացի։

290 Արմենիան Միթրինեսին հանձնելը, պարզապես, կրում էր ձևական բնույթ, քանի որ այդ երկիրը դեռևս չէր նվաճվել և երբեք էլ չնվաճվեց Ալեքսանդրի կողմից, ուստի և Միթրինեսը երբեք չտիրեց Արմենիային։

291 Մինա-կշիռ և դրամական միավոր, կազմում էր տաղանդի 1/60 մասը և հավասար էր 100 դրախմայի։

292 Սիտտակենեն գտնվում էր Բաբելոնիային զուգահեռ դեպի արևելք, Տիգրիս գետի ձախ ափին։

293 Բնագրում՝ ἄσημος —բառացի նշանակում է՝ առանց դրոշմի, առանց նշանի։

294 Դահեկան (բնագրում՝ δαρεικός, նշանակում է՝ դարեհական)— պարսկական ոսկեդրամ, մոտ 5,40 դոլար արժեքով, որի գնողունակությունը, սակայն, եղել է ավելի բարձր։ Այն կշռում էր 8,40 գրամ։ 3000 դահեկան=1 տաղանդ=մոտ 26 կգ։

295 Բնագրում՝ παῖδες— նշանակում է՝ տղաներ, ծառաներ։

296 Փիլոտասը Պարմենիոնի որդին էր, Ալեքսանդրի մտերիմ ընկերներից։

297 Նա Պասիտիգրիս գետն է Սուսիանե երկրում, այն չպետք է շփոթել բուն Տիգրիս գետի հետ։

298 Մադետեսի անունը Կուրտիոսի մոտ (V, 3,4) հանդիպում է Medates կամ Madates ձևով, որը կարելի է հասկանալ իբրև Մարատուր, կարելի է նաև դիտել որպես Ապպիանոսի մոտ (Appian., Syr., 48) հանդիպող Μαζαδάτης (Մազադատես) անվան աղավաղված ձևը։ Այս վերջին անունը կրում էր Տիգրան Բ-ի զորավար-կուսակալներից մեկը։ Մարկվարտը (Eranšahr nach der Geographie des Ps. Moses Chorenaci, Berlin, 1901, էջ 174) Մազադատես անունը ուղղում է Բագադատես, այն նույնացնելով Բագարատ անվան։

299 Պերսիս— Պարսկաստանի կենտրոնական մարզերից մեկը Պարսից ծոցի ափին (այժմ՝ Ֆարսիստան)։

300 Նա Պերսիսի սատրապն էր, Արտապատոսի եղբայրը։

301 Այս գետը գտնվում էր Պերսիսում. չշփոթել հայկական Արաքսի հետ։

302 Ձիթենու ճյուղերով որևէ մեկին դիմավորել՝ նշանակում էր նրան ընդառաջ գնալ որևէ խնդրանքով։

303 Մեդիմնոս— տարողության չափ, որն օգտագործում էին հին Հունաստանում։ Ատտիկյան մեդիմնոսը հավասար էր մոտ 52,5 լիտրի։

304 Կեղծ-Կալլիսթենեսի «Ալեքսանդր Մակեդոնացու պատմությունը» երկում (գիրք 2, գլուխ 18) նույն դեպքի մասին պատմվում է այսպես. «Այստեղ, Քսերքսեսի ղամբարանում, կային խեղված հելլեն այրեր, ոմանք ձեռքներից, ոմանք ոտքերից, ոմանք օթից, ոմանք ականջներից. Նրանք, աթենացի այրերը, շղթայված էին կապանքներով, ու գերեվարված։ Արդ, նրանք բազմությամբ հավաքվելով, աղաղակեցին Ալեքսանդրին, որպեսզի փրկի իրենց։ Իսկ Ալեքսանդրը, տեսնելով նրանց, արտասվեց, քանզի տեսարանը ահավոր էր։ Նա ծանր տառապեց դրանից և հրամայեց արձակել նրանց կապանքները և տալ նրանց հազար երկդրամյա և յուրաքանչյուրին վերահաստատել իր հայրենիքում։ Նրանք, ստանալով արծաթը, խնդրեցին Ալեքսանդրին այդ վայրերում իրենց երկիր տրամադրել և չուղարկել իրենց հայրենի երկիրը, որպեսզի դրանով իսկ յուրայիններին համար աղետ չդառնան։ Եվ հրամայեց հող հատկացնել նրանց և ցորեն տալ և յուրաքանչյուրին հավասարաչափ սերմացու և ոչխարներ և այն ամենը, ինչ պիտանի է երկրագործության համար, և այլ ունեցվածք»։

305 Անտիկ աշխարհում ոսկու և արծաթի արժեքային հարաբերությունը սովորաբար եղել է 1:1?-ից մինչև 1:15։

306 Ատտիկա— Կենտրոնական Հունաստանի առավել զարգացած մարզերից մեկը, որի կենտրոնն էր Աթենք քաղաքը։

307 Ակնարկությունը պարսից արքաներ Դարեհի (490 թ.) և Քսերքսեսի (480 թ.) Հունաստան կատարած արշավանքների ժամանակ հունական բնակավայրերի և սրբավայրերի կործանման մասին է։

308 Դիոնիսոսը (Բաքոս) գինարբուքի աստվածությունն էր։

309 Այսինքն՝ 329—328 թ.։

310 Արրիանոսի (III, 25, 3) և Կուրտիոսի (VI, 6, 13) մոտ՝ Նարարզանես և Բարսաես (կամ Բարշաես)։

311 Բնագրում՝ ἐκκλησία (էկկլեսիա)։

312 Սա հայ մատենագրության մեջ հիշատակված Վրկանաց երկիրն է։

313 Հեկատոնտապյուլոս (նաև Հեկատոմպյուլոս) բառացի նշանակում է՝ հարյուր դարպասանի։

314 Սա, հավանաբար, այժմյան Ջեմե-ի-Այի գետն է։

315 Մետրետե (μετρητής) հին հունական հեղուկների չափ, որը հավասար էր 32,5 լիտրի։

316 Մեդիմնոս— տե՛ս ծանոթ. 303։

317 Սա, հավանաբար, հայկական ղապբե կոչված հյութն է։

318 Բնագրում՝ ἀνθρηδών, որը, հավանաբար, բոռի նման էր։

319 Նույնը համարյա բառացի կրկնում է Ստրաբոնը, գրելով. «Ասում են, թե Հյուրկանիայում որթատունկը տալիս է մեկ մետրետ գինի, թզենին՝ վաթսուն մեդիմնոս (Դիոդորոսի մոտ՝ տասը— Ս. Կ.), իսկ հասկից ընկած ցորենը նորից ծլում է և (մեղուները) ծառերի մեջ պարսավորվում են ու տերևներից մեղր է ծորում. այսպես է լինում և Մեդիայի Մատիանեում և Արմենիայի Սակասեննեում և Արաքսեննեում» (Strabo, II, 1 14, նաև XI, 7, 2, հմմտ. նաև C. Plinii Secundi, Naturalis Historiae, XII, 18)։

320 Անտիկ հեղինակները մի շարք անգամներ հիշատակում են մարդերին։ Այսպես, Հերոդոտոսը (I, 125) խոսելով մարդերի մասին, նրանց համարում է իրանական վաչկատուն ցեղ։ Դիոդորոսի այս հատվածում հիշատակված մարդերը, հավանաբար, միևնույն ցեղերն են։ Սրանց, սակայն, չի կարելի նույնացնել Քսենոփոնի (Anabasis, IV, III, 4) և Ստրաբոնի (XI, 13,3 և XI, 7,1) մոտ հիշատակված մարդերի հետ, որոնք ապրում էին Հայկական լեռնաշխարհում։ Աշխարհագիր Պտղոմեոս Կլավդիոսի վկայությամբ (Ptol. V, 12,9) մարդերը բնակվում էին Տիգրիսի ակունքներից արևելք։ Մարդերի մասին տե՛ս Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, h.I, Երևան, 1944, էջ 69—70։

321 Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու հայտնի ձիու՝ Բուկեփալասի մասին է։

322 Խիտոն— մի տեսակ շապիկ, առանց թևերի։

323 Անաքսիրիդ— պարսկական երկար ու նեղ անդրավարտիք։

324 Կանդիս— պարսկական թևավոր վերնազգեստ։

325 Արեյա (նաև՝ Արիա)— մարզ կենտրոնական Պարսկաստանում։

326 Սատիբարզանեսը եղել է Դարեհին սպանողներից մեկը։

327 Խորտականա (Χορτάκανα) քաղաքը սովորաբար կոչվել է նաև Արտակոանա (Ἀρτακόανα)։

328 Այստեղ ձեռագրում նկատելի է բացթողում, քանի որ պակասում է լեռան անունը։

329 Ավելի ճիշտ ձեր՝ Դրանգիանե։

330 Ավերգետես բառացի նշանակում է բարեգործ։

331 Արրիանոսը (III, 27,5) հաղորդում է, թե այս ցեղերը անկախ թողնվեցին։ Հավանաբար հիշյալ Տիրիդատեսը նախապես ևս այս ցեղերի առաջնորդն է եղել և Ալեքսանդրը նրան թողել է իր նախկին պաշտոնում։

332 Ալեքսանդրի զորահրամանատարների այս խորհուրդը գումարվել է մ. թ. ա. 323 թ., Բաբելոնում։

333 Կովկաս անվան տակ այստեղ պետք է հասկանալ Հինդու-քուշ լեռնաշղթան։

334 Սա Մեդիա Ատրոպատեննն է, կամ՝ Փոքր Մեդիան, մինչդեռ Պիթոնին հատկացվածը Մեծ Մեդիան էր։

335 Հատկանշական է, որ Ալեքսանդրի հրամանատարների միջև բաժանված սատրապությունների թվում չի հիշատակված Հայաստանը։ Հետևաբար, կասկած չի կարող լինել, որ Հայաստանը նվաճված չի եղել մակեդոնացիների կողմից, ուստի և երկիրը, ինչպես այս հատվածում նշում է Դիոդորոսը Ասիայի մյուս սատրապությունների մասին խոսելիս, «թողնվեց նախկին կառավարչի իշխանության տակ»։

336 Կովկասն այս դեպքում ևս Հինդու-Քուշն է, իսկ Արևելյան օվկիանոսը՝ Բենգալյան ծոցը։

337 Տանայիս գետն, ընդհանրապես, Դոնն է, բայց այս դեպքում Դիոդորոսի մոտ կա շփոթություն. այստեղ պետք է հասկանալ Ամու-Դարիան կամ Սիր-Դարիան։

338 Հիերոնիմոս Կարդիացու վկայությամբ (K. Müller, Fragmenta graecorum historicorum, 151, 4) Արիարաթեսը ապրել է 82 տարի։

339 Դիոդորոսը հաջորդ գլուխներից մեկում (XXXI, 19, 3—5) հաղորդում է, թե Արիարաթեսը ընկել է ճակատամարտում և ազատվել է նրա որդեգիրներից մեկը, որը և հետագայում վերագրավում է գահը։

340 Այստեղ խոսքը վերաբերում է մ. թ. ա. 321 թ., երբ Ալեքսանդրի զորավարներից Անտիպատրոսը հռչակվել էր Մակեդոնացու ստեղծած տերության ռեգենտը։

341 Արբելիտիս կոչվում էր վերին Տիգրիսի հովտում գտնվող Արբելա քաղաքը շուրջն ընկած երկիրը։

342 Բնագրում՝ Νῶρα. այս Նորա ամրոցի ճիշտ տեղադրությունը հայտնի չէ. հավանաբար այն գտնվում էր Տավրոսի հյուսիսային մասում։

343 Սա Հիերոնիմոս Կարդիացին է (մ. թ. ա. 350—260 թթ.). Ալեքսանդր Մակեդոնացու հետնորդների՝ դիադոխների պատմության վերաբերող հիմնական աշխատությունների մեկի հեղինակը։ Նա գերազանց տեղյակ էր դեպքերին, քանի որ եղել էր Եվմենեսի մերձավորագույն ընկերը և զինակիցը, իսկ նրա մահից հետո Անտիգոնոս Միականու և սրա որդի Դեմետրիոսի մտերիմը։ Նրա արժանահավատ պատմությունն ընդգրկել է Մակեդոնացու մահից մինչև Պյուռոսի մահն ընկած ժամանակամիջոցը (323—272 թթ.) և ընկած է Դիոդորոսի «Պատմական գրադարանի» 18—20-րդ գրքերի, ինչպես նաև անհշան քաղվածքներում պահպանված Արրիանոսի «Հետալեքսանդրյան» երկի հիմքում։ Հիերոնիմոսի գործը միաժամանակ Պլուտարքոսի հեղինակած մի շարք կենսագրությունների սկզբնաղբյուրն է։

344 «Դիադոխներ» պատմագրության մեջ կոչվել են Ալեքսանդրի զորավարները. որոնք նրա մահից հետո տերության տարբեր մասերում իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։ Դիադոխների հաջորդ սերունդը արդեն հայտնի է «էպիգոններ» անունով։

345 Դիոդորոսի մոտ պատմական ժամանակագրությունը հիմնված է Աթենքի արքոնտ-էպոնիմի և Հռոմի կոնսուլների անունների հիշատակման վրա, որոնք ընտրվում էին մեկ տարի ժամանակով։ Դիոդորոսի ժամանակագրական այս մեթոդի մասին տե՛ս մեր առաջաբանում։ Տվյալ դեպքում Դիոդորոսի խոսքը վերաբերում է մ. թ. ա. 318 թ.։

346 Պոլիպերքոնը այդ ժամանակ մակեդոնական թագավորի խնամակալն էր։

347 Տե՛ս ծանոթ. 277։

348 Օլյումպիասը Ալեքսանդր Մակեդոնացու մայրն էր, Փիլիպպոս II թագավորի առաջին կինը, որն իր որդու մահից հետո երկար պայքար մղեց իշխանության համար։ 317 թ. սպանվեց Ալեքսանդրի խորթ եղբայր, թագավոր Արրիդայոսին, բայց քիչ անց Կասսանդրոսը վերջ վերցրեց նրան և 315 թ. մահապատժի ենթարկեց։

349 Սա Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո Եգիպտոսում իր տիրապետությունը հաստատած Պտղոմեոս Լագոսն է։

350 Կվինդոսը գտնվում էր Կիլիկիայում, այնտեղ պահվում էր մակեդոնացիների արքունի գանձերի մի մասը։ Այս բերդի ճշգրիտ տեղադրությունը դեռևս հայտնի չէ։

351 Այստեղ մակեդոնացի հրամանատարը Եվմենեսին համարում է օտարերկրացի, նկատի ունենալով այն, որ սա մակեդոնացի չէր, այլ հույն, ծնված Կարդիա քաղաքում։

352 Բնագրում՝ Καρῶν χώρας. այս վայրը ոչ մեկ առնչություն չունի Կարրա (Խառան) հայտնի քաղաքի հետ։

353 Այդ բաժանումը տեղի է ունեցել 321 թ.։

354 Բնագրում՝ κοντωτός (Կոնտոտոս). սա հարթ հատակով գետանավ էր, որ կառավարվում էր երկար ձողերով։

355 Պևկեստեսը Պերսիսի սատրապ էր նշանակվել իր իսկ Ալեքսանդրի կողմից (Arrian., VI, 30, 2—3) և այդ պաշտոնում շարունակեց մնալ նաև Պերդիկկայի և Անտիպատրոսի խնամակալության տարիներին։

356 Այս Եվդամոսին չպետք է նույնացնել սույն գլխի սկզբում հիշատակված Պիթոնի նույնանուն հոր հետ։

357 Բնագրում՝ ἐπισκευασθησόμενον. բառացի նշանակում է՝ հանրապետական կարգեր ունեցող։

358 Սա մ. թ. ա. 318/317-ի ձմեռն էր։

359 Այստեղ Դիոդորոսը դարձյալ Տիգրիսը շփոթում է Պասիտիգրիս գետի հետ, որը գտնվում էր Սուսիանե երկրում (տե՛ս ծանոթ. 291)։ Որ խոսքը այստեղ Պասիտիգրիսի մասին է, պարզ երևում է հաջորդ 18-րդ գլխում պատմվածներից։

360 Այսինքն՝ մոտավորապես 550—730 մետր։

361 Կարմիր ծով ասելով պետք է հասկանալ Պարսից ծոցը (տե՛ս ծան. 2)։ Այժմ Պասիտիգրիսը թափվում է Շատ-էլ-արար գետը, որը կազմվում է Եփրատ և Տիգրիս գետերի միախառնումից։

362 Այսինքն՝ հունիս ամսի վերջերին։

363 Տե՛ս ծանոթ. 354։

364 Բնագրում՝ Τίγρις — Տիգրիս. այստեղ դարձյալ շփոթ կա, քանի որ նախորդ տողերում պարզապես նշված է Պասիտիգրիս գետը, որը և ճիշտ է։ Այստեղ հավանաբար ձեռագրական սխալ է։

365 Բատակես քաղաքի ճիշտ տեղը հայտնի չէ, քանի որ ստորին Միջագետքի գետային ցանցը դարերի ընթացքում բազում փոփոխությունների է ենթարկվել և հնարավոր չէ որոշել Եվլայոս գետի հունը։ Այն պետք է գտնված լիներ Տիգրիս և Պասիտիգրիս գետերի միջև։

366 Կոլոնոս քաղաքը, հավանաբար, Կալլոնիտիս (Polyb., V, 54,7) կամ Քալլոնիտիս (Strabo, XVI, 1,1) կոչված մարզի կենտրոնն էր։ Կոչվում էր նաև Կալլոնե։

367 Պելտաստները հունական բանակում զորքի այն տեսակն էր, որը միջանկյալ տեղ էր գրավում հոպլիտների՝ ծանրազենների և մերկերի՝ թեթևազենների միջև։ Նրանց տարբերությունը մերկերից այն էր, որ կրում էին թեթև կլոր վահան, որը հունարեն կոչվում էր πέλτη— պելտե (այստեղից էլ նրանց անունը՝ պելտաստներ)։

368 Կլիմաքս— κλίμαξ. բառացի նշանակում է՝ աստիճան։

369 Մակեդոնիայի Փիլիպպոս II թագավորը (մ. թ. ա. 360—336 թթ.) այդ պետության հզորության հիմնադիրն էր ու կազմակերպիչը, Ալեքսանդր Մակեդոնացու հայրը։

370 Բնագրում՝ հետայրներ— ἑταῖροι. Տե՛ս ծանոթ. 267։

371 Բնագրում՝ հիպպարքիա— ἱππαρχία. այս պաշտոնն ունեցող հրամանատարը առաջնորդում էր 500 հեծյալից բաղկացած մի զորագունդ։

372 Բնագրում՝ οἱ μάλιστα τιμώμενοι. այս տերմինի սոցիալական բովանդակության մասին տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Իշխանությունների առաջացումը Հայաստանում, «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 4, էջ 257—262։ Համտ. նաև ծանոթ. 269։

373 Բնագրում՝ ἀσσυρίοις γράμμασιν. իր շարադրանքի մեկ այլ հատվածում ես (II, 13 1—3) Դիոդորոսը, նկարագրելով Բեհիստունի հայտնի արձանագրությունը, սեպագրերը սխալմամբ համարում է ասորերեն գրեր։ Մինչդեռ Օրոնտեսյան վերագրվող այս նամակի

ռաթիվ։ Նրա «ասորերեն գրերով» արտահայտությունը պիտի համարել ճիշտ։ Նամակը պետք է գրված լիներ այդ ժամանակ արևելքում լայն տարածում գտած արամեական տառերով։ Տե՛ս նաև ծանոթ. 60։

374 Ավմենեսի այս հնարանքի մասին Դիոդորոսի հաղորդումից ելնելով, ուսումնասիրողները, ոչ առանց հիմքի, ենթադրում են, որ սատրապական շրջանի Հայաստանում, ինչպես նաև մյուս սատրապություններում, գոյություն է ունեցել դիվան, գրասենյակ իր գրագիր դպիրով և համապատասխան անձնակազմով (տե՛ս Г. А. Тирацян. Некоторые аспекты внутренней организации Армянской сатрапии. «Պատմա-բանասիրական հանդես», 1972, № 2, էջ 106—109)։

375 Հույների կորքում գիշերը բաժանված էր 3 կամ 4 պահի՝ հերթապահության։

376 Բնագրում՝ ἀπὸ ῥυτῆρος. բառացի նշանակում է՝ սանձերն ազատ թողած, սանձարձակ։

377 Բնագրում՝ ὑπασπισταί — հյուպասպիստներ։ Ուսումնասիրողների համար դեռևս պարզ չէ այս վահանակիրների և հետևակի զորամասերի՝ ծանրազենների միջև գոյություն ունեցող տարբերությունը։

378 Բնագրում՝ ἑταῖροι (տե՛ս ծանոթ. 267)։

379 Բնագրում՝ ἱππαρχία — հիպպարքիա, այս անունը կրող զորամասն ընդհանրապես բաղկացած էր հինգ հարյուր հեծյալից։

380 Դիոդորոսի տված այս ընդհանուր թիվը չի համապատասխանում վերևում բերված թվերի գումարին։ Այստեղ պիտի ենթադրել կամ ինչ-որ բացթողում, կամ բնագրի ձեռագրական աղավաղում։

381 Բնագրում՝ ἀμφίππους. Եթե սա ձեռագրական աղավաղում չէ, ապա պետք է ենթադրել, որ այս հեծյալները կռվի ժամանակ իրենց հետ ունեցել են մի երկրորդ ձի ևս։

382 Մակեդոնացի այս արգիրասպիդներից և ոչ մեկը վաթսունից պակաս տարիք չուներ։ Այդպես է հաղորդում Դիոդորոսը հաջորդ գլուխներից մեկում (XIX, 41,2)։ Սա դյուրին հասկանալի է, քանի որ նրանք հավաքագրված էին դեռևս Ալեքսանդրի հոր՝ Փիլիպպոս II Մակեդոնացու ժամանակ։

383 Այլ ձեռագրի համաձայն՝ հեռավորագույն։

384 Կռվում սպանվածներին հողին հանձնելը հույները համարում էին սրբազան գործ։ Անտիկ աշխարհի մի շարք գրական հուշարձաններում («Իլիական», «Ոդիսական», «Անտիգոնե») այս երևույթը դարձել է հիմնական կոնֆլիկտներից մեկը։

385 Գամարգա տեղանունը հաջորդ գլուխներից մեկում (37,1) հիշատակվում է Գադամալա ձևով։ Այս վայրի ոչ տեղադրությունն է մեզ հայտնի, ոչ իսկ դրա ճշգրիտ անվանումը։

386 Բնագրում՝ σταθμός —ստաթմոս։ Կայանը բանակելու վայր էր։ Այսպիսի կայանները պարսկական տերության մեջ տեղաբաշխված էին իրարից մոտավորապես մեկ օրվա ճանապարհի հեռավորության վրա։

387 Տե՛ս ծանոթ. 385։

388 Այսինքն՝ Ավմենեսի զորքերը։

389 Կյուրոս Մեծի որդու, պարսից արքա Կամբյուսեսի (մ. թ. ա. 529—522 թթ.) մահից քիչ առաջ, երբ նա երկրից բացակայում էր, պարսկական գահին բռնատիրեց ինչ-որ մոգ, որը հանդես էր գալիս իբրև Կամբյուսեսի Բարդիյա կամ Սմերդիս անունով եղբայրը, որին դեռևս Կամբյուսեսը սպանել էր իր եգիպտական արշավանքից առաջ։ Կամբյուսեսի մահից հետո գահի այս հավակնորդը սպանվեց յոթ անվանի պարսիկների կողմից, որոնցից մեկը ապագա արքայից արքա Դարեհ Վշտասպյանն էր, մեկն էլ Հյուդարնեսը, որին Հայաստանի Երվանդունիները համարում էին իրենց նախահայրը։ Այդ կա-

ռևորագույն դեպքերի մասին կես վիպական ձևով պատմում է Հերոդոտոսը (III, 61 և հաջ.)։ Հելլեն Պատմահոր հաղորդած վկայությունները էապես լրացվում են Դարեհ Վշտասպյանի թողած Բեհիստունյան արձանագրության տվյալներով։

390 Բնագրում՝ σπασπασται (տե՛ս ծանոթ. 377)։

391 Այս Կելբանոսը (այլ ձեռագրերում՝ Կեբալոս) ուրիշ ոչ մի դեպքում չի հիշատակվում, ուստի և դժվար է նրա իսկությունը որոշել։

392 Հունարեն ῥαγάς (ռագաս). նշանակում է ճեղք, ճաք։ Ռագայ վայրի անվան այսպիսի ստուգաբանության հանդիպում ենք նաև Ստրաբոնի մոտ (I. 3,19 և XI 9,1)։

393 Այստեղ բնագրի κατάβασις (կատաբասիս) բառը, որը նշանակում է վայրէջք, մենք թարգմանել ենք՝ վերադարձ։ Հելլենները Փոքր Ասիայի արևմտյան ծովափից դեպի երկրի խորքը կատարած արշավանքը անվանում էին ἀνάβασις -անաբասիս (այս բառից է առաջացել Քսենոփոնի հայտնի երկի վերնագիրը), որը բառացի նշանակում է՝ վերելք, մինչդեռ հակառակ ուղղությամբ Պարսկաստանից դեպի փոքրասիական ծովափ վերադառնալը անվանում էին κατάβασις կամ κάθοδος—վայրէջք։

394 Ձեռագրի այս հատվածում ենթադրվում է որոշ բացթողում, որտեղ պետք է նշված լիներ հեծելազորի ինչ-որ քանակի մասին։

395 Տե՛ս ծանոթ. 293։

396 Մաքուր ոսկուց պատրաստած այդ շքեղ հրաշալիքի մասին դեռևս իր ժամանակ պատմել է Հերոդոտոսը, գրելով. «Կելեններում Քսերքսեսին արդեն սպասում էր լիդիացի Պիթիասը, Ատիսի որդին, որը արքայի պատվին և նրա ամբողջ զորքի համար կազմակերպեց մեծածախս ընդունելություն։ Պիթիասը հայտարարեց, թե պատրաստ է արքային դրամ տրամադրել պատերազմի համար։ Երբ Պիթիասը այսպես առաջարկեց Քսերքսեսին, արքան իր ուղեկից պարսիկներին հարցրեց, թե ով է այս Պիթիասը և մի՞թե նա այնքան հարուստ է, որ կարող է այդպիսի առաջարկություն անել։ Պարսիկները պատասխանեցին. «Ով արքա, սա այն մարդն է, որը Դարեհին, քո ծնողին ընծա բերեց մաքուր ոսկուց պատրաստած սոսին և խաղողի որթը։ Նա այժմ էլ, քեզանից հետո, մեզ հայտնի ամենահարուստ մարդն է» (Herod., VII. 27)։

397 Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո, ինչպես հայտնի է, նրա զորավարները իրար միջև զինված պայքար սկսեցին տերության մեջ գերիշխող դիրք գրավելու համար։ Այդ պայքարի կարևորագույն դրվագներից մեկն էլ մ. թ. ա. 312 թ. հարավային Պաղեստինում գտնվող ծովամերձ Գազա քաղաքի մոտ տեղի ունեցած ճակատամարտն էր, մի կողմից Անտիգոնոս Միականու որդու՝ Դեմետրիոսի և մյուս կողմից՝ Պտղոմեոսի և սրա մոտ ապաստանած Սելևկոսի միջև։ Ճակատամարտում հաղթեց Պտղոմեոսը, որը և Սիրիան ու Փյունիկիան գրավելուց հետո, 312/311 թ. ձմռանը Սելևկոսին հաստատեց սատրապ Բաբելոնում։ Այս թվից էլ, սովորաբար, սկսում են հաշվել Սելևկյան թվագրությունը Մերձավոր արևելքում։

398 Ապպիանոսի հաղորդմամբ (Syr., IX, 54)՝ 1000 հետևակ և 300 հեծյալ։

399 Բրանքիդայ (Βραγχίδαι) անունով հայտնի էր քրմական մի տոհմ, որը գուշակություններ էր անում Միլետի մոտ գտնվող Դիդյումեյան Ապոլլոնի հայտնի պատգամատանը։ Բրանքիդայ անունը կրում էր նաև այդ պատգամատան շուրջ գտնվող բնակավայրը։

400 Դիոդորոսի «Պատմական գրադարանի» վերջին՝ 21—40-րդ գրքերից մեզ հասել են առավել կամ պակաս ամբողջականություն ներկայացնող հատվածներ, որոնք քաղվածաբար կամ ընդօրինակության ձևով պահպանվել են բյուզանդական հեղինակների երկերում (այդ մասին տե՛ս սույն հատորի առաջաբանում)։ Ուստի այս և հաջորդ

քաղվածքներն ընթերցողին կարող են թվալ շատ հատվածային, իսկ ոճական առումով նույնիսկ խորթ տարրեր։

401 Սա Պերգամոնի թագավոր Ատտալոս I-ի կրտսեր որդին էր, Եվմենես II-ի եղբայրը, որին և մ. թ. ա. 159 թ. փոխարինեց Պերգամոնի գահի վրա։ Այս հատվածում նկարագրված դեպքերը տեղի են ունեցել մ. թ. ա. 181—180 թթ.։

402 Բնագրում՝ βασιλεῖς. — թագավորներ. մենք թարգմանելիս նկատի ենք ունեցել ենթատեքստի իմաստը։

403 Այստեղ, հավանաբար, նկատի է առնված այն, որ Պերգամոնի թագավոր Եվմենես II-ը 190 թ. Մագնեսիայի ճակատամարտում հանդես էր եկել հռոմեացիների կողքին։

404 Խոսքը Պերգամոնի թագավոր Եվմենես II-ի մասին է (197—159 թթ.)։

405 Սա Պոնտոսի թագավոր Փառնակես I-ն է (184—157 թթ.), Միհրդատ VI Եվպատոր Պոնտացու պապը։

406 Այստեղ խոսքը 183—180 թթ. Փոքր Ասիայում տեղի ունեցած այն պատերազմի մասին է, որին մասնակցում էին երկու հակադիր կոալիցիա. մի կողմից՝ Հռոմին հարած Կապադովկիան և Պերգամոնը, մյուս կողմից՝ Սելևկյանների դաշնակից Պոնտոսը և Փոքր Հայքի սատրապ Միհրդատը։ Այդ պատերազմին վերջ տրվեց Հռոմի միջնորդությամբ, որից հետո 179 թ. կնքվեց հաշտություն (Ս. Մ. Կրկյաշարյան. Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ. Երևան, 1970. էջ 102—105։ «Հայ ժողովրդի պատմություն», հ. Ա, Երևան, 1971, էջ 544—545)։ Այդ պայմանագրի բովանդակությունը մեզ հասել է Պոլիբիոսի միջոցով։ Շահեկան է Պոլիբիոսի հաղորդման վերջին հատվածը, որտեղ կարդում ենք. «Պայմանագրին մասնակից դարձվեցին Ասիայի իշխաններից՝ Հայաստանի մեծագույն մասի տիրակալ Արտաքսիասը (Արտաշեսը— Ս. Կ.) և Ակուսիլոքոսը, Եվրոպայի իշխաններից՝ սարմատ Գաթալոսը, ինքնավար քաղաքներից՝ հերակլեացիները, մեսեմբրիացիները, խերսոնեսցիները և սրանց հետ կիզիկեցիները» (Polyb., XXV, 2)։

407 Տիոս ոչ մեծ քաղաքը գտնվում էր Բիթանիայի սևծովյան ափին և այդ ժամանակ Պերգամոնի թագավորը այն խլել էր Բիթանիայից։

408 Սա Սելևկոս IV Փիլոպատորն է (Հայրասեր), թագավորել է մ. թ. ա. 187—175 թթ.։

409 Այստեղ նկատի է առնված 189 թ. կնքված Ապամեայի պայմանագիրը, որով մեծ հարված էր հասցվում Սելևկյան պետությանը։

410 Այստեղ Դիոդորոսի հատվածն ընդհատվում է։

411 Բնագրում՝ Ἀρτάξης. ընդհանրապես անտիկ պատմագրության մեջ ընդունված է Հայոց Արտաշես թագավորի անվան Ἀρτάξιας — Արտաքսիաս ձևը, սակայն առաջինը ավելի մոտ է այդ անվան հայկական ձևին։ Դիոդորոսի հաջորդ հատվածներում հանդիպում է արդեն Ἀρτάξιας—Արտաքսիաս ձևը։

412 Այս հատվածում նշված են երկու տարբեր Անտիոքոսներ, առաջին դեպքում՝ Անտիոքոս III Մեծը (224—187 թթ.), երկրորդ դեպքում՝ Անտիոքոս VI Եպիփանեսը (175—164 թթ.)։

413 Այս հատվածում նկարագրված դեպքերի գիտական ուսումնասիրությունը աղբյուրագիտական նորագույն տվյալների հիման վրա կատարել է Գ. Խ. Սարգսյանը (Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, էջ 24[illegible]—247)։

414 Այստեղ խոսքը կեղծ-Սմերդիսի մասին է (տե՛ս ծանոթ. 359)։

415 Սա նաև այս անվան Ἀριαράμνης — Արիարամնես ձևը։

416 Այս անվան առավել ճիշտ ձևն է՝ Օրոփեռնես, որը հանդիպում է նաև իր՝ Դիոդորոսի մոտ։

417 Սա Աքեմենյան թագավոր Արտաքսերքսես III Օքոսն է (358—338 թթ.), որն արշավել է Եգիպտոս 351 և 343 թվականներին։

418 Պերդիկկասը մահացել է 321 թ., իսկ Եվմենեսը՝ 316 թ.։

419 Հայոց թագավորի անվան այս Արդոատես ('Αρδοάτης) ձևը վեճերի առիթ է տվել։ Վեճեր կան ոչ միայն նրա անձնավորության, այլև նրա Փոքր կամ Մեծ Հայքի թագավոր լինելու շուրջ։ Թ. Ռեյնաքը (Mithridate Eupator, roi de pont, Paris, 1890, էջ 31, ծան. 6) այն համարում է ձեռագրական աղճատում և առաջարկում է ուղղել՝ 'Αρταουάσδης (= Արտավազդ), վերջինիս համարելով Փոքր Հայքի թագավոր, իսկ Յ. Մարկվարտը (Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen, 1896, էջ 27, ծան.123) և Հ. Մանանդյանը («Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հ. Ա, Երևան, 1944, էջ 98) առաջարկում են այն կարդալ 'Αρτοάνδης (= Ὀρόντης—Երուանդ), նրան, իրավացիորեն համարելով Մեծ Հայքի թագավոր։ Ի. Դրոյզենը ևս (История эллинизма, т. II. М., 1893, էջ 311) Գավգամելայում արմենական զորքի հրամանատար՝ սատրապ Օրոնտեսին նույնացնում է Դիոդորոսի հիշատակած հայերի թագավոր Արդոատեսի հետ։ Մեր կարծիքով, բացառված չէ որ 'Αρδοάτης գրությունը 'Αρτοάνδης-'Ορόντης-ի աղճատված ձևն է, եթե նկատի առնենք մանավանդ, որ Դիոդորոսի այս հատվածը մեզ հասել է ոչ թե ուղղակի, այլ միջնորդաբար, բյուզանդական մատենագիր Փոտիոս պատրիարքի «Դրադարանում»։ Միաժամանակ, սակայն, դժվար կլինի Գավգամելայում արմենական զորքի հրամանատար սատրապ Օրոնտեսին նույնացնել այս Արդոատեսի հետ, քանի որ առաջինը հիշատակված է 331թ., իսկ երկրորդը՝ մ.թ.ա. 250-ական թվականներին կատարված դեպքերի առնչությամբ (տե՛ս H. Bengston, Die Strategie in der hellenistischen Zeit, II, 1944, München, էջ 77-78), դեպքեր, որոնք իրարից բաժանված են ավելի քան 70 տարով։

420 Սելևկյան թագավոր Անտիոքոս II Թեոսը իշխել է 262—247 թթ.։

421 Սելևկյան թագավոր Անտիոքոս III Մեծը իշխել է 224—187 թթ.։

422 Այս Անտիոքիսն է, հավանաբար, որ հետագայում ամուսնանում է Ծոփքի թագավոր Քսերքսեսի հետ, որին և, իր հոր՝ Անտիոքոս III ցուցմունքով, սպանում է («Հայ ժողովրդի պատմություն», հ.1, Երևան, 1971, էջ 521)։

423 Այս Միթրոբուզանեսը նույն Մեհրուժանն է, Ծոփքի Զարեհ (հուն. Ζαριάδρης — Զարիադրիս) թագավորի ավագ որդին (տե՛ս Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, Երևան 1944, էջ 120։ «Հայ ժողովրդի պատմություն», հ. 1, Երևան, 1971, էջ 548—550)։

424 Այստեղ ակնարկությունը Ծոփքի մահացած թագավոր Զարեհի երկու որդիների մասին է. որոնցից ավագը՝ Մեհրուժանը ապաստանել էր Կապպադովկիայի թագավոր Արիարաթես V-ի, իսկ կրտսերը, որի անունը մեզ հայտնի չէ, հայոց Արտաշես թագավորի մոտ։

425 Բնագրում՝ Σωφηνή. հունական աղբյուրներում Ծոփքը կոչվում է Սոփենե։ Դժվար չէ նկատել, որ հույներն պահպանել է այդ անվան առավել հին՝ ուրարտական Ծուփանի ձևը։

426 Բնագրում. ἐπιστάτης. բառացի նշանակում է՝ «վերակացու»։

427 Այստեղ պիտի հասկանալ Սելևկյան թագավորներին։

428 Սա Սելևկյան Դեմետրիոս I Սոտեր թագավորն է (162—150 թթ.)։

429 Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս IV Եպիփանեսի մասին է (175—164 թթ.)։

430 Այստեղ ձեռագիրը թերի է։

431 Ձեղմա գետանցը գտնվում էր վերին Եփրատի աջ ափին, Սամոսատ քաղաքի մոտ. իր անունը ստացել էր այստեղ գետի վրա կառուցված կամրջանավից։

432 Այսինքն՝ մ. թ. ա. 160 թ.։

433 Սա հայտնի Տիբերիոս և Գայոս Գրակքոս եղբայրների հայրն էր. Տիբերիոս Սեմպրոնիոս Գրակքոսը, որի գլխավորությամբ սենատի կողմից մի հանձնախումբ էր ուղարկվել Արևելք 162 թ.։

434 Նախորդ հատվածներից մեկում (XXXI, 19,7)՝ Հոլոփեռնես։

435 Ձեռագիրն այստեղ վնասված է թվում։

436 Պրիենեն Հոնիական ափի հունական քաղաքներից մեկն էր։

437 Francis R. Walton-ը նկատում է, որ այստեղ Եվմենեսի փոխարեն պետք է լինի Ատտալոս, քանի որ Պերգամոնի թագավոր Եվմենես II-ը այդ ժամանակ արդեն մահացել էր։ Այս սխալը, հավանաբար, գալիս է բյուզանդական քաղվածքից (Diodorus Siculus, vol. XI, London—Cambridge, 1957, էջ 395, ծան. 1)։

438 Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս V Եվպատորի մասին է։

439 Այն է՝ Անտիոքոս IV Եպիփանեսի։

440 Հետագայում, 150 թ., նա իրոք Սելևկյան գահի վրա հաջորդեց Դեմետրիոսին Ալեքսանդր Բալաս անունով։

441 Կորկյուրա կամ Կերկիրա. կղզի Հոնիական ծովի հյուսիսային հատվածում, Հունաստանի և Իտալիայի միջև։

442 Բնագրում՝ ἄσυλον. նշանակում է՝ անձեռնմխելի ապաստարան։ Հին աշխարհում մի շարք հայտնի սրբարաններ և նրանց շուրջ առաջացած տաճարային քաղաքներն ունեին անձեռնմխելիության իրավունք. այդ մասին տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, Երևան, 1970, էջ 71—76։

443 Սա Պարթև Արշակունիների արքայատոհմի Միհրդատ I Արշակ VI թագավորն է (170—138 թթ.), որի գահակալության տարիներին պարսկական տերությունը մեծապես ընդարձակվեց։

444 Սա Պարթև Հրահատ II Արշակ VII թագավորն է (138—128 թթ.)։

445 Սա Սելևկյան Անտիոքոս VII Եվերգետես (Սիդետես) թագավորն է (139—129 թթ.)։ Այս հատվածում նկարագրվող դեպքերը վկայված են նաև Մովսես Խորենացու հետևյալ տողերում. «...Այլ իմացեալ... սիդիացւոյ Անտիոքայ զգնալն Արշակայ, գայ ունի զԱսորիս։ Իսկ Արշակ երկոտասան բիւրեաւ անդրէն դարձեալ, և Անտիոքոս ի սաստիկ ձմերայնոյ հերքեալ, պատահի նմա պատերազմ յանձուկ տեղիս, և կորնչի հանդերձ զօրօքն. և Արշակ տիրէ երրորդ մասին աշխարհիս» (Մ. Խորենացի, Բ, Բ)։

446 Բնագրում՝ ἐπισταθμία — օթևան տրամադրել։ Սելևկյան թագավորության մեջ քաղաքները պարտավոր էին օթևան տրամադրել արքունի զորամասերին, այս պարտավորությունը ծանր էր անդրադառնում քաղաքային համայնքի վրա (տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, Երևան, 1970, էջ 76—77)։

447 Խոսքը Տիգրիսի աջ ափին գտնվող Սելևկիա քաղաքի մասին է։ Այս քաղաքը Հրահատը Անտիոքոս Սիդետեսին հաղթելուց հետո, վերագրավել էր։

448 Եվհեմերոս (Εὐήμερος) անունով Պարթև թագավոր մեզ հայտնի չէ։ 1634 թ. H. Valesius-ի հրատարակած Դիոդորոսի բնագրում Եվհեմերոսը ոչ թե պարթևների արքա է, այլ «պարթևների արքայի սատրապ», որը մեզ ավելի հավանական է թվում։

449 Հին հույները ագորա (ἀγορά) կոչում էին քաղաքային հրապարակը, որտեղ

դումարվում էր ժողովրդական ժողովր։ Ագորա կոչվում էր նաև քաղաքային շուկան։

450 Այս հատվածը վերաբերվում է 90—88 թթ. Իտալիայում ծայր առած դաշնակցային պատերազմին՝ որը մղվում էր մի կողմից Հռոմի, մյուս կողմից Հռոմի դաշնակիցները համարվող Իտալիկ քաղաքների միջև։ Պատերազմը ծագել էր այն պատճառով, որ Հռոմի դաշնակից Իտալիկ քաղաքների բնակիչները, թեպետև պարտավոր էին ծառայել հռոմեական բանակում և ենթարկվել հռոմեական օրենքներին, բայց զրկված էին քաղաքական իրավունքներից։ Դաժան պայքարը վերջացավ նրանով, որ Հռոմը ստիպված եղավ մասնակի զիջումներ կատարել և դաշնակից քաղաքների ազատ բնակիչներին շնորհել հռոմեական քաղաքացու իրավունք։

451 Սա Միհրդատ VI Եվպատոր Պոնտացին է (111—63 թթ.)։

452 Լեսբոս— հունական կղզի Էգեյան ծովում, Փոքր Ասիայի Միջերկրական ծովափին մոտիկ։

453 Ակվիլլիոսը (բնագրում՝ Ἀκύλλιος, լատին. Manius Aquillius) մ. թ. ա. 89 թ. սենատի կողմից ուղարկված էր Ասիա, Բիթանիայի և Կապպադովկիայի թագավորներին իրենց գահերի վրա վերահաստատելու հանձնարարությամբ։ Նրան իր ձեռքը գցելուց հետո Միհրդատը սպանեց Պերգամոնում, նրա կոկորդը լցնելով հալած ոսկի, դատապարտելու համար հռոմեական ընչաքաղցությունը (Appian., Mithr., 21)

454 Միտիլենե քաղաքը Լեսբոս կղզու վարչական կենտրոնն էր։

455 Հելլենական Կյուզիկոս քաղաքը, որը գտնվում էր Պրոպոնտիս (Մարմարա) ծովի ափին, Միհրդատյան 3-րդ պատերազմի ընթացքում (73—71 թթ.) երկար պաշարման ենթարկվեց Միհրդատի կողմից, բայց ուժեղ դիմադրություն ցույց տվեց և վճռական դեր ունեցավ պատերազմի ելքի վրա, նժարը թեքելով հռոմայեցիների կողմը։

456 Բնագրում ἑκατοντάρχης. հունարեն այս տերմինը ուղղակի թարգմանությունն է լատիներեն ցենտուրիոն (centurio) բառի։

457 Գնայոս Պոմպեոսը, որը հայտնի է «Մեծ» մականունով, եղել է Հռոմում կազմված առաջին եռապետության (մ. թ. ա. 60 թ.) անդամներից մեկը։

458 Խոսքը Կապպադովկիայի Արիոբարզանես I Հռոմեասեր թագավորի մասին է, որը մ. թ. ա. 95 թ. սենատի կողմից ճանաչվեց Կապպադովկիայի թագավոր, 93 թ. Տիգրան Մեծի կողմից վտարվեց իր երկրից, 92 թ. նորից հաստատվեց հռոմեացի զորավար Սուլլայի կողմից, 91 թ. դարձյալ փախավ Հռոմ, 89 թ. Հռոմի միջոցով վերահաստատվեց Կապպադովկիայի գահի վրա։ Մինչև Լուկուլլոսի հայկական արշավանքը (69 թ.) նա մերթ վտարվում էր Տիգրանի կողմից, մերթ վերականգնվում հռոմեական զինվորական ուժերի օգնությամբ։ Պոմպեոսի արևելյան արշավանքից հետո մինչև իր կյանքի վերջը մնաց Կապպադովկիայի թագավոր, կատարելով Հռոմի հրահանգները (Հ. Հ. Մանանդյան, Տիգրան երկրորդը և Հռոմը, Երևան, 1940, էջ 30 և հետ., Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի, հ. 1, Երևան, 1944, էջ 140 և հետ.)։

459 Սա Սկյութական կոչված Աքայան է (տե՛ս Appian., Mithr., 102; Strabo, XI, 2, 12)։

460 Դիոն Կասսիոսի (XXXVII, 2) և Ապպիանոսի (Mithr., 103) մոտ՝ Արտոկես։ Պատմագրության մեջ իրավամբ ընդունված է «Արտոկես» ձևը։

461 Պլինիոս Ավագը (Naturalis Historiae., VII, 97—98) հաղորդում է, որ նվիրաբերումը կատարվել էր Միներվա դիցուհուն։

# ՑԱՆԿԵՐ

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

## ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

14

ՀԻՆ ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

Բ

Դիոդորոս Սիկիլիացի

Հրատ. խմբագիր՝ Զ. Խ. Օրմանյան
Նկարիչ՝ Կ. Կ. Ղաֆադարյան
Գեղ. խմբագիր՝ Հ. Ն. Գործակալյան
Տեխ. խմբագիր՝ Հ. Մ. Մանուչարյան
Սրբագրիչ՝ Ա. Ա. Մուրադյան

ИБ № 1095
Հանձնված է շարվածքի 29. 10. 1984 թ.։ Ստորագրված է տպագրության 7. 05. 1985 թ.։ ՎՖ 05202։ Չափը 60×90 1/16։ Թուղթ № 1։ Տառատեսակ «Գրքի սովորական», բարձր տպագրություն։ Պայմ. 11,85 մամ., տպագր. 12,75 մամուլ։ Ներկ. մամուլ 11,85։ Հրատ.-հաշվարկ. 11,85 մամուլ։ Տպաքանակ 1000։ Պատվեր 913։ Հրատ. № 6242։
Գինը 2 ռ. 05 կոպ.։
ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչություն, 375019, Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24 գ.։
Издательство АН Арм. ССР, 375019, Ереван, пр. Маршала Баграмяна, 24 г.
ՀՍՍՀ ԳԱ Հրատարակչության տպարան, 375019, Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24։
Типография Издательства АН Арм. ССР, 375019, Ереван,
пр. Маршала Баграмяна, 24.

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 7 | վ. 18 | դեպքերը | դեպքերի |
| 11 | վ. 15 | Loed | Loeb |
| 30 | վ. 18 | կենդիացին | հնդկացին |
| 42 | վ. 5 | կյուսքսարեսն | Կյուաքսարեսն |
| 103 | վ. 15 | հանդեցնել | հագեցնել |
| 108 | վ. 7 | կորթնացին | կորնթացին |
| 108 | վ. 10 | այլև | այլ |
| 166 | 31–39 տողերը կարդալ 38-րդ ծանոթագրության շարունակությամբ։ | | |
| 187 | ն. 37 | սպանվեց | սպանեց |